ՀԻՄՆԱԿԱՆ

# ՏԱՐԲԵՐՈՒԹԻՒՆ

## ԿԱԹՈՒՂԻԿԷ ԵՒ ԷՋՄԻԱԾՆԱԿԱՆ

## ԴԱՒԱՆՈՒԹԵԱՆՑ

ԳՐԵՑ Հ. Ց. Գ.



ԿՈՍՏԱՆԴԻՆՈՒՊՈԼԻՍ
ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՏՊԱՐԱՆ

1864

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

ԵՐԲԵՔ չէ եղած ճշմարիտ կրօնէ անանկ անզգալի կերպով հեռանալ՝ ինչպէս Սամարացւոց ազգը Քրիստոսի Տեառն մերոյ ատեն Հրէից ճշմարիտ կրօնէն հեռացած էր, ասոնց հետ գաւառ գաւառի, քաղաք քաղաքի և գեղ գեղի քով նստած։ Բոլոր երկրիս վրայ Հրեաներէն՝ ետքը միայն Սամարիայի բնակիչներն էին որ զԱստուած իբրև անմարմին և անսահման էակ կը պաշտէին, և մինակ աս ազգն էր՝ որ, ինչպէս աւետարանէն գիտենք, Հրէից հետ մէկտեղ Փրկչի մը կ'ըսպասէր։

Իրենց՝ քահանայութիւնն Ահարոնէն էր, և իրենց պաշտամունքն ու պատարագները Մովսիսական կարգադրութենէն չէին խոտորեր։ Հրէից քով Ս.Գիրքը գերութենէն ետքը Եզրի՝ ձեռօք՝ փոփոխութիւն կրեց ըստ լեզուին և յաւելուած ընդունեցաւ ըստ Կանոնին։ Սամարացիք կը պարծէին թէ Ս. Գիրքը սկզբնական վիճակին համեմատ պահած են։ Բարուց կողմանէ նշանաւոր մոլորութիւն մը չունէին։ Մեր Տէրն իր գեղեցիկ առակին մէջ ամենուն օրինակ դրաւ Սամարացւոյ մը եղբայրական սէրը, որն որ Երիքովի ճամբուն

վրայ Հրեաներէն անտես եղած վիրաւորհամ-
բորդը գթութեամբ վերցուց ու դարմանեց։
Այնչափ հռչակաւոր էր իրենց օտարսիրու-
թիւնը՝ որ Հռոմայեցւոց Կայսրներէն մէկը
ատոնց գլխաւոր քաղքին մէջ հիւրընկալ Սրա-
մազդայ տաճար և անդրի կանգնել տուաւ՝
ան ազգին տիրող առաքինութիւնն ակնար-
կելով. (Վայմզ. Խօսակց. Ժ.)։

Բայց ոչ այն հաւատոյ մօտաւորութիւնն և
ոչ ալ բարուց աղեկութիւնը կրնար զա-
նոնք՝ Աստուծոյ օրինաց առջև արդարացընել։
Թող ամէն Հրէից հաւատացածը հաւատա-
յին, թող ամէն Հրէից պահածը պահէին,
միշտ կը մնար իրենց ան մի միայն մոլորու-
թիւնը, ան մի միայն յանցանքը՝ որ չէին հա-
ւատար թէ Աստուած՝ միայն Երուսաղէմի
մէջ մատուցուած զոհերը կ՚ընդունի, անկէ
դուրս Աստուծոյ ընդունելի պատարագ և քա-
ւութիւն չըլլար, և թէ չի կրնար ըլլալ՝ որ
իրենց Գարիզին լեռը (որուն վրայ տաճար
ու սեղան շինած էին) Սիոն լերան տեղը բըռ-
նէ՝ ուսկից արդարութիւն և իրաւունք պիտի
որ ելլէր։ Չնչին պարագայ մը կ՚երևար իրենց
սա սահմանաւորութիւնը, և արմատացած սո-
վորութեամբ մը՝ դժուարին եղած էր հասկը-
ցընել իրենց՝ որ ասիկա Աբրահամու զաւկին
տրուած օրէնքներուն հոգին ու շունչն է, և թէ

սատով նոյն օրինաց պահպանութիւնն և Աստուծոյ ընտրեալ ժողովրդեան սիրոյ և յուսոյ միութիւնն երաշխաւորուած է։ Ձկրցան զանոնք համոզել ոչ հրապարակական վէճերն և ոչ անցած ատենուան՝ Իսրայէլի մեսսական ցեղերուն օրինակը։ Ամէն տարի իր զեղը կ'անցնէր, Ջաբուղոն իր լեռները՝ որպէս զի « Յուդայի քաղաքին » մէջ՝ որն որ քարիչ քահանայութեան նոնախսալ մարգարէութեան կեդրոնն էր, մի և նոյն սեղանի վրայ իրենց եղբայրցը հետ զոհերնին և երկրպագութիւննին կատարեն։

Ասանկ վէճ մընէր՝ որն որ Քրիստոսի Տեառն մերոյ առջև դրուեցաւ Սամարուհւոյ մը կողմանէ։ « Մեր հարքը, կ'ըսէր աս Սամարացի կինը, աս (Գարիզին) լեռան վըրայ երկրպագութիւն ըրին, բայց դուք (Հրեայք) կ'ըսէք՝ թէ Երուսաղէմ է միայն այն տեղն՝ ուր կրնայ երկրպագութիւն ըլլալ » (Յովհ. Դ. 20)։

Ինչ՞ կըրաշէ մեր Փրկիչը։ Աս քաղցր և ներող Տէրը՝ որն որ աւելի ողորմութիւն քան թէ զոհ կ'ուզէ, վայրկեան մը չի տարակուսիր վճռելու՝ թէ « Փրկութիւնը Հրէիցմէ է։ »

Եթէ փոխենք անունները, կը գտնենք մեր յարաբերութիւնները։

Նոր օրինաց մէջ՝ նոյն տնտեսութիւնը

չէ թէ հիմնովին ջնջուած, հապա փոփոխութեամբ ազնուացած և կատարելագործուած ըլլալով (Մատթ. Ե. 17. 18. Եբր. Ա. 1. 2) ինչ որ ատեն մը Երուսաղէմն էր ան ժողովրդեան նկատմամբ՝ որն որ հիմա իր Քաղաքովն ու Տաճարովը մերժուած է, նոյնը Կաթուղիկէ Հռոմէական եկեղեցին է անոր տեղը կանչուած Հեթանոսաց համար: Ինչ որ հոն Մովսիսական սահմանադրութեամբ մասնաւոր ժողովրդեան մը համար դրուած էր՝ իբրեւ նախանկար օրինակ հանդերձելոց, նոյն հոգեւոր սահմանադրութեամբ մարդկային ազգին համար սահմանադրուած է՝ իբրեւ ան օրինակին ճշմարտութիւնը (Կոչ. Ընծ. Տրիդ. ժող. մասն Ա. Գլ. Թ. 19): Ասանկ կը հաւատայ ամէն կաթողիկեայ. Ասով Կաթուղիկէ եկեղեցւոյ կառավարութեան ու վարդապետութեան միութիւնն ապահովցուած է:

Ասոր հակառակ՝ գրէթէ այսպէս կը գանգատի Էջմիածնական եկեղեցին. «Մեր հարքը, կ'ըսէ, սա լեռան տակ, ազատ Մասեաց ստորոտը, երկրպագութիւն ըրին, բայց դուք Կաթուղիկեայք կ'ըսէք՝ թէ միայն Կաթուղիկէ Հռոմէական եկեղեցւոյ հնազանդութեան մէջ կրնայ Աստուծոյ ընդունելի երկրպագութիւն ըլլալ։ Սակայն ինչ ունի սա եկեղեցին՝ որն որ Էջմիածնական եկեղեցւոյ պակսի. քահանայութիւն, խորհուրդ, վարդապետու-

թիւն, հօս՝ յոյս, անդին փրկութիւն՝ երկուքին մէջն ալ նոյն է։ Միայն քանի մը նորամուտ աւանդութիւններ են՝ որոնք Հռոմէական եկեղեցւոյ բոլորովին յատուկ կը մնան[1]։

Հիմնական Էջմիածնական եկեղեցւոյ գլուխն է՝ որն որ իր հետեւողներուն ըսել կուտայ թէ «Ես սրբարար շնորհիւ մկրտութեան
« և ուղղափառ հաւատոյ դաւանութեամբ
« կատարեալ քրիստոնեայ եմ և առաքե-
« լական աշխարհալուր քարոզութիւններն
« և անժխտելի աւանդութիւններն զորոնք
« Ս. եկեղեցին կը յայտնէ և կը քարոզէ, ըն-
« դունելով կ՚ընդունիմ, և ամէն հերետիկոս-
« ներուն և աղանդաւորներուն մոլորութիւն-
« ները՝ որոնք որ սուրբ և տիեզերական ժո-
« ղովքներուն մէջ հերքուեցան և ես ըստ
« ամենայնի մերժելով կը մերժեմ[2]։ »

Այսչափ կ՚ուզէ նրբել Էջմիածնական եկեղեցին երկու կողման տարաձայնութիւնը. ասանկ կ՚ուզէինք մենք ալ, բայց իրաց վիճակը մեր բաղձանքներէն շատ տարբեր է։

Կ՚երեւայ որ չափէն շատ քիչ զմեզ կը ճանչ-

[1] 1864 մարտի 16 ին Հոգեւոր ժողովոյն մէջ խօսուածներուն (տես *Երեւակ* թիւ 26 էջ 206 եւ *Մասիս* 1864 Յունիսի 6 եւ 13 թերթերը.) եւ նոյն տարւոյն Պատրիարքարանէն պաշտօնական կերպով Յունուարի 3ին տրուած յայտարարութեան համեմատ։

[2] Հանդիսարան. էջ 198.

նայ ալ Էջմիածնական հասարակութիւնը՝
երբ որ զմեզ իրեն այսչափ մօտ կը տեսնէ։
Տարակոյս չկայ՝ որ երկու եկեղեցեաց մէջ
գտնուած վարդապետական անհամաձայնու-
թիւնները կրնային աւելի ըլլալ, և Աստուծոյ
ոչ փոքր պարգեւն է որ ատոնց թիւը եղածէն
մեծագոյն չէ, բայց ասկից չի հետևիր որ նոյ-
ներն ոչինչ ալ ըլլան։ Մեր տարաձայնու-
թիւնները « քանի մը անտեղութեանց » ամ-
փոփելով գործքերնիս լմընցուցած չենք ըլ-
լար. վասն զի մեր տարաձայնութիւնները՝
մինակ ան « անտեղութիւնները » չեն, և աս
անտեղութիւն ըսուածները՝ կարծուածէն շատ
աւելի խոշոր միհեր են՝ որոնց վրայէն ասանկ
թեթև չենք կրնար ցատքել։ Ատոնցմէ միայն
մէկը կրնայ մեր յաւիտենական միջնորմն
ըլլալ։

Չենք տարակուսիր ըսելու՝ որ Արևելք
կաթուղիկէ միութենէն դուրս գտնուած քրիս-
տոնեայ հասարակութեանց մէջ չկայ կաթու-
ղիկէ հռոմէական եկեղեցւոյ այնչափ ծիսի
կողմանէ մօտ հասարակութիւն մը՝ ինչպէս
Հայոց Էջմիածնական եկեղեցին. բայց ասոր
հակառակ՝ դժուարաւ կրնայ նոյն քրիստո-
նեայ հասարակութեանց մէջ հասարակութիւն
մը գտնուիլ՝ որ նոր Կաթուղիկէ Հռոմէական
եկեղեցիէն վարդապետութեան կամ հաւատոյ

կոչմանէ այնչափ հեռու ըլլայ՝ որչափ Էջմիածնական եկեղեցին այսօրուան օրս։

Բարեբախտութեամբ մէկ նշանաւոր պարագայ մը ամէն բան կը մեղմէ։ Արդի Յունաց և արդի Հայաստանեայց Եկեղեցիք, երկու անկախութեան քոյրեր, որոնք կը միաբանին իրենք զիրենք « ամէն եկեղեցեաց Մօրմէն » բաժնելու, իրարմէ բոլորովին տարբեր բնաւորութեան տէր են։ Առջինը կը խրոխտայ Կաթուղիկէ Հռոմէական եկեղեցւոյ նաև հաւատոցը դատախազ հանդիսանալու, ուր որ Էջմիածնական եկեղեցին անոր հնազանդութիւն գլանալու տեղն՝ զանէ յարգութիւն ու պատկառանք մը կը պահէ, և անոր դաւանանքները զինք բոլորովին անտարբեր չեն գտներ*։ Առաջնոյն եկեղեցին որոնք վարդապետութեանը Կաթուղիկէ Հռոմէական եկեղեցւոյ ամենէն մօտն է, սրտով ամենէն հեռու, և ան որն որ վարդապետութեամբ ամենէն հեռաւոր է, սրտի ամենէն մերձաւոր կը լինայ։ Ասկից է որ յունական կղերը ժողովուրդը իրեն կը պահէ՝ երբոր զանիկա կը համոզէ թէ Կաթուղիկէ Հռոմէական եկեղեցւոյ վարդապետութիւնը իրեններէն տարբեր և մոլորական է, ասոր հակառակ՝ Էջմիածնական կղերն անով միայն ժողովուրդն իրեն կը պահէ, որովհետև զանիկա համոզած է՝ որ Կաթուղիկէ Հռո-

մէական եկեղեցւոյ վարդապետութիւնը իրենին հետ նոյն է։

Իրաց այս վիճակին մէջ՝ թէ մեր պաշտօնին և թէ՝ մեր համոզման մասնակից չեղող բարեկամներնուս պարիշ ինչ աւելի կրնայինք պարտական ըլլալ, բայց եթէ ապացոյց մը՝ որ արդի Էջմիածնական եկեղեցւոյն և Կաթուղիկէ Հռոմէական եկեղեցւոյն հաւատքն իրարմէ hiuUnalfiU surpեr ; այս ինքն՝ իրարու հակառակ են և ոչ որ կրնայ մի և նոյն ատեն երկուքին ալ հաւատալ, երկուքին ալ վերաբերիլ։

Ասձեռնարկութեամբ յայտնի փտանգի մէջ ենք շատերուն անհաճոյ ըլլալու, բայց իրաւամբք՝ և ոչ մէկու. վասն զի չենք կարծեր որ մէկը կարող ըլլայ վշտանալու պատճառ ունենալ՝ երբոր մէկ կողմանէ տեսնէ թէ մինակ ան կ'ըսենք՝ ինչ որ կաթուղիկէ վարդապետութեան մէջ kuayku բովանդակուած է, և մէկալ կողմանէ մտածէ՝ որ Աստուծոյ ճամբաները թէ որ իրօք անկից ընդարձակ կը թեպէ, չի կրնար հռոմէական եկեղեցին իր վարդապետութեամբը մատ մը նեղցընել։ Համոզուած ենք՝ թէ որչափ անկեղծ ըլլանք և անթեւեթելով Աստուծոյ խօսքը մարդկան առջև չնենգենք (Բ. Կորնթ. Դ. 2), այնչափ աւելի օգտակար ծառայութիւն ըրած կ'ըլլանք

թէ ճշմարտութեան և թէ սիրոյ: Եթէ սըրտերնիս զմեզ չի խաբեր՝ ամէն մէկ քայլերնուս կ'ուզենք յիշել՝ որ աս երկուքին օրէնքներն իրարու անհաշտելի չեն:

Երկու կողման տարբերութիւնը զգալի ընելու համար ամենէն բնական ճամբան համեմատութեան ճամբան էր: Այս համեմատութիւնները, ինչպէս իրաւացի է, երկու կողման ալ միայն վաւերական գրուածներուն վրայ պէտք էին ըլլալ, եւ որոնք են Էջմիածնական եկեղեցւոյ ամենէն վաւեր եւ հանրիսական գրուածները՝ որոնցմէ հիմա իրենք կը սորվին, իրենց հարքը սորված են և իրենց որդիքը պիտ'որ սորվին, բայց եթէ

Էջմիածնական եկեղեցւոյ
Քրիստոնէականները:

Ասոնք ահաւասիկ իրենց ժամանակի կարգաւը:

(1667) Վարդապետութիւն Քրիստոնէական ազգիս Հայոց: Կարապետի վարդապետի Անգքեանացւոյ, և Թէոդորոսեան Պետրոսի Սեմպրի. Ամստելոտամ:

(1737) Գիրք կոչեցեալ Քրիստոնէական ուսանելի և կամ Քրիստոնէից Վարժից. տպեցեալ ի Պատրիարքութեան Ս. Երուսաղէմի

և Բուզանդիոյ Տեառն Գրիգորի և Տեառն Յովհաննիսի աստուածաբան վարդապետաց, շարադրեալ աշխարհաբար ոճիւ ի Յակոբ վարդապետէ Չիմառացւոյ. Կ-Պոլիս։

Նոյնը տասը տարի ետքը (1747) նորէն տպագրուած կը տեսնենք սա վերնագրով. Գիրք կոչեցեալ Քրիստոնէական ուսմանց, շարադրեալ աշխարհաբար ոճիւ ի Յակոբ վարդապետէ նարդենիս Պատրիարքէ Կոստանդնուպոլսոյ. Կ-Պոլիս։

(1769) Ծաղկոցիկ քրիստոնէական ուսման յոյժ հարկաւոր նորակիրթ մանկանց. ի վեհափառ հայրապետութեան Տեառն Սիմէոնի սրբազան Կաթողիկոսի ամենայն Հայոց. հրամանաւ մեծի մայրաքաղաքիս Տեառն Գրիգորի երանաշնորհ վարդապետի և արժանաժառանգ Պատրիարգի, ի Թուին Հայոց 1218, Յունիսի 15. Կ-Պոլիս։

(1811) (Կրթութիւն) Քրիստոնէական. հաւաքեալ յումեմնէ քահանայէ վասն մանկանց անվարժից կամ թերավարժից։ Վեհափառ հրամանաւ մեծի մայրաքաղաքիս Կ-Պոլսոյ սրբազան Արհիեպիսկոպոսի Տեառն Յովհաննու աստուածիմաստ Պատրիարգի. ի Թուին Հայոց ՌՄԿ. փետր. Է.

(1814) Քրիստոնէական վարդապետութիւն, ինչպէսոր հաւատայ եւ կը խոստովանի սուրբ եկեղեցիս Հայոց. Կ-Պոլիս։

Ասիկայ մինչև մեր օրերը տեղ տեղ տպուած է այլ և այլ Պատրիարքաց օրոք և հրամանաւ, ինչպէս 1838 ինը, 1843 ինը (Զմիւռնիա), 1846 ինը, 1861 ինը՝ Քրիստոնէական վարդապետութիւն անուամբ։

Վերջնոյն մէջ՝ որուն վերնագիրն է Քրիստոնէական վարդապետութիւն Հայաստանեայց եկեղեցւոյ — յօրինեալ ի Գրիգոր վարժապետէ Փէշտըմալճեան, մանաւորապէս կը ծանուցուի՝ որ այս տպագրութիւնը « Հրամանաւ ազգային Կրօնական ժողովոյ » եղած է։ Տեսնելով, կ'ըսէ Ազդը, որ շատերը կը խընդրէին և առաջին տպագրութիւնը հատած էր, « ահա այս անգամ այդպիսեաց իղձը լրացընելու ջանալով, Կրօնական ժողովոյ և սըրբազան Հօր կամակցութեամբը վերստին սոյնը ի լոյս կ'ընծայենք բնագրին հարազատ հետևութեամբ։ »

Պատահած է՝ որ այս զանազան տպագրութեանց համեմատ գործքիս ընթացքին մէջ կոչումներ ըրած ըլլանք, որովհետև ամէնքը մի և նոյն ատեն ձեռքերնիս ունեցած չենք։

(1820) Հրաւէր Սիրոյ, որուն մէջ բովանդակուած է նոյն տարւոյն ազգային ժողովոյն կամ Սիւնհոդոսին վճիռը. Կ—Պոլիս։

Առ-սիւնհոդոսին ներկայ էին Էջմիածնի Կաթուղիկոսին գործակալը, Կիլիկիոյ Կաթուղիկոսն անձամբ, Կոստանդինուպոլսոյ

Պատրիարքը, Երուսաղէմի Պատրիարքին գործակալը, շատ մը արքեպիսկոպոսներ, եպիսկոպոսներ և վարդապետներ։

Աս տետրակին օրինակներն առանձին Պատրիարքական կնիք վրանին կը կրեն, որպէս զի հարազատութեանը վրայ ամենևին տարակոյս մը չելլէ։

(1826) Լապտեր հոգւոյ ի Տէր Կարապետ Արքեպիսկոպոսէ Կոստանդնուպոլսոյ. տըպեալ ի Միջագիւղ. Մասն առաջին՝ Քրիստոնէական վարդապետութիւն. Կ-Պոլիս:

(1843) Քրիստոնէական վարդապետութիւն համառօտեալ ի պէտս դպրոցաց. հրամանաւ ամենապատիւ սրբազան Պատրիարքի Տեառն Աստուածատրոյ Արքեպիսկոպոսի. Կ-Պոլիս։

Նոյնը նաև 1850ին Յակոբայ Պատրիարքի օրովը տպուած ձեռքերնիս ունեցած ենք։

(1846) Հրահանգ քրիստոնէական Վարդապետութեան ի պէտս մանկանց Հայաստանեայց սուրբ եկեղեցւոյ, Թարգմանութիւն ազատ ի ռուսականէ. նուիրեալ Տեառն Ներսէսի Հայոց Կաթուղիկոսի. առաջին տիպ ի Տփղիս և երկր. տիպ ի Կալկաթա։

(1847. Երրորդ տպագրութիւն) Քրիստոնէական Վարդապետութիւն համառօտեալ ի պէտս դպրատանց: Ի Հայրապետութեան Տ. Տ. Ներսէսի աստուածընտիր կաթողիկոսի ամենայն Հայոց և Հրամանաւ Տեառն Մատ-

Թէոսի սրբազան Արքեպիսկոպոսի և վեհափառ Պատրիարքի Կոստանդնուպոլսոյ. Կ-Պոլիս։

(1847) Քրիստոնէական Վարդապետութիւն ըստ դաւանութեան Հայաստանեայց սրբոյ եկեղեցւոյն, յարմարեալ ի պէտս նորահաս մանկանց. ի Պատրիարքութեան աթոռոյն Կ-Պոլսոյ Տ. Տ. Մատթէոսի սրբազան Արքեպիսկոպոսի. Նաշ։ Ասոր գլուխը «Տէր Ներսէս աւագ քահանայ Հայոց» ստորագրութեամբ վկայութիւն տրուած է՛ թէ «Քննեցաւ և գտաւ ըստ ուղիղ դաւանութեան Հայաստանեայց ուղղափառ սուրբ եկեղեցւոյս»։

(1850) Հրահանգ քրիստոնէական հաւատոյ, ըստ ուղղափառ դաւանութեան Եկեղեցւոյ Հայաստանեայց, ընդարձակեալ համապատշաճ վկայութեամբք. Մոսկուա։

Ասոր Էջմիածնի (Ներսէս) Կաթուղիկոսը ասանկ հրաման ու հաւանութիւն կուտայ։

«Հրաման յաղագս տպագրութեան։»

«Ընթերցեալ զսոյն համառօտութիւն Ա-
«ռաքելական ամենաբարեպաշտ եկեղեցւոյ
«Հայոց Քրիստոնէական հաւատոյ և դաւա-
«նութեանց ճիշդ հաւաստութեամբ՝ շարա-
«դասեալ բազմավկայ հաւաստարմութեամբք,
«հրամայեմք լինի մուծանել ի տիպ վասն
«օգտի մանկանց համազգեաց, առ որ տը-

« պետք ի սմին գլխիք մեր Պատրիարքական՝
« ստորագրեմ զայս մեր ձեռագիր : »

Յամի 1850, Մարտի 30.

Պատրիարգ Կաթուղիկոս ամենայն Հայոց

ՆԵՐՍԷՍ

Նոյն 1850 տարին՝ նախընթաց Քրիստոնէական հաւատոյ հրահանգէն քաղուած համառօտ « Հրահանգ քրիստոնէական հաւատոյ » մ՚ալ նոյն քաղաքը տպուած է :

Աս վերջնոյն յառաջաբանին մէջ ասկից աւելի համառօտ մ՚ալ « յաշխարհիկ բարբառ » նոյն ուսումնական հայ մանկտւոյ գործածութեանը համար կը ծանուցուի, զորն որ դեռ չենք կրցած տեսնել:

Մինակ տեղեկութիւն ունինք՝ որ աս 1850ին Հրահանգը ան երկրին աշխարհաբառին դարձունելով 1861ին նոյն հեղինակէն հրատարակուած է զանազան վկայութեանց յաւելուածներով:

(1854, կրկին տպագրութիւն) Քրիստոնէական վարդապետութիւն, ըստ ուղղափառ դաւանութեան Հայաստանեայց կաթուղիկէ և առաքելական սուրբ եկեղեցւոյ. Զմիւռնիա:

(1855). Մանր ուսմունք քրիստոնէական հաւատոյ և սրբազան պատմութեան աւետարանի: Հրամանաւ Տ. Տ. Յակոբայ սրբազան արք եպիսկոպոսի և պատրիարքի Հայոց. Կ-Պոլիս:

Նոյնը Զմիւռնիա ալ տպուելով (1862 ին)՝ դեռ գործածութեան մէջ է ։

(1858). *Միջակ վարդապետարան ուղղափառ հաւատոյ Հայաստանեայց եկեղեցւոյ ։* Շարադրեց Գաբրիէլ Վ. Այվազովսքի Առաջնորդ Բեսարաբիոյ և Նոր Նախիջևանու ։ Տպագրեալ հրամանաւ Տեառն Ցակոբայ աստուածընտիր Պատրիարքին Կոստանդնուպոլսոյ ։ Ի պէտս ազգային ուսումնարանաց. Փարիզ ։

Ասոր յառաջաբանին մէջ կը ծանուցուի՝ որ աս Վարդապետարանը « Ազգային հոգևոր
« ժողովը քններ է և ընդուներ և մեր սուրբ
« եկեղեցւոյ գլուխներէն մէկը կը հրամայէ
« որ տպագրուի ու բոլոր Ազգային Վարժա-
« րանաց մէջ ընդունուի (էջ Բ) ։ »

(1858). *Քրիստոնէական վարդապետութիւն ։* Գրեց Յովհ. Տ. Կրպտ. Տէրոյենց ։ Ի Հայրապետութեան Տ. Տ. Մատթէոսի երանեալ Կաթողիկոսի ամենայն Հայոց. Կ-Պոլիս ։

Ասոր Հոգևոր Ժողովն ասանկ հրաման ու հաւանութիւն կուտայ ։

« Պատճէն վճռոյ տպման քրիստոնէա-
« կան վարդապետութեան նորոգ յօրինելոյ
« ի Պրուսայի Յովհաննէս Պատուելւոյ Տէրո-
« յենց ։ »

« Ի 15 Հոկտեմբերի Պրուսացի Տէր Կա-
« րապետեան Յովհաննէս Պատուելւոյն նո-
« րոգ յօրինած համառօտ քրիստոնէական

« վարդապետութիւնը քննելով մանր խուզո-
« զութեամբ, և ըստ ամենայնի համաձայն
« գտանելով ուղղափառ վարդապետութեան
« Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ՝ տուաք զհա-
« ւանութիւն մեր ի տպագրութիւն նորա,
« մինչև ցարդ ի լոյս ընծայուած Քրիստոնէ-
« ականներէն աւելի յարմարաւոր յուսումն
« դպրոցական մանկանց ազգիս ։ »

« Ստորագրութիւնք ժողովականաց
Հոգևոր ժողովոյ ։ »

Ահաւասիկ Էջմիածնական Հայոց եկեղեց-ւոյ գլխաւորաբար 50—60 տարուան միջոցի Քրիստոնէականները՝ զորոնք կրցանք ձեռք բերել ։

---

Ժողովրդեան համար առ ձեռն Քրիստո-նէականներ հոգալու սովորութիւնը Էջմիած-նական եկեղեցին Կաթուղիկէ Հռոմէական եկեղեցիէն առաւ ։ Թէ որ 1667ին Արևմուտք փոքր Հայ գաղթականութեան մը համար Ամստէլտամ տպուած Քրիստոնէականը մէկ դի հանենք, առջի անգամ 1737ին եղաւ՝ որ [illegible] Քրիստոնէական մը ժողովրդեան հա-մար երևցաւ Քրիստոնէականի ուսանելի ան-ւամբ, ինչպէս որ հեղինակը յառաջաբանին մէջ ակնարկած է, և մինչև ցայսօր կը տևէ առ ըստ ինքեան փրկաւէտ սովորութիւնը ։

Ինչպէս Քրիստոնէականներ գրելու և գոր-

ծածելու սովորութիւնը նմանողութեամբ՝ Էջմիածնական եկեղեցւոյ անցած է, ասանկ ալ անոնց նիւթն ըստ մեծի մասին ան հայերէն վարդապետական գրոց մթերքէն առնուած է՝ որոնք գրեթէ 200 տարուընէ հետէ Կաթուղիկէ Հռոմէական եկեղեցւոյ հովանւոյն տակ սնած ու զարգացած են։ Անիկա գեղեցիկ ծառայութիւն մըն էր՝ զորն որ գրաւոր Առաքելութիւնը Հայ ազգին մէջ ըրաւ։

Բայց ինչպէս բնական էր, աս հետևողութիւնը բոլորական չէ։ Էջմիածնական Քրիստոնէականներն ան խնդիրներուն մէջ՝ որոնց վրայ Կաթուղիկէ Հռոմէական եկեղեցւոյ հետ վէճի մէջ են, բաւական զգուշացած են՝ կաթուղիկէ վարդապետութիւնը չօրինակելու։

Աս խնդիրներուն նկատմամբ՝ Տաճկաստանի Քրիստոնէականներուն կարգին մէջ երեք դարագլուխ կը դիտենք. այս ինքն 1737ին, 1814ին, 1840ին մօտերը, որովհետև աս երեք Թուականներուն հրատարակուած Քրիստոնէականները նոյն խնդիրներուն նըկատմամբ Էջմիածնական եկեղեցւոյ ըմբռնումը բաւական եղանակաւորած են և աս եղանակաւորութիւնները՝ զորոնք հետզհետէ Ն. Յակոբ Պատրիարքին, Փէշտիմալճեան և Տէրոյենց պատուելիներուն պարտական ենք, իրենցմէ ետքը հրատարակուած Քրիստոնէ-

ականներուն քիչ ազդեցութիւն ըրած չեն։ Ռուսիոյ Հայոց մէջ իրերը տարբեր ընթացք առին, հոն Քրիստոնէականի ձևը, որչափ մեր ծանօթութիւնը կը հասնի, նախ և յառաջ 1831ին Մոսկուա հրատարակուած՝ Սալլանթեանց Միքայէլի Христіанская Хронографіеանը մէջ կը տեսնենք՝ որն որ ինչպէս ճակատը կ՚ըսէ «Ըստ ուղղափառդաւանութեան առաքելական եկեղեցւոյ Լուսաւորչական Հայոց» գրուած է։ Դեռ աս «ծայրագոյն վարդապետին» հոգին և ուսումը նոյն երկրին մէջ կենդանի է, Լիբանանէն Մոսկուա անցած ատեն ըրած հաւատոյ նաւաբեկութենէն ետքը՝ մինակ Մարդեղութեան վարդապետութիւնն է՝ որն որ Կաթուղիկէ Հռոմէական եկեղեցւոյ ճշմարտութեան համեմատ քովը մնաց (Կրօնագ. էջ 49)։ Ասոր գրուածներուն ազդեցութիւնը Մսերեան քրիստոնէականներուն մէջ շատ զգալի է։

---

Աս Քրիստոնէական վարդապետութեանց վրայ քանի մը դիտողութիւններ կրնանք ու պէտք ենք ընել՝ զորոնք իրաւացի գտնելու համար՝ հարկ չկայ աստուածաբան ըլլալու, հապա բաւական է առողջ միտք մը ու քիչ մը քրիստոնէական լոյս ունենալ։

1. Աս Քրիստոնէականներուն վարդապետութիւնը մասնաւորաց վարդապետութիւն

չէ, հապա Էջմիածնական Հայոց եկեղեցւոյն ընդհանուր վարդապետութիւնն է. որովհետեւ նոյն եկեղեցւոյն սորվող մասը (այս ինքն ժողովուրդը) ասոնցմէ կը սորվի, ու սորվեցընող մասն ալ (այս ինքն՝ կաթուղիկոսները, պատրիարքներն, արքեպիսկոպոսներն, եպիսկոպոսներն և վարդապետներն) աս Քրիստոնէականներուն մէջ իրենց իշխանութեանը լրութեամբը կը խօսին։

2. Թէ Բողոքականք և թէ Հռոմէական ուղղափառք սուրբ Գիրքն իրենց հաւատոյ աղբիւրը կ'անուանեն, բայց չենք կրնար ըսել թէ ուրեմն Բողոքականք ու Կաթուղիկեայք նոյն հաւատքն ունին. վասն զի իրենց հաւատացածը կամ չհաւատացածը սուրբ Գիրքէն չենք կրնար իմանալ, հապա իրենց Ս. Գրքին տուած իմաստէն կամ մեկնութենէն, զորն որ իրենց վաւերական գրուածոց կամ հանգանակներուն մէջ փնտռելու է։ Ասանկ ալ Էջմիածնական եկեղեցին Կաթուղիկեայ ուղղափառաց հետ չէ թէ մինակ սուրբ Գիրք, հապա նաև աւանդութիւն (այս ինքն՝ Ս. Հարք) կ'ընդունի, բայց թէ Կաթուղիկեայք ու թէ Էջմիածնական եկեղեցին իրօք ինչ հաւատք ունին, (այս ինքն՝ ինչ կը հաւատան ու ինչ չեն հաւատար, սուրբ Գիրք ու սուրբ Հարք առջենիս բանալով չ'իմացուիր, հապա նայելով՝ թէ ինչ կերպով Կաթուղիկէ Հռոմէա-

դան եկեղեցին սուրբ Գիրքն ու սուրբ Հարքը կ'իմանայ ու կը մեկնէ, և ինչ կերպով Էջմիածնական եկեղեցին։ Ան կերպը կամ իմաստը կամ մեկնութիւնը՝ ինչպէս Կաթուղիկեայ ուղղափառաց քով, ասանկ ալ Էջմիածնական եկեղեցւոյն նկատմամբ՝ աս եկեղեցւոյն բարձրագոյն իշխանութենէն կամ հեղինակութենէն յառաջ եկած գրուածներուն մէջ մինակ փնտռելու է։ Ուստի աս կողմանէ ալ վերոյիշեալ քրիստոնէականները մեծ նշանակութիւն ունին։ Աս քրիստոնէականներէն կ'որոշուի՝ որ Էջմիածնական եկեղեցւոյն բուն իր սեպհական եղող վարդապետութիւնը որն է։

3. Թէ որ Էջմիածնական եկեղեցին վարդապետելու ատեն՝ ի Քրիստոսէ եկեղեցւոյ խոստացուած անսխալութեան պարգևն ունի, այս ինքն բարեխօս Հոգին սուրբ իրեն օգնական է, հարկաւ գոնէ աս քրիստոնէականներուն մէջ աս անսխալութիւնը պիտի որ երեւայ. Նախ՝ որովհետև ասոնք Էջմիածնական եկեղեցւոյն ամենէն բարձր իշխանութեամբը վաւերացած ու հաստատուած գրուածներ են, երկրորդ՝ Թէոր աս քրիստոնէականներուն մէջ անսխալութիւն կայ նէ՝ ան ատեն մինակ ժողովուրդը Աստուծոյ առջև պարտական կ'ըլլայ աս քրիստոնէականներով իրեն առջևը դրուած վարդապետութիւնը հաւատալու։

Ուր որ անսխալ վարդապետութիւն չկայ, հոն հաւատալու ալ պարտականութիւն չկայ։

4. Թէ որ Էջմիածնական եկեղեցին իրաւցընէ անսխալութիւն ունի և իր անսխալութիւնը, ինչպէս ըսինք, աս քրիստոնէականներուն մէջ պիտ՚որ երևնայ, չի կրնար ըլլալ որ աս քրիստոնէականներէն մէկուն խօսքը մէկալին խօսքին դէմ ելլէ, կամ աս ժամանակուան քրիստոնէականը մէկալ ատենուան քրիստոնէականին ըստածին հակառակ գայ, կամ աս տեղաց քրիստոնէականը մէկալ տեղաց քրիստոնէականին ներհակ ըլլայ. որովհետև Հոգին սուրբ ամէն ատեն ու ամէն տեղ մի և նոյնը կը խօսի։

5. Էջմիածնական եկեղեցին սաէպ կը վկայէ թէ իրեն հաւատքը Կաթուղիկէ Հռոմէական եկեղեցւոյ հաւատքէն ամենևին տարբերութիւն մը չունի։ Մասնաւորաց գըրուածոց մէջ զուցէ ներուի՝ թէ որ աս կերպ տարբերութիւն մը տեսնուի. բայց թէ որ աս քրիստոնէականներուն մէջ՝ որոնք Էջմիածնական եկեղեցւոյն ընդհանուր վարդապետութիւնն ու հաւատքը կը պարունակեն, իրաւցընէ Կաթուղիկէ Հռոմէական եկեղեցւոյ վարդապետութենէն տարբեր վարդապետութիւններ գտնուին, ալ բնական կերպով հարկ է՝ որ ամէն մարդ ըսէ՝. թէ Էջմիածնական Հայոց եկեղեցին իրօք Կաթուղի-

կէ Հռոմէական եկեղեցիէն հաւատոյ կողմանէ տարբերութիւնունի ։ Աս տարբերութիւնն ինչպէս ամէն առողջ միտք պէտք է տեսնել, մինակ մէկ հաւատոյ մասին մէջ ալ ըլլայ՝ բաւական է ։

Թէ որ աս ամէնն ասանկ է, ան ատեն քիչ մը խելք ունեցող մարդ ինք իրեն պիտ՚որ ըսէ․ Թէ որ աս քրիստոնէականներուն մէջի վարդապետութիւնն ամէն ատեն ու ամէն տեղ նոյն չէ, ան ատեն հոն Աստուծոյ մատը չկայ, Հոգին սուրբ ան վարդապետութիւնը սորվեցընողներուն հետ չէ, Հայաստանեայց ըսուած եկեղեցին անսխալութեան պարգևը չունի․ ուստի ա՛լ Մխիթարիչ Հոգին սուրբն իր անսխալութեամբը ասանկ եկեղեցւոյ մը մէջ պէտք է փնտռել՝ որն որ չէ Թէ մինակ 60 տարուան միջոցի մէջ, հապա տասնևութ ուկէս դարու մէջ Արևելքէն Արևմուտք, Հիւսիսէն Հարաւ հազարաւոր բերնով վարդապետէ ու իր վարդապետական իշխանութեամբը հաւանուած գրուածոց մէջ և ոչ բառ մը կամ յօդս մը գտնուի որ իրարու ներհակ ըլլայ, հապա ասանկ վարդապետութիւն մը ըլլայ՝ որ կարող ըլլայ իրաւցընէ Կաթուղիկէ կամ Ընդհանրական ըսուիլ՝ ամէն ատեն ու ամէն տեղ նոյն ու ինք իրեն հետ համաձայն ըլլալով ։

Ուստի Էջմիածնական եկեղեցւոյն վերա-

*յիշեալ Եկեղեցական իշխանութեամբ հաստատուած վաւերական գրուածներուն համառօտ քննութիւն մ'ընենք' տեսնելու համար'*

*Ա. Թէ արդեօք աս գրուածներուն վարդապետութիւններն իրար կը բռնեն։*

*Բ. Թէ արդեօք աս գրուածներուն վարդապետութիւնը Կաթուղիկէ Հռոմէական վարդապետութեան միաբան է :*

*Սկսինք ան հաւատոյ մասերէն' որոնց վրայ Հայաստանեայց Էջմիածնական եկեղեցին հնուցմէ Կաթուղիկէ եկեղեցւոյ հետ վէճ ունեցած է։*

# ԳԼՈՒԽ Ա.

## ՔՐԻՍՏՈՍ ՏԷՐՆ ՄԵՐ ԵՐԿՈ՞Ւ ԹԷ ՄԷԿ ԲՆՈՒԹԻՒՆ ՈՒՆԻ

### 1.

Կաթուղիկէ ուղղափառ վարդապետութիւնը :

Ի՞նչ կ'ուզէ կաթուղիկէ ուղղափառ վարդապետութիւնն աս մեծ խնդրոյն նկատմամբ՝ որն որ մեր փրկագործութեան վարդապետութեանը հիմն է :

Մարդեղութեան ուղղափառ վարդապետութեան մէջ երեք մտադրութեան արժանի կէտեր կան :

1. Կաթուղիկէ ուղղափառ վարդապետութիւնը մարդեղութեան վրայօք՝ մէկ կողմանէ Նեստորականաց դէմ, մէկալ կողմանէ Եւտիքականաց կամ Միաբնակաց դէմ՝ ամէն կերպ մոլորութե-

նէ ապահով ըլլալու համար՝ գլխաւորաբար մէկ բան կը պահանջէ, այս ինքն՝ **անձնաւորական միաւորութեան**, որն որ երկսայրի սուր մըն է՝ երկու կողման ալ մոլորութիւնները կտրելու նետելու ։

Ի՞նչ է անձնաւորական միաւորութիւն ։ Ի Քրիստոս երկու բնութիւնները, այս ինքն՝ աստուածային ու մարդկային բնութիւնները, չէ թէ ուղղակի իրենց մէջ, հապա Բանին Աստուծոյ աստուածային անձին կամ անձնաւորութեան միջնորդութեամբ իրարու հետ միաւորած են ։ Ուրիշ խօսքերով ըսենք. Որդին Աստուծոյ մարդկային բնութիւնն իր աստուածային անձին հետ միաւորեց եւ անանկով Որդւոյ մէկ աստուածային անձին՝ **երկու** (այսինքն՝ աստուածային ու մարդկային) բնութիւններ կը վերաբերին ։

« Վասն զի Բանն Աստուած չէ թէ մարդու **անձն**, հապա մարդու **բնութիւն** առաւ, ու իր աստուածութեան յաւիտենական անձին վրայ՝ մարմնոյ ժամանակաւոր գոյացութիւնն ընդունեցաւ ։

Անոր համար՝ Թէպէտ Հայր, Որդի ու Հոգին սուրբ մի բնութիւն կը հաւատանք, բայց չենք ըսեր՝ թէ Մարիամ Կոյսն աս Երրորդութեան միութիւնը ծընաւ, հապա մինակ զՈրդի ծնաւ, որն որ մեր բնութիւնն իր մէկհատիկ անձին վըրայ առաւ:

« Մինակ Որդին է՝ որ ծառայի կերպն իր մէկ անձնաւորութեանը վրայ առաւ, չէ թէ մէկ աստուածային բնութեանը վրայ, այսինքն՝ ան բանին վրայ առաւ, որն որ Որդւոյն սեպհական եւ առանձին է: Աս առած կերպն իրեն մէկ անձին հետ անանկ միացաւ՝ որ Որդին Աստուծոյ եւ որդին մարդոյ մէկ Քրիստոս եղաւ: »

Ասանկ (675ին)՝ առաքելական գահէն վաւերացած Տոլետեան ԺԱ. ժողովոյն հանգանակը:

Աս է ուրեմն եկեղեցւոյ յաւիտեանս չփոխուելու եւ չայլայլելու վարդապետութիւնը: Ասով՝ ինչ որ Երրորդութեան մէջ երեք, մարդեղութեան մէջ մէկ է, եւ ինչ որ մարդեղութեան մէջ երեք,

Երրորդութեան մէջ մէկ է. Երրորդութեան մէջ՝ երեք անձ եւ մի գոյացութիւն, մարդեղութեան մէջ՝ մի անձ եւ երեք գոյացութիւն (այս ինքն՝ աստուածութիւն, հոգի եւ մարմին)։

Այս անձնաւորական միաւորութիւնը եկեղեցական վճիռներէն ու տիեզերական ժողովներէն որոշուած բացատրութիւններ ունի, զորոնք անկարելի է թէ եկեղեցին մէկու մը ազատ թողու որ ուզէ ընդունի ու գործածէ, եւ ուզէ չընդունի եւ չգործածէ։ Գլխաւորներն ասոնք են։

«Քրիստոս է մի անձն (աստուածային) յերկուս բնութիւնս կամ յերկուց բնութեանց»։

«Ի Քրիստոս է մի բնութիւն Բանին մարմնացեալ կամ մարդացեալ։»

Այս երկու ասութեանց մէջ հոլով մը կամ բառ մը ըստ կամի պակսեցնել՝ չի ներեր կաթողիկէ վարդապետութիւնը։ Օրինակի աղագաւ՝ Միաբնակները դիւրաւ յանձն կ'առնուին «Մի Քրիստոս յերկուց բնութեանց» ըսել, որովհետեւ իրենց սխալ ըմբռնմամբը՝ յերկու (աս-

տուածային ու մարդկային)բնութիւննե-րէն մէկ բաղադրեալ բնութեան մը կը մը-տածէին, բայց «Մի Քրիստոս յերկուս բնութիւնս» (ինչպէս տիեզերական ժո-ղովք կ'ըսեն), Միաբնակ մը յաւիտեան չի կրնար յանձն առնուլ ։

Ասանկ ալ «մի բնութիւն Քրիստոսի» ըսելը՝ Միաբնակ մը յօժարութեամբ կ'ըն-դունի . որովհետեւ դարձեալ՝ բաղա-դրեալ բնութիւն մը կ'իմանայ, բայց ուղ-ղափառ եկեղեցին երբեք չէ ըսած «մի բնութիւն Քրիստոսի», հապա «մի բնու-թիւն Բանին մարմնացեալ», որովհե-տեւ մարմնացեալ բառը Բանին Աստուծոյ բնութեանը վրայ Երկրորդ բնութիւն մ'ալ կ'աւելցընէ եւ ասանկով խօսքին մէջ գտնուած բնութիւններուն գումա-րը միշտ երկու կ'ելլէ ։

Անոր համար՝ տիեզերական ժողովք այսպէս կը սահմանեն ։

«Թէ որ մէկը ըստ սրբոց Հարց չի խոստովանիր՝ որ մի եւ նոյն Տէրն մեր եւ Աստուած Յիսուս Քրիստոս է յատ-կապէս եւ ճշմարտապէս յերկուս բնութեա-նըս եւ յերկուց բնութեանց անձնաւորապէս

(կամ իրապէս) միաւորելոց անշփոթ եւ անբաժանելի կերպով, նզովեալ ըլլայ»։

«Թէ որ մէկը ըստ սրբոց Հարց չի խոստովանիր յատկապէս եւ ճշմարտապէս ի Քրիստոս Աստուած (կատարելապէս եւ անպակասելի կերպով) մի բնութիւն Բանին Աստուծոյ մարմնացեալ, որովհետեւ մեր գոյացութեամբը մարմնացած կ'ըսուի, նզովեալ ըլլայ»։

Այսպէս (649ին) Լատերանեան Ա· տիեզերական ժողովոյ 6րդ ու 5րդ կանոնները։

«Թէ որ մէկը յերկուց բնութեանց՝ աստուածութենէ ու մարդկութենէ միութիւն եղած խոստովանելով եւ կամ մի բնութիւն Բանին մարմնացեալ ըսելով աս խօսքերն անանկ չիմանար՝ ինչպէս որ սուրբ Հարք սորվեցուցին, այս ինքն՝ թէ աստուածային ու մարդկային բնութիւններէն անճառաւորական միութիւն ըլլալով մէկ Քրիստոս եղած է, նզովեալ ըլլայ»։

Ասանկ (553ին) Ե. տիեզերական ժողովոյն 8րդ կանոնը։

«Կը դաւանիմք զմի եւ զնոյն Տէր մեր Յիսուս Քրիստոս Աստուծոյ Միածին Որդին յերկուս (բնութեանց) և յերկուս բնութիւնս . . . ոչ երբեք միաւորութեան համար՝ երկու բնութեանց տարբերութիւնը վերցնելով, այլ մանաւանդ թէ ամէն մէկ բնութեան յատկութիւնը մնալով եւս պահուելով, ու ամէն մէկ բնութիւնը մի եւ նոյն անձին դիմելով, չէ թէ անձանց երկուութեան բաժնուելով եւ ոչ ալ մէկ բաղադրեալ բնութեան մը չփոթելով :

Ասանկ Ագաթոնի քահանայապետին ու Հռոմայ 125 եպիսկոպոսաց ժողովոյն առ կայսերս գրած թուղթը : Աս թուղթը (680ին) Զ.րդ տիեզերական ժողովոյ Հարքն ընդունեցան՝ գոչելով թէ Ագաթոնին բերնէն Պետրոս խօսեցաւ :

2. Նոյնպէս Քրիստոսի Տեառն մերոյ կամքն ու գործողութիւնները երկու բնութեանց անձնաւորական միաւորութեանը վրայ հիմնուած են :

Քրիստոսի Տեառն մերոյ կամքն ու գործողութիւնները, թէ որ երկու բնութեանցը նայինք՝ երկու բնական կամք

ու երկու բնական գործողութիւններ են, աստուածային ու մարդկային. իսկ թէ որ Քրիստոսի անձին նայինք՝ մի եւ նոյն աստուածային. անձը նոյն գործողութեանց տէրն ըլլալով՝ ըստ բնութեանց երկու աստուածային ու մարդկային գործողութեանց՝ ըստ անձին մէկ աստուածային գործող[illegible]այ աստուածայրական (աստուածային և մարդկային) գործողութեամբ։ Երկու կամք, բայց մէկ կամեցող, երկու գործողութիւն, բայց մէկ գործող։

«Թէ որ մէկը ըստ սրբոց Հարց չի խոստովանիր որ յատկապէս ու ճշմարտապէս մի եւ նոյն Քրիստոսի Աստուծոյ մերոյ երկու այսինքն՝ աստուածային ու մարդկային կամքերն ըստ պատշաճի միաւորած են, որովհետեւ անոր երկու բնութիւններուն ձեռօքն ալ բնականապէս մեր փրկութիւնը կամեցողը մի և նոյնն է, նզովեալ ըլլայ»։

«Թէ որ մէկը ըստ սրբոց Հարց չի խոստովանիր՝ որ յատկապէս ու ճշմարտապէս մի եւ նոյն Քրիստոսի Աստուծոյ մերոյ երկու այսինքն՝ աստուածային ու մարդ-

կային գործողութիւններն ըստ պատշաճի միաւորած են, որովհետեւ անոր երկու բնութեանցը ձեռօքն ալ բնականապէս մեր փրկութեան գործողութիւնն է, նզովեալ ըլլայ»։

«Թէ որ մէկը ըստ ամբարիշտ հերետիկոսաց աստուածայրական գործողութիւնը՝ անմտութեամբ մէկ գործողութիւն կը սեպէ, չէ թէ կրկին գործողութիւն ըստ սրբոց Հարց, այսինքն՝ աստուածային ու մարդկային, եւ կամ ըսելու ըլլայ՝ թէ աստուածայրական բառը մէկ գործողութիւն կը նշանակէ, չէ թէ երկու գործողութեանց զարմանալի ու փառաւոր միաւորութիւնը, նզովեալ ըլլայ»։

Ասանկ (649ին) Ս. Լատերանեան տիեզերական ժողովոյն 10րդ, 11րդ ու 12րդ կանոնները։

3. Դարձեալ՝ անձնաւորական միաւորութենէն կախում ունի հաղորդութեանց յատկութեանց ըսուած վարդապետութիւնը, առանց որոյ՝ ոչ Քրիստոսի Տեառն մերոյ մարդեղութիւնը մարդեղութիւն

Կ'ըլլար եւ ոչ մեր փրկագործութիւնը՝ կատարելի։

Ի՞նչ է յատկութեանց հաղորդութիւն։ Յատկութեանց հաղորդութիւնն աս է՝ որ Քրիստոսի Տեառն մերոյ աստուածային կամքն ու գործողութիւնները միանգամայն մարդկային են, որովհետեւ աստուածային անձը՝ որ կը կամի ու կը գործէ, միանգամայն մարդկային-բնութեան ալ անձն է։ Դարձեալ՝ Քրիստոսի Տեառն մերոյ մարդկային կամքն ու գործողութիւնները միանգամայն աստուածային են, որովհետեւ անձը որ կը կամի ու կը գործէ, աստուածային անձըն է։ Ասոր համար՝ Քրիստոս Տէրն մեր կը գործէր մարդկապէս զաստուածայինս եւ աստուածապէս՝ զմարդկայինս։

Աստի՝ միայն անձնաւորական միաւորութեան նկատմամբ ՚ի Քրիստոս՝ Աստուած մարդ է ու մարդ Աստուած է, եւ միայն անձնաւորական միաւորութեան համար՝ ինչ որ Քրիստոս Տէրն մեր մարդկապէս կրեց՝ աստուածապէս անսահման արժէք եւ արդիւնք ունի, եւ ասանկով երկրորդ Ադամայ անսահման

արդիւնքը կրնայ առաջին Ադամայ անսահման ապարդիւնքը Աստուծոյ արդարութեանն առջեւ ջնջել : Իսկ եթէ մտածութեամբ վերցընես անձնաւորական միաւորութիւնը, ըստ խելքեան մարդկութիւնն ի Քրիստոս ուրիշ բան չէ՝ բայց եթէ մարդկութիւն, եւ աստուածութիւնն ուրիշ բան չէ՝ բայց եթէ աստուածութիւն, որոնք գոյացապէս իրարմէ յանսահմանս հեռու բաներ են, ու չեն կրնար ուրիշ կերպով իրարու հետ միանալ բայց եթէ անձնաւորական միաւորութեամբ :

Անոր համար « կը վարդապետենք (կ՚ըսէ 680ին Կ-Պոլսոյ երրորդ ու տիեզերական վեցերորդ ժողովը) որ Քրիստոսի երկու բնութիւններն անոր մէկ անձնաւորութեանը վրայ կը ճառագայթեն, եւ նոյն անձնաւորութեամբը թէ հրաշքներն եւ թէ չարչարանքը ճշմարտապէս ցուցուց, որպէս զի անոր մի եւ նոյն անձնաւորութեան վրայ կեցած բնութիւններուն տարբերութիւնը ճանչնանք, երբոր բնութիւններէն ամէն մէկը միւսին հաղորդութեամբ անբաժանելի եւ

անշփոթ կերպով իրեն յատուկ եղածներն ուզեց ու գործեց ։ Աս պատճառաւ՝ երկու բնական կամք ու գործողութիւն կը խոստովանինք , որոնք մարդկային ազգի փրկութեանը համար ըստ պատշաճի ի Քրիստոս զուգընթաց եղան ։ »

## 2.

### Հայոց Եկեղեցւոյ քրիստոնէականներուն վարդապետութիւնը ։

Հիմա համեմատենք աս կաթուղիկէ վարդապետութեան հետ վերոյիշեալ քրիստոնէականներուն մարդեղութեան վրայ ունեցած վարդապետութիւնը ։

Կա՞յ աս քրիստոնէականներուն՝ մէջ անձնաւորական միաւորութեան վարդապետութիւնը՝ որնոր , ինչպէս տեսանք, բոլոր մարդեղութեան վարդապետութեան առանցքն է ։

Դժուար եղած է ի սկզբանէ՝ աս հիմնական ու պարզ ճշմարտութիւնը հասկնալ եւ երկու բնութեանց համար ի Քրիս-

տոս՝ այլ ուրիշ միաւորութիւն չփնտռել։ Գրիգոր Տաթեւացի՝ որուն հեղինակութիւնն երկայն ատեն արժեց, կաթուղիկէ հռովմէական եկեղեցւոյ սորվեցուցած վերոյիշեալ անձնաւորական միաւորութիւնը շատ թոյլ միաւորութիւն, քիչ մը մեղմացած Նեստորականութիւն սեպած էր։ Անոր համար՝ դեռ 1814ին քրիստոնէականը բնութեանց երկուութեան կամ միութեան վրայ լռելով՝ ուրիշ արձակ խօսքերով գոհ կ՚ըլլայ ու կը կարծէ թէ ալ լիուլի ամէն կողմ գոհ կ՚ընէ ըսելով․

« Յիսուս Քրիստոս* մարդկային բո-
» լոր բնութիւնն առաւ, հոգւով, մտօք,
» ճշմարիտ եւ կատարեալ մարդ եղաւ,
» ոչ աստուածութիւնն ի մարմին փո-
» խուեցաւ եւ ոչ մարմինը յաստուածու-
թիւն փոխուեցաւ »։

Շատ աղէկ ու ճշմարիտ խօսքեր․ բայց, ասոնցմով խնդիրը չի լմըննար․ աս ամէն խօսքերն ըսելով ալ՝ կը մնայ մէկը

* Ճիշդ խօսելով պէտք էր ըսել՝ « Որդին Աստուած »։

Միաբնակ մնալ եւ իրօք այսպէս խօսող Միաբնակները կային ։ Որովհետեւ տիեզերական ժողովներն եւ եկեղեցւոյ վըճիռներն ասկէ աւելի բան կը պահանջեն ։

Բայց աւելի զարմանալի է՝ որ մինչեւ նաեւ 1820ին եղած վէճերէն ետքն ալ դեռ ինչպէս պէտք է՝ չէ հասկըցուած թէ Կաթուղիկէ վարդապետութիւնն ինչ կ՚ուզէ. անանկ որ նոյն 1820ին եղած ժողովոյն սիւնհոդական դաւանութիւնը կը կարծէ՝ որ ամէն կասկած կը փարատէ ըսելը՝ թէ

Քրիստոսի վրայ «կ՚ըսենք մի բնութիւն, կ՚ըսենք միանգամայն երկու բնութիւն»։

Ուրեմն դեռ ան ատեն չէ հասկըցուեր՝ թէ ասանկ մերկ մի բնութիւն Քրիստոսի վրայ ըսելը՝ ինչչափ թէ աստուածաբանական եւ թէ գիտնական ընդդիմութիւններու տակ է, ու եկեղեցւոյ վերոյիշեալ կրկին բացատրութենէն, ի մասնաւորի «Մի բնութիւն Բանին մարմնացեալ» ըսելէն այնչափ տարբեր է՝ ինչ-

չափ մոլորութիւնը՝ ճշմարտութենէն, Մէկ ըսելը՝ Երկու-ըսելէն։

Նոյնպիսի անորոշ խօսքեր, ինչպէս աս սիւնհոդոսէն յառաջ, նոյնպէս ետքն ալ երկար ատեն զանազան (Կ-Պոլսոյ, Զմիւռնայի, Մոլտաւիոյ) քրիստոնէականներուն մէջ կը տեսնեն. օրինակի աղագաւ՝ Մոլտաւիայի 1847ին քրիստոնէականին մէջ՝ «Ո՞վ է Քրիստոս Տէրն մեր» հարցմանը՝ բաւական կ՚ըլլայ «Ճշմարիտ Աստուած եւ ճշմարիտ մարդ» պատասխանը։

Բայց արդէն ասկէ քանի մը տարի յառաջ, այնչափ դարերէ ետքը, 1843ին Կ-Պոլսոյ քրիստոնէականներուն հորիզոնէն վեր յանկարծ անչնաւ-օղլեան Յարու-Թէան Նոր աստղը բարձրացած էր՝ ասանկ բացայայտ խօսքերով։

« Որդի Աստուծոյ եւ Բանն Ա-
» տուած Հօր Աստուծոյ համագոյակից
» յաւիտենական Աստուած ըլլալով . . .
» հոգի եւ մարմին առաւ, իր աստուածայ-
» ին անձին հետ միացուց . . . եւ մարդկայ-
» ին բնութիւնն ալ աստուածային անձին

» հետ միանալովը Քրիստոս ըսուեցաւ՝ » որ Օծեալ ըսել է » (էջ 4)։

Նոյնպէս 1847ին Կ – Պոլսոյ Քրիստոնէական վարդապետութեան մէջ ալ ասանկ ըստ ամենայնի կրկնուած կը գտնենք։

« Մարդկային բնութիւնը՝ աստուածային անձին հետ միացաւ » (էջ 11)։

Ի վերայ այսր ամենայնի՝ շատ բաղձալի էր՝ որ նոյն նիւթն աւելի յայտնի եւ մանրամասն եւ մեծագոյն հեղինակութեամբ՝ քրիստոնէականներուն մէջ բացատրուէր։ Իրօք անդիէն երեք տարի մը ետքը Ռուսիոյ կամ Էջմիածնի աթոռոյն նոյն իսկ Կաթուղիկոսին վկայութեամբը հաստատուած 1850ի թէ՛ ընդարձակ ու թէ՛ համառօտ քրիստոնէականներն իրենց բացայայտութեամբը դարերու վրայ յաղթանակ կանգնեցին։

Ասա քրիստոնէականներուն մէջ ասանկ կը կարդանք։

« Հ. Զի՞նչ եղեւ մարդեղութիւն Աստուածորդւոյն։

« Պ. Առեալ նորա՛ զմարդկային բնու-

„ Թի՛ւն յարենէ Կուսին Մարիամու եւ
„ միաւորեալ զայն ընդ իւրում աստուա-
„ ծային անձին եւ բնութեան, եղեւ կա-
„ տարեալ մարդ՝ կատարեալ աստուա-
„ ծութեամբ „ (էջ 24) ։

« Հ. Կրկի՞ն ուրեմն էին բնութիւնք
„ յԱստուածն մարդացեալ ։

« Պ. Այո՛, զի նոյն ինքն եւ Աստուած
„ էր եւ մարդ, Աստուած՝ աստուածայ-
„ նով բնութեամբ, եւ մարդ՝ մարդկայ-
„ նով ։

« Հ. Անձինք եւս կրկի՞ն էին ։

« Պ. Ո՛չ. այլ մի միայն եւ այն աստուա-
„ ծային. յորում միաւորեցան երկաքան-
„ չիւր բնութիւնք անբաժանաբար եւ ան-
„ շփոթապէս „ (էջ 27 ։)

« Հ. Մա՞րթ է ուրեմն ուղիղ միով
„ Մի ասել բնութիւն Բանին մարմնա-
« ցելոյ, կամ երկուս ։

« Պ. Մարթ է, որպէս առաջինքն ա-
„ սացին սուրբ եւ ուղղափառ վարդա-
„ պետք եկեղեցւոյ ։ 26 (Ճգ ։)

« Հ. Է՞ն ի նմա կամք աստուածայ-
„ ին եւ կամք մարդկային, եւս եւ ներ-

»գործութիւն աստուածային եւ ներգոր-
»ծութիւն մարդկային ։

« Պ. Այո՛. զի՛ յորժամ զաստուածու-
»թեան կամիք ցուցանել զզօրութիւն՝
»զաստուածայինն ներգործէր աս-
»տուածաբար. եւ յորժամ զմարդկու-
»թեանն կամիք ցուցանել զխոնարհու-
»թիւն՝ զմարդկայինն ներգործէր մարդ-
»կաբար »։

« Հ. Չհակառակէի՞ն միմեանց կամ-
»քն երկոքին ։

« Պ. Ո՛չ. զի աստուածայնոյն կա-
»մաց հետեւէր միշտ կամքն մարդկայ-
»ին ։ (էջ 28 ։)

« Հ. Հի՞մ անուանեցաւ Օծեալ ։

« Պ. Մի՛ յաղագս անձնաւորական
»միաւորութեան աստուածութեան ընդ
»մարդկութեան, միւս . . . ։

Թէպէտ եւ ասկից ալ յառաջ 1846ին Տփխիսի քրիստոնէական վարդապետութեան հրահանգն ըսած էր՝

« Հ. Զի՞նչ իմանամք անուամբդ մար-
»մնառութիւն ։

« Պ. Մարմնառութիւն Աստուածոր-

» դւոյն նշանակէ առումն մարդկային բը-
» նութեան՝ որով յաստուածային եւ ի
» մարդկային բնութեանց, անձնաւորա-
» բար միաւորելոց՝ եղեւ Աստուածա-
» մարդ » (էջ 51։)

Ուրեմն Հայաստանեայց ըսուած եկեղեցին իր բարձրագոյն հեղինակութեան կողմանէ կ'ընդունի վերոյիշեալ ուղղափառ վարդապետութեան մասերը։

Կաթուղիկէ վարդապետութիւնը չ'ուզեր ուրիշ միաւորութիւն, բայց եթէ անձնաւորական։ Նոյնը կ'ընդունի կաթուղիկոսական վկայութեամբ ամրացած քրիստոնէականը։

Կաթուղիկէ վարդապետութիւնը կ'ուզէ որ ի Քրիստոս բնութիւնները բացայայտ երկու համրուին։ Իրօք նոյն քրիստոնէականը կրկին կամ երկու կը համրէ՝ մէկ աստուածային անձին վրայ։

Կաթուղիկէ եկեղեցին չըսեր «Մի բնութիւն Քրիստոսի» եւ ոչ ալ «Մի բնութիւն» պարզապէս, հապա «Մի բնութիւն Բանին մարմնացեալ»։ Նոյնպէս վերոյիշեալ քրիստոնէականը։

Կաթուղիկէ վարդապետութիւնը երկու կամքերու եւ երկու գործողութիւններու բացայայտ դաւանութիւն կը պահանջէ ։ Ասանկ ալ կ'ըսէ կաթողիկոսական հաւանութեամբ հաստատուած քրիստոնէականը ։

Կա՞յ արդեօք դժուար բան մը աս Նիւթիս մէջ կաթուղիկէ վարդապետութեան. բոլորովին համաձայն ըլլալու ։ Գոհութիւն Աստուծոյ. չէ՛ ։

Բայց եթէ դժուար բաղձալու բան մը կայ, աս է՝ որ փոխանակ «Մի բնութիւն Բանին մարմնացելոյ» ըսելու՝ ըսուէր «Մի բնութիւն Բանին մարմնացեալ» ։ Ալ բաղձալինք՝ որ մի անձն կամ մի Քրիստոս յերկուս բնութիւնս՝ բացայայտ նշանակուէր, ասանկ ներգոյական հոլովով ինչպէս որ տիեզերական ժողովք կ'ըսեն ։ Դարձեալ՝ այնչափ մանրամասն քրիստոնէականի մը մէջ Յատկութեանց հաղորդութեանը վրայ ալ խօսք մ'ըլլալու էր, թէպէտ եւ աս Յատկութեանց հաղորդութիւնն արդէն ըսուածներուն մէջ պարունակուած է ։ Ուստի առաջիննե-

րը՝ անմտադրութեան , ու վերջինը մո-ռացութեան տալու է ։

Քիչ ուրախութեան արժանի չէ՝ տես-նել թէ Հայոց եկեղեցին քանի որ ձանկեց առաջ շինողներուն քար գայ-թակղութեան ու վէմ գլորման եղած էր , այս ինքն՝ անձնաւորականն միաւո-րութիւնը , այսօրուան՝ օրս իբրեւ վէմ գլուխ անկեան կ'ողջունէ . այս ինքն՝ կը հաւատայ եւ կը դաւանի թէ Բանին Աս-տուծոյ անձն է երկու բնութեանց միա-ւորելու անկիւնը կամ կէտը ., չէ թէ Բանին Աստուծոյ բնութիւնը ։

Բայց ինչ օգուտ . ստիպուած ենք քիչ մը ուրախութիւննիս չափաւորելու ։ Իրաւ է՝ Էջմիածնի եւ Ռուսիոյ կողմե-րը , ինչպէս վերը տեսանք , մարդեղու-թեան կաթուղիկէ վարդապետութիւնը կատարելապէս հասկըցուած եւ միան-գամայն բացայայտ կերպով ընդունուած է , բայց ասոր հակառակ՝ Տաճկաստա-նի կողմերը դեռ պակաս կայ ։

Աս Տաճկաստանի վերաբերեալ քրի-ստոնէականները սաստիկ կ'զգուշանան

Քէչ անձն , Երկու բնութիւն դաւանելու , չեն ուզեր համբել , չենք գիտեր՝ վախ թէ ամօթ կը կրեն :

Պարապ տեղը՝ անոնց մէջ կը փնտըռենք բացայայտ Երկու կամք , Երկու ներգործութիւն , միջնորդն կամ Քրիստոս յերկուս բնութիւնս կամ Մի բնութիւն Բանին մարմնացելոյ : Ասոնց վրայ դիտմամբ՝ լռութիւն կը պահուի :

Ինչ կրօնք լռութիւն . մեծ զարմանքով կը տեսնենք՝ որ անդրէն Էջմիածնի քրիստոնէականները «Մի բնութիւն Բանին մարմնացեալ» Կիւրղի ու Լատերանեան Ա. ժողովոյն համեմատ ընդունելէն ետքը , ասդին՝ 1858ին Տաճկաստանի մէջ պատրիարքական հաւանութեամբ ուսումնարանաց համար հաստատուած բոլորովին նոր քրիստոնէականը՝ Եւտիքեականաց կամ Միաբնակաց հետ «մի կամ միաւորեալ բնութիւն Քրիստոսի» կը վարդապետէ , վարդապետութիւն մը՝ զոր որ Էջմիածնի եկեղեցւոյն քրիստոնէականներն արդէն մերժեցին :

Կը հարցնէ աս քրիստոնէականը.

«Հ. Մի՞ բնութիւն է ի Քրիստոս թէ երկու։

Պ. Մի կամ միաւորեալ բնութիւն կը դաւանինք ի Քրիստոս, ընդդէմ չարաչար բաժանողաց։» (Էջ 20—21։)

Ասիկա նորէն Եւտիքեան փոխել եւ եռ դառնալ մըն է։ «Ընդդէմ չարաչար բաժանողաց» [illegible]; չէ թէ մի բնութիւն կ'ըսուի։

Ասանկ կայ վարդապետութիւն մը մեր 50 տարուան շրջանին վերջերը նորէն երեւան ելլելով՝ անոր պաշտպանները, այս ինքն 1820ին սիւնհոդոսին վարդապետութիւնը միտքերնիս կը ձգէ։

Այո, մխիթարութիւններ երբեք իր յիշումը չի գտներ, ցորչափ որ՝

1. Պետ. Էջմիածնական եկեղեցւոյն եպիսկոպոսունքը ձեռնադրելի քահանաներէն անանկ դաւանութիւն մը կը պահանջեն, որուն մէջ՝ «Մի անձն, մի դէմ, եւ միաւորեալ մի բնութիւն, ի Քրիստոս կը խոստովանուի*։ Ծէրդ ասիկա Միաբնա-

---

* Աս ան դաւանութիւնն է՝ որն որ ասանկ

կաց նշանաբանն է, առով իրար կը ճանչնային՝ նոյնն իրենց դրօշին վրայ էր՝ երբոր Կաթողիկէ եկեղեցւոյ եւ միանգամայն առողջ մտաց դէմ դարերով կռուեցան։ Թէպէտ աս հին խմորը կրնայ ապականել բոլոր զանգուածը նորէն թըթուեցնելու, բայց մենք միշտ կը սիրենք եւ հիմ ունինք հաւատալու՝ որ Հայաստանեայց Էջմիածնական եկեղեցին անոր աս մնացորդն ալ իր տունէն անհետ պիտ՚որ ընէ։

2. Դեռ Հայաստանեայց Էջմիածնական եկեղեցին դրական կերպով ընդունած չէ՝ ոչ Ս. Լեւոնի առ Ս. Փլաբիանոս վարդապետական թուղթը, եկեղեցական մատենագրութեան զարմանալիքներէն մէկը, եւ ոչ չորրորդ Տիեզերական ժողովը՝ որ շատ պատճառներով բոլոր Արեւելեան տիեզերական ժողովոց նշանաւորագոյնն է։ Քիչ զարմանա-

---

կ՚ըսկսի. «Խոստովանիմք եւ հաւատամք» Տես Գիրք [illegible] թղթոց. էջ 86 88։ Ինչպէս կը լսենք՝ նաեւ ժամանացութեան սկիզբն առով կ՚ըլլայ՝ թէ՝ որ Հայրապետը ներկայ է։

լի չէ՝ որ 1820ին Սխնհոդոսը թէ՛ ան թուղթը, թէ՛ աս ժողովը կ'ընդունի, «Մե՜ծ Գործին համաձայն 'երեք տարբեր ժողովոյ» (Նիկիոյ, Կ–Պոլսոյ եւ Եփեսոսի)։ Այս եռէն, (ո՛հ այս եռէն), որն որ ասկէ 1000 տարի առաջ Տիրականութեան ժողովոյն մէջ գրուեցաւ, Երբ արդեօք Հայաստանեայց Իշխանածնական եկեղեցին հաստատ կերպով մը պիտ'որ վերցընէ. եւ ի պաշտօնէ պիտ'որ ըսէ թէ «Գոռայ համաձայն»։

Ի՛նչ որ է նէ՝ աս շահն առ այժմ ունինք՝ որ գոնէ անձնաւորական միաւորութիւնն ընդհանրապէս ամէն կողմ ընդունուած է, անանկ՝ որ Տաճկաստանի 1858էն վերջերն եղած մէկ ուրիշ Նոր քրիստոնէական մը նորէն կը կրկնէ.

« Ճշմարտապէս մարմին եւ հոգի եւ
« միտք առնելով իր անձին հետ միա-
« ցուց, որով աստուածային բնութեանը
« հետ մարդկային բնութիւնն ալ կա-
« տարեալ ունեցաւ մի եւ նոյն Որդին Ա-
« տուծոյ » (էջ 18)։

Թէ որքէն մ'աւելի ուսում ըլլայ, քիչ

մ՚ալ աւելի ազատութիւն՝ մարդկային ակնածութիւններէ, աս քրիստոնէականները քանի մը հաստատուն քայլեր դէպ ի յառաջ կրնան առնուլ՝ որպէսզի իրենց արեւելեան ընկերներուն հասնին, որոնք իրենցմէ շատ յառաջ անցած են եւ աս նիւթիս մէջ արդէն կաթուղիկէ վարդապետութեան հետ բաւական ձեռք ձեռքի հասուցած են։

Անցնինք ուրիշ խնդրոյ մը։



# ԳԼՈՒԽ Բ.

## ՀՈԳԻՆ ՍՈՒՐԲ ՄԻՆԱԿ Ի ՀՕՐԷ՞ ԹԷ ՆԱԵՒ ՅՈՐԴՒՈՅ ԿԵԼԼԷ.

1.

Կաթողիկէ ուղղափառ վարդապետութիւնը ։

Կաթողիկէ ուղղափառ վարդապետութիւնը Հոգւոյն սրբոյ ելման վրայ համառօտիւ աս է ։

Հոգին սուրբ ի Հօրէ եւ յՈրդւոյ միանգամայն կ'ելլէ. կամ որ նոյն իմաստին կ'երթայ. Հոգին սուրբ ի Հօրէ Որդւով կ'ելլէ ։

Ինչպէս Որդւոյն Աստուծոյ մարդեղութեան վարդապետութեանը բանալին աս էր՝ որ զՔրիստոս Տէրն մեր Աստուած եւ մարդ՝ « Մէկ անձ ու երկու բնութիւններ » ճանչնանք, ու մինակ ասով կրնանք մարդեղութեան վարդապետութեան ամէն կողմը բանալ եւ ասով

կրնանք ամէն մոլորութիւն գոցել. ասանկ ալ Հոգւոյն սրբոյ ելմանը վարդապետութեան քանակին ընդդ հակառակն աս է՝ որ Հայք եւ Որդի «Ելնու» անձ, բայց Ջէ բնութիւն, գիտնանք, ու մինակ ասով կրնանք աս վարդապետութեան ամէն կողմը բանալ, եւ ասով կրնանք ամէն մոլորութիւն գոցել։

Հին Արիոսեան մոլորութիւնը կը սորվեցընէր թէ Հոգին սուրբ՝ ի Հօրէ չ'ելլեր, յՈրդւոյ կ'ելլէ (իբրեւ արարած)։

Ասոր հակառակ՝ նոր յունական մոլորութիւնը կը պնդէր ու դեռ կը պնդէ՝ թէ Հոգին սուրբ յՈրդւոյ չ'ելլեր, ի Հօրէ կ'ելլէ (իբրեւ Աստուած)։

Իսկ Կաթուղիկէ եկեղեցին տիեզերական ժողովոց համեմատ՝ ոչ մինակ ան կ'ըսէ եւ ոչ մինակ աս, հապա կը վարդապետէ թէ Հոգին սուրբ Աստուած ի Հօրէ եւ յՈրդւոյ միանգամայն կ'ելլէ։

Յունական եկեղեցին մինչեւ ցայսօր կը վախնայ՝ թէ գուցէ երկու Հոգի սուրբ կ'ունենայ՝ թէ որ Հոգին թէ՛ ի Հօրէ եւ թէ՛ յՈրդւոյ ելլէ։

Բայց Կաթուղիկէ Հռոմէական եկեղեցին հոն չի վախնար՝ ուր որ վախնալու բան չկայ, հապա հոն՝ ուր որ վախնալու բան կայ: Ինչպէս որ Մարդեղութեան վարդապետութեան մէջ՝ երկու բնութիւններ ընդունելով՝ չի վախնար որ երկու Քրիստոս կ'ունենայ՝ ցորչափ որ մէկ անձ կը դաւանի, նոյնպէս Երրորդութեան վարդապետութեան մէջ՝ զՀոգին սուրբ ի Հօրէ եւ յՈրդւոյ ելած կամ բխած սորվեցընելով՝ յաւիտեան չի վախնար՝ թէ Երկու Հոգի սուրբ կ'ունենայ՝ ցորչափ որ զՀայր եւ զՈրդի Երկու անձ՝ բայց մէկ բնութիւն կամ էութիւն կը ճանչնայ:

Թէ որ Հայր զատ էութիւն եւ Որդի զատ էութիւն ունենային՝ ինչպէս որ այլ եւ այլ անձեր ունին, կամ աստուածային էութեան կէսը Հօրը քով մնացած ու մէկալ կէսը ծննդեամբ Որդւոյն անցած ըլլար, ան ատեն կրնար՝ կամ Արիանոսաց վարդապետութեան համեմատ՝ մինակ Որդին, եւ կամ Յունաց վարդապետութեան համեմատ՝ մինակ Հայր, եւ

կամ երկուքն ալ՝ մէկ մէկ կիսկատար Հոգի բխել։

Բայց ըստ Կաթուղիկէ վարդապետութեան ասանկ չէ. Հայր եւ Որդի չէ թէ իբրեւ երկու անձինք, հապա իբրեւ մէկ էութիւն, չէ թէ երկու գործողութեամբ կամ փչմամբ, հապա մէկ եւ նոյն գործողութեամբ կամ փչմամբ միեւնոյն Հոգին Սուրբ միանգամայն կը բխեն։

Ուստի՝ Հոգին Սուրբ պարզապէս Հօր եւ Որդւոյ ան բանէն չ՚ելլեր, որն որ անոնց ամէն մէկուն առանձին ու յատուկ է, հապա ան բանէն կ՚ելլէ կամ կը բխէ՝ որն որ Հօր եւ Որդւոյ հասարակ է։

Ասանկով չի կրնար ըլլալ՝ որ Որդի բխէ ու Հայր ալ միանգամայն չբխէ, որովհետեւ Հօր էութիւնն ու կարողութիւնը՝ բոլոր բովանդակ Հօրը քով մնացած, ու բոլոր բովանդակ Որդւոյն անցած է. ինչ որ Հայր է կամ ունի կամ կը գործէ, բաց ի հայրութենէն՝ նոյնն է, նոյնն ունի եւ նոյնը կը գործէ միանգամայն Որդին։

Անոր համար կաթուղիկէ վարդապետութիւնը հաստատապէս կը դատապարտէ ու կը մերժէ «Թէ զանոնք՝ որոնք կը համարձակին հաստատել՝ թէ Հոգին սուրբ ի Հօրէ եւ Որդւոյ բղխի, եւ թէ զանոնք՝ որոնք կը յանդգնին ըսել՝ որ Հոգին սուրբ ի Հօրէ եւ Որդւոյ՝ չէ թէ իբրեւ մէկ սկզբնէ կամ պատճառէ, հապա իբրեւ երկու սկզբունքէ կամ պատճառներէ կ՚ելլէ»: Բ. Ժող. Լուգդ. Տեղ.:

Ասոնցմէ յայտնի է՝ որ եթէ յունական եկեղեցին պարապ տեղ կը վախնայ թէ կաթուղիկէ Հռոմէական վարդապետութիւնը զՀոգին Սուրբ երկու անձերու կը բաժնէ, աւելի իրաւամբ կը վախնայ կաթուղիկէ Հռովմէական եկեղեցին՝ որ յունական վարդապետութիւնը զՀայր եւ զՈրդի երկու էութեանց կը բաժնէ:

Լսենք ի՛նչ Հոգին Սուրբ [illegible] իր վրայ տիեզերական ժողովներով կը[illegible]վեցընէ:

Փլորենտեան տիեզերական ժողովոյն

մէջ, որուն հաղորդ էր բովանդակ արեւմտեան եւ արեւելեան եկեղեցին, զորս որ նաեւ Հայք իրենց պատգամաւորներովն ընդունեցան, ասանկ կը սահմանուի.

«Յանուն ամենասուրբ Երրորդութեան Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ աս տիեզերական Փլորենտեան ժողովոյս հաւանութեամբ կը սահմանենք՝ որ աս հաւատոյ ճշմարտութիւնը բոլոր քրիստոնեաներէն հաւտացուի եւ ընդունուի եւ ասանկ ալ ամէնքը դաւանին՝ թէ Հոգին սուրբ յաւիտենականաբար ի Հօրէ եւ յՈրդւոյ է եւ իր էութիւնն ու անձնաւորութիւնն ի Հօրէ եւ յՈրդւոյ միանգամայն ունի եւ երկուքէն յաւիտենականաբար իբրեւ մէկ սկիզբէ ու մէկ փչմամբ կ'ելլէ»։

«Կը ծանուցանենք միանգամայն՝ թէ վարդապետաց ու Հարց ան բառը՝ թէ Հոգին սուրբ ի Հօրէ Որդւով կ'ելլէ, նոյն իմաստին կը դիմէ, անանկ՝ որ անով կ'իմացուի թէ ինչպէս Հայր, նոյնպէս Որդին ըստ Յունաց՝ պատճառ, եւ ըստ Լատինացւոց՝ սկիզբ է Հոգւոյն սըրբոյ անձնաւորութեանը»։

«Որովհետեւ ամէն բան՝ ինչ որ Հայր ունի, ինք Հայր ծնանելովն իր Միածին Որդւոյն տուաւ, բաց ի Հայր ըլլալէն, անոր համար՝ Հոգւոյն սրբոյ յՈրդւոյ ելլելն ալ՝ ինք Որդին իյաւիտենից Հօրմէն ունի՝ որմէ որ իյաւիտենից ծընած ալ է»։

Արդէն անկէց գրեթէ երկու դար առաջ (1274ին) Լուգդունեան Բ. սիւնհոդոսն ըսած էր. «Հաւատարիմ ու ջերմեռանդն դաւանութեամբ կը խոստովանինք՝ որ Հոգին սուրբ իյաւիտենից ի Հօրէ եւ յՈրդւոյ՝ չէ թէ իբրեւ երկու սկիզբներէ, հապա իբրեւ մէկ սկիզբէ մը, չէ թէ երկու փչմամբ, հապա մինակ մէկ փչմամբ կ՚ելլէ»։

Ասկից ալ յառաջ՝ Լատերանեան Գ. տիեզերական ժողովն իր հանգանակին մէջ կը դաւանէր. «Հայր մէկէ մը չէ, Որդի մինակ Հօրմէն, Հոգին սուրբ երկուքէն ալ միանգամայն»։ Որովհետեւ «Հայր իյաւիտենից զՈրդի ծնանելով իր էութիւնն անոր տուաւ, ու չի կրնար ըսուիլ՝ որ իր էութեանը մէկ մասը տը-

ած ու մէկալ մասն ինք իրեն պահած ըլլայ, որովհետեւ Հօր էութիւնն անբաժանելի է, վասն զի բոլորովին պարզ է։ Եւ ոչ պէտք ունինք ըսելու՝ որ Հայր ծընանելովն իր էութիւնն անանկ մը Որդւոյն փոխանցած ըլլայ՝ եւ անանկ Որդւոյն տուած ըլլայ՝ որ նոյնն իրեն պահած չըլլայ, ապա թէ ոչ՝ Հայր էութիւն ըլլալէն կը դադրէր։ Ուրեմն յայտնի է՝ որ Որդին ծնանելովն՝ առանց նուազութեան մը՝ Հօրը էութիւնն առաւ եւ անանկով Հայր եւ Որդի նոյն էութիւնն ունին։

Ասանկ՝ տիեզերական ժողովները։

Գուցէ մտածէ մէկը՝ թէ աս վարդապետութիւնը կամ աս պզտի մանիկը [illegible] Որդւոյ վերցընելով՝ ուրիշ հաւատոյ ճշմարտութեանց ինչ կրնայ պակսիլ։

Քիչ բան չի պակսիր։ Մանաւանդ աս ուղղափառ վարդապետութեամբ Երրորդութեան ճշմարիտ վարդապետութիւնը կրնայ կենալ։ Ինչ է Երրորդութեան խորհուրդը, բայց եթէ մէկ աստուածային էութիւն եւ երեք աստուածային անձինք։

Արդ՝ ինչպէս բաւական տեսանք , աստուածային էութեան միութիւնը մինակ ան վարդապետութեան մէջ կը պահուի՝ որն որ կը սորվեցընէ թէ Հայր եւ Որդի իբրեւ մէկ էութիւն , իբրեւ մէկ իր , մէկ գործողութեամբ զՀոգին սուրբ կը բխեն , եւ անոր հակառակ՝ աստուածային էութեան միութիւնը կը խորտակուի՝ թէ որ Հայր մինակ զՈրդին ծնանելէն ետքը՝ դարձեալ մինակ զՀոգին սուրբ բխէ , կարծես թէ իր աստուածային բընութեան կէսը ծննդեան գործածելով ու մէկալ կէսն ալ բխման ։

Ասանկ ալ մինակ աս կաթուղիկէ ուղղափառ վարդապետութեամբ երեք աստուածային անձանց մէջ զանազանութեան ու հակադրութեան անդամներն ամբողջ [illegible] կատարեալ կը պահուին ։

Ըստ կաթուղիկէ վարդապետութեան՝ որն որ սուրբ Գրոց համեմատ կը սորվեցընէ՝ թէ «Հոգին սուրբ երրորդ անձ է յԵրրորդութեան » (տես Հանգանակ Տոլէտանեան) , Երրորդութեան անձինքն են՝ Առաջին , Երկրորդ , Երրորդ . իսկ ըստ յունական վարդապետութեան ա-

մենասուրբ Երրորդութեան անձինքն են Առաջին, Երկրորդ, Երկրորդ:

Ասանկ յունական վարդապետութիւնն աստուածային կենաց մէջ աւելորդ կրկնութիւններ ու պակասութիւններ կը ծնցունէ: Այն կրկնութիւններով եւ այս պակասութիւններով յունական վարդապետութեան Երրորդութիւնն՝ այնչափ Երրորդութիւն չէ, որչափ Երկրորդութիւն:

Այսով չէ թէ մինակ ամենասուրբ Երրորդութեան վարդապետութիւնը, ինչպէս տեսանք, ջարդ ու բուրդ կ'ըլլայ, հապա նաեւ շատ մ'ուրիշ մեծամեծ քրիստոնէական վարդապետութիւններ իրենց հիմերէն կը խախտին:

Ո՞րոնք:

Աստուած երկու կերպ[illegible] գործէ. մէջ մը իրմէ ներս, այսինքն ինք իր էութեանը մէջ՝ ի յաւիտենից. մէջ մ'ալ իրմէ դ[illegible] այսինքն՝ ինք իր էութենէն դ[illegible] ժամանակի: Իրմէ ներս ի յաւիտենից՝ երբոր Հայր իր էութենէն զՈրդի կը ծնանի, Հայր եւ Որդի

իրենց էութենէն զՀոգին կը բխեն ։ Իրմէ դուրս ի ժամանակի, երբոր Հայր եւ Որդի եւ Սուրբ Հոգի՝ չէ թէ իրենց էութենէն հապա յոչընչէ արարածս կ'ստեղծեն ու կը վերաստեղծեն ։

Արդ՝ ըստ սուրբ Գրոց ու սրբոց հարց ու տիեզերական ժողովոց՝ Հայր եւ Որդի եւ Սուրբ Հոգի՝ առ արտաքս ։ չէ թէ երեք արարիչներ, չէ թէ իբրեւ երեք սկիզբներ կամ պատճառներ, չէ թէ իբրեւ երեք անձինք, հապա իբրեւ մէկ արարիչ, իբրեւ մէկ սկիզբ կամ պատճառ, իբրեւ մէկ էութիւն, չէ թէ երեք զատ զատ, հապա մի եւ նոյն արարչական գործողութեամբ արարածները յառաջ կը բերեն ։

Այս [illegible]ապետութեան հետ՝ զորն որ ամէնե[illegible]ստոնեայ հարկաւ կ'ընդունի ։ մինակ կաթուղիկէ Հռոմէական եկեղեցւոյ՝ Հոգւոյն սրբոյ ե[illegible]ոյ ունեցած վարդապետութիւ[illegible] հաշտութիւն ու միաբանութիւն ընել, այս ինքն՝ մինակ ան վարդապետութիւնը՝ որն որ կրնայ ազատ համարձակ ընել Աթա-

Նասեան հանգանակին համեմատ՝

Հայր ըխող է, Որդի ըխող է, բայց երկուքը մէկէն զէն ըխող է, ինչպէս որ Հայր արարիչ է, Հոգին սուրբ արարիչ է, բայց չէ թէ երեք արարիչ, հապա ամէնը մէկէն զէն արարիչ է։

Անոր համար՝ Փլորենտեան ժողովոյն որոշման համեմատ հրատարակուած Եւգինեայ Դ. առ Յակոբիտեանս կոնդակը կ'որոշէ համարձակ դաւանիլ թէ «Հայր եւ Որդի չէ թէ Հոգւոյն Սրբոյ երկու սկիզբներ (կամ պատճառներ) են, հապա մէկ սկիզբ (կամ պատճառ). անանկ՝ ինչպէս որ Հայր եւ Որդի եւ Սուրբ Հոգի՝ չէ թէ արարածոց երեք սկիզբներ (կամ պատճառներ) են, հապա մէկ սկիզբ (կամ պատճառ)»։

Որ եւ իցէ քրիստոնեայ՝ ան սուրբ Գրոց, սրբոց Հարց ու ժողովոց ասութիւնը՝ թէ Հայր Որդւով ու Հոգւով սրբով չ'ունեցնէ, ուրիշ իմաստով չ'իմանար՝ բայց եթէ՝ որ ինչպէս Հայր՝ նոյնպէս Որդի եւ Սուրբ Հոգի իբրեւ Երրորդութիւն եւ մի աստուածութիւն կ'ստեղծեն։ Ուրեմն

որչափ լիուլի իրաւունք ունի Փլորենտեան ժողովն եւ անոր հետ Կաթողիկէ Հռոմէական եկեղեցին՝ Ֆերրար , ինչպէս վերը տեսանք , կը ծանուցանէ՝ թէ Հարց ու վարդապետաց՝ Հոգին սուրբ ի Հօրէ Որդւով կ'ելլէ , կամ Հայր Որդւով զՀոգին սուրբ կը բխէ՝ ըսել ուրիշ [illegible] ըսել չէ , բայց եթէ՝ ինչպէս Հայր [illegible] Որդի զՀոգին սուրբ իբրեւ մէկ սկիզբ կամ պատճառ կը բխեն ։

Այսչափ աս երկու վարդապետութիւններն իրարմէ կախում ունին ։

Ասանկ ալ փրկագործութեան վարդապետութիւնը , որն որ երկրորդ արարչութիւն մըն է ։

Ըստ սուրբ Գրոց , սրբոց Հարց ու տիեզերական ժողովոց՝ Հայր իր միածին Որդին [illegible] կամ [illegible]՝ փրկելու , Հայր եւ Որդի Բարեխօս Հոգին սուրբը [illegible] կամ [illegible]՝ սրբելու ։

Ուրեմն ա՛ն անձը (այսինքն Հայր) մէկէ մը առ արտաքս ի ժամանակի չի խըրկուիր , որն որ առ ի ներքս ի յաւիտենից մէկէ մը չ'ելլեր , եւ ասոր հակառակ՝ ան անձինք ան անձինքներէն միայն առ ար-

տաքս կը խաւրուին՝ որոնցմէ որ առ ի ներքս ի յաւիտենից կ'ելլեն ։

Ուստի՝ ամենասուրբ Երրորդութեան անձանց ժամանակաւոր առաքմանց կարգին պատճառը միայն կաթուղիկէ վարդապետութեան սորվեցուցած յաւիտենական ելմանց կարգին մէջ կը գտնուի ։ Ան վարդապետութեան կ'ըսեմ, որ Լատիներուն հանգանակին հետ կը դաւանի՝ թէ « Հայր մէկէ մը չէ, Որդի մինակ Հօրմէն է, Հոգին սուրբ երկուքէն ալ միանգամայն », ու համեմատ 675ին ԺԱ. Տոլետանեան ժողովոյն հանգանակին՝ կ'ըսէ թէ « Հոգին սուրբ չէ թէ մինակ Հօր, հապա Հօր եւ Որդւոյ միանգամայն Հոգին կ'ըսուի, վասն զի չէ թէ ի Հօրէ դէպ ի Որդին կը յառաջագայի, կամ Որդիէն արարածները սրբելու յառաջ կու գայ (Արիանոսաց վարդապետութեան համեմատ), հապա երկուքէն միանգամայն յառաջ եկած կը ցուցուի, որովհետեւ երկուքին իրերու սէրը կամ սրբութիւնը կը ճանչցուի եւ անոր համար ալ Հոգին սուրբ երկուքէն ալ առաքուած կը հաւատացուի » ։

Թէ որ վերջապէս քրիստոնէական փիլիսոփայութիւնը հարցնէք՝ Թէ ինչ՚ու տիեզերքը՝ ասանկ իբրեւ երկու հակադրութեանց (antithèseներու) մէկ համադրութիւն (synthèse) մը կազմուած է. այս ինքն՝ ինչո՚ւ արարածոց բովանդակութիւնն ուրիշ բան չէ ; բայց եթէ միայն հոգի, միայն մարմին ու հոգի եւ մարմին միանգամայն՝ այս ինքն մարդ, իբրեւ արարածական երրորդութեան երրորդ անդամ. աս հարցման՝ միայն կաթուղիկէ վարդապետութիւնն ի վիճակի է պատասխան տալու՝ Թէ ասոր հիմը անոնց Արարչապետին յաւիտենական կեանքին մէջն է, ան կեանքին՝ որով Հայր եւ Որդի իբրեւ երկու անձ՝ ծննդեամբ իրարու կը հակադրին, եւ իբրեւ մի էութեան՝ Հայր եւ Որդի բխմամբ կը նոյնանան ի Հոգի Սուրբ ։

Ստուգիւ՝ ո՞վ չի տեսներ արարածոց բովանդակութեան վրայ աս հետքը կամ դրոշմը՝ զոր որ երեքանձնեան Արարիչը տպաւորած է, երբոր (ինչպէս Լատերոնեան Դ. տիեզերական ժողովոյն հանգանակը կ՚ըսէ) « իր ամենա-

զօր զօրութեամբն ի սկզբանէ ժամանակաց մի եւ նոյն ատեն յոչընչէ՝ երկու արարած, հոգեղէն եւ մարմնաւոր, այս ինքն՝ հրեշտակային եւ աշխարհային արարածը ստեղծեց, եւ ետքը՝ մարդկայինը իբրեւ երկուքին կցորդ՝ ի հոգւոյ եւ ի մարմնոյ կազմուած »:

Ուրեմն յունական վարդապետութեան մէջ՝ որով Հոգին սուրբ մինակ ի Հօրէ կ՚ելլէ, Աստուծոյ արտաքին ըրած գործողութեանց կարգն եւ օրէնքը՝ Աստուծոյ ներքին ըրած գործողութեանց կարգին եւ օրէնքին համեմատ չէ, աստուածային անձանց ժամանակաւոր առաքումները՝ յաւիտենական ելմանց կամ առաքմանց չեն պատասխաներ, արարչագործութեան եւ փրկագործութեան կարգն ամենասուրբ Երրորդութեան ներքին կենացը հետ կապ մը չունի:

## Հայոց Եկեղեցւոյ քրիստոնէականներուն վարդապետութիւնը ։

Հայոց եկեղեցին վերոյիշեալ երկու վարդապետութիւններէն որո՞ւն կը դիմէ։

Առենօք* Հին Հայաստանեայց եկեղեցին, երբոր սա խնդիրն իր առջեւը դրուեցաւ, ազգային սինհոդոսով մը զինք կաթուղիկէ Հռովմէական վարդապետութեան կողմը որոշեց եւ ընդունեցաւ՝ որ նաեւ իրեն հարցը վարդապետութեան համեմատ՝ Հոգին սուրբ ի Հօրէ եւ յՈրդւոյ միանգամայն կ'ելլէ ։

Բայց երբոր սա եղածները մոռնալու չափ ժամանակներ անցան, ու Հռովմէական եկեղեցւոյ դէմ հակառակութիւն մ'ստացաւ, անկէ ետքը Հայոց եկեղեցւոյ պաշտօնեաները տարակոյսներու մէջ իյնալով՝ այս երկու վերոյիշեալ վարդապետութեանց մէջ ծփալու սկսան, ո՛չ կատարելապէս յունական վարդա-

պետութիւնը , եւ ոչ ալ այնչափ տիեզերական ժողովներով հաստատուած Հռոմէականին ուղղափառ վարդապետութիւնն ընդունելով ։

Բաներն այս վիճակի մէջ ըլլալով՝ որչափ ալ [illegible]ականք ոմանք քրիստոնէական վարդապետութիւններէն դուրս կաթուղիկէ Հռոմէական վարդապետութեան դէմ կը գրէին , հրապարակական իշխանութեամբ հրատարակուած քրիստոնէականներն աս նիւթիս վրայ աւելի լռութիւն՝ քան թէ վարդապետութիւն ունեցան ։ Բայց հաւատոյ կանոնը , ինչպէս յայտնի է , մեզմէ լռութիւն չի պահանջեր , հապա ճշմարտութեան դաւանութիւն , որովհետեւ պարտական ենք սրտիւ հաւատալու յարդարութիւն ու բերանով խոստովանելու ի փրկութիւն ։

Ասանկ 1814ին քրիստոնէականն՝ աս անհաւանութեան կամ անորոշութեան լռութիւնը պահելէն ետքը , 1820ին ազգային սիւնհոդոսն իր յայտարարութեան մէջ աս խնդրոյն վրայ հետեւեալ դաւանութիւնը կու տայ ։

«Զհոգին սուրբ հոգի Հօր եւ Որ-
» դւոյ կը ճանչնանք. վասն զի ըստ սրբոյ
» Լուսաւորչին». Հայր յանձնէ, Որդի ի
» Հօրէ, Հոգին սուրբ ի նոցունց ի նոսին։
» Անոր համար՝ ըստ Շնորհալւոյն կը-
» սենք թէ «Հոգին սուրբ բխի ի Հօրէ
» եւ առնու յՈրդւոյ՝ անճառաբար», եւ
» թէ «ի Հօրէ բղխումն Հոգւոյդ ոչ քննե-
» ցաւ, նոյնպէս յՈրդւոյ առումն ոչ պատ-
» մեցաւ» (Շնորհ. Յիսուս Որդի), եւ ըստ
» Շարականին՝ «Աղբիւր կենաց եւ փըր-
» կութեան մերոյ Հոգի Հօր եւ Որդւոյ»։

Այս սիւնհոդոսական դաւանութեան կամ վճռոյն մէջ՝ դաւանութիւնը բերուած վկայութիւններէն պէտք է զանազանել. որովհետեւ, ինչպէս ուրիշ անգամ ըսած ենք, խնդիրն ան չէ՝ թէ Հայոց հին սուրբ հարքն ինչ կ՚ընդունէին, հապա ան է՝ թէ հիմա Հայաստանեայց ըսուած եկեղեցին ինչ իմաստով աս սրբոց Հարց խօսքերը կ՚առնու։

Արդ՝ թէ որ աս բերուած վկայութիւններուն նայինք, անոնք գրեթէ բո-

վանդակ կաթուղիկէ վարդապետութիւնը կը պարունակեն ։

Այս ինքն՝ թէ

1. Հոգին սուրբ է Հոգի՝ չէ թէ միայն Հօր, այլ նաեւ Որդւոյ ։

2. Հոգին սուրբ կ՚առնու յՈրդւոյ ։

3. Հոգին սուրբ է ի Հօրէ եւ յՈրդւոյ (ի նոցունց)։

4. Հոգւոյն սրբոյ յՈրդւոյ առումն ուրիշ բան չէ բայց եթէ հոսումն, որն որ հասարակ եւ ընտանի բառով բխումն կ՚ըսուի ։

Լուսաւորչին այն խօսքը « Հայր յանձնէ, Որդի ի Հօրէ, Հոգին սուրբ ի նոցունց ի նոսին » տարբերութիւն մը չունի Գ. Լատերանեան ժողովոյն աս խօսքէն, « Հայր մէկէ մը չէ, Որդի միայն Հօրմէն, Հոգին սուրբ երկուքէն ալ միանգամայն »։

Աստ հակառակ՝ իբրեւ վճիռ զուրցուած, համառօտ ու ժողովոյն յատուկ եղող խօսքը՝ թէ « զՀոգին սուրբ Հոգի Հօր եւ Որդւոյ կը ճանչնանք », շատ հոմ եւ անորոշ դաւանութիւն մըն է ։

*Աս խօսքը « Հոգի Որդւոյ » սուրբ Գրոց խօսքն ըլլալով՝ սուրբ Գիրք ընդու-նողը հարկաւ զՀոգին՝ Հոգի Որդւոյ պի-տ՚որ ճանչնայ ։ Բայց աստ խնդիրը չի ըլ-մըննար ։ Յոյնք՝ սուրբ Գրոց մէջ Հոգի Որդւոյ կը կարդան ու Հոգի Քրիստոսի կ՚իմանան, այս ինքն՝ ըստ Յունաց՝ Հոգին սուրբ միայն անոր համար Հոգի Որդւոյ կ՚ըսուի, որովհետեւ Որդի Աստուծոյ մարմնացեալ զՀոգին սուրբ եւ անոր շնորհքը իր չարչարանօքը մեզի է ժառա-նգէ արդիւնաւորեցաւ ։ Իսկ Կաթու-ղիկէ եկեղեցին տիեզերական ժողովոց համեմատ՝ որոնք կրնան սուրբ Գրոց ի-մաստը Հոգւով սրբով որոշել, Հոգի Որ-դւոյ ըսելով, ինչպէս վերը տեսանք, ան կ՚իմանայ՝ ինչ որ Հոգի Հօր ըսելով կ՚իմանայ, այսինքն՝ թէ Հոգին՝ Հոգի Հօր եւ Որդւոյ անոր համար կ՚ըսուի, վասն զի է յաւիտենից ի Հօրէ եւ յՈրդւոյ կ՚ելլէ ։*

*Արդ՝ վերոյիշեալ սիւնհոդոսական դաւանութիւնը՝ ո՞ր, յաւիտենակա՞ն թէ միայն ժամանակաւոր իմաստով ըն-*

Հոգին՝ Հոգի Որդւոյ կը ճանչնայ : Անորոշ է :

Ասանկ ալ՝ աս խօսքը « Հոգի առնու յՈրդւոյ » սուրբ Գրոց խօսքն է : Հոս ալ Յոյնք Հոգւոյն սրբոյ մինակ ի ժամանակէ Քրիստոսի արդիւնքներէն առնուլն ու հաւատացելոց իբրեւ շնորհք հաղորդուիլը կ'իմանան : Բայց ըստ աւետարական ժողովոց՝ որոնց իմացածին պէս մինակ սուրբ Գիրքը կրնայ իմացուիլ, տալ Որդւոյ եւ առնուլ Հոգւոյն սրբոյ ուրիշ բան չէ, բայց եթէ ի յաւիտենից զՀոգին սուրբ բխելով իր էութիւնն անոր տալ, եւ Հոգին ի յաւիտենից յՈրդւոյ ելլելով՝ անկէ իր էութիւնն ու անձնաւորութիւնն առնուլ, ինչպէս վերը բաւական տեսանք :

Ուստի ասանկ նաեւ յաւիտենակա՞ն նշանակութեամբ առնուլն յՈրդւոյ կ'իմանայ սինհոդոսական դաւանութիւնը, թէ չէ, դարձեալ անորոշ կը մնայ :

Անոր համար՝ հարկ կ'ըլլայ թէ՛ վերոյիշեալ դաւանութեններէն եւ թէ՛ լումունջ քրիստոնէականներէն դուրս ելլել՝ փնտռելու թէ արդեօք աս վկայու-

թեանց մէջ գտնուած Հոգւոյն սրբոյ ելմանը վարդապետութեան վերաբերեալ էական կէտերն ինչպէս որ պէտք է նէ՝ իմացուա՛ծ եւ ընդունուա՛ծ են :

Նոր ատեններս ամենէն աւելի հեղինակութիւն մը բանեցունող՝ մինակ Լուսաշաւիղ ու Համդիսարան ըսուած գիրքերուն մատենագիրները կը ճանչնանք. վերջինն իր կաթուղիկոսական պաշտօնն ալ իր խօսքերուն աւելի ծանրութիւն կու տայ :

Արդ՝ ասոնք ամէն բան ըստ բաւականին ուղղափառ կաթուղիկէ վարդապետութեան համեմատ կ'իմանան : Իրենց նախորդները, ինչպէս ըսինք, յունական ու կաթուղիկէ հռոմէական վարդապետութեան մէջ ծփալով՝ մինակ անուամբ Որդւոյ մը բռնած կեցած էին՝ իմաստը չորոշելով : Աս հեղինակները բացայայտ յաւիտենական ծագում կամ ելում կ'իմանան՝ [illegible] ըսելով : Բացայայտ կ'ընդունին թէ Հոգին սուրբ մինակ ի Հօրէ չ'ելլեր, հապա նաեւ Որդւոյ, անանկ՝ որ Հոգւոյն սրբոյ ելմանը Հայր նախապատճառ եւ Որդի պատճառ է :

Ամէն բան կատարեալ կ'ըլլար՝ թէ որ աս ալ վրան աւելցուէր. «բայց երկուքը մէկէն իբրեւ մէկ պատճառ»:

Աս երկու մատենագիրներն ալ իրենց յօժարութիւնը ԲԽԵԼ կամ ԲԽՈՒՄ բառին վրայ կը թափեն, ու նոյն բառն ամէն անցած ատեններուն, չփոթութեանցը պատճառ կը սեպեն. որովհետեւ, ինչպէս կ'ըսեն, հայերէն ԲԽՈՒՄ բառը բանի մը բուն առաջին արմատէն կամ սկիզբէն ելածին կամ ծագածին կ'ըսուի, իսկ ո՛ր եւ իցէ տեղէ մը կամ աղբիւրէ մը յառաջ եկածին հասարակօրէն առումն կամ ծագումն կ'ըսուի, եւ որովհետեւ Որդին Հօրը պէս Հոգւոյն սրբոյ առաջին պատճառ կամ սկիզբ չէ, անոր համար Որդւոյ վրայ հայերէն ԲԽՈՒՄ բառը տեղի չունի: Ասանկ ի մասնաւորի Հանդիսարանին հեղինակը (էջ 117—118):

Ուրեմն ԲԽԵԼ բառը թող տալէն ետքը՝ Հայոց եկեղեցին կաթուղիկէ վարդապետութեան համեմատ կ'ընդունի՝ թէ Հոգին Սուրբ ի Հօրէ եւ յՈրդւոյ կ'ԵԼԷ, կը

ծագի, յառաջ կու գայ եւ կամ Հոգին սուրբ ի Հօրէ կը բխի կամ կ'ելլէ ու Յորդւոյ կ'առնու յաւիտենականաբար, Յորդւոյ կը ծագի, կ'ելլէ, կը յառաջագայի, կը հոսի։

Այս բառերն եկեղեցւոյ ու տիեզերական ժողովոց ան վարդապետութեան յատկացուցած թէ՛ լատինական եւ թէ յունական բառերուն ըստ բառականին կը համապատասխանեն։ Այս ժողովք ու կաթուղիկէ եկեղեցին հայերէն բանասիրութեան հետ գործ չունին։ Թէ որ աս բխել բառն է՝ որ կը գայթակղեցունէ, հին օրինաց նոխազին պէս՝ բոլոր մեղքերնիս անոր գլուխը ժողված՝ բանակէն դուրս հանենք՝ որ քարկոծուի։

Բայց աս ընելու ատեն՝ չմոռնանք՝ որ Հոգին Սուրբ ի Հօրէ եւ յՈրդւոյ երբեք չի [illegible] կ'ելլէ, չի [illegible] կ'ելլէ, եւ աս սկիզբը՝ աստուածային էութիւնն է՝ որն որ ոչ առաջին է, ոչ երկրորդ եւ ոչ երրորդ, վասն զի մի միայն է, եւ Որդւոյ Աստուծոյ այնպէս սեպհական է՝ ինչպէս Հօր Աստուծոյ, եւ թէ վերջապէս Հօր փչումը զատ, Որդւոյ փչումը

զատ գործողութիւն չըլլալուն , հապա մի և նոյն գործողութիւն ըլլալուն՝ Հօր զատ բայ մը, եւ Որդւոյ զատ բայ մը տալ՝ շատ հիմնական բան չէ ։

Դարձեալ՝ երբոր Հանդիսարանին հեղինակը Գիշերային ժամուն կանոնական աղօթքներուն մէջ . (Մարտիրոսաց Թագաւորք ԲԿ.) կը կարդայ . « Դու ես Քրիստոս աղբիւր կենաց , բխումն ողորմութեան » , բխումը ՝ հո՞ն ալ առաջին պատճառէ ելլել կը նշանակէ ։ Ո՞չ ապաքէն՝ Որդի կամ Քրիստոս Տէրն մեր՝ ինչպէս իր էութիւնը՝ նոյնպէս իր կեանքն եւ ողորմութիւնն ի Հօրէ առած է , ի Հօրէ՝ որն որ կեանք եւ ողորմութիւն իրմէ ունի եւ Որդւոյ ալ տուաւ՝ որ ունենայ (Յովհ. Ե. 26) ։ Ասկից տարբեր բան չիմացուիր՝ երբոր Պատարագամատոյցը կ'ըսէ . « Որ աղբիւրդ ես կենաց եւ բխումն ողորմութեան Հոգիդ սուրբ» ։ Հոգին Սուրբ իր կեանքն եւ ողորմութիւնն ի Հօրէ եւ յՈրդւոյ ունի , բայց ի վերայ այսր ամենայնի՝ կենաց աղբիւր եւ ողորմութեան բխող անուա-

նելու մեր հին գրքերը չեն խորշիր, թէ-պէտ եւ Հոգւոյն սուրբ ողորմութիւնը՝ իբրեւ նախապատճառ չունի եւ իբրեւ նախապատճառ առ արտաքս չի տար:

Թէ որ Համդիտարանին հեղինակը՝ իր խօսքին հաստատութիւն Սաղմոսեր-գուին սա խօսքը յառաջ կը բերէ. «Բղխեաց սիրտ իմ զբան բարի», կրնայ միտք բերել՝ թէ նոյն գիրքին մէջն է՝ որ կը կարդանք. «Բղխեսցեն շրթունք իմ զօրհնութիւնս քո». աս օրհնութիւնները, յայտնի է՝ որ նախնաբար սրտէն եւ երկ-րորդաբար բերնէն կը բխին:

Արդ՝ աս ընդունուած վարդապե-տութեանց՝ վաւերական արձանագիր մը պէտք էր: Իրօք 1858ին ուսումնարա-նաց համար Նոր Միջակ վարդապետա-րան անուամբ գրուած ու Պատրիարքին եւ Հոգեւոր ժողովոյն քննութեամբն ու հաւանութեամբն ընդունուած քրիստո-նէականն իրմէ առաջիններուն լռու-թիւնը քակելով՝ բացայայտ կը սորվե-ցունէ.

« Հ. Հոգին սուրբ ինչո՞ւ համար եր-
» րորդ անձն կ'ըսուի ։

« Պ. Վասն զի Հոգին սուրբ բղխէ ի
» կամաց Հօր Սէր․ որպէս ջուր յականէ ,
» եւ առնու եւ յառաջագայի յՈրդւոյ որ-
» պէս յաղբերէ ի յաւիտենից » (էջ 4) ։

Ուրեմն Հայաստանեայց եկեղեցին՝ թէ՛ իր սինհոդոսովը եւ թէ՛ իր քրիստոնէական վարդապետութեամբը յիշխանութենէ կը վարդապետէ ու ժողովըրդեան կը հրամայէ՝ որ սորվին , հաւատան ու դաւանին՝ թէ

1. Հոգին սուրբ թէ՛ ի Հօրէ կը բխի եւ թէ՛ յՈրդւոյ կ'ելլէ կամ կը յառաջագայի , իբրեւ երկուքին Սէրը կամ միութիւնը ։

2. Հոգին սուրբ ի Հօրէ՝ իբրեւ յանպատճառ պատճառէ կը բխի , իսկ յՈրդւոյ՝ իբրեւ յաղբերէ , այսինքն՝ իբրեւ ի պատճառաւոր պատճառէ ։

3. Ինչպէս այն բխումը , նոյնպէս աս յառաջագայումը կամ ելումը չէ թէ ժամանակաւոր , հապա յաւիտենական է ։

4. Հոգւոյն սրբոյ յՈրդւոյ առումը

յառկապէս՝ Հոգւոյն սրբոյ ի յաւիտենից Որդւոյ յառաջագայիլը կամ ելլելն է։

Աս ամէնը ճշդիւ վերոյիշեալ Քրիստոնէականին խօսքերուն՝ մէջն է։

Բայց ի՛նչ օգուտ․ ամէն աղուոր միաբանութեան մը վրայ գուարճանալու ատեններս շատ քիչ է։ Աչքերնիս թէ որ մէյ մ՚ալ արեւելք դարձունենք, շատ մութ ամպեր գալու վրայ կ՚երեւան։

Որչափ որ Տաճկաստանի մէջ՝ աս վարդապետութեան նկատմամբ Հայոց եկեղեցին մեղի բարեկամական ձեռք մը կ՚երկընցընէ, այնչափ ալ անոր հակառակ՝ Հայոց մայր եկեղեցւոյն հովանաւորութեան տակ հրատարակուած քրիստոնէականները (ինչպէս նաեւ առանձնական գրուածները) հեռու հեռու կ՚երթան։

Արդէն Տփխիսի Ներսիսեան դպրոցին մասնաւորապէս սահմանուած քրիստոնէական վարդապետութեան Հրահանգը (1846ին) ճամբան բացած էր ըսելով «Երրորդ անձնաւորութիւն ամե-
«նասուրբ Երրորդութեան անուանեալ

»Հոգի Սուրբ է՛ ի յաւիտենից բղխեալ ի »Հօրէն Աստուծոյ» (էջ 37 եւ 39, տեպ Կալկաթայ)։

Անկէ՝ ետքը 1850ին կաթուղիկոսական վկայականով ու կնքով իբրեւ ճիշդ եւ հարազատ Հայաստանեայց եկեղեցւոյ վարդապետութիւն ճանչցուած բաւական ընդարձակ քրիստոնէականը փող կը հնչեցընէ դառնալու ի լուսոյ ի խաւար։

«Հ. Ցուցէ՛ յառաջ գան Որդին եւ Հոգին սուրբ։

«Պ. Որդին ծնունդ է ի Հօրէ ան- »մարմնաբար ; իսկ զՀոգւոյն սրբոյ ասաց »Քրիստոս. Հոգին ճշմարտութեան ի »Հօրէ՛ ելանէ» (էջ 20)։

Գիտենք ու կը վկայենք՝ թէ աս տողերը գրողը գիտէ՝ ինչ կը գրէ. իր նիւթին տիրած է, իմացած է՝ ոչ կամ կաթողիկէ հռովմէական վարդապետութիւնն ընդունելու է՝ որն որ կ՚ըսէ թէ Հոգին սուրբ ի Հօրէ եւ յՈրդւոյ միանգամայն յառաջ կու գայ, եւ կամ յունական-ռուսական վարդապետութիւնը՝ որն որ կը

սորվեցրնէ թէ Հոգին սուրբ միայն ի Հօրէ կ՚ելլէ , անանկ որ երկուքին մէջ տեղէն կոխելու անցնելու ճամբայ չկայ ։ Ուստի՝ ինչպէս ան կողման՝ առանձնականաց շատերը , յունական-ռուսական վարդապետութեան հակելով կամ նոյնն ընդունելով՝ ծածուկ բայց միանգամայն յայտնի կը սորվեցրնէ ան մայր եկեղեցւոյ իշխանութեամբը հաստատուած քրիստոնէականը՝ թէ Հոգին սուրբ ի Հօրէ միայն կ՚ելլէ , որովհետեւ պարզապէս ի Հօրէ չ՚ըսեր , հապա շեշտելով՝ ի Հօրէ՛, որն որ ի Հօրէ միայն եւ ոչ յՈրդւոյ՝ ըսել է ։

Ետքէն նոյն քրիստոնէականն իրեն հաւաքած վկայութեանց մէջ բոլորովին բացայայտ իր միտքը կը յայտնէ՝ երբոր աս խօսքերը յառաջ կը բերէ թէ «Հոգի Քրիստոսի ըսելն ըսել չէ՝ որ Հոգին սուրբ յՈրդւոյ է իբրեւ ի պատճառէ , վասն զի Հայր միայն է պատճառ Հոգւոյն սրբոյ » ։ — Հոգի Քրիստոսի մինակ տնօրէնաբար կ՚ըսենք , չէ թէ՝ վասն զի . անկից բխած է » ։(էջ 160—161) ։

Տաս կը ցուինք թէ ինչո՛ւ մեր՝ կա-

թուղիկէ միութենէն բաժանեալ եղբարցը քով աս մեծ ճշմարտութիւնը՝ որուն վրայ քրիստոնէական յայտնութեան շէնքին մեծագոյն մասը կեցած է, առանց թէ՛ ժամանակներու եւ թէ՛ կլիմաներու ազդեցութեան տեղի կու տայ։

Գիտենք՝ որ Հայոց եկեղեցւոյն արդի Գլուխը՝ աս վարդապետութիւնն իրեն հետ հոսկից օժիտ տարաւ, բայց մեզի կ'երեւայ՝ որ նոյնը դժուարաւ կրնայ հոն հաճոյ ըլլալ։ Ստոյգ աղբիւրէ գիտենք՝ որ ԻՐԵՆ կրկին կրկին թելադրուած է՝ վերոյիշեալ Միջակ վարդապետարանը (գլխաւորաբար՝ աս նիւթիս մէջ կաթուղիկէ վարդապետութեան համաձայն ըլլալուն համար) մերժելու. բայց ինք երբէք աս առաջարկութիւնն ընդունած չէ։

— Աս երկու գլխոց մէջ քննուած կրկին խնդիրները՝ Հայք իրենց կրկին դրացիներէն ժառանգած են, առջինը՝ Ասորիներէն՝ բաւական կանուխ, եւ երկրորդը՝ Յոյներէն՝ բաւական ուշ։

Անցնինք երրորդ խնդրոյ մը։

# ԳԼՈՒԽ Գ.

## ՄԱՀՈՒԸՆԷ ԵՏՔԸ ՀՈԳՒՈՅ ՎԻՃԱԿԸ։

### 1.

Կաթուղիկէ ուղղափառ վարդապետութիւնը։

Հոգւոյ մահուընէ ետքը եւ ընդհանուր յարութենէ յառաջ ունենալու վիճակին վրայ՝ կաթուղիկէ ուղղափառ վարդապետութիւնն աս է։

Մարդիկ՝ որովհետեւ թէ՛ զատ զատ անհատներ են, եւ թէ՛ բոլորը մէկէն սեռ մը, կրկին ալ մահ ունին. Մէյ մը՝ երբոր ամէն մէկը զատ զատ կը մեռնի, մէյ մ՚ալ՝ երբոր բոլոր մարդկային սեռը կամ բնութիւնը կը մեռնի. եւ աշխարհքիս կատարած կ՚ըլլայ։

Արդ՝ կաթուղիկէ եկեղեցին՝ ինչպէս կրկին մահ, մասնաւոր եւ ընդհան-

բական, առանց ալ նըկէն դատաստան, մանաւոր (կամ առանձնական) դատաստան եւ ընդհանրական դատաստան կը սորվեցընէ ։

Անանկ՝ որ ամէն մարդ, երկու՝ անգամ Քրիստոսի Տեառն մերոյ առեանը պիտ'որ ելլէ, մէյ մը իբրեւ հոգի, մէյ մ'ալ իբրեւ հոգի եւ մարմին միանգամայն ։

Կաթուղիկէ վարդապետութիւնն՝ ինչպէս նըկէն մահ, նըկէն դատաստան, առանց ալ նըկէն հատուցում կը վարդապետէ ։ Այս ինքն՝ մարդ առանձնական դատաստանաւ մինակ հոգւով դատուելէն ետքը՝ անմիջապէս մինակ հոգւով յաւիտենական հատուցում կ'առնու (թէ որ կամ ծանր մեղաւոր եւ կամ բոլորովին սուրբ եւ անպարտական է). դարձեալ՝ հոգւով եւ մարմնով բոլոր մարդկային սեռին հետ դատուելէն ետքը՝ անմիջապէս թէ՛ հոգւով եւ թէ՛ մարմնով՝ իբրեւ ամբողջ մարդ՝ հատուցում կ'առնու, կամ յաւիտենական երանութիւն կամ յաւիտենական դատապարտութիւն ։

կաթողիկէ վարդապետութիւնը երկու մեղք կը զանազանէ, այս ինքն՝ մահու չափ ու ներելի ։ Դարձեալ՝ մահու չափ մեղք մը քաւուելէն առաջ կամ ետքը մտածելով՝ ըստ կաթողիկէ վարդապետութեան երկու պատիժ կը զանազանուի, յաւիտենական ու ժամանակաւոր ։ Մեղաց թողութեամբ մեղքը կը թողուի, բայց պատիժն ամէն անգամ բոլորովին չի թողուիր, հապա յաւիտենական պատիժը ժամանակաւոր պատժոյ կը փոխուի ։

Աս կրկին զանազանութեան, այս ինքն՝ մէկ կողմանէ՝ մահուչափ եւ ներելի մեղաց, մէկալ կողմանէ՝ յաւիտենական եւ ժամանակաւոր պատժոց վրայ հիմնուած է կաթողիկէ եկեղեցւոյ քաւարանի կամ մաքրարանի վարդապետութիւնը ։

Ուստի կաթողիկէ վարդապետութիւնն անմիջապէս մահուընէ ետքը՝ բաց ի յաւիտենական արքայութենէն՝ ուր Սուրբերը Քրիստոսի եւ հրեշտակաց հետ կը թագաւորեն, ու յաւիտենական դժոխքէն՝ ուր մեղաւորները Սա-

տանայի եւ իրեն հրեշտակներուն հետ կը տանջուին, կը սորվեցնէ թէ ժամանակաւոր մաքրարան կամ միջին տեղ մը կամ վիճակ մը կայ՝ ան հոգիներուն համար՝ որոնք մահուչափ մեղք չունին, յաւիտենական պատժոց ու Աստուծոյ բարկութեանը տակ չեն, բայց Աստուծոյ արդարութեանը դեռ ապաշխարութեան արժանի պտուղներ պարտական էին, բայց կամ չուզեցին եւ կամ չկըրցան հոս հատուցանել:

Հոն աս հատուցումը իրենց կարելի է՝ որովհետեւ մէկ կողմանէ՝ աս հոգիներն Աստուծոյ սիրոյն եւ շնորհացը մէջ ըլլալով՝ կրնան թէ իրենք համբերանան պատիժներով հատուցանել, ու մէկալ կողմանէ՝ զօրութեամբ Հաղորդութեան սրբոց՝ եկեղեցւոյ նպաստները՝ Քրիստոսի Տեառն (մերոյ, ամենասուրբ Կուսին ու Սրբոց արդիւնքներուն գանձէն աս պատիժները կը թեթեւցունեն՝ մինչեւ որ հատուցուի իրենց վերջին բնիոնը:

Աս հատուցումը կատարուելէն ետքը՝ ալ բան մը զիրենք աստուածային

երեսացը դէմ յանդիման տեսութենէն չի կրնար արգելուլ, վասն զի արդէն փառաց Տէրն իր արքայութիւնը մտած եւ ամենուն տեղ պատրաստած է ։

Ասանկ Լուգդունեան երկրորդ ու Փլորենտեան տիեզերական սինհոդոսները, զանազան դաւանութիւններն ու եկեղեցւոյ սահմանադրութիւնները ։

Լսենք ասոնցմէ մէկը ։

« Թէ որ ճշմարիտ զղջացեալները դեռ իրենց յանցանքներուն ու զանցառութիւններուն հատուցումն ապաշխարութեան արժանաւոր պտուղներով չըրած՝ Աստուծոյ սիրոյն մէջ աշխարհքէս ելլելու ըլլան, անոնց հոգիները մաքրողական պատիժներով* մահուընէ ետքը կը մաքրուին, եւ աս կերպ պատիժները թեթեւցընելու համար՝ ասոնց կ'օգնեն դեռ կենդանի եղող հաւատացեալներուն նպաստները, այսինքն՝ պատարագները, աղօթքներն եւ ողորմութիւններն եւ ուրիշ բարեպաշտական գործերը՝ որոնք հաւատացեալներէն ու-

* Poenis purgatoriis seu catharteriis

րէշ հաւատացելոց համար ըլլալու սովորութիւն է՝ եկեղեցւոյ կարգադրութեանը համեմատ »:

« Իսկ անոնց հոգիները, որոնք որ սուրբ մկրտութիւնն առնելէն ետքը՝ ամենեւին մեղաց արատ մ՚ունեցած չեն, նաեւ ան հոգիներն՝ որոնք որ մեղաց արատ առնելէն ետքը կամ դեռ իրենց մարմնոյն եղած ատեն եւ կամ մարմիննին մերկանալէն ետքը՝ վերը զուրցածնուս պէս մաքրուած են, անմիջապէս երկինք կ՚ընդունուին »: Իսկ անոնց հոգիները, որոնք որ մահու չափ մեղաց մէջ աշխարհքէս կ՚ելլեն, անմիջապէս ի դըժոխս կ՚իջնան:

Այսանկ Լուգդունեան Բ. Տիեզերական ժողովոյն մէջ Միքայէլ Պալէոլոգ Յունաց կայսեր տուած եւ ժողովէն ընդունուած դաւանութիւնը:

## Հայաստանեայց եկեղեցւոյ քրիստոնէական-ներուն վարդապետութիւնը ։

Աս կաթուղիկէ վարդապետութեան հետ համեմատենք վերոյիշեալ քրիստո-նէականներուն վարդապետութիւնը ։

Բաւական վէճեր այս խնդրոյս վրայ եղած էին՝ երբ որ Կ-Պոլսոյ 1814ին քրիստոնէական վարդապետութիւնը՝ մահուընէ ետքը հոգւոց ունենալու վի-ճակին վրայ դեռ հետեւեալ կերպով կը խօսէր ։

« Ես կը հաւատամ թէ դատաստա-
» նին օրը մեռեալները իրենց մարմնովը
» յարութիւն կ'առնեն ։ Բարի քրիստո-
» նեաներն արքայութիւն կ'երթան, եւ
» անհաւատներն ու չար քրիստոնեանե-
» րը դժոխք » (էջ 16) ։

Ասկից առաջ ալ կ'ըսէ .

« Քրիստոս աշխարհքիս վերջը դա-
» տաստան պիտ'որ գայ, արդարները

» արքայութիւն կը տանի՝ որ յաւիտենա-
» կան փառքին ու պատիւը հոգւով մար-
» մնով վայելեն, եւ մեղաւորներն ու ան-
» հաւատները դժոխք կը յուղարկէ՝ որ
» յաւիտենական պատիժ ու տանջանք
» կը կրեն » (էջ 13)։

Հոս ոչ առանձնական դատաստան կայ, ոչ յարութենէ յառաջ մինակ հոգւոց համար արքայութիւն, եւ ոչ քաւութեան տեղ կամ վիճակ մը։

Այլ անգամ 1820ին սինոդոսը իր քննութիւններէն ետքը ասանկ կէս ի կէս դաւանութեան մը վերջ դրաւ։ Այս փոփոխութիւնը՝ յիշեալ սինոդոսին մի միայն տեւական արդիւնքը կրնանք սեպել։

Ահաւասիկ սինոդոսին դաւանութիւնը։

« Հատուցումն անջատեալ հոգւոց ի
» հրաժարիլ նոցա յաշխարհէ, ըստ ու-
» սուցանելոյ սրբոյն Գրիգորի Լուսաւոր-
» չին է այսպէս. « Որք սուրբքն են՝ ի
» Քրիստոս մերձ լինին, զի ուր եսն եմ
» աստ, անդ եւ պաշտօնեայն իմ եղիցի

» Յովհ. ժբ. 26 :) » Դարձեալ· « Իբրեւ
» երկրաւոր կեանքս ի ձեռն մահուան
» ի գլուխ ելանեն, հոգիքն յղարկին առ
» Աստուած՝ որ ետ զնա. եւ մարմինն
» դառնայ ի հող՝ յորմէ առեղծաւ յա-
» րարչէն : Եւ սուրբ եւ արդար հոգեացն
» ընդ առաջ գան հրեշտակք, եւ սըր-
» բոցն հոգիք, եւ տանին առաջի Աս-
» տուծոյ սաղմոսիւք եւ օրհնութեամբ եւ
» երգովք հոգեւորօք գովեն զամենա-
» զօր փառսն տէրութեան ամենասուրբ
» Երրորդութեանն. եւ գոհանան զե-
» րախտաւոր բարութենէն, որ փոխէ
» յերկրաւորացս յերկնաւորսն, յանար-
» գութենէս ի պատիւ, զհրաւիրեալսն
» եւ զկոչեցեալսն յիւր արքայութիւնն
» եւ ի փառսն » : (Յաճախ. 152. 153 :)
» Եւ յայլ ուր ասէ. « Իսկ որ ի սուրբ
» սէրն Քրիստոսի հաստատեալ են՝ որք
» զանձինս իւրեանց ետուն ի մահ . . .
» ապրեալք լինին . . . : Եւ բացցին դը-
» րունք կենաց բարերարութեանն՝ շնոր-
» հօք Հոգւոյն սրբոյ վերին կայենիցն ուր
» ժողովք սրբոցն են հանգուցեալք »

» (Յաճախ. 17։) Իսկ յաղագս Ներելի
» մեղօք Ննջեցելոց՝ եւ Թողեալ մահու
» չափ մեղաց զապաշխարանսն ոչ վճա-
» րողաց սատ՝ աղօթս առնեմք ասելով.
» « Արա արժանի ողորմութեան, քաւու-
» թեան եւ թողութեան մեղաց։» (Ժա-
» մագիրք.) եւ վերադարձեմք յեկեղեցիս.
» Ով թողութեանց եւ տուող Աստուած՝
» թող զմեղս մեր ննջեցելոց. (Տարա.
» ՃԺԷ։) « Եւ հանգո ի խորանի քում ի
» յարքայական ի հանգստեան.» (Տարա.
» ՃԻԱ.») եւ դարձեալ (Տարա.) « Ահեղ
» խորհուրդ քահանային է. վասն որոյ
» եւ մաղթէ քահանայն ի սուրբ պատա-
» րագին ասելով. « Յիշեա Տէր եւ ո-
» ղորմեա եւ գթա ի հոգիս հանգուցե-
» լոցն, հանգո զնոսա եւ լուսաւորեա եւ
» դասաւորեա ընդ սուրբս քո յարքայու-
» թեանդ երկնից»։ Քանզի այսպէս ու-
» սոյց սուրբ Լուսաւորիչն մեր յառելն.
» Իսկ հաւատացելոց մեղուցելոց եւ խոս-
» տովանողաց եւ ապաշխարողաց եւ հա-
» ղորդելոց փրկական խորհրդոյն եւ հր-
» աժարելոց յաշխարհէ, եւ նոցա կա-

„ տարեսցին յիշատակք՝ Քրիստոսի պա-
„ տարագաւն եւ աղօթիւք եւ գթով
„ տնանկաց, եւ այլ բարի գործովք.
„ վերջնոցն բարեգործութեամբք՝ հան-
„ գուցեալքն նորոգեսցին նորոգութեամբ
„ կենացն անվախճանից ». (Յաճախ.
„ 160 :) Վասն որոյ եւ տեղին յորում
„ կան այսպիսի ննջեցեալ հոգիք՝ որ կա-
„ րօտ են օժանդակութեան եկեղեցւոյ,
„ կոչի ի մեզ կայան. զոր այլք կոչեն
„ քաւարան կամ մաքրարան: Իսկ զան-
„ զեղծ մեղաւորս եւ զամբարիշտս եւ
„ զանհաւատս գիտեմք լինել արդէն իսկ
„ անարգելս եւ դատապարտեալս ի
„ գեհենի. ուստի ասեմք բանիւ սուրբ
„ Լուսաւորչին. « Այլ կայանք են նոցա՝
„ որք արհամարհեցին զօրէնս նորա, եւ
„ ծառայեցին դժնդակ ցանկութեանց
„ անխտիր եւ պէսպէս չարեաց. որք
„ ժառանգելոց են զարտաքին խաւարն:
„ Խաւար է սաստ արտաքին չար. որոց
„ խաւարեալ են միտք եւ զգայութիւնք
„ եւ օտարացեալ են ի կենաց անտի . .
„ եւ անդ՝ ի հուր գեհենի. ուր լալ աչաց

» է եւ կրճտել ատամանց » ։ (Յաճախ . » 153 .) (Հրաւ . սիրոյ, էջ 23–28) ։

Ասանկ՝ սիւնհոդոսական վճիռը ։

Բայց՝ ինչպէս ուրիշ անգամներ ըսինք, հին Հայոցմէ բերուած վկայութիւնները չեն կրնար որոշ ցուցընել՝ թէ Հայոց եկեղեցւոյն հիմնական վարդապետութիւնը որն է ։ Ուստի՝ սիւնհոդոսին իրեն յատուկ եղած վերոյիշեալ խօսքերէն պիտ՚որ իմանանք՝ թէ ան վկայութիւններն ինչ միտքով կ՚ուզէ առնուլ ։ Արդ՝ աս սիւնհոդոսին յատուկ եղած խօսքերը՝ որչափ քիչ եւ կարճ են, նոյնչափ ալ քանի մը կարեւոր կէտերը կեղակարծ եւ երկդիմի կը մնան ։ Ո՞վ չի տեսներ՝ թէ ան բացայայտութեամբ՝ որով որ սիւնհոդոսը մահու չափ մեղաւորներն անմիջապէս մահուընէ ետքը դժոխք կը խաւրէ, նոյն բացայայտութեամբ՝ արդար. կամ քաւեալ հոգիներու առջեւ՝ անմիջապէս մահուընէ ետքը կամ հասարակաց յարութենէ յառաջ՝ արքայութեան դուռը կամ Աստուծոյ դէմ յանդիման տեսութեանը վարագոյրը չի բանար . ա-

տով՝ մասնաւոր եւ ընդհանրական դա-տաստանի զանազանութիւնն ալ կը կա-ղայ ։

Ի վերայ այսր ամենայնի՝ չենք կրնար ուրանալ՝ որ այս վճիռը՝ նաեւ իր մթու-թեանը մէջ՝ իրեն մերձաւոր ապագային վրայ բարերար ազդեցութիւն մ՚ըրած չըլլայ ։

Քիչ ուրախութիւն չի տար. մեզի՝ Կ–Պոլսոյ 1843ին Քրիստոնէական վար-դապետութեան ազատ ու համարձակ խօսուածքը ։

« Հ. Արդարներուն վարձքը եւ մե-
» ղաւորներուն պատիժն ընելով ի՞նչ կը-
» հասկընանք ։

» Գ. Արդարները մեռնելէն ետքը
» յաւիտենական երջանկութեան եւ ա-
» սուածատեսութեան արժանի կ՚ըլլան
» հոգւով, եւ մեղաւորները սատանային
» կը մատնուին հոգւով » ։

» Դատաստանին օրը հոգիները նո-
» րէն իրենց մարմինն առնելով՝ որ մեռնե-
» լով ձգեր էին, ամէն մէկին բարի եւ
» չար գործքը Քրիստոս Որդին Աստուծոյ

» կը դառնէ, եւ արդարները հոգւով եւ
» մարմնով յաւիտենական կեանքը վայ-
» ելելու, եւ մեղաւորները յաւիտե-
» նական տանջանք քաշելու դժոխք
» կ'երթան։

» Մինչեւ նոյն ատենը ներելի մեղ-
» քով կամ ապաշխարութիւններն լման
» չքաշած մեռածներն ալ՝ եկեղեցւոյ
» միջնորդութեամբը Քրիստոսի արդա-
» րացուցիչ շնորհիւը սրբեալ ըլլալով,
» անոնք ալ արքայութեան ժառանգ կ'ըլ-
» լան» (էջ 16-17։)

Անկէց առաջ ալ (էջ 8-9) կը կար-
դանք։ «(Թէ որ մէկը մեռնելու ատեն)
» սրտանց զղջումն ունի, բայց խոստովա-
» նելու ժամանակ չէ ունեցեր, կամ խոս-
» տովաներ է եւ հոգւոյն կատարեալ մա-
» քրութեանը պէտք ըլլալու ապաշխա-
» րանքը չքաշած մեռեր է նէ, Քրիստոսի
» մահուանը եւ արեանը արդիւնքովը եւ
» անոր մահակից եղող սուրբերուն ար-
» դիւնքովը, որ ասոնք ալ Քրիստոսի ար-
» դիւնքն են, եկեղեցին ատոնց մաքրու-
» թեանը համար աղօթելովը կը մաքրէ եւ

» անով արքայութեան ժառանգ կ՚ըլլան։ »

Նոյնը կը կրկնէ 1847ին Կ–Պոլսոյ քրիստոնէականը։

« Արդարները, կ՚ըսէ այս քրիստոնէ-
» ական վարդապետութիւնը, մեռնելէն
» ետքը՝ յաւիտենական երջանկութեան
» եւ աստուածատեսութեան արժանի
» կ՚ըլլան հոգւով, եւ մեղաւորները սա-
» տանային կը մատնուին հոգւով»։

» Եւ (մինչեւ նոյն ատենը*) ներկայ
» մեղքով կամ ապաշխարութիւններն լման
» քաշելէն առաջ մեռածներն ալ եկեղե-
» ցւոյ միջնորդութեամբը Քրիստոսի ար-
» դարացուցիչ շնորհքը սրբեալ ըլլալով՝
» անոնք ալ արքայութեան ժառանգ կ՚ըլ-
» լան »։ (էջ 48–49։)

Ասոնցմէ աւելի ճիշդ եւ որոշ կը խօսի 1847ին Եաշի քրիստոնէական վարդապետութիւնը։

« Հ. Քանի՞ է, կ՚ըսէ, Աստուծոյ
» դատաստանը։

---

* Աս կտորը սխալմամբ այս քրիստոնէականին մէջ առնուած է՝ նախընթաց 1843ին քրիստոնէականէն ամփոփելու ատեն։

» Գ. Աստուծոյ դատաստանը երկու է մասնաւոր եւ ընդհանուր։

» Հ. Ե՞րբ է մասնաւոր դատաստանը։

» Գ. Մասնաւոր դատաստանն է մեռնելնուս պէս։

» Հ. Ի՞նչ կը հանդիպի այն ատենը։

Գ. Այն ատենը ամէն արդար կամ ապաշխարութիւնը քաշած հոգին շիտակ արքայութիւն կ'երթայ։ Իսկ եթէ ներելի մեղք ունի կամ ապաշխարութիւնը չէ կատարեր, այնպիսւոյն համար Աստուած ամենակարող տեղ մը պատրաստեր է եւ հոն պիտի մնայ, մինչեւ որ սուրբ պատարագով եւ աղօթքով իր մեղացը թողութիւն գտնայ եւ երկնից արքայութեանն արժանի ըլլայ։ Բայց առանց զղջման եւ խոստովանութեան մահացու մեղքի մէջ մեռնող հոգւոյն համար դժոխք սահմանուած է։

» Հ. Ե՞րբ է ընդհանուր դատաստանը։

» Գ. Ընդհանուր դատաստանը աշխարհքիս կատարածին է, որ այն ատենը

» Յիսուս Քրիստոս մէյ մըն ալ իր մար-
» մնովն անպատմելի փառօք եւ երկնայ-
» ին զօրութեամբն աշխարհք պիտի գայ,
» թէ՛ բարի մարդկան եւ թէ չարերուն
» վերջին դատաստանը կտրելու եւ զա-
» նոնք մէկզմէկէ զատելու » եւ այլն. (էջ 17–18 ։)

Նոյնպէս են բառ առ բառ Զմիւռնիոյ 1843ին ու 1854ին քրիստոնէականները ։

Ա՛լ աւելի մանրամասն է 1858ին քրիստոնէական վարդապետութիւնը, որուն մէջ մէկալներէն չշօշափուած կէտերը կը նշանակուին ։ Կը հարցնէ սա քրիստոնէականը ։

« Հ. Մեսիայի գալէն յառաջ մեռած
» հոգիները ամէնն ալ դատապարտեցա՞ն։

» Պ. Ոչ. շատ մարդիկ առաջ ալ կրցան
» փրկութեան արժանաւոր գործքեր գոր-
» ծել, եւ գալու Մեսիային արդեամբքն
» այն գործքերնին Աստուծոյ հաճոյ ե-
» ղան, ուստի եւ մեղաւորաց պէս ի
» դժոխս չդատապարտեցան ։

» Հ. Այն մեռած հոգիները յառաջ

» քան զգալուստ Մեսիային արքայու-
» թեան փառաց հասա՞ն ։

» Պ. Ոչ. այլ գոգ Աբրահամու
» սուած տեղն արգիլեալ կային ու կըսպա-
» սէին գալստեան Մեսիային՝ որ արքայ-
» ութեան փառացը հասցընէ զիրենք ։

» Հ. Ինչո՞ւ իջաւ Քրիստոս ի դժոխս ։

» Պ. Արդարոց հոգիներն անկից
» հանելու եւ իւր հետը երկինք տանելու
» համար » ։ (էջ 38 ։)

» Հ. Որո՞նք են եկեղեցւոյն այն ան-
» դամները որ Քրիստոսի հետ արդէն
» միացած են ։

» Պ. Հրեշտակներն ու յերկինս ե-
» ղած սուրբերը » (էջ 47) ։

» Հ. Մեռնելէն ետեւ մեր հոգին
» ո՞ւր կ'երթայ ։

» Պ. Քրիստոսի Տեառն մերոյ ատ-
» ենը կ'ելլէ, եւ ըստ գործոց մերոց
» դատուելով՝ կամ արքայութիւն կ'եր-
» թայ կամ դժոխք ։

» Հ. Մարդիկ յարութիւն առնելէն
» ետեւ ի՞նչ պիտ'որ ընեն ։

» Պ. Քրիստոսի ահաւոր դատաստա-

» նը պիտ՚ որ լսեն հրապարակաւ , ու ար-
» դարներն արքայութիւն պիտի երթան
» հոգւով եւ մարմնով , մեղաւորներն
» ալ ի դժոխս պիտի դատապարտուին
» նոյնպէս հոգւով եւ մարմնով ,

» Հ. Ով որ առանց ապաշխարանքը
» կատարելու կամ թեթեւ (ներելի) մե-
» ղօք կը մեռնի , մի՞թէ կը դատապար-
» տուի՞ ։

» Պ. Ոչ. այլ սուրբ պատարագին
» զօրութեամբը , հաւատացելոց աղօթ-
» քովը , ողորմութեամբ եւ ուրիշ բարե-
» գործութիւններով այն ապաշխարանաց
» հատուցումն ու թեթեւ մեղացներուն
» կ՚ընդունի եւ յետոյ արքայութեան փա-
» ռաց արժանի կ՚ըլլայ »։ (104.)

Հիմա արձանագրի առնունք ինչ որ աս քրիստոնէականները Կաթուղիկէ Հռոմէական վարդապետութեան միաբան կը սորվեցընեն , ու անանկ բացայայտ կը սորվեցընեն՝ որ Հայոց եկեղեցին կը կարծենք՝ որ չի կրնար աս բռուածներն ետ առնուլ՝ առանց իր ան-

սխալութիւնը վտանգի մէջ դնելու ։

Ուստի Հայոց եկեղեցին՝ իր մինչեւ հիմա յառաջ բերուած վաւերական գրուածոցը մէջ կը դաւանի՝ թէ

1. Երկու դատաստան կայ, առանձնական դատաստան՝ մահուընէ անմիջապէս ետքը, եւ ընդհանրական դատաստան՝ աշխարհիս վերջը։

2. Քրիստոսի գալստենէն առաջ արդարոց հոգիները իրենց հատուցումն առնելու կըսպասէին, բայց մահու չափ մեղաւորաց հոգիներն անմիջապէս դըժոխք կ'իջնային։

3. Քրիստոսի գալստենէն ետքը՝ արդարոց հոգիքն անմիջապէս արքայութիւն կ'երթան՝ միայն հոգւով երջանիկ ըլլալու, իսկ հասարակաց յարութենէն ետքը՝ երջանիկ ըլլալու թէ հոգւով եւ թէ մարմնով։

Բայց մահու չափ մեղաւորաց հոգիքը անմիջապէս դժոխք կ'իջնան միայն հոգւով, իսկ հասարակաց յարութենէ ետքը թէ հոգւով եւ թէ մարմնով։

4. Արդարոց յաւիտենական երջան-

'կութիւնն է՝ զԱստուած տեսնել։

5. Իսկ անհոգիներուն համար՝ որոնք կամ ներելի մեղաց մէջ կամ մեղաց պատիժներն ապաշխարութեամբ չլմընցուցած ու կամ երկուքին ալ պարտաւոր կը մեռնին, մասնաւոր տեղ մը կայ՝ ուր որ եկեղեցւոյ օժանդակութեամբ Քրիստոսի Տեառն մերոյ ու իրեն սուրբերուն արդիւնքէն իրենց թողութիւն կ'ըլլայ, ու անանկով արքայութեան փառաց արժանի կ'ըլլան։

Կրնանք ըսել՝ որ ասանկ լուսաւոր համաձայնութիւն մը երբեք մէջերնիս գտնուած խնդիրներէն ուրիշ մէկուն վրայ պատահած չէ։ Աչքերնուս առջին է 1747ին երկրորդ անգամ տպուած Քրիստոնէական մը (Քրիստոնէական ուսանելը։) Ի՞նչ հակադրութիւն կ'ելլէ, թէ որ ան ատեննուան Էջմիածնական եկեղեցւոյն վարդապետութիւնը՝ հիմակուան աս քրիստոնէականներուն վարդապետութեանը համեմատենք։

«Յայն ժամանակն, կ'ըսէ պատ-
«րիարքական քրիստոնէականը, (այսինքն

» մինչեւ յարութեան օրը) արդարք եւ
» մեղաւորք կու սպասեն մարմնոյ յա-
» րութեան․ թէպէտ մեղաւորք չեն ու-
» զեր զյարութիւն մարմնոյ․ վասն զի
» գիտեն զիրենք դատապարտուելոց ։
» Այդ կեանք յաւիտենական կու տրուի
» սրբոց եւ դատապարտութիւն՝ յա-
» ւիտենական տանջանք եւ զրկուիլ
» յԱստուծոյ տեսութենէ կու տրուի մե-
» ղաւորաց ։ » (Էջ 65) ։ — « Էջ (Քրիս-
» տոսի հոգին) ի դժոխս . . . արար եւ
» ի մէջ դժոխոց զայցելութիւն ար-
» դարոց եւ մեղաւորաց, . . . բայց ար-
» դարոցն արար Քրիստոս յաւիտենա-
» կան փրկութիւն եւ մեղաւորաց ժա-
» մանակաւոր փրկութիւն, որոնք յաւու-
» րըն դատաստանի անդրէն պիտի
» դառնան ի դժոխս » ։ (Էջ 47—48 ։)

Թողունք այս ողբեր երեւոյթը, եւ դառնանք վերոյիշեալ քրիստոնէականներուն պարունակած կէտերուն՝ որոնց համար մեր եղբարցը խնդակից ենք ։

Այս ամէն կէտերուն համար ինչ կ'ըսէ արդեօք Հանդիսարանին հեղինակը, որն

որ այս օրուան օրս Հայոց Էջմիածնական եկեղեցւոյն գերագոյն գլուխն է ։

Նոյները լռովին կը հաստատէ ։

« Կ՚ընդունիմ, կ՚ըսէ, Հայոց եկեղե-
» ցին ճշմարիտ հաւատով եւ հաստատ
» յուսով՝ որ Յիսուսի Քրիստոսի փրկա-
» րար մահուան արդիւնքը եւ կենդանա-
» րար յարութեան շնորհքն երկնից ար-
» քայութեան ճանապարհը բացաւ » ։

« Ուրեմն արդար եւ սուրբ եւ աս-
» տուածահաճոյ հոգիները՝ որ աստուա-
» ծային տեսութեան արժանի եղեր են,
» կը վայելեն հոգւով երկնից արքայու-
» թեան ամենացանկալի փառքերը ։

Նոյները կը հաստատէ Հայոց Կաթուղիկոսը սուրբ գրոց մէջէն կաթուղիկէ հռովմէական հեղինակաց յառաջ բերած վկայութիւններովը ։

« Նեղեալ եմ յերկոցունց, զցանկա-
« լըն ելանել եւ ընդ Քրիստոսի լինել ա-
» ռաւել լաւ համարիմ » Փիլիպ. Ա. 23 ։

« Առաւել եւս հաճեալ եմք ելանել
» ի մարմնոյ աստի եւ մտանել առ Ա-
» ստուած » Բ. Կորընթ. Ե. 8 ։

« *Այսօր ընդ իս իցես ի դրախտին* » Ղուկ. ԻԳ. 43 ։ (*Համդիմարան էջ* 386 — 7) ։

*Սուրբ Գրոց* (*Մատթ*. Ե. 25 *ու* Ղուկ. ԺԲ. 58) *յիշած բանտը՝ նոյն իսկ քաւարանը կ'իմանայ* ։

*Քիչ մ'ալ ետքը* (*էջ* 386) *կ'աւելցընէ* . « *Հայոց եկեղեցին կ'ընդունի ա-*
» *ռանձնական դատաստանաւ հատու-*
» *ցումն արդար եւ սուրբ հոգիներուն* » ։

« *Կը հաւատայ Հայոց եկեղեցին՝ որ*
» *սուրբ պատարագին ամենաբաւական*
» *շնորհիւն եւ սուրբ եկեղեցւոյ բարե-*
» *խօսութեամբը եւ աղքատաց ողորմու-*
» *թիւն տալով՝ աստուածային ողորմու-*
» *թենէն կը պարգեւի թողութիւն եւ*
» *ներողութիւն այն ննջեցելոց հոգինե-*
» *րուն՝ որոնք թէպէտ խոստովանած էին ,*
» *բայց ապաշխարութիւնը կատարելու*
» *ժամանակ չունեցան եւ կամ ներելի*
» *մեղքի մէջ էին ; բայց կատարեալ հա-*
» *ւատով եւ հաստատ յուսով ի Քրիս-*
» *տոս Յիսուս ննջեցին* (*էջ* 389) ։

« *Ասոնց հոգիները յատուկ տեղի*

» պիտի ունենան, ուր Յիսուսի Քրիստո-
» սի սրբարար պատարագի շնորհիւն եւ
» սուրբ եկեղեցւոյ աղօթից օժանդա-
» կութեամբ եւ տրօք աղքատաց քաւու-
» թիւն եւ թողութիւն պիտի ըլլայ յԱս-
» տուծոյ անոնց մեղաց պարտաւորու-
» թեան և ապա խառնիլ ի դասս արդա-
» րոց երկնից արքայութեան։ (Էջ 400—
401)։

Հանդիսարանին հեղինակն աս ամէն բան հաստատելէն ետքը՝ դարձեալ գործածութեամբ հասարակ եղած հայերէն քաւարան բառն ամէն շփոթութեանց պատճառ սեպելով տարագրութեան արժանի կը հրատարակէ ու անոր տեղը Մաքրարան բառը պատշաճ կը սեպէ։ Ինչու։ Որովհետև քաւարան հայերէն քաւել կը նշանակէ՝ կ՚ըսէ, չէ թէ քաւութեան տեղ։

Կաթուղիկէ ուղղափառ վարդապետութիւնը՝ ոչ հայերէն քաւարան բառը պահելով շահ մը, եւ ոչ թողլով կորուստ մ՚ունի։ Մաքրարան տիեզերական ժողովոյ գործածած καθαρτήριον կամ

purgatorium բառերուն աւելի՝ ճիշդ թարգմանութիւնն է, տարակոյս չկայ։ Անոր համար չտարակուսի Հանգիստարանին հեղինակը՝ թէ իր առաջարկութիւնը, որչափ ալ բանաստեղծական է քան թէ եկեղեցական, մեզի անընդունելի չէ։

Աս փոփոխութիւնը մեր կողմանէ ըլլալու վրայ ըլլայ՝ մէկալ կողմանէ մինակ անցողակի կը հարցունենք թէ ինչ կ'իմացուի՝ երբոր պատարագիչը բեմին վրայ կ'ըսէ. «ի յարկի սրբութեան եւ ի տեղւոջ փառաբանութեան, հրեշտակաց բնակարանիս եւ մարդկան քաւարանիս» եւ այլն։ Ի՞նչ կ'իմանայ դարձեալ երբոր սարկաւագը Ծաղկազարդի օրը եկեղեցւոյ համար կ'ըսէ։ «Սա է դուռն երկնից եւ հովիտ արքայութեան, զոր ուխտեաց Աստուած Յակոբայ, արդարոց հանգիստ, մեղաւորաց քաւարան, հրեշտակաց բնակարան, Քրիստոսի արքայութեան, սրբոց ժողովարան, տեղի ապաւինի, լեառն Տեառն եւ տուն Աստուծոյ»։ Հո՞ս ալ տեղ չի նշանակեր։

Ի վերայ այսր ամենայնի, մինչդեռ ը-

ոինք, մեզի անտարբեր բան մըն է, ոչ ե-
կեղեցւոյ վարդապետութիւնը եւ ոչ մեր հաւատքը հոյլերէն բանասիրութեան վը-
րայ հիմնուած է։

Բայց հիմա մեզի կ՚իյնայ որ փոխադարձ խորհրդածութիւն մ՚ընենք։

Թէ որ Հայաստանեայց եկեղեցին, ինչպէս կ՚երեւայ, կը կարծէ՝ թէ իր քըրիստոնէականներուն ու սինհոդոսին մէջ սորվեցուցած մաքրարանը ալ ճշդիւ կաթուղիկէ վարդապետութեան մաքրարանը կամ քաւարանն է, շատ կը խաբուի։ Հայաստանեայց եկեղեցւոյ այսօրուան օրս ընդունած մաքրարանը կաթուղիկէ վարդապետութեան ընդունած մաքրարանին կէսն է, մէկալ մեծ կէսը դեռ պակաս է։

Ըստ կաթուղիկէ վարդապետութեան՝ մաքրարանին մէջ գտնուող հոգիները իրենց թէ՛ ներելի մեղաց քաւութիւնը եւ թէ՛ ապաշխարանաց լրումը միայն եկեղեցւոյ կամ հաւատացելոց օժանդակութենէն չեն սպասեր, հապա գլխաւորաբար իրենց կրած տանջանքով

որ աս կէտին վրայօք՝ Հայաստանեայց Էջմիածնական եկեղեցին դեռ ըսելիք ունի։

Աս մաքրողական պատիժները պէտ'որ ընդունինք ու անով ճշմարիտ մաքրարանի վարդապետութիւն պէտ'որ ունենայ Հայաստանեայց եկեղեցին, դեռ ժամանակը պէտ'որ որոշէ։

Բայց Տաճկաստանի մէջ վերջնոց վարդապետութեան խնդիրը դրեթէ ըմբռնուած երես բռնած պատեն՝ անդին հարկ կ'ըլլայ նորէն սկսիլ։

Հայոց Մայր եկեղեցին դեռ տասնեկ հաւատոյ մասեր ընդունած չէ։

Էջմիածնական Մայր եկեղեցւոյն իշխանութեանցն ու հաւանութեանցն ելած (ընդարձակ) 1850ին ու (համառօտ) 1851ին քրիստոնէականները վերջնոց վրայ շատ պակաս ու կրճատ դաւանութիւն մ'առջեւնիս կը հանեն.

« Հ. Զի՞նչ է, կ'ըսեն, դատաստանն վերջին։

« Պ. Է արդարացնելն դատողութիւնն.

» Յիսուսի Քրիստոսի ի միւսանգամ գա-
» լըստեան նորա ի կատարածի աշխար-
» հիս ։

» Հ. Զո՞յս դատելոց է նա ։

» Պ. Զամենայն մարդիկ, զկենդա-
» նիս եւ զմեռեալս, հատուցանելով իւ-
» րաքանչիւր ըստ գործս իւր ։

» Հ. Որպիսի՞ ինչ հատուցումն լինիցի
» արդարոց եւ մեղաւորաց ։

» Պ. Արդարք ժառանգեսցեն զար-
» քայութիւն երկնից եւ մեղաւորք մտա-
» նեսցեն ի յաւիտենական դատապար-
» տութիւն ։ » (էջ 69–70 ).

» Հ. Ո՞ր է յաղթականն (եկեղեցի) ։

» Պ. Է ժողովն ննջեցելոց սրբոց,
» որք յետ զպատերազմն պատերազմելոյ՝
» յաղթական փառացն յուսով եղեն յաշ-
» խարհէս » (էջ 30 ։)

Հոս, ինչպէս ամէն մարդ դիւրաւ կրնայ տեսնել, կաթողիկէ եկեղեցւոյ ու յունական եկեղեցւոյ մէջ խնդիր եղած նիւթերը դիտմամբ զանց առնուած են ։

Կարծես թէ մինակ վերջին դատաստան կայ, եւ վերջնոյն առաջինը չկայ,

ընդ-հանուրին մասնաւորը չի կրնար ըլ-
լալ, կամ թէ մարդիկ՝ մինակ սեռ, չէ
թէ նաեւ անհատ ըլլային, ամէնը մէ-
կանց՝ չէ թէ մէկիկ մէկիկ մեռնէին։

Արդարոց եւ մեղաւորաց մինակ հա-
դւով եւ մարմնով հատուցումն դիտեն
աս քրիստոնէականները, թէ արդեօք
նաեւ առանց մարմնոյ՝ հոգւով իրենց
հատուցումը կ՚ընդունին թէ չէ, աս խըն-
դիրը խորագիտութեամբ ծածկուած է։
Յաղթական եկեղեցին՝ թէ ըստ կաթու-
ղիկէ վարդապետութեան եւ թէ վերո-
յիշեալ Տաճկաստանի քրիստոնէակա-
նաց վարդապետութեան համեմատ, հի-
մա Քրիստոսի հետ արքայութեան մէջ
իրենց յաղթութեան փառքը վայելող
հոգիներն են. բայց վերոյիշեալ Իջմի-
ածնական քրիստոնէականները՝ որպէս
զի աս որոշիչ խօսքը չըսեն, նոյն հո-
գիներուն մինակ ան բոպէն կը յիշեն՝
որն որ ժամանակէ յաւիտենականու-
թեան անցում մըն է, անանկ՝ որ կար-
դացողը չիմանայ՝ թէ աս հոգիներուն
ինչ վիճակ կու տան աս քրիստոնէական-

նները մեռնելէն ետքը մինչեւ հասա-րակաց յարութիւն ։

Որոշ ատեն մը մաքրութեան կամ քաւութեան մէջ գտնուող հոգիք կա՛ն թէ չկան՝ բոլորովին մթութիւն է ։ Մէկ խօսքով՝ մահուընէ մինչեւ հասարակաց յարութիւն եղած միջոցին մէջ հոգւոց ու-նեցած վիճակին վրայ՝ թանձր քօղ մը ծածկուած է ։

Վերջապէս՝ արդարոց յաւիտենական հատուցումն կամ յաղթական փառքը թէ ըստ կաթողիկէ վարդապետութեան եւ թէ վերոյիշեալ Տաճկաստանի քրիստո-նէականներուն համեմատ, զԱստուած կերպէ Երրորդութիւն եւ մի աստուա-ծութիւն տեսնելն է, թէ ըստ հասարակ յունական վարդապետութեան աստուա-ծային լուսոյ հաղորդութիւն մըն է, որոշ չեն ըսեր սա քրիստոնէականները ։

Այս յստակ, մտացի եւ որոշ կերպով խօսող քրիստոնէականներուն լեզուն յանկարծ սա նիւթերուն մէջ կը բռնուի ։

Բայց ասոնցմէ քանի մը պարզ առաջ

նոյն կաթուղիկոսին հովանւոյն տակ՝ թէ՛ ընդհանրապէս ժողովրդեան եւ թէ՛ մասնաւորապէս Ներսէսեան դպրոցին գործունէութեանը համար եւ միանգամայն կալկաթա հրատարակուած քրիստ. վարդապետութեան Հրահանգը շատ աւելի անկեղծ է.

« Հ. Զի՞նչ է, կ՚ըսէ, անհեղ դատաստանն Աստուծոյ։

» Պ. Ահեղ, վերջին եւ ընդհանրական դատաստանն է՝ յորում ի հանդերձեալ գալստեանն Քրիստոսի յայտնեսցին գործք, բանք, յօժարութիւնք եւ գաղտնիք սրտից մարդկան եւ ընկալցին զվարձանաւորս հատուցման (էջ 132)։

» Հ. Զի՞նչ դաւանիմք ըստ այսմ անդամոյ հանգանակիս.

» Պ. Թէ ըստ հաւատոյ վկայութեան Սուրբ Գրոց աներկմիտ ակն ունիմք այլ կենաց յետ մահուանս. որ եւ զկնի ընդհանրական յարութեան լինելոց է յաւիտենական։

» Հ. Միթէ միայն իցէ վիճակ անմեռ-

«ցուն ի հանդերձելումն ։

« Պ. Ոչ. քանզի արդարք ըստ Տեա-
«ռըն յահաւոր ատենին վճռոյ՝ վայելես-
«ցեն ի նմին զերանութիւն, իսկ մեղա-
«ւորք՝ դատապարտեսցին ի տանջանս
(էջ 137)։

« Հ. Զի՞նչ է կեանքն յաւիտենական ։

« Պ. Է այն երջանիկ վիճակ ընտրե-
«լոց՝ յոր յաւիտեան վայելեսցեն նոքա
«յետ յարութեանն յԱստուած եւ ընդ
«Աստուծոյ (էջ 139)։

1. Դատաստան ըլլալով՝ ահեղ, վեր-
ջին եւ ընդհանրական դատաստան մը
կայ ։

2. Հատուցում ըլլալով՝ ման ատեն-
ուանը կայ՝ որն որ Քրիստոսի հանդեր-
ձեալ գալստեան պիտ'որ ըլլայ ։

3. Յաւիտենական (երջանիկ) կեան-
քը ընդհանրական յարութենէն ետքը
պիտ'որ ըլլայ ։

Արդարներն ան ահաւոր դատաս-
տանէն ետքը՝ երանութիւնին պիտ'որ
վայելեն ։

Ընտրեալները յետ յարութեան պիտ'

որ վայելեն երջանիկ կեանք մը յԱստուած եւ ընդ Աստուծոյ[3]:

4. Վերջապէս՝ աս քրիստոնէական վարդապետութեան խօսքերուն համեմատ ա՛ս վարդապետութիւնը միայն՝ Սուրբ Գրոց համաձայն է:

Ահաւասիկ ուրիշ երրորդ վարդապետութիւններու խումբ մը, որոնց մէջ Հայաստանեայց եկեղեցւոյ հեղինակութիւնն ինք իրեն հետ միաբան չէ, մի եւ նոյն Հայաստանեայց եկեղեցւոյ Տաճկաստանի մէջ գտնուած մասն ուրիշ հակում՝ եւ Ռուսաստանի մէջ գտնուածն ուրիշ հակում ցուցնելով:

Խնդիր է՝ թէ աս կրկին հակումներէն՝ որոնց մէջ այս օրուան օրս ըստ վարդապետութեան բաժնուած է Հայաստանեայց եկեղեցին, ո՛րը որուն վերջապէս պիտի՛ որ յաղթէ: Ասոր պատասխանը մինակ աստուածային նախախնամութիւնն ու մեզմէ ետքի պատմութիւնը կրնայ դիտնա՛լ:

Բայց թէ որ ժամանակիս նշանները դիտելու ըլլանք, այնչափ բարեգուշակ

չեն ։ Աս նշաններէն մէկն է Տաճկաստանի ամենէն վերջին (1858ին վերջերը) եղած քրիստոնէական վարդապետութիւնը, որ թէ Հոգեւոր ժողովոյն քննութենէն անցած եւ թէ պատրիարքական հրամանաւ ու նոր Կաթուղիկոսին անուամբը գլուխը պսակուած է ։ Աս Կ-Պոլսոյ քրիստոնէականը՝ մինչեւ հիմա Տաճկաստանի մէջ բռնուած ընթացքն առաջ տանելու ու լմնցունելու տեղ՝ յանկարծ ընթացքը փոխելով՝ ցըցուցած է թէ մեզի անծանօթ կերպով մը՝ Արեւելեան Մայր աթոռոյն ազդեցութեան տակ ինկեր է ։

Վերոյիշեալ վերջնոց վարդապետութիւնը՝ զորն որ այնչափ յստակ կերպով Տաճկաստանի նոյն իսկ համառօտագոյն քրիստոնէականներն ետեւէ ետեւ կը դաւանէին, անակնկալ՝ աս ընդարձակագոյն քրիստոնէականին մէջ նրբացած, նիհարացած, կէս մը լռութեամբ, կէս մ'ալ (գուցէ ակամայ) ակնարկութեամբ աւելի յունական-ռուսական՝ քան թէ կաթուղիկէ հռոմէական վարդապետու-

թեան նմանած է ։

« Հ. Մեռեալներուն համար, կ'ըսէ սս քրիստոնէական վարդապետութիւնը, » սուրբ պատարագը եւ ուրիշներուն ը- » րած ողորմութիւնը եւ բարի գործքը » օգուտ չե՞ն մի ըներ ։

» Գ. Կ'ընեն . բայց անոնց համար՝ որ » մեղքերնուն զղջացած եւ խոստովանած » եւ կատարեալ հաւատքով եւ Աստու- » ծոյ ողորմութեանը ապաւինելով մե- » ռած են։

» Հ. Տեսած օգուտնին ի՞նչ է ։

» Գ. Մեղքերուն տպաւորած անմա- » քրութենէն՝ ասոնցմով բոլորովին մա- » քրուելով՝ յարութիւն առած ատեննին » արդարներուն կարգը մտնեն » (էջ 64-65 ։)

« Հ. Դատաստանն ի՞նչ է ։

« Գ. Մարդիկ յարութիւն առնելէն » ետքը՝ Քրիստոս Տէրն մեր աստուածայ- » ին փառքով պիտի գայ, եւ Ադամէն » մինչեւ այն օրը աշխարհ եկած մար- » դոց բարի եւ չար գործքերը դատե- » լով ամէն մէկին արժանի յաւիտենա-

»կան հատուցումը պիտի տայ»։

Ձի՞ կրնար հին Կայանքի վարդապետութեան հետեւող մըն ալ, աս ամենուն իր ստորագրութիւնը դնել։ Հայաստանեայց Իջմիածնական եկեղեցի՜, ո՞ւր են քու տարի մը, երկու տարի մ՚ առաջ Տաճկաստանի մէջ քրիստոնէից առջեւը դրած այնչափ քրիստոնէականներուդ ազատ համարձակ կրկնած հաւատոյ մասերը։ Ո՞ւր է արդար հոգիներուն անմիջապէս մահուընէ ետքը արքայութեան հատուցումն ու վայելքը եւ (մահուչափ) մեղաւոր հոգիներուն անմիջապէս մահուընէ ետքը յաւիտենական պատժովք ի դժոխս հատուցումը։ Ո՞ւր է վերջապէս թեթեւ մեղաց եւ ապաշխարանաց պարտաւոր հոգիներուն իբրեւ մաքրարան սահմանուած տեղը՝ ուսկից նոյն հոգիները մաքրուելէն ետքը, առանց իրենց մարմնոցը յարութեան սպասելու, արքայութեան փառքը կ՚անցնին։ Վերջին քրիստոնէական վարդապետութիւնն ամէն բան հին վիճակին կը դարձունէ, դարձեալ հոգինե-

քը նախ մաքրուելէն ետքը պէտք են սպասել՝ որ յարութիւն առած ատեն-նին արդարոց կարգը մտնեն,(՛)։

Ո՞վ հոս Սիսիփոսը չի յիշեր իր մար-մարեայ ժայռովը Տարտարոսին մէջ։ Աս վերջնոց վարդապետութիւնն իր պայծառութեան գագաթը մօտենալէն ետքը՝ ո՞ր աներեւոյթ ձեռքն է՝ որ նոյնը նորէն վար կը գլորէ։

---

### Նախընթաց նիւթերուն վրայ ընդհա-նուր դիտողութիւն։

Նախընթաց երեք գլուխներու մէջ խօսուած երեք խնդիրներն իրարու նմա-նութիւն ունին։

1. Ինչպէս տեսանք՝ Հայաստան-եայց Էջմիածնական եկեղեցին միտում մ'ունի աս երեք վարդապետութեանց մինակ կէսերը դաւանելու, ուր որ կա-թուղիկէ վարդապետութիւնն անոնց մէկալ կէսերն ալ կ'ուզէ։

Հայաստանեայց Էջմիածնական եկեղեցին ատենօք մի բնութիւն, մի կամք, մի գործողութիւն Քրիստոսի ըսած է, կաթուղիկէ եկեղեցին երկու բնութիւն, երկու կամք, երկու գործողութիւն կ'ուզէ։

Հայաստանեայց Էջմիածնական եկեղեցին ատենօք կ'ախորժէր եւ դեռ մէկ մասը կ'ախորժի ըսելու թէ Հոգին սուրբ մէկէն (այսինքն ի Հօրէ) կ'ելլէ, կաթուղիկէ եկեղեցին կ'ուզէ՝ որ ըսուի. Հոգին սուրբ երկուքէն ալ (այսինքն՝ ի Հօրէ եւ յՈրդւոյ) կ'ելլէ։

Հայաստանեայց եկեղեցին աւելի կ'ախորժէր մէկ դատաստան, մէկ հատուցում (այսինքն հոգւոց ու մարմնոց միանգամայն) սորվեցունել. կաթուղիկէ եկեղեցին՝ երկու դատաստան եւ երկու հատուցում (նախ՝ հոգւոց առանձինն, ետքը՝ հոգւոց ու մարմնոց միանգամայն) կը վարդապետէ։

Ասանկ ալ մաքրարանի վարդապետութեանն ալ, ինչպէս ըսինք, Հայաստանեայց Էջմիածնական եկեղե-

ցին դեռ կէսն ընդունած է, կաթու-
ղիկէ եկեղեցին ամբողջը կը բաղձայ։

2. Կաթուղիկէ եկեղեցւոյ բաղձանք-
ները եւ յորդորները բոլորովին անպտուղ
եղած չեն։ Վերոյիշեալ երեք գլուխնե-
րուն մէջն ալ տեսանք՝ որ ան երեք խըն-
դիրներուն նկատմամբ՝ Հայաստանեայց
եկեղեցւոյ վարդապետութիւնը, ընդ-
հանրապէս խօսելով, կաթուղիկէ վար-
դապետութեան այսօր աւելի մօտ է
քան թէ երէկ։ Այս մօտաւորութիւնը
շատ դժուարին ալ չէր, որովհետեւ կըր-
նար մինակ գրչի ալ ըլլալ, վասն զի աս
վարդապետութեանց երեքն ալ գործ-
նական չեն, հապա մինակ նոյներն ըն-
դունելն ու դաւանելը բաւական է։

3. Այս վարդապետութեան մօտաւո-
րութիւնը՝ Հայաստանեայց եկեղեցւոյն
ամէն կողմը հաւասար չէ։ Արեւմտեան
եւ Արեւելեան մասերն իրարմէ տարբեր
հակումներ ու բերումներ ունին։ Աս
անհամաձայնութեան ու տարբերութեան
պատճառը կրկին է։ Նախ՝ արեւելեանք
Ռուսաց եւրոպական ուսումնարաններ-

բուն հետեւելով՝ ըստ մեծի մասին գրիչ ձեռք առնողները ուսման կարգաւորեալ ընթացքէ մ'անցած են։ Ատով՝ ինչպէս ուսման ուրիշ ճիւղերուն մէջ, նոյնպէս կրօնական տեղեկութեանց կողմանէ քիչ շատ իրենց Արեւմտեան եղբայրներէն աւելի հրահանգ.ք մ'ունին՝ միշտ ընդհանրապէս խօսելով։ Ուստի բնական կերպով ասոնց նոր քրիստոնէականներուն մէջ ամէն բան, ուղիղ կամ ծուռ, միշտ յստակ խօսուած է, ու հասարակօրէն ուղիղն ընդունելու յօժար. կ'երեւան՝ թէ որ ուրիշ մտածութիւններ զիրենք չարգելու։

Արեւելեանց եւ Արեւմտեանց վարդապետութեան կողմանէ տարբերութեան հիմ մ'ալ զանազան արտաքին ազդեցութիւններն են։ Տաճկաստանի մէջ Հայաստանեայց եկեղեցին կաթուղիկէ Հռոմէական վարդապետութեան բարոյական ազդեցութեան տակն է, իսկ Հայոց Մայր եկեղեցին՝ ասոր հակառակ՝ յունական-ռուսական եկեղեցւոյ դոնէ բարոյական ճնշմանը

տակ ։ Տաճկաստանի մէջ՝ Կաթուղիկէականներն եւ Էջմիածնականները քաղաքային եւ ընկերական հաղորդութեան մէջ ըլլալով՝ անզգալի կերպով Կաթուղիկէականներէն առանց փրկարար գաղափարներ հաղորդուած են . աւելի մօտանց զԿաթուղիկէ եկեղեցին տեսնելով՝ անոր իրարու կապուած, իրար բըռնող, թէ՛ բանիւ եւ թէ՛ գրով հրատարակուած վարդապետութիւններն անոնց վրայ, ինչպէս կը կարծենք, հարկատպաւորութիւն կ՚ընեն ։ Ասոր հակառակ Հայաստանի եւ Ռուսաստանի մէջ իրաւ է՝ որ այս տպաւորութենէ ազատ է Հայաստանեայց Էջմիածնական եկեղեցին, բայց կէս մը ուսումնարանաց մէջ, կէս մ՚ալ անոնցմէ դուրս քաղաքային եւ ընկերական կենաց մէջ՝ յունական-ռուսական դաւանութիւնն ընտանի եղած է, ու շատերը զանազան շահերէ կը հրապուրին յունական-ռուսական վարդապետութեանց, որչափ կարելի է, անհամաձայն չգտնուելու ։

Ասանկ Հայաստանեայց Էջմիածնա-

*կան եկեղեցին երկու այլ եւ այլ դաւանութեանց մէջ կը ծփայ ։ Ասոր հետեւութիւնն է՝ որ վերոյիշեալ վարդապետութեանց մէջ Հայաստանեայց եկեղեցւոյ քրիստոնէականները մէյ մը մէկ ոտքի՝ մէյ մ՚ալ մէկալ ոտքի վրայ կ՚ելլեն ։ Տակիտոս, հին պատմագրաց ամենէն կորովամտը, քրիստոնեայ Հայերը չէր ճանչցած՝ երբոր հեթանոս Հայերուն համար ասկէ գրեթէ 1740 տարի առաջ ըսաւ՝* « Աներոշ կամ երկամիտ է ան ազգը հնուցմէ՝ ըստ մարդիկներուն բարուց ու բերմանը նայելով, եւ ըստ երկրին դիրքը » *(մէկ կողմանէ Պարթեւաց, մէկալ կողմանէ Հռոմէացւոց դրացի գտնուելով)* ։

---

*Տարեգիրք Բ. Գլ. ԾԶ. Ambigua gens ea antiquitus et hominum ingeniis et situ terrarum.

# ԳԼՈՒԽ Դ.

## ՎԵՐՋԻՆ ՕԾՄԱՆ ԽՈՐՀՈՒՐԴԸ

### 1.

Կաթողիկէ ուղղափառ վարդապետութիւնը ։

Մեր ողորմած ու հաւատարիմ Քահանայապետն որ ամենայնիւ փորձ է՝ մեր տկարութեան չարչարակից ըլլալով, ուզեց եօթը զանազան խորհուրդներով՝ բովանդակ մարդկային կենաց ընթացքը, այս ինքն՝ թէ անհատներուն եւ թէ բոլոր ազգին կեանքը գրկել, երբոր մեր երկրաւոր պանդխտութեան ամէն ծանր ու դժուարին վայրկեաններուն՝ իր երկնաւոր շնորհաց օգնութիւնն ալ մասնաւոր կերպով մը յարմարցուց ։

Ա՛ն խորհուրդներուն՝ որոնք գլխաւորաբար բոլոր սեռին օգտին համար գրուած են, չէր կրնար ամէն անհատ պարտական ըլլալ, հապա միայն անոնք՝ որոնք որ կամ ի վիճակ աշխարհի եւ կամ

ի վիճակ Տեառն կոչուած են ։ Առաջիններուն համար՝ 1. Պսակի կամ Հարսանեաց խորհրդով՝ գերդաստանի կեանքը կը կարգաւորի, կ՚ամրանայ ու կը թեթեւնայ, որպէս զի մարդկային ազգն ըստ օրինի շարունակուի ։ Իսկ վերջիններուն համար 2. Ձեռնադրութեան կամ Կարգի խորհրդով Եկեղեցւոյ մէջ սորվեցընելու եւ սրբելու համար՝ յարմար պաշտօնեաներ կը յարդարէին, որպէս զի նոյն մարդկային ազգին սրբութիւնը եւ փրկութիւնը շարունակուի ։

Զո՞վ կրնար Եկեղեցին վերստին ծնանելի Հոգւոյ, թէ որ նախ գերդաստանը չի ծնանէր ի մարմնոյ, եւ ինչո՞ւ գերդաստանը շարունակէ ծնանելու ի դատապարտութիւն՝ թէ որ չկայ Եկեղեցի որ առաջնորդէ ի փրկութիւն ։ Ասանկ՝ Աստուծոյ աս կրկին հիմնարկութիւններն՝ որոնք իրարու փոփոխակի կարօտ են, եւ իրարու գոյութիւնը կ՚երաշխաւորեն, ան երկու խորհուրդներով կ՚ամրանան ։

Ասոր հակառակ՝ որովհետեւ չկայ

մարդ որ ի սրբութիւն եւ ի միութիւն կոչուած չըլլայ, անոր համար՝ որ եւ ի-ցէ չափահաս հաւատացելոյ համար բո-լոր միացած հինգ խորհուրդները հար-կաւոր եւ օգտակար են, եւ ասոնց աս-տուածային հեղինակը զատոնք սահմա-նած է՝ որպէս զի ամէն մէկուն՝ խանձա-րուրքէն մինչեւ պատանք ընկերանան։

Վերջին օծման խորհուրդն աս հինգ խորհուրդներէն է որոնք մարդուս կենաց այլ եւ այլ պարագաները կը շօ-շափեն։ 1. Մկրտութեամբ մարդ՝ հին մարդէն՝ նորոյն, այս ինքն՝ Յիսուսի Քը-րիստոսի պատուաստուելէն ետքը, 2. բանականութիւնը բացուելով մարդկայ-ին ընկերութեան մէջ մտնելու ատեն՝ Դրոշմով հաւատքն ու անմեղութիւնը կը պատսպարի՝ երբոր Աւետեաց (առաքե-լոց խոստացած) Հոգին սուրբը կը տը-րուի, ճակատը՝ որն որ պատկառանաց կամ ակնածութեան կայանն է, կնքե-լով, որպէս զի զօրանայ՝ Քրիստոսի Տեա-ռըն մերոյ անունէն ու խաչէն մարդկան առջեւ չամչնալու։ 3. Աս զինուորեալ

պանդուխտը՝ երբոր նեղ ճամբէն երկ-
նաւոր հայրենիք կը դիմէ, ինչպէս իր մարմինը կերակրով եւ ըմպելով, ասանկ ալ հոգին՝ Քրիստոսի Տեառն մերոյ մարմնոյ եւ արեան խորհրդովը, ան հըրեշտակաց հացով կ'ըսեմ, շնորհաց կեանքին մէջ կ'աճի, կը նորոգի եւ միանգամայն կը զուարճանայ։

Թէ որ անոնք՝ որ մէյ մը վերստին ծընընդեամբ որդեգրութեան Հոգին եւ ապագայ աշխարհքին ճաշակն առին, անանկ երախտապարտ գտնուէին՝ որ ընդունած արդարութիւննին միշտ պահէին, մկրտութեան խորհրդէն ուրիշ՝ մեղաց թողութեան համար խորհուրդ պէտք չէր։ Բայց Աստուած՝ որ իր ողորմութեամբը հարուստ է, ճանչնալով մեր ստեղծուածը՝ նաեւ այնպիսիներուն կենաց դարման հոգացաւ՝ որոնք էրէն+ չէրէն+ մեղաց ծառայութեան եւ սատանային իշխանութեանը կը մտնեն։ (Ժող. Տրիդ. Նիստ ԺԴ. գլ. 1)։

Ուստի՝ անձնական մեղքին դարման ըլլալու՝ երկու ուրիշ խորհուրդներ պատ-

բացատրեց մեզի Փրկիչը․ այս ինքն՝

1․ Խոստովանութեան խորհուրդը՝ անձնական մեղաց համար, մարդուս բոլոր կենաց ընթացքին մէջ․ եւ

2․ Վերջին օծման խորհուրդը՝ մեղաց մնացորդներուն (այս ինքն՝ մեղաց թողուցած հոգեւոր տկարութիւններուն) համար, մարդուս կենացը վերջը։

Վերջին օծման խորհրդոյն՝ Ապաշխարութեան խորհրդոյն հետ ունեցած կապը տեսնելու համար՝ քրիստոնէի մը կեանքին այն միջոցը պէտք է դիտել՝ որ Մկրտութեան շնորհքը կորսուցընելու վայրկեանը՝ մահուան կէտին հետ կը միաւորէ երկայն կամ կարճ կենաց թելով մը։

Աստուծոյ արդար դատաստանաւը՝ առջի շնորհքը կորսնցընելէն ետքը՝ քրիստոնէին կեանքը մինչեւ ցմահ ուրիշ բան չի կրնար ըլլալ, բայց եթէ ապաշխարողի մը վարք․ վասն զի

1․ Չեն կրնար այնչափ դիւրաւ արդարանալ՝ որոնք որ Աստուծմէ առած առջի շնորհքին ապերախտ եղան՝ դժո-

դին սուրբ տրտմեցընելով եւ Աստուծոյ տաճարը քանդելով, հապա՝ մեծ աշխատութեամբ եւ հեծութեամբ կրնան մեղաց թողութիւն գտնել :

2. Եւ ոչ ալ միշտ նոյն ամբողջութիւնը կամ լրումն ունի աս թողութիւնը. որովհետեւ մեղաց ժամանակաւոր պատիժները միշտ բոլորը մէկէն, ինչպէս մկրտութեամբ կ'ըլլայ, չեն ներուիր :

3. Աս անձնական մեղաց թէ յաւիտենական եւ թէ ժամանակաւոր պատիժը վերնալէն ետքն ալ՝ հասարակօրէն կը մնայ արդարացելոյն վրայ բան մը՝ որն որ ծանր կերպով իյնալէն ետքը՝ առոք հանուած մարդու վրայ դժուարած միճակին նման է, այս ինքն՝ անձնական մեղքին թողուցած՝ զօրութեանց խանգարումը՝ որն որ ամէն անգամ մեղքին հետ մէկտեղ անհետ չըլլար, հապա իբրեւ անձնական կամօք առաջացած թիւր ունակութիւն եւ տկարութիւն՝ արդէն բնութեամբ ժառանգուած տկարութեան վրայ կ'աւելնայ : Ի՞նչ է աս ըստացուած տկարութիւնը. առ բարին՝

թմրութիւն եւ առ չարն՝ հակամիտութիւն. մնաց վրայ բթամտութիւն մը երկնային բաները մտածելու, եւ սրտին վրայ՝ բարին գործելու թուլութիւն, չարը գործելու արագութիւն.

Ո՛հ, այս մեղաց թողուցած հետքերը որչափ զարհուրելի են. երբոր երթալով սրտերուն խորունկը կը թափանցեն՝ քանի անգամ որ անկումները կը կրկնուին եւ ստէպ կը կրկնուին եւ ամէն մէկ անկման բնականապէս կ'ընկերանայ հետ զհետէ մեծագոյն ապերախտութիւն մը նորոգ շնորհքին դէմ։ Եւ ի՛նչ արդեօք՝ թէ որ մեղքը երկայն ատեն մահկանացու մարմիններուն կը թագաւորէ՝ բոլոր անդամներն իբրեւ անիրաւութեան զէնք գործածելով, եւ այնչափ ախտը մարմնոյն հիւթը հասցուցած չէ, որչափ սանձարձակ ցանկութիւնը՝ տապախառն տենդի մը նման, եւ «ասոր կենաց հպարտութիւնը՝» որդի պէս հոգւոյն զօրութիւնները հաշած ու կրծած են։

Այո՛ կ'աշխատի, կը յոգնի երկիւ-

ղած հաւատացեալը մարմնոյ գործքերը սպաննելով՝ ըստ հոգւոյ միայն ապրելու, բայց ո՞վ կրնայ ըսել թէ իր լոյսը եւ զօրութիւնը բաւական է եւ ա՛լ չունի ան խաւարէն ու տկարութենէն։ Բայց աւաղ՝ ո՛րչափ ասանկներէն աւելի է ան քրիստոնէից թիւը՝ որոնք կամ անհոգութեամբ կամ կենցաղական զբաղմամբ իրենց մեղացը ձգած չարաչար հետեւութիւններուն հոգը միտքէ դեռ անցուցած չեն՝ երբոր մահ, մեղաց թոշակը, գիշերուան գողոյ պէս վրանին կը հասնի։ Աս վայրկենիս համար է՝ որ իմաստութեամբ նախախնամուած է խորհրդոյս նպաստը, աս ատենս է՝ որ Քրիստոս Տէրն մեր, գթած Սամարացին, իր պաշտօնէին անձամբը՝ իբրեւ երկնաւոր բժիշկ, իւղ ձեռքը մահացու հիւանդին կը մօտենայ, անոր պանդխտութեանը ճամբուն վրայ աւազակներէն ընդունած հոգւոյ վէրքերը դարմանելու, մարմնոյ ախտերն ալ մէկտեղ՝ թէ որ աս վերջի դարմանը նաեւ հոգւոյն օգտակար է։

Այսպէս՝ վերջին օծման խորհուրդն Ապաշխարութեան խորհրդոյն կատարումն է, եւ քրիստոնէին ապաշխարողական կենացը կնիքը*:

Բայց վերջին օծման խորհուրդն ըղմահացու հիւանդը չէ թէ մինակ անցած կեանքին նկատմամբ կը բժշկէ, հապա նաեւ մօտալուտ ապագային համար մասնաւոր զօրութեամբ մը կը զինէ:

Ուստի վերջին օծման խորհուրդն՝ Ապաշխարութեան խորհրդոյն անանկ կը համեմատի, ինչպէս Դրոշմի խորհուրդը՝ Մկրտութեան խորհրդոյն: 1. Մկրտութեամբ՝ ի Ջրոյ եւ ի Հոգւոյ ծնեալը՝ Դրոշմով Հոգւոյն Սրբոյ աճումը կ'ընդունի: Ասանկ ալ Ապաշխարութեան խորհրդով անձնական մեղքերուն թողութիւն եղած է, բայց վերջին օծումն իբրեւ անոր կատարումը կու գայ՝ նոյն մեղքերուն ձգած հետքը վերցնելու: 2. Դրոշմը՝ ուժ կու տայ իբրեւ «զօրութիւն ի բարձանց» անոնց՝ որոնք արդէն ապականած մարդկային ընկերութեան

*Ժող. Տրիդ. Նիստ. ԺԴ. գլ. 19:

մէջ ծնելով՝ աշխարհքի, մարմնոյ եւ սատանայի հրապոյրներուն դէմ՝ Աստուծոյ պատերազմները պէտ՚որ պատերազմին (Կոչ. ընծ. Տրիդ. Ժողովոյ, մասն Բ. գլ. Ա. Թ. 28)։ Վերջին օծումն ալ անոնց զօրութիւն կու տայ՝ որոնք ալ մարդկային ընկերութենէն ելնելու վրայ ըլլալով՝ աշխարհի ու մարմնոյ ընդունայնութիւններէն սրտիւ եւ մտօք պէտք են հրաժարիլ եւ իրենց գարշապարին դարանակալ եղած օձին դէմ՝ վերջին պատերազմ մը պէտ՚որ տան։

Ինչ բան որ աշխարհիս վերջը՝ մարդկութեան համար է, նոյնը մեր կենացը վերջը՝ ամէն մէկերնուս համար է։ Երկու չեղին օր կայ, մէյ մը մարդուս, մէյ մ՚ալ մարդկութեան։ Աստուծոյ հակառակորդն ու մարդկան թշնամին՝ որն որ աշխարհքիս կատարածին մօտ՝ իբրեւ որդի կորստեան անսովոր նշաններով ու զօրութեամբ պէտ՚որ յայտնուի, թէ որ հնար է ընտրեալներն ալ մոլորեցընելու, նոյն հակառակորդը նաեւ ամէն մէկ մարդու վախճանին մօտ՝ աշխատութեան

պիտ՛որ չխնայէ, հնարք մը պակաս պիտ՛ որ չընէ, այնչափ ոյժ թափելով՝ որչափ որ զուցէ մահկանացուին բոլոր կենացը մէջ չէր թափած՝ երբ որ «իբրեւ զառիւծ» կը պոռար՝ կլլելու։

Բայց ի՞նչ. Քրիստոս Տէրն մեր, Յուդայի ցեղին Առիւծը, ան Հզօրը՝ որն որ եկաւ Սատանային գործքերը քակելու, կրնա՞ր իր ծառաներն ան անսովոր փորձութեանց դէմ՝ մինակ սովորական օգնութեամբ թողուլ եւ կամ իր մահուամբը մեր մահուանը համար ասանկ մասնաւոր շնորհք մը չպատրաստել։

Վերջին օծման խորհուրդը՝ լիուլի իրաւամբ նաեւ Յուսոյ խորհուրդ անուանած են Հարք։

Ջրվէժի մը բերան մօտեցող նաւակի մը պէս՝ մահուան ահագին վայրկենին կը մօտենայ հիւանդը՝ յանկարծ յաւիտենականութեան մէջ գահավէժ ըլլալու։ Ասիկա մարդուս ամենէն դըժուարին եւ մի միայն վայրկեանն է, բոլոր կենաց վայրկեանները աս րոպէին համար էին, եւ մինակ աս վայրկենէն

կախուած ունի բոլոր անցած ժամանակին արժէքն եւ գալու մշտնջենաւորութեան ուրախութիւնը ։ Ծա՛նր բոպէ ։ Մօտենանք աս երկիւղած հաւատացեալ հիւանդին ։ Ա՛հ․ ի՞նչ եղած է, կ՚ըսէ, կեանքս, ի՞նչպէս պիտ՚ որ ըլլայ վախճանս։ Ո՛րչափ անգամ ես ինծի ըսի՝ հիմա սկսիմ, հիմա ատեն է քունէն արթըննալու, բայց միշտ մեղքերը մօտեցան եւ իբրեւ անխզելի լուծ մը, իբրեւ անտանելի բեռ մը իմ վիզս խոնարհեցուցին, վասն զի աշխարհ, մարմին, սատանայ դաշնակից էին՝ մոլութեանց սովորութեամբ զիս իբրեւ ստուամբ յաղթահարած քաշելու ։ Ասանկ բոլոր անցած օրերուն ահը մէկէն վրան ինկած է, կորսուած է իր խորհուրդը, կոտրած է իր բազուկը, իր սուրը զի՛նք չի կրնար ազատել, վերջապէս կը զարհուրի՝ թէ գուցէ ան որ այնչափ անգամ ապերախտութեամբ զԱստուած թողուց, իրաւամբ թող տրուի Աստուծմէ՝ աս վերջին անգամ ։

Աս ալեկոծ խղճմտանքի, աս մահու ստուերներով պաշարուած սրտին մէջ՝

երբեւ յորդառատ աղբիւրէ մը քրիստոնէական յոյս կը հոսէ աս վերջին օժման խորհուրդը, երբ հիւանդն անոր տըւած շնորհքին նոր զօրութեամբը կը թեթեւնայ կամ կը կանգնի՝ մօտալուտ վտանգէն յաղթելու մեծ վստահութիւն կամ կերպ մը ապահովութիւն առնելով։

Վերջին օժման խորհուրդը չէ թէ մինակ մահուան առեն քրիստոնէին զօրութիւն, հապա նաեւ բոլոր կենացը մէջ մխիթարութիւն մըն է մահուան յիշատակին բերած զարհուրանացը դէմ։

Վախճանական համբերութիւնը, (այս ինքն ժամանակէ յաւիտենականութիւն անցնելու վայրկենին՝ շնորհաց մէջ գտնուիլը) թէպէտ կարգաւ՝ վերջին դէպքն է, բայց արժէքով՝ առաջին մըտմըտուքն է քրիստոնէական կենաց մէջ։ «Բոլոր քու գործերուդ մէջ՝ յիշէ քու վերջերդ, որ յաւիտեան չմեղանչես» կ՚ըսէ աստուածային իմաստութիւնը (Սիրաք է. 40)։ Վերջին օժման խորհըրդոյն ճշմարտութեանը մէջ կրնանք տեսնել որ աստուածային իմաստութեան

չէին կրնար անհամաձայն ըլլալ աստուածային ողորմութեան գործքերը, եւ բոլոր «մեր կենացը մէջ մահուան սպասելու առեններս՝ կը նուաղի մեր այլայլութիւնը եւ կ'աւելնայ մեր շնորհակալութիւնը՝ երբ որ մի եւ նոյն առեն կը մըտածենք՝ որ Քրիստոս տէրն մեր՝ ինչպէս Մկրտութեան խորհրդով ճշմարիտ կենաց դուռը մեզի բացաւ, նոյնպէս՝ աս մահկանացու կեանքէն հեռացողներուն երկնից մուտքը դիւրացուց՝ Վերջին օծման խորհուրդը հաստատելով» (Կոչ. ընդ. Տրիդ. Ժողովոյ, Մասն բ. վասն վերջ. օծմ. գլ. ջ. 1.)

Վերջապէս՝ քրիստոնեայն իր բոլոր կենացը մէջ մրմնջած աղօթքին լրումը վերջին օծման խորհրդոյն մէջ կը գտնէ, վասն զի ասով անանկ իր կեանքը կը լըմընցընէ, ինչպէս իր աղօթքը կը վերջանայ: Քրիստոս Տէրն մեր ինչ որ աղօթքով սորվեցուց մեզի որ խնդրենք, խորհուրդներով՝ իբրեւ առոյգ գրաւականներով ապահովցուց որ կ'առնունք: Տէրունական աղօթքին մէջ, մկրտու-

թեամբ· Աստուծոյ Հօր որդեգիր, եւ դրոշմով՝ անոր թագաւորութեանը զինուոր, կը խնդրենք մեր երկնաւոր Հօրը իբրեւ մեր ռոճիկը, եւ կ՚ընդունինք Հաղորդութեան սեղանէն. կը խնդրենք մեր սեպհական մեղացը թողութիւնը, եւ կ՚ընդունինք Ապաշխարութեան խորհրդով. վերջապէս՝ վախճանական համբերութեան համար կը խնդրենք զօրութիւն փորձութեան եւ անոր հեղինակին դէմ· որն որ մահուան մօտ ամէն ատենէն աւելի կատաղի է, եւ կ՚ընդունինք աս զօրութեան լրումը վերջին օծման խորհրդով։ Մեր աղօթքին խնդրըուածներուն վերջինը՝ խորհուրդներուն վերջնովը երաշխաւորուած է. (Տես արեւմտեան եկեղեցւոյ Վերջին օծման կարգին վերջերը գտնուած կցուրդները)։

Ուստի՝ «Վերջին օծման խորհուրդը, կ՚ըսէ վերջին տիեզերական սինհոդոսը, չէ թէ մինակ խոստովանութեան խորհրդոյն, հապա բոլոր քրիստոնէական կենաց լրումը կը համարին սուրբ Հարք։ Անոր համար՝ ամէն բանէ առաջ աս վեր-

չին օծման խորհրդոյն հաստատութեանը վրայօք կը սորվեցընէ ստ Տրիդենտեան տիեզերական սիւնհոդոսը , որ մեր ամենագութ Փրկիչը՝ որն որ կ'ուզէ թէ իր ծառաներն ամէն ատեն հասարակաց թշնամւոյն ամէն նետերուն դէմ մըրկարար զէնքեր ունենան , ինչպէս որ ուրիշ խորհուրդներով մեծամեծ օգնութիւններ պատրաստեց , որոնցմով կարող ըլլան քրիստոնեաները իրենց կենացն ատեն ամէն ծանր հոգեւոր չարիքներէն իրենք զիրենք պահելու , սանկ ալ վերջին օծման խորհրդով՝ մարդուս կենացն ետքի ռոպէներն ալ զօրաւոր օգնութեամբ մը ամրացուց : Որովհետեւ մեր հակառակորդը մարդուս բոլոր կենացը մէջ ամէն տեսակ առիթները կը փնտռէ՝ որ կարող ըլլայ կերպով մը մեր հոգիները կլլէ . բայց չկայ անանկ ատեն մը՝ որ այնչափ սաստկութեամբ իր ամէն նենգութիւնները բանեցընէ՝ զմեզ բոլորովին կորսընցընելու եւ աստուածային ողորմութենէն յուսահատեցընելու , ինչպէս՝ երբոր կը տեսնէ թէ մեր կենաց

վախճանը հասած է ։ »

Ուստի աս վերջին օծման խորհրդով « Հոգւոյն սրբոյ շնորհքը կը տրուի , որուն օծումը մեղքերը (թէ որ հիւանդը մէջը ունի) ու մեղաց մնացորդները կը սրբէ եւ հիւանդին հոգին կը թեթեւցընէ ու կը զօրացընէ՝ հիւանդին աստուածային ողորմութեան վրայ մեծ վստահութիւն բերելով ։ Ասով հիւանդը քաջալերուելով՝ թէ՛ հիւանդութեան դժուարութիւններուն ու նեղութիւններուն դիւրաւ կը համբերէ եւ թէ դարշապարին սպասող սատանային փորձութեանցը դիւրաւ դէմ կը դնէ , եւ միանգամայն նաեւ մարմնոյ առողջութիւնն ալ երբեմն կ'առնայ՝ թէ որ հոգւոյն օգտակար է* ։ Ահաւասիկ վերջին օծման խորհրդոյն յառաջ բերելու գործքը ։

Ի՞նչպէս հաստատուեցաւ աս խորհուրդը , ո՞րն է անոր նիւթը , կերպն ու պաշտօնեայն ։

« Ա՛ս հիւանդաց սուրբ խորհուրդը ,

---

* Տրիդ . ժող . Վարդապ . վրան վերջին օծման , կան . 2 ։

որնոր արդէն Մարկոսի աւետարանին մէջ ակնարկուած է , իբրեւ ճշմարիտ ու յատուկ Նորոյ ուխտի խորհուրդ ի Քրիստոսէ Տեառնէ մերմէ դրուեցաւ , ու Յակոբոս Առաքելոյ եղբօր Տեառն ձեռօք յանձնուեցաւ ու տարածուեցաւ ։ « Թէ որ ձեզմէ մէկը հիւանդանալու ըլլայ՝ կ'ըսէ , թող կանչէ եկեղեցւոյ երիցունքը ( քահանաները կամ եպիսկոպոսը) ու աղօթք ընեն անոր վրայ՝ օծելով զանիկա յանուն Տեառն , եւ հաւատոյ աղօթքը ազատէ հիւանդը , ու Տէր անոր ցաւերը թեթեւցընէ , եւ թէ որ մեղաց մէջ է , թողուին անոր ։ »

« Աս խօսքերով , ինչպէս որ ձեռքէ ձեռք անցած առաքելական աւանդութենէն սորված է եկեղեցին , կը սորվեցունէ Յակոբոս Առաքեալը՝ աս փրկարար խորհրդոյն նիւթը , ձեւը , յատուկ պաշտօնեայն ու յառաջ բերած գործքը ։

« Որովհետեւ եկեղեցին աւանդ կ'իմանայ՝ թէ նիւթը՝ (Արեւմտեան եկեղեցւոյ մէջ) եպիսկոպոսէն օրհնուած ձէթն է , վասն զի օծումը շատ յարմար

կերպով կը ցուցընէ Հոգւոյն սրբոյ շընորհքը՝ որով հիւանդին հոգին կ՚օծուի, իսկ կերպը կամ ձեւն է (Արեւմտեան եկեղեցւոյ մէջ) աս խօսքերը. Այսու օծմամբ եւ իւրով ամենագութ ողորմութեամբ թողցէ քեզ Տէր զոր ինչ մեղար աչօք. Ամէն։ Նոյնպէս մէկալ անդամներուն վրայ ալ (այս ինքն՝ տեսանելիքը, լսելիքը, հոտոտելիքը, բերանը, ձեռքերը, ոտքերն եւ երիկամունքն օծելով) նոյնն ըսելու է* »։

« Այս վերջին օծման խորհուրդը մինակ ան հիւանդին կրնայ տրուիլ՝ որուն մահուանը վրայ երկիւղ կայ »** կամ ըսենք՝ ան հիւանդներուն՝ որոնք անանկ վտանգաւոր կերպով ինկած փըռուած են՝ որ ալ կենաց վերջը հասած կ՚երեւան։ Եթէ հիւանդը վերջին օծումըն առնելէն ետքը՝ առողջանայ ու նորէն նոյնպիսի կենաց վտանգի մէջ իյնայ,

---

* Տրիդ. ժող. վասն վերջին օծմ.։ Գլ. 1. եւ վճիռ վասն Հայոց։

** Վ.ճիռ. վասն Հայոց.

նորէն ևս խորհրդոյն օգնութիւնը կրնայ տրուիլ* ։

« Այսանկ մեծ խորհուրդ բանի տեղ չդնելով գանց առնուլն առանց մեծ յանցանքի եւ առանց հոգւոյն սրբոյ արհամարհանք ընելու չի կրնար ըլլալ » ** ։

« Թէ որ մէկն ըսէ՝ թէ վերջին օծման արարողութիւնն ու կիրառութիւնը զորոնք որ սուրբ հռոմէական եկեղեցին ունի, երանելի Յակոբոս առաքելոյն գրուածին միաբան չէ եւ անոր համար՝ պէտք է ան արարողութիւնը փոխել, եւ թէ կրնան քրիստոնեաները առանց մեղք գործելու նոյները բանի տեղ չդնել, նզովեալ ըլլայ » *** ։

Այսանկ Փլորենտեան ու Տրիդենտեան տիեզերական ժողովոց հարքը ։

Ուրեմն կաթողիկէ եկեղեցւոյ վարդապետութիւնն է թէ՝

* Տրիդ. ժող. վասն վերջին օծմ. կան. 2 ։

** Տրիդ. ժող. վասն վերջին օծմ. գլ. 3 Յօդ. 19 ի հարցուածս սահմանեալս ի Մարտինոսէ Ե. վասն Վիկլեփեանց եւ Հուսեանց ։

*** Տրիդ. ժող. վասն վերջին օծմ. կան. 3 ։

1. Վերջին օծման խորհուրդը՝ ան խորհուրդներէն չէ՝ որն որ մինակ մէկ վիճակի համար կոչուած անձանց համար հարկաւոր են, ինչպէս է քահանայութեան եւ պսակի խորհուրդները, հապա ինչչափ որ հիւանդութիւն ու մահ ամէնուն համար է, այնչափ ալ վերջին օծման խորհուրդն ամենուն համար կարեւոր եւ օգտակար է։

2. Վերջին օծման խորհրդոյն որոշ նիւթը օրհնեալ ձէթն է, որն որ եկեղեցւոյ լեզուաւն ուրիշ բան ըսել չէ՝ բայց եթէ որ սա վերջին օծման խորհուրդը՝ խորհուրդ ըլլալու համար անանկ հարկաւոր է կամ յառաջուընէ եպիսկոպոսէն եւ կամ առ Արեւելեայս նոյն միջոցին քահանայէն օրհնուած ձէթով օծել, ինչպէս մկրտութիւնը՝ մկրտութիւն ըլլալու համար հարկաւոր է ջրով լուանալ։ Ինչպէս մէկը չի կըրնար առանց ջրոյ մկրտել, անանկ ալ մէկը չի կրնար առանց ձիթոյ վերջին օծման խորհուրդը կատարել։

3. Վերջին օծման խորհրդոյն կեր.

պը կամ ձեւը չէ թէ ըստ նոյն ու մուրացածոյ հիւանդի վրայ ընելու աղօթք մըն է, հապա անանկ աղօթք մը՝ զորն որ կաթուղիկէ եկեղեցին աւանդութեամբ ըստ արեւելեան կամ ըստ արեւմտեան ծիսի ունեցած կամ ընդունած է, որնոր թէ՛ իւղոյն օրհնութիւնը կատարէ (ըստ արեւելեան ծիսի) եւ թէ՛ հոգւոյ եւ մարմնոյ բժշկութիւնը՝ որոնք խորհրդոյն յառաջ բերելու գործքն են, կարող ըլլայ նշանակել։

4. Յակոբոս Առաքելոյն խօսքերուն մէջ՝ ուրիշ վերջին օծման խորհրդոյ նիւթ չկայ, բայց եթէ ձիթով օծում։ Ասանկ կ՚իմանայ եկեղեցին, ինչպէս տեսանք, եկեղեցին՝ որն որ միմիակ իշխանութիւն ունի սուրբ Գիրքն անսխալ կերպով մեկնելու։

Ուստի ձեւը կամ աղօթքը՝ առանց նիւթոյ կամ առանց օրհնեալ ձիթով օծելու, եւ ոչ օրհնեալ ձիթով օծելն՝ առանց աս ձեւի կամ աղօթքի կրնայ վերջին օծման խորհուրդ կազմել։

5. Ինչպէս մէկալ՝ չափահասներուն

ընդունելու խորհրդոց համար, ասանկ ալ վերջին օծման խորհրդոյն համար՝ պէտք է որ աս խորհուրդն առնողը վերջին օծման խորհուրդ առնելու, կամք և յօժարութիւն ունենայ։ Թէպէտ եւ աս խորհրդոյս համար ենթադրական կամ մեկնողական դիտաւորութիւնն ալ բաւական է, բայց ծանր կը մեղանչէ պաշտօնեայն՝ թէ որ իր յանցանօքն անանկ ատենուան կը ձգէ խորհրդոյս մատակարարութիւնը՝ որ հիւանդն իր մտացը տէր չըլլալով՝ խորհրդոյն մեծագոյն պտուղներէն կը զրկուի։

6. Թէպէտ մինակ հաւանական է՝ որ Տէրական պատուիրանաւ պարտական է մահացու հիւանդ մը վերջին օծման խորհուրդն ընդունելու, բայց ասոր հակառակ 1. աս բոլորովին ստոյգ է՝ թէ մահացու մեղօք կը մեղանչէ թէ որ բանի տեղ չդնելուն համար չընդունիր, ինչպէս որ Տրիդենտեան՝ տիեզերական ժողովոյն վճռոյն մէջ տեսանք, և 2 անտարակոյս է՝ որ ծանր կերպով կը մեղանչէ ան բնական պատուիրանին դէմ՝ որով պար-

տական է ինք իր անձը եւ անձին փրկութիւնը սիրել, երբոր մահացու հիւանդը մէկ կողմանէ իր տկարութիւնն եւ մէկալ կողմանէ մօտալուտ վայրկենին ծանրութիւնը կշռելէն ետքը՝ դարձեալ որեւիցէ մարդկային վախճանաւ սաստիկ մեծ օգնութենէ մը ինք զինք զրկելով իր փրկութիւնը վտանգի մէջ կը թողու ։

Ո՛րչափ աւելի ծանրագոյն ընկերին սիրոյն եւ իր պաշտօնին դէմ կը մեղանչէ այն պաշտօնեայք եւ առաջնորդք որոնք սաստիկ թէ հոգւոյ եւ թէ մարմնոյ հարկաւոր օգնութենէ կը զրկեն հաւատացեալ հիւանդը ։

Հիմա տեսնենք՝ թէ Հայոց Էջմիածնական եկեղեցին իր քրիստոնէականներուն մէջ աս կաթուղիկէ վարդապետութիւնը կ՚ընդունի ։

## 2.

### Էջմիածնական եկեղեցւոյ քրիստոնէականներուն վարդապետութիւնը ։

Խնդիրնիս այս չէ՝ թէ արդեօք վերջին օծումը կամ հիւանդաց օծումը խոր-

հուրդ է թէ չէ ։ Հայաստանեայց Էջմիածնական եկեղեցին կաթուղիկէ համէական վարդապետութեան համեմատ իր քրիստոնէականներուն մէջ ամէն ատեն եւ ամէն տեղ կ'ընդունի թէ վերջին օծումը եօթը ճշմարիտ խորհուրդներէն մէկն է, եւ ընդհանրապէս կը դաւանի՝ թէ մէկալ խորհուրդներուն պէս՝ աս ալ ի Քրիստոսէ Տեառնէ մերմէ աւանդուած է ։

Հապա խնդիրն այսօրուան օրս ան է՝ թէ վերջին օծման խորհուրդը՝ առանց օծման կրնայ ըլլալ թէ չէ ։

Հայաստանեայց Էջմիածնական եկեղեցւոյ վարդապետութիւնն՝ անանկ ինչպէս որ իրեն քրիստոնէականներուն մէջ կ'երեւայ, երեք յեղափոխ երեւոյթ (phase) ունեցած է ։

Ա. « Քրիստոնէական ուսանելի ». գրքին ատենները՝ սա կը դիտենք որ վերջին օծման խորհրդոյ անունը կայ, իրը կը փնտռուի ։

Լսենք ։

« Վերջին օծումն է, կ'ըսէ, խորհուրդ-

» կացուցեալ վասն Ներսէսի մեղաց, որ-
» պէս ապաշխարութիւնն վասն մահա-
» ցու մեղաց »։

(Յայտնի է՝ որ աս սահմանը ճիշտ չէ)։

« Այլ այս խորհուրդս ոչ է խափանեալ,
» այլ միայն ժամանակն փոխեալ, որ կու
» տրվի հետ դրոշմին ։ Եւ ոմանք զաւագ
» հինգշաբթի ոտնլուայն եւս առնուն ի
» տեղի վերջին օծման ։

« Նաեւ այս խորհուրդս ոչ է այնքան
» հարկաւոր թէ չունողն զրկվի ի փրկու-
» թենէ ։ Վասն այնորիկ ի վերջին հար-
» կաւորութեան կատարեալ զղջումն լը-
» ցուցանէ զպակասութիւն այսորիկ խոր-
» հրդոյ » (էջ 336 . երկր . տպագր .)։

Ասանկ կը սորվեցընէ Պատրիարք մը՝ որնոր գուցէ իրաւունք ունի Մայրաքաղաքիս Հայ Պատրիարքաց ամենէն գլխունը սեպուելու ։

Բայց կաթուղիկէ վարդապետութենէն չկայ այնչափ հեռու բան, որչափ ասանկ վարդապետութիւն մը ։

1 . Վարդապետութիւն մը՝ որով վեր-

ջին օծման խորհուրդը Դրոշմի խորհըրդոյն հետ անանկ կը ձուլուի՝ որ երկու խորհուրդ միանգամայն կատարուի մի և նոյն ձեւով բանի, մի և նոյն նիւթով, եւ մի և նոյն օծման գործողութեամբ, բայց այլ և այլ դիտաւորութեամբ. ուր որ բոլորովին ստոյգ վարդապետութիւն է Կաթողիկէ եկեղեցւոյ մէջ՝ թէ վաւեր չէ վերջին օծումը՝ երբոր ձէթը առ այս, այս ինքն վերջին օծման համար մասնաւորապէս օրհնուած չէ. ի՞նչ անպատեհութիւն. աշխարհքիս յարաբերութեանցը մէջ մտնելու համար տրուած խորհուրդն՝ ըլլայ միանգամայն աշխարհքէս ելնելու խորհուրդ. Կենաց վերջը հարկաւոր եղածը՝ կենաց սկիզբները, ծանր հիւանդութեան ատեն տրուելիքը՝ առողջութեան ատեն մատակարարել, Քրիստոսի Տեառն մերոյ զատ զատ դրած երկու խորհուրդները՝ մէկ խորհրդոյ համառօտելով.

2. Էջմիածնական եկեղեցւոյ վերոյիշեալ Քրիստոնէականն ազատութիւն կուտայ կարծելու՝ որ վերջին օծման խորհուրդն ան օծումն ըլլայ՝ որով Աւագ

հինգշաբթի օրը ժողովուրդը կամ ներկայ գտնուողները կ'օծուին · արարողութիւն մը՝ զոր որ Յունաց քով ալ կը կատարէ եպիսկոպոսը՝ կամ աւագերէցը նոյն օրը ձէթն օրհնելով եւ նոյն օրը սպառելով, բայց վերջին օծման կարգը՝ չէ թէ իբրև խորհուրդ, հապա իբրև արարողութիւն՝ ամբողջ կատարելով, որն որ բաւական անպատեհ է ։ Սակայն Էջմիածնական եկեղեցին՝ եւս աւելի դիւրութեամբ այս արարողութենէն ձէթը վերցընելով՝ ինչպէս որ վերջին օծման խորհուրդէն նոյնը վերցուցած է, հիմա ուրիշ բանով չ'օծաներ ներկայեղողները՝ բայց եթէ կարագով, և ուրիշ անգամ մը չ'օծաներ, բայց եթէ ոտքին վրան ։

Ասանկով՝ վերոյիշեալ Քրիստոնէականին թէ աս և թէ նախընթաց կերպով ցուցուցած վերջին օծման մէջ, այո օծում կայ, բայց վերջին օծման նիւթ (օրհնեալ ձիթով օծում) չկայ ։

3. Վերոյիշեալ Քրիստոնէականը հովուական գթոյ համաձայն վարդապետութիւն մը չ'ըներ՝ երբոր Էջմիածնական եկեղեցւոյ հետեւող քրիստոնէից

փոխանակ աս խորհրդոյն գործածութիւնը ջերմագոյն կերպով յանձնելու՝ անոր կարեւորութիւնը կը նուազցընէ եւ գրեթէ աւելորդ սեպել կու տայ մեր երկնաւոր բժշկէն դրուած հոգւոյ եւ մարմնոյ միանգամայն օգտակար դեղը ։

Աս քրիստոնէականին եւ կամ աս ատենուան վարդապետութեան մէջ մըտադրութեան արժանի սա կէտն է՝ որ վերջին օծում առանց օծման, քրիստոնեայ տիեզերաց դէմ, վարդապետելու դեռ համարձակութիւն չկայ, այլ կ'ուզուի՝ որ Էջմիածնական եկեղեցւոյն մէջ չէ թէ միայն վերջին օծման խորհուրդը խափանուած ըլլայ, հապա միանգամայն օծումն ալ խափանուած ըլլայ ։

Բ. Բայց շատ չանցաւ՝ թող տուաւ Էջմիածնական եկեղեցին վերոյիշեալ Դրոշմի եւ Ոտնալուայի դրութիւնները, վերջապէս գիշերժամու պաշտօնը իրրեւ իր վերջին օծումը ճանչցաւ, բայց աս անգամ ամենեւին առանց օծման ։

Ուստի՝ 1814ին քրիստոնէականը կը սորվեցընէ նոր վարդապետութիւն մը՝

որն որ բովանդակ քրիստոնեայ տիեզերքին անծանօթ էր ։ Կ'ըսէ.

« Հ. Վերջին օծումն ի՞նչ է ։

» Պ. Վերջին օծումը հոգւոյ եւ մարմնոյ առողջարար դեղ մի է, որ քահանայական աղօթքին զօրութեամբը ծանր հիւանդները կը բժշկէ եւ անոնց ներսի մեղքը կը քաւէ ։

» Հ. Հայոց եկեղեցին վերջին օծման խորհուրդը կը կատարէ՞։

» Պ. Այո, ծանր հիւանդներուն վըրայ քանի անգամ որ հարկաւոր նէ՝ կը կատարէ, եւ այս սուրբ խորհուրդն է՝ որ կ'ըսուի գիշերաժամ, ուր քահանայք կը կարդան սաղմոս, գիրք բժշկութեան աւետարան, աղօթք եւ յետոյ փարատեցո զցաւս կ'ըսեն ։

» Հ. Միթէ օրհնեալ իւղով հիւանդն օծել հարկաւո՞ր է ։

» Պ. Իւղով օծել՝ ազգային ծէս եւ խորհրդական արարողութիւն մի է եւ հաւատոյ մաս չէ, անոր համար հարկաւոր չէ. որովհետեւ սանկ ծիսական արարողութիւնները ամէն քրիս-

« տոնեայ ազգի մէջ՝ կ'ըլլայ որ կը փո- « լոխի եւ կ'ըլլայ՝ որ կը խափանի ։ Իսկ « բուն զօրութիւնը աս խորհրդոյս է, « քահանայական աղօթքն եւ՝ ընթեր- « ցուածքը եւ այն է հաւատոյ մասը եւ « հարկաւորը, եւ այս ամենուն չի խա- « փանիր. ինչպէս կը գրէ մեծն Խօս- « րով Ժամագրքի մեկնութեան մէջ (284 « երեսը)՝ թէ աղօթքն հաւատով փըր- « կեսցէն զաշխատեալն » (էջ 35-36, երկր. տպագր. էջ 31-32)։

Աս վարդապետութիւնը վերոյիշեալ տիեզերական ժողովներով հաստատուած կաթուղիկէ վարդապետութեան տրամաչափապէս հակառակ է։

1. Կաթուղիկէ եկեղեցին կ'ըսէ. Վերջին օծման խորհրդոյն կատարմանը մինակ ձեւն՝ այս ինքն աղօթքը՝ բաւական չէ. իսկ Հայաստանեայց Էջմիածնական եկեղեցին կ'ըսէ. « Բուն զօրութիւնը այս խորհրդոյս է քահանայական աղօթքն եւ ընթերցուածքը եւ այն է հաւատոյ մասը եւ հարկաւորը »։

Կաթուղիկէ եկեղեցին ասանկ կ'ի-

մնայ՝ որ միայն աղօթքն հաւատոյ չէ երեւեր զաշխատեալը (զհիւանդն) հապա օծումն ձիթով եւ աղօթքն հաւատոյ մէկ տեղ (իբ-րեւ խորհուրդ) զհիւանդը կը փրկեն։ Ասոր հակառակ՝ Հայաստանեայց Էջմի-ածնական եկեղեցին իր քրիստոնէական վարդապետութեան մէջ կ'ըսէ թէ Յա-կոբոս Առաքելոյն խօսքն ան է՝ թէ մինակ աղօթքն. հաւատոյ զհիւանդը կը փրկէ, անանկ՝ որ օծումը կրնայ թող տրուիլ։

Իրաւունք ունի Առաքեալն իւղով օծումն զուրցելէն ետքն՝ ըսելու թէ աղօթքն է՝ որ իբրեւ խորհրդոյ կերպ հիւանդին փրկութիւնը կը կատարէ, վասն զի իւղոյ օծումն իբրեւ միայն Նիւթ՝ դեռ ձեւը վրան չեկած՝ ոչինչ է։

2. Կաթուղիկէ վարդապետութիւ-նը կ'ըսէ թէ ձիթով օծելն ի Քրիստոսէ Տեառնէ մերմէ դրուած վերջին օծման խորհրդոյն նիւթն է, ու անոր համար չի կրնար փոխուիլ. ասոր հակառակ՝ Հայ-աստանեայց Էջմիածնական եկեղեցին իր քրիստոնէական վարդապետութեան մէջ կ'ըսէ՝ թէ ձիթով օծելն ազգային

ծէս է, խորհրդական արարողութիւն մըն է, ու անոր համար կրնայ փոխուիլ։

3. Կաթողիկէ վարդապետութիւնք կ'ըսէ՝ թէ աս խորհրդոյն կերպն է աւանդութեամբ եկեղեցւոյ մէջ գործածուած կամ եկեղեցւոյ հեղինակութեամբ բը հաստատուած ձեւը։

Իսկ Հայաստանեայց Էջմիածնական եկեղեցին կ'ըսէ՝ թէ աս խորհուրդս կը կատարուի՝ երբոր քահանայք սաղմոս, ընթերցուած, բժշկութեան աւետարան ու ճաշամագրոց փարատեցո ցաւս» աղօթք կը կարդան, անանկ՝ որ անտարակուսելի թէ աղօթքներուն եւ թէ ընթերցուածներուն խորհրդոյն բուն զօրութիւնը կու տայ։

Վերոյիշեալ քրիստոնէականը Խոսրովէն վկայութիւն կը բերէ։

Ի՞նչ կրնայ զօրել ասանկ ծանր նիւթոյ մը մէջ Անձեւացեաց եպիսկոպոսին վկայութիւնը, որն որ աս խորհրդեան մէջ միայն աղօթքն առանց օծման՝ ապօրինաւոր, բայց վաւեր կը սեպէ (Խոսր. Մեկն. Ժամգրոց. էջ 281)։ ո՞վ կրնայ այս տկար եղեգան վրայ տուն շինել՝

երբոր անդին տիեզերական ժողովներով ինք եկեղեցին դէմ կու գայ, սիւն եւ հաստատութիւն ճշմարտութեան։

Հին Հայաստանեայց եկեղեցւոյ աւանդութեան շղթային մէջ աս սխալ վարդապետութեան առերեւոյթ հեղինակութիւնն արդէն ճշմարիտ հերքնակութեամբ մը ընջուած է։ «Թէ ներգործել զայս, կ՚ըսէ Ս. Ներսէս Շնորհալի, աղօթիցն էր զօրութեան, ածման իւղոյն. առ ի՞նչ պէտս բժշկեալքն կարօտանայէն. յայտ է՝ թէ զի յերկուց եղով մեր, ամենայն ինչ զգալի է եւ իմանալի իրակութեանն առիթ զոյգ էութեանս, որպէս ջուր եւ Հոգի, հաց եւ Աստուած. ըստ այսմ առցես զօծանելոյն իւղով։»

Ուստի աս մեծ Հայրապետին վարդապետութեան համաձայն՝ Յակոբայ Առաքելոյն խօսքը 1. Հիւանդները նաեւ օծման կարօտ կ՚ենթադրէ, 2. Իւղով օծումն աս խորհրդոյս անանկ էական է՝ ինչպէս ջրով լուալը՝ Մկրտութեան խորհրդոյն, եւ հաց ի ցորենոյ՝ Հաղորդութեան խորհրդոյն, անանկ՝ որ

առանց ըմփուլէ նիւթոյն (իւղոյն օծմանը) յմանուլէ իրը (շնորհքը) յառաջ չի գար :

Ասանկ Խոսրովէն ետքը · նոյնպէս Խոսրովէն յառաջ ալ՝ Յովհան Իմաստասէր :

« Ամենայն ուրեք, կ՚ըսէ, առ ամենեսին պարգեւաբաշխ Հոգին իւղովս այսուիկ զիւրն գտանի կատարեալ խորհուրդ : Զոր օրինակ երկտեսակ բնութիւնս է մարդկային, երկպատկաբար եւ նորոգող սուրբ Հոգին առ մեզ մերձենայ. նիւթականաւն զզգալին զուարճացուցանէ, զի—իւղ զուարթ առնէ—ասէ մարգարէն, եւ ինքեամբ զիմանալին որ ի մեզ զօրացուցանելով » Ընդդ. Պաւղէկ. Գլ 43 : « Հոգին մի է եւ առհաւատչեայ Հոգւոյն իւղն նոյն է » . Յովհ. Իմաստ. Գլ 8 :

Ուստի՝ վերջին օծումն առանց օծման կատարելու խօսքերը՝ որոնք բաւական հատակերգական կը հնչեն, դարձեալ՝ սուրբ Գրոց բացայայտ վկայութեան, բոլոր ժամանակներու աւանդութեան եւ նոյն իսկ սեպհական ազգայ-

էին հին գործածութեան եւ միանգամայն վարդապետութեան դէմ՝ սանկ մեծ ու մարդուս այսչափ մխիթարական խորհրդոյ մը նիւթը փոխել, փոփոխութիւն մը՝ որուն բովանդակ կաթուղիկէ եկեղեցւոյն ի Գանայ մինչեւ ցՖերրարբէ ժողվուած՝ իշխանութիւն կամ կարողութիւն չունի, սանկ ակարութիւնները՝ կ՚ըսեմ, չէին կրնար քննութեան կամ վիճաբանութեան մ՚առջեւ դիմանալ։

Անոր համար 1820ին սինհոդոսը, այսինքն՝ Հայաստանեայց Էջմիածնական եկեղեցւոյն եկեղեցական եւ աշխարհական իշխանութեան գրեթէ լրութիւնը (Էջմիածնայ կաթուղիկոսին գործակալքը, Կիլիկիոյ կաթուղիկոսն անձամբ, Կոստանդինուպոլսոյ Պատրիարքը, Երուսաղեմի գործակալը, այլ եւ այլ արքեպիսկոպոսներ, եպիսկոպոսներ ու վարդապետներ) հետեւեալ նշանաւոր վճիռը կու տան իրենց սինհոդական յայտարարութեան մէջ։

« Խորհուրդք Ս. եկեղեցւոյ, կ՚ըսեն, « եօթն են, յորոց մին է վերջին օծումն,

» զոր պարտ է մատակարարել ծանր հի-
» ւանդաց՝ օծմամբ իւղոյ օրհնեցելոյ ի քա-
» հանայէ ըստ պատուիրելոյ մեծին Յով-
» հաննու իմաստասիրի ի ԺԱ. կանոնի յաղ-
» գային ժողովի անդ, ուր ասէ — Ար-
» ժան է զհիւանդացն ձէթ քահանային
» օրհնել ըստ իւրում աղօթիցն — ։ Որ-
» պէս եւ Առաքեալն Յակոբոս 'պատուի-
» րէ ասելով՝ թէ « Հիւանդանայցէ ոք ի
» ձէնջ, կոչեսցէ զերիցունս եկեղեցւոյն
» եւ արասցեն ի վերայ նորա աղօթս, օծ-
» ցեն իւղով յանուն Տեառն եւ աղօթքն
» հաւատովք փրկեսցեն զաշխատեալն եւ
յարուսցէ զնա Տէր, եւ եթէ մեղս ինչ
» իցէ գործեալ՝ թողցի նմա. Յակ. Ե.
14. 15. (էջ 30—31)։

Աղէ՛կ միտ դնենք. սիւնհոդոսին աս
վճիռը կամ որոշումն ան որոշումներէն
է՝ որոնց համար ինք սիւնհոդոսը նոյն
յայտարարութեան մէջ կ՚ըսէ՝ թէ աս ո-
րոշումներով ամենեւին ուրիշ բան չ՚ը-
ներ, բայց եթէ « ամէն բան անշարժ
» պահել՝ համեմատ Հայաստանեայց ե-
» կեղեցւոյ ու սրբոյն Գրիգորի Լուսա-

« ւորչին վարդապետութեանը, անոնց որ « եւ իցէ ուրիշ վարդապետութիւններն « ալ ամբողջ ու անպակաս խոստովանելով » ( էջ 33 ), եւ թէ իրօք Հայաստանեայց եկեղեցին « ամէն ի սկզբանէ ուղղափա- « ռութեամբ ունեցած բարեկարգու- « թիւններն ու եկեղեցական ծէսերն ան- « փոփոխ կը պահէ ու կը գործածէ ան- « այլայլելի նոյնութեամբ » ( էջ 37 ) ։

Այո՛ սա վճիռը համաձայն է սուրբ Գրոց վարդապետութեանը, համաձայն է նոյն իսկ Հայոց հին ուղղափառ վար- դապետութեանն ու գործածութեանը, համաձայն է վերջապէս կաթուղիկէ վար- դապետութեան ։

Բայց ան « ամէն մէկ բան անշարժ պահելը », ան « որ եւ իցէ վարդապե- տութիւն ամբողջ եւ անպակաս խոս- տովանիլը », ան « ի սկզբանէ ուղղափա- ռութեամբ ունեցուած բարեկարգու- թիւններն անայլայլելի նոյնութեամբ գործածելը » մենք հոս չենք տեսներ ։

Վերոյիշեալ սիւնհոդական վար- դապետութիւնը՝ ոչ սա սիւնհոդոսէնա-

ռաջ եւ ոչ սա սիւնհոդոսէն ետքը Հայ-աստանեայց եկեղեցւոյն քրիստոնէականներուն համաձայն է ։

Նախընթաց 1814ին քրիստոնէականին մէջ վերջին օծման խորհուրդը, ինչպէս տեսանք, առանց օծման կրնար ըլլալ. իսկ սիւնհոդոսին վճռոյն մէջ՝ վեց տարի ետքը օրհնեալ իւղով օծումը վերջին օծման՝ սահմանին կը վերաբերի ։

Վերոյիշեալ քրիստոնէականին մէջ օծումը ազգային ծէս մըն էր, հաւատոյ մաս չէր. սիւնհոդոսին վճռոյն մէջ՝ ազգային ծէս չէ՝ հապա ամէն ազգաց համար կը խօսի Առաքեալը՝ երբոր օծումը կը պատուիրէ (անանկ ի Քրիստոսէ աւանդուած ըլլալով) ։

Վերոյիշեալ քրիստոնէականին մեկնութիւնն էր՝ որ Առաքելոյն խօսքը մինակ աղօթքին հարկաւորութիւնը կը ցուցընէ. իսկ սիւնհոդոսին մեկնութիւնն է՝ թէ Առաքելոյն խօսքը նաեւ օծումը կը պատուիրէ ։ ..․

Սիւնհոդոսին ապագան ալ՝ անցելոյն նման է ։ Ո՞վ կրնար կարծել՝ որ Էջ-

միածնական եկեղեցին այսչափ հանգիստապէս կաթուղիկէ վարդապետութիւնն ընդունելէն ու գործադրութիւնը վճռելէն ետքը, նորէն ամէն բան առջի վիճակին մէջ մնայ մինչեւ ցայսօր։

Ասանկով սիւնհոդոսն ինչպէս իր անցեալը նոյնպէս ալ իր ապագան կը դատապարտէ. որովհետեւ 1844ին քրիստոնէականը նորէն նորէն առանց փոփոխութեան Կ.Պոլիս ու Զմիւռնիա հրամանաւ Պատրիարքաց կը տպուի։ Նոյնպէս 1841ին ու 1846ին Կ-Պոլսոյ քրիստոնէականները նորէն առանց օծման վերջին օծում կը սորվեցընեն։ Դարձեալ՝ 1847ին (ինչպէս նաեւ 1855ին) քրիստոնէականին ալ վերջին օծումն ուրիշ բան չէ, բայց եթէ « Ծանր հիւանդաց վրայ քահանային աւետարան եւ աղօթք կարդալը » (էջ 25)։ Նոյն 1847 տարուոյն Մոլտաւիոյ քրիստոնէականն աւելի խոհեմութեամբ՝ վերջին օծումը եօթը խորհուրդներէն մէկն է՝ ըսելով գոհ կ'ըլլայ (էջ 21)։

Նոյնպէս կը խօսին Տաճկաստանի մէջ ընդունուած ամենէն ետքի (1858ին)

քրիստոնէականներն ալ։ Ասոնցմէ մէկը, այս ինքն՝ Միջակ վարդապետարանը մանրամասն պատճառն ալ կը դնէ՝ որուն համար օծումը օրինաւորապէս խափանուեր է։

Լսենք։

» Հ. Այս խորհուրդը առանց օծման միայն աղօթիւք ալ կրնայ կատարուիլ։

» Պ. Գեղեցիկ է, ինչպէս Յակոբոս
» Առաքեալ կը կանոնադրէ՝ աղօթքն եւ
» օծումը միանգամայն կատարել։

(Ըստ ուղղափառ վարդապետութեան չէ թէ միայն գեղեցիկ, հապա նաեւ հարկաւոր է. չէ թէ կը կանոնադրէ, հապա ի Քրիստոսէ դրուած խորհուրդը կը հրատարակէ կամ կը քարոզէ Յակոբոս Առաքեալ։)

» Բայց շատ ժամանակէ ի վեր տես-
» նուեցաւ կ'ըսէ, մեր ազգի ժողովրդոց
» մէջ այս կերպ պաղութիւն մը՝ որ այս
» օծումը իբրեւ հարկաւոր միջոց փրկու-
» թեան համարելով՝ սկսան ապաշխարու-
» թիւնն ու հաղորդութիւնը անհարկաւոր
» խորհուրդներ համարել։ Զայս տեսնելով

առաջնորդաց ժամանակին՝ որպէս զի » ապաշխարութեան խորհուրդն անխա-» փան կատարուի՝ իբրեւ հարկաւոր մի-» ջոց փրկութեան, հիւանդաց օծումը՝ » որ է հարկաւոր միայն հարկաւորու-» թեամբ պատուիրանի, թոյլացուցին։ » Բայց միշտ ան խորհուրդին ալ հարկա-» ւոր մասը՝ որ է այն աղօթքը՝ զոր գի-» շերաժամ կ՚անուանենք, յարգեցին ու » կը յարգեն. որով եւ միշտ Հայաստան-» եայց սուրբ եկեղեցին աս խորհրդո-» վըս եօթն խորհուրդ սուրբ եկեղեցւոյ » կ՚ընդունէր ու կ՚ընդունի» (էջ 105-106)։

Ուրեմն համառօտ կերպով՝ օծումը խափանելու օրինաւոր սեպուած պատճառն աս եղեր է՝ որ ատենօք ժողովուրդը վերջին օծման խորհրդոյն վստահանալով՝ խոստովանութեան խորհուրդն անփոյթ ըրեր է։

Ո՞ր է ան ժամանակը՝ որ հայ ժողովուրդն սաստիկ յետսամիտ վստահութիւն մ՚ունեցեր է, կամ որո՞նք են ան առաջնորդներն որոնք աս անպատեհութեան՝ ուրիշ անպատեհութեամբ դար-

ման հոգացեր են ։ Քրիստոնէականնե-րէն եւ ոչ մէկն ասոր պատասխան կու տայ կամ կրնայ տալ, որովհետեւ ասի-կայ ենթադրութիւն մըն է՝ որն որ երբէք պատմութեան մէջ իր գոյութիւնը չու-նի, այլ ասոր հակառակ, մեր ունեցած յիշատակարանները նոյնը սուտ կը յան-դիմանեն ։ Որովհետեւ ստոյգ կերպով

1. Գիտենք որ Հայաստանի մէջ (ինչ-պէս հիմակուան Յունաց մէջ ալ) վեր-ջին օծման խորհրդոյն նկատմամբ՝ չէ թէ միայն չափազանց վստահութիւն երբէք եղած չէ, հապա ասոր հակառակը տե-ղի ունեցած է, այսինքն՝ բաւական ան-հոգութիւն եւ անփութութեամբ օծման զանցառութիւն (Տես Խոսրովայ Մեկն. Ժամգրոց էջ 281)։

2. Գիտենք՝ որ վերջին օծման խոր-հուրդէն՝ օրհնեալ ձէթով օծելը խա-փանելու համար չէ թէ միայն եկեղեցա-կան առաջնորդներէն Հայաստանի մէջ օրէնք մը երբէք դրուած չէ, հապա ասոր հակառակ՝ որ եւ իցէ օրինաւոր իշխա-նութենէ անկախ իր գոյութիւնն ունե-

ցած է։ Որովհետեւ չէ թէ միայն Խօս-րովայ ժամանակներէն յառաջ առաջնորդաց պատուէրներն այս սովորութեան հակառակ են, (ինչպէս Յովհ. Իմաստասիրի ժողովոյն ԺԱ. կանոնէն յայտնի է), հապա նաեւ անկէ շատ ետքն ալ Ներսէս Շնորհալի (ինչպէս վերը տեսանք) սաստիկ առաջնորդաց պատուէր կամ թոյլտուութիւն մը չի գիտեր, զոր որ հարկ էր թէ գիտնար, հապա ասոր հակառակ թէ՛ ինք եւ թէ՛ իր ժամանակակիցները կը շարունակեն իւղով օծումը հիւանդին հարկաւոր եւ խորհրդոյն էական ցուցընելու եւ սորվեցընելու։

3. Բայց այս օրուան օրս ձեռքերնիս ունեցած բոլորովին ստոյգ եւ անոր համար ալ մեծագին ակնարկութիւնքն այս եղծագործ սովորութեան ծագումը քանի մը դար ալ անդին կը տանին։ Գիտենք կատարեալ ստուգութեամբ թէ Հայաստանի մէջ երախայութեան, դըրօշմի, հիւանդաց, եկեղեցւոյ, սեղանոյ օծմանց նիւթոյն, եւ անոնց աղօթքին նկատմամբ ութերորդ դարուն առաջին

կէսին մեծ խառնակութիւն տիրած է՝ անոնց ամենուն ալ Երուսաղեմէ բերուած սուլիի մէջ, խաչի ձէթ անուամբ իւղ մը գործածելով եւ անոնց ամէն մէկուն զատ աղօթք չգործածելով ։ « Այսպիսի խառնաքնդոր եւ եղծագործ սովորութեանց » անդրագոյն ծագումը , չի կրնար որոշ ըսել՝ նոյն իսկ Յ. Իմաստասէր , թէ արդեօք իրմէ « առաջիններուն անհոգութիւնը , թէ ժամանակին կարճութիւնը կամ հիւանդութեանց մէկէն վրայ հասնիլն եղած է* » ։ Որչափ ալ՝ աս

* Յովհ. Իմաստ. Յուշք. Ժողովոյն , Դ. « Յառաջագոյն իսկ արժան էր յիշել իբրեւ զմեծագործ եւ զբազմերախտ ի Քրիստոսէ պարգեւեալ մեզ աւանդ . զիւղոյն սրբոյ ասեմ, որով զշնորհին սուրբ ի մեզ ձգեմք ։ Քանզի յոյժ առատաբար նովաւ եւ այլապէս ի միմեանց վարիմք . զոր եւ տեսաք իսկ առ մերով ժամանակաւս ։ Քահանայից ձէթ ընդունել յԵրուսաղեմէ , խաչի ձէթ զնա անուանելով , եւ զնոյն նովին ամանօք առ մի ըստ միոջէ մկրտեալսն իւրաքանչիւր ումեք վերստին օրհնել ։ . . . Եւ դարձեալ՝ նովին ձիթով օծանէին զմկրտեալսն եւ զերախայսն այլ եւ զհիւանդս եւ զեկեղեցի եւ զսեղանս

Հայրապետն իր ժողովոյն 9րդ, 10րդ եւ եւ գլխաչս ։ Որ Թէպէտ եւ Հոգին մի է եւ առհաւատչեայ Հոգւոյն իւղն նոյն է, սակայն բազմազգի մերում ըստ փրկութեանն, բազմօրինակ եւ խորհուրդ փրկութեանն հրաշագործի․ ըստ Նմին եւ տեղիքն որոշին ի միմեանց . . . այլ եւ աղօթք եւ գործառնութիւնն ոչ ամենայն զմիոյ մատուցանէ մեզ փրկութեան պարգեւ, եւ ոչ մին զամենեցուն, եւ ոչ նմանապէս միմեանց օգտամատոյց մեզ լինելով․ այլ երախայութեանն օծումն զհրաւիրականն ունի դրոշմ . . , ի հիւանդութեանն՝ զառողջութեանն ունիմք կարօտութիւն . . . ։ Սոցա ապաքէն եւ աղօթքն եւ քարոզութիւնն եւ օծմունքն՝ բաժանաբար ըստ իւրաքանչիւրոցն վայելէ լինել խորհրդոյ ։

Եւ պատճառ ոչ ունիմ ասել, զանփոյթն առնելոյ զառաջնոցն այսպիսի խառնաքնդոր եւ եղծագործ սովորութեանց, եթէ ժամանակի կարճութիւն, եթէ հիւանդութեանց ի վերայ անկումն . . . . զայս ի նոսա եւ յԱստուած թողլի է ։ իսկ մեզ իբրեւ Հայրասիրաց ոմանց որդւոց՝ զառ ի նոցանէ անտես մնացեալն, ձեռն տալովն Աստուծոյ, տեսանել արժան է, եւ ի բարեկարգութիւն եւ ի բարեզարդութիւն ածել» էջ 7-8 ։

11րդ կանոններովը վերոյիշեալ պաշտամանց նիւթերն եւ անոնց օրհնութիւնը կը ցուցընէ, ան Երուսաղեմէն բերուած խաչի ձէթը մէյ մը խափանուելէն ետքը՝ երկայն ատեն դժուարութիւն եւ ընդդիմութիւն զգացուած է՝ Հասարակ ձէթն առնելու եւ օրհնութեամբ սրբելով խորհրդական գործողութեանց մերձեցընելու ։

4. Գիտենք դարձեալ պատմութենէ՝ որ Հայաստանի մէջ՝ եկեղեցական օծմանց մէջէն միշտ ձէթը կը սպրդի կ՚ելլէ ։ Ա. Ատեն մը մեռոնին մէջէն ձէթն անհետ եղած էր, որն որ Յունաց՝ Հայոց վրայ խօսելու առիթ տուաւ ։ Բ. Երախայրից իւղն եւ անով օծելը Հայաստանի մէջ շատերէն խափանուած էր, չէ թէ միայն հին* հապա նաեւ նորագոյն ատեններըը** ։ Գ. Ասանկ ալ Աւագ հինգ-

* Յովհ. Իմաստասէր Ցաջքն. Ժողովոյն. Ե. էջ 8. «Եւ ոչ յերախայութեանն նախկին մատուցանելն ձեռնադրութեամբ յօծումն»։

** Տես ի չորրորդ լիջի յառաջաբանի Մաշտոցին տպ. ի Վենետ. 1840 ։

շաբաթւոյն հանդիսութենէն մինչեւ ցայսօր օրհնեալ իւղը խափանուած է, թէպէտ իւղոյն օրհնութիւնը ճաշոցին մէջ կը կենայ*։ Վերջին օծումն առանց օրհնեալ ձիթոյ՝ ուրիշ բան չէ՝ բայց եթէ [illegible] օրինակ մը։

Բայց վերոյիշեալ կեղծիքը չէ թէ մինակ պատմութեան մէջ գոյութիւն չունի, չէ թէ մինակ պատմութեան տուած ակնարկութիւններովը իբրեւ ծուխ ծխանի կը ցնդի, հապա միանգամայն անյարմար է ան բանը մեկնելու՝ որուն համար գոյացած է։

Ո՞ր հիւանդ կրնար զանց առնելով խոստովանութեան խորհուրդը՝ իր բոլոր վստահութիւնը վերջին օծման խորհըրդոյն պահել, թէ որ քահանան, ինչպէս որ ըստ կարգի պէտք է ըլլալ, վերջինը չի տար՝ մինչեւ որ առջինը չ՚ընդունուի։ Ուստի երբէք ան պատիր վստահութիւնը չէր կրնար վերջին օծման բարձումը հարկաւոր ընել։

Դարձեալ վերջին օծմանէ՝ օծումը

* Ճաշոց, էջ 219։

վերցընելով, կամ ժողովուրդը կը խաբուէր կարծելով թէ վերջին օծման խորհուրդ չի՛ տրուիր կոր և անով կ'ստիպուէր բոլոր վստահութիւնը խոստովանութեան խորհրդոյն վրայ դնելու, և կամ գիտէր՝ որ ան գիշերաժամ ըսուածը ճշմարիտ վերջին օծման խորհուրդ է։

Թէ որ առաջինն է, ան ատեն որչափ ալ ան գիշերաժամը ճշմարիտ վերջին օծման խորհուրդ ըլլայ, միշտ Էջմիածնական եկեղեցւոյ հաւատացեալ հիւանդը կը զրկուէր խորհրդոյն մխիթարութենէն և մեծագոյն պտուղներէն՝ որոնք եռանդագին ընդունելութենէ կախում ունին եւ զրկողներն ալ ամէն անդամուն ծանր մեղաց պարտապան պիտ'որ ըլլային։

Թէ որ երկրորդն էր, ան ատեն պարապ տեղ աս օծումը կը վերցընէր Հայաստանեայց եկեղեցւոյն, որովհետև հիւանդը գիտէր թէ որչափ ալ օծումը վերցուած ըլլայ վերջին օծման խորհուրդը վերցուած չէ, ուստի կրնար դարձեալ իր վստահութիւնն այս գիշե-

բաժանորդուած վերջին օծման խորհըր-դոյն վրայ դնելով խոստովանութեան խորհուրդն անփոյթ ընել։

Թող տանք աս Տաճկաստանի մէջ հրատարակուած Քրիստոնէականներուն չըլթան՝ Կ-Պոլսոյ ամենէն նորքինը խօ-սել տալով, ան՝ որ կարծես թէ աւելի կը հերքնէ քան թէ կը վարդապետէ։

« Հ. Եօթներորդ խորհուրդն ո՞րն է, կ՚ըսէ։

« Պ. Վերջին օծումն, որ օծումն հի-
« ւանդաց ալ կ՚ըսուի, և այն խորհուր-
« դըն է՝ որ ծանր հիւանդներուն վրայ
« քահանաները կ՚երթան սուրբ Աւետա-
« րան եւ գիրք կը կարդան, եւ սուրբ
« փայտով կամ սուրբ Մասունքներով
« խաչահանգիստ կ՚ընեն և սուրբ Հա-
« ղորդութիւն կու տան։

« Հ. Օծումն ըսուածը ասո՞նք են։

« Պ. Չէ. Դրոշմի խորհուրդին օծման-
« նը պէս այս խորհուրդիս մէջ ալ հիւան-
« դին աչքն ու ականջը եւ քիթը եւ բե-
« րանը և ձեռքը և սիրտը եւ ոտքը յատ-
« կապէս օրհնուած իւղով օծել կայ։

« Հ. Հապա հիւանդներուն ինչո՞ւ չ՚ըլ-
» լուիր աս օծումը ։

» Պ. Վասն զի ընելը հարկ չէ սե-
» պուած, եւ օրինաւոր պատճառներ ե-
» ղած են՝ այս խորհուրդիս արարողու-
» թենէն օծումը խափանելու (էջ 11-13)։

Հոս զարմանալի կերպով՝ գիչերա-
ժամը բաւական չըլլալով՝ խաչահանգիս-
տըն ալ, սուրբ Հաղորդութիւնն ալ օգ-
նութեան կ՚առնուի՝ որ գոնէ անանկ վեր-
ջին օծման նիւթը, կերպը, ամէն բանը
լեցուի ։

Աստանկ Տաճկաստանի քրիստոնէա-
կան վարդապետութիւնները ։

Ի՞նչ կ՚ըսեն Հայոց մայր եկեղեցւոյն
նոր քրիստոնէականները ։

Գ. Աս Մայր Աթոռոյն քրիստոնէա-
կաններովը նոր երեւոյթ մ՚ալ կ՚ունենայ
խնդիրը ։

Ջատոնք գրողները, ինչպէս ուրիշ
անգամ ըսինք, ընդհանրապէս խօսելով՝
իրենց Տաճկաստանի եղբայրներէն ա-
ւելի ուսումեւ հմտութիւն ունենա-
լով քիչ մ՚աւելի տեսած են թէ ինչ

դժուարութիւններ կան ասանկ ծաղրական ձեւի բերուած խորհուրդ մը պաշտպանելու, թէ ասանկ առանց նիւթոյ խորհուրդ չ'ըլլար, եթէ վերջին օծումը ճշմարիտ Նոր օրինաց խորհուրդ է՝ անոր նիւթը պէտք է որ ի Քրիստոսէ որոշուած ըլլայ, եւ թէ վերջապէս բոլոր տիեզերական եկեղեցին մաս մաս, կամ բոլորը մէկէն խորհրդոյ մը նիւթ չի կրնար փոխել, եւ անոր համար՝ ան օրինաւոր ըսուած պատճառն ալ, իբրեւ բոլորովին մանկական, քրիստոնէական վարդապետութեանց մէջ մտնելու արժանաւորութիւն չունի։

Արդ՝ աս կողմերէն երկու քրիստոնէական ունինք առջեւնիս, մէկը հնագոյն, մէկալը նորագոյն, մի եւ նոյն կաթուղիկոսին հովանաւորութեան տակ կամ հաւանութեամբը հրատարակուած։

Ասոնք երկուքն ալ՝ չէ թէ մինակ նախընթաց Տաճկաստանի մէջ հրատարակուած քրիստոնէականներէն աս նիւթիս մէջ կը խոտորին, հապա իրենք իրենց

մէջ ալ իրարու բոլորովին համաձայն չեն ։

Հնագոյնը , այս ինքն՝ Տփխիս եւ միանգամայն Կալկաթա հրատարակուածը (անշուշտ պատկառելով՝ առանց օծման վերջին օծում սորվեցնելու) չի համարձակիր աս նիւթիս մէջ ռուսական բնագրէն հեռանալու ։

« Հ . Զ՞ինչ է , կ՚ըսէ , վերջին օծումն ։

« Պ . Է՛ խորհուրդ՝ յորում հաւատա-
» ցեալն՝ անկեալ ի հիւանդութիւն ինչ ,
» օծութեամբ ի քահանայէն իւղով՝ ըն-
» դունի զբժշկութիւն եւ զմեղաց թո-
» ղութիւն ։

» Հ . Ո՞վ է կանոնադիր խորհրդոյս ։

« Պ . Հոգին Սուրբ ի ձեռն Առաքե-
» լոյն Յակոբայ , որ գրէ — Հիւանդա-
» նայցէ ոք ի ձէնջ՝ կոչեսցէ զերիցունս
» եկեղեցւոյն եւ արասցեն ի վերայ նո-
» րա աղօթս , օծցեն իւղով յանուն Տեա-
» ռըն — եւայլն ։

« Հ . Առ ժամանա՞կ մի աւանդեցան եկեղեցւոյ այս ամենայն խորհուրդք ։

« Գ. Մշտնջենաբար . . . » ( էջ 127 —128 ) ։

Ուրեմն սա քրիստոնէականին համեմատ՝

1. Իւղոյն օծումն է՝ որ հիւանդը բժշկութիւն եւ մեղաց թողութիւն կ՚ընդունի՝ սա խորհրդոյս մէջ։

2. Վերջին օծման խորհուրդը չէ թէ Քրիստոս Տէրն մեր երկրի վրայ մեզի հետ եղած ատեն կանոնադրած է, հապա անկէ ետքը Յակոբոս Առաքեալ՝ Հոգւով սրբով կանոնադրեր է ։

3. Աս կանոնադրութիւնը [կ]է՝ օծում եւ թէ՝ աղօթք կը պարունակէ ։

Բայց այս կէտերէն եւ ոչ մէկը Նոր Հայաստանեայց գործածութեանը հետ կրնայ համաձայնիլ։ Անոր համար՝ Նորագոյն ( 1850 ին ) (ընդարձակ եւ կարճ) քրիստոնէականները նոյն գործածութիւնն արդարացընելու համար նոր դրութիւն մը առջեւնին կը հանեն ։

Լսե՛նք ինչ կ՚ըսեն։

« Հ. Խորհուրդն օծման հիւանդաց ե՞րբ աւանդեցաւ ի Քրիստոսէ ։

« Գ. Ի տալ Նորա առաքելոց զզօրու-
» թիւն կամ զիշխանութիւն բժշկելոյ ըզ-
հիւանդս. » Զհիւանդս բժշկեցէք. »
Մատթ. Ժ. 8։

« Հ. Առաքեալք որո՞վ եղանակաւ սո-
» վոր էին կատարել զայս խորհուրդ։

« Գ.․ Մերթ՝ ձեռս միայն դնելով ի
» վերայ հիւանդաց եւ աղօթելով, եւ
» մերթ եւս՝ օծանելով զմարմինս նոցա
» իւղով յանուն Տեառն։

« Հ. Մա՞րթ է ուրեմն եւ առանց օ-
» ծութեան իւղոյ կատարել զխորհուրդ։

« Գ. Այո՛. որպէս Հայաստանեայց ե-
կեղեցւոյ է սովորութիւն » (էջ 63—64)։

Վերջապէս ուրիշ տեղ մ'ալ աս քը-
րիստոնէականները վերջին օծման խոր-
հուրդն ի պատուիրանէ հարկաւոր խոր-
հուրդ չեն սեպեր, հապա պսակի ու
կարգի խորհուրդներուն կարգը կ'անցը-
նեն, իբրեւ խորհուրդ մը՝ « որն որ մի-
նակ ուզողներուն կը տրուի »։

Ասանկով կը կարծեն աս քրիստոնէ-
ականները թէ ալ ամէն բան կարգի դը-
րուեցաւ. որովհետեւ [illegible]ոնուեցաւ աս

հուրդը կատարած են։

Յառաջ կը բերուի Գործոց առաքելոց ԻԸ. 8. Պոպղիոսի հօրը վրայ եղած դիպուածը։ Երբոր Պօղոս Առաքեալ՝ նաւաբեկ ըլլալէն ետքը նաւին մէջ գըտնուած հեթանոս ընկերներովը Մելիտէ (Մալթա) կղզին ելաւ՝ հոն ոչ Հրէից մէկը եւ ոչ քրիստոնեայ եղբայր մը դիմացը ելաւ, հապա մինակ հեթանոս բարբարոսներ։ Բայց որովհետեւ Պօղոս Յուլիոս Հռոմայեցի հարիւրապետին հետ էր, կղզւոյն Հռոմայեցի Պոպղիոս կառավարը երեք օր իրենց ընդունելութիւն ըրաւ։ Այս երեք օրուան միջոցին մէջն էր՝ որ Պոպղիոսի հայրը տենդով ու թանչով պառկեցաւ։ Առաքեալը քովը գնաց, աղօթք ըրաւ, ձեռքը վրան դրաւ եւ հիւանդը ողջացուց։ Այս բըժըշկութեան վրայ բոլոր կղզւոյն մէջ գտնուած հիւանդներն եկան՝ որ բժըշկուին. երեք ամիս Առաքեալն՝ հոն կենալով ինք առջի անգամ քրիստոնէութեան սերմը հոն թողուց։

Ափսոս որ աս դիւտը այնչափ բա-

ընյաջող չէ ։ Աս քրիստոնէականին հեղինակը մեզի ամէն բանէ առաջ ցուցընելու էր՝ թէ Պօղոսի հայրը հաւատացեալ էր, մկրտեալ էր ։ Բայց ասիկա մեզի յաւիտեան պիտի՛ որ չկրնայ ապացուցանել ։ Կրնա՞յ մէկուն վաւեր եւ օրինաւոր կերպով վերջին խորհուրդը (կամ ընդհանրապէս խորհուրդ) տրուիլ՝ որն որ դեռ առջի խորհուրդն առած չէ ։ Վերոյիշեալ պատմութեան մէջ ուրիշ բան չենք տեսներ՝ բայց եթէ հրաշալի բժշկութեան մը պատմութիւն, որն որ կոգւոյն մէջ քաղցրութեան դուռը կը բանայ ։

Ի՞նչ կ՚ըսէ Համդխարանին հեղինակն աս Նոր տեսութեան ։ Համդխարանին հեղինակը, հիմա Հայաստանեայց Էջմիածնական եկեղեցւոյ գլուխը, աս Նոր տեսութիւնը սիրով ընդգրկելով իրեն կը սեպհականէ ։ Ըստ այսմ՝ Հայաստանեայց եկեղեցւոյ օծման հիւանդաց կամ « Եօթներորդ խորհուրդն եկեղեցւոյ է աղօթքն ի վերայ հիւանդաց, որ կը կատա-

րի՝ հիւանդաց վրայ ձեռք դնելու (էջ 358). անանկ՝ որ բուն խորհրդոյն նիւթը քահանայքին ձեռք դնելն է (էջ 360—363). իսկ կերպն՝ անշուշտ պիտի՛ որ ըլլայ Տեառըն մերոյ Յիսուսի Քրիստոսի ամենակարող անունը կարդալը (Ժամագրքին) « Փառաւորեա· շնորհ » աղօթքն ըսելով (էջ 364)։

Այսանկ ձիթոյ օծումը Հայոց եկեղեցւոյն վարդապետութեան մէջ՝ նախ արարողութիւն ու ծէս մըն էր, ետքէն վերոյիշեալ սիւնհոդոսին ատենը խորհրդոյն բուն ճշմարիտ եւ պատուիրեալ նիւթն էր, անկէ ետքը դարձեալ արարողութիւն ու ծէս եղաւ, անոր վրայ՝ նորէն դարձաւ ի Քրիստոսէ դրուած ու առաքեալներէն գործածուած նոյն խորհրդոյն նիւթն եղաւ, բայց ոչ մի միայն նիւթ։

Նիւթ մը՝ որն որ կաթուղիկէ եկեղեցւոյ սա խորհրդեան մէջ ի սկզբանէ մինչեւ ցայսօր ունեցած ցկատարած աշխարհի գործածութեան մէջ ունենալու նիւթէն շատ հեռու է։ Հայաստա-

Նեայց եկեղեցին հիմայ օծումն աս խորհրդեան նիւթը կը սեպէ Տաճկաստանի մէջ, ձեռք դնելն աս խորհրդեան նիւթը կը սեպէ Ռուսիոյ մէջ. ասոր ըստ ամենայնի ներհակ՝ Կաթուղիկէ եկեղեցին ամէն ատեն ու ամէն տեղ ձեռք դնելն աս խորհրդեան մէջ արարողութիւն կը սեպէ, օրհնեալ ձիթով օծելն աս խորհրդոյն (մերձաւոր եւ հեռաւոր) նիւթը կը սեպէ։

Առ ժամս ունա՛լ մխիթարութիւնք՝ որ վերոյիշեալ մայր եկեղեցւոյն քրիստոնէականները գոնէ փոքր քայլ մ'առած են Կաթուղիկէ եկեղեցւոյ մի միայն ճշմարիտ վերջին օծման խորհրդոյն մօտենալու։ Մինչուկ հիմա կերպ մը՝ առանց նիւթոյ կը սորվեցուէր, հիմա՝ ձեռն դնել մ'ալ կ'ընդունուի։ Կը յուսանք թէ ատեն գայ՝ որ աս ձեռքին գոնէ մէկ ծայրը կաթիլ մը օրհնեալ ձիթով թրջի։

Արդ՝ մինակ բոպէի մը համար ենթադրենք՝ որ հաւանական ըլլայ, նաեւ շատ հաւանական ըլլայ՝ թէ առանց օրհնեալ

իւղոյ օծման կարենայ վաւեր վերջին օծման խորհուրդ. տրուիլ եւ առնուիլ . աս ենթադրութեան մէջ ալ կ'ըսեմ, քանի մը վերջին գործնական դիտողութիւններ կը մնան .

1. Էջմիածնական եկեղեցին իր քրիստոնէականներուն մէջ միաբարբառ կը վարդապետէ՝ թէ վերջին օծման խորհուրդը խափանած չէ , եւ թէ նոյնը կը մատակարարէ (գիշերժամու անուամբ) քանի անգամ որ հարկաւոր ըլլայ . բայց կը տեսնենք՝ որ գործադրութիւնը (pratique) վարդապետութեանը համաձայն չէ : Թէ որ իրաւցնէ իւղին հիւանդաց խորհուրդ նոյնը կը մատակարարէ , այնչափ ցանցառ կը պատահի աս մատակարարութիւնը , որ մեր քրիստոնէական բարոյականին սկզբանց նայելով՝ հաւատացելոց այնչափ մեծ բարիք մը այնչափ ընդհանուր զրկումը չի կրնար առանց ծանր մեղքերու ըլլալ՝ գոնէ պաշտօնէից նկատմամբ : Ուստի՝ թէ որ Գիշերժամուն վերջին օծման վաւեր խորհուրդ ըլլալուն համոզուած են Էջմիածնական Հովիւները , գործքերնին իրենց

համոզմանը շատ պարտական կը մնայ ։

2 . Բայց իրօք ալ՝ Էջմիածնական Եկեղեցւոյ վերջին օծում՝ սեպածը՝ քրիստոնէական բարոյականին սկզբանցը նայելով՝ անգործածելի է ։ Այս կերպ վերջին օծման մատակարարութիւնը վէճի տակ է , ուրեմն չի կրնար գործածուիլ, վասն զի բովանդակ քրիստոնէական բարոյականին մէջ միշտ պիտ'որ արժէ սա կանոնը՝ թէ խորհրդոց մատակարարութեան մէջ՝ երբոր խնդիրը վաւեր կամ անվաւեր ըլլալու վրայ է , պաշտօնեայն ստուգիւ ծանր կը մեղանչէ՝ երբոր ապահովագոյն կողմը թող տալով՝ միայն հաւանական կամ նաեւ հաւանականագոյն կողման հետեւի ։ Հաճարէ հացը , օրինակի աղագաւ , Հաղորդութեան խորհրդոյն համար վաւեր թէ անվաւեր նիւթ է , խնդրոյ տակ է . բայց գործնականապէս որոշ եւ անտարակուսելի է՝ թէ ով որ հաճարէ հացով կը պատարագէ ; ծանր կը մեղանչէ . եւ անով եղած պատարագին եւ հաղորդութեան վաւերութիւնը տարակուսական է ։

Դարձեալ՝ նոյն հաղորդութեան խոր-
հրրդոյն մէջ բաժակին սրբագործու-
թեան ձեւին համար՝ ծանր աստուածա-
բաններէն ոմանք էական կը սեպեն՝ չէ թէ
մինակ Այս է արիւն իմ, հապա նաեւ նորոյ
ուխտի, որ վասն ձեր հեղանի ի թողութիւն մեղաց
խօսքերը. հաւանական է եւ շատ հա-
ւանական է՝ որ գոյափոխութեան հա-
մար այս վերջի խօսքերը հարկաւոր չեն.
բայց որովհետեւ նախընթաց կարծիքն
ապահովագոյն է, անոր համար գործ-
նականին մէջ մինակ ան կ'արժէ, ա-
նանկ՝ որ եթէ այս վերջի կտորը մոռաց-
մամբ զուրցուած չըլլայ. պէտք է թէ-
ութեամբ բաժակին ձեւը ամբողջ կըր-
կնել, ապա թէ ոչ՝ թէ բաժակին գոյա-
փոխութիւնը եւ թէ պատարագին վա-
ւերականութիւնը տարակուսական է.
Ուրիշ խորհրդոց վրայ ալ նոյնպիսի դէպ-
քեր բարոյականին մէջ քիչ չեն.

Ի՞նչ պէտք ենք ըսել՝ երբոր Բոլոր քրիս-
տոնեայ եկեղեցիք վերջին օծման համար օրհ-
նեալ իւղն իբրեւ մի միայն վաւերնութ
հարկաւոր սեպած ատեն՝ Էջմիածնական

քահանային անխառով շարունակէ կամ ամենուրին առանցնութեայ եւ կամ իրեն հաւանական երեւցած նիւթով մը (այս ինքն ձեռն դնելով) Գիշերժամու աղօթքները ծանր հիւանդին վրայ պաշտելու՝ իբրեւ ճշմարիտ վերջին օծման խորհուրդ ։ Չէին կրնար Իջմիածնական քրիստոնէականները՝ քրիստոնէական բարոյականին հիմնական սկզբանց՝ տակէ աւելի անհամաձայն վարդապետութիւն մը պարունակել, ան սկզբանց՝ որոնք վերջապէս առողջ մտաց վրայ հիմնուած են ։

3 . Իջմիածնական եկեղեցւոյ վերջին օծումը բարոյականի սկզբանց համեմատ գործածելի ըլլալու համար՝ օրհնեալ իւղէն զատ՝ ուրիշ փոփոխութեանց ալ կարօտ է ։

Լիուլի իրաւունք ունին աս քրիստոնէականներն երբոր (որչափ որ մեր տեղեկութիւնը կը հասնի) 1814էն սկսեալ կ'ըսեն թէ Գիշերժամու պաշտօնը Հայաստանեայց եկեղեցւոյ վերջին օծման պաշտօնն է ։ Այո, աս Գիշերաժամն՝ ինչպէս որ հիմակ Հայաստանեայց Իջմի-

ածնական եկեղեցին իր Մաշտոցին մէջ ունի (1857ին Նոր տպագր. էջ 110–159) վերջին օծման պաշտօնը՝ բայց այնպէս՝ ինչպէս ցուրտ դիակ մը մարդ է, կամ ինչպէս գոհարը մէջէն պակսած տուփ մը՝ դարձեալ գոհարի տուփ է ։

Արեւելեանց վերջին օծում մատակարարելու կերպը ճանչնալէն ետքը՝ ոչ ոք կրնայ վայրկեան մը ասոր վրայ տարակուսիլ ։

Եօթն քահանայք կու գան սովորաբար (ըստ արեւելեան ծիսի)՝ աս խորհուրդը մատակարարելու, իրօք ալ Գիշերժամուն մէջ եօթը անգամ կարգաւ զատ զատ Սաղմոսներէն ետքը՝ Ընթերցուած, Կցուրդ, Աւետարան, Քարոզ եւ Աղօթք կայ ։ Կցուրդներն, Ընթերցուածներն եւ Աւետարանները չէ թէ մինակ մեղաց թողութիւն եւ ծանր հիւանդի բժշկութիւն կը նշանակեն (ինչպէս որ նոյն Գիշերժամուն ընդհանուր վերնագիրն ալ կը ծանուցանէ), հապա միանգամայն օծման գործողութիւնն ալ տեղ կ'ակնարկեն. օրինակի աղագաւ՝

երբոր Այսուրդը կ'ըսէ. Եէրբ Իուղ շէ Էյանէ. երբոր ընթերցուածը կ'ըսէ. Փառք օծութեան տանէք տէ է սրբոյն. երբոր Աւետարանը կը պատմէ. Բերեալ շէշ մի խաչոյ աչնոսէ օծ, կամ երբոր ուրիշ Աւետարան մ'ալ նոյն Գիշերժամուն մէջը կը պատմէ. Օծանէին զբաղում ձէտանքս և բժշկէին ընոսա, եւ երրորդ մ'ալ կը պատմէ. Սամարացի ոմն մարդացեալ պատկաց շէէրս նորա արծնաւէ հէրայ ջէր և գինի:

Բայց որչափ որ ստոյգ է՝ թէ Գիշերաժամի՝ արեւելեան ձեւով վերջին օծման խորհրդոյն պաշտօնն է, նոյնչափ ալ աննտարակոյս է՝ որ սա Գիշերժամու կամ վերջին օծման պաշտօնն՝ անանկ ինչպէս որ այս օրուան օրս Էջմիածնական եկեղեցւոյ ձեռքը կը գտնուի, չէ թէ միայն նիւթոյն, հապա նաև յետին հողմանէ եական խանգարում կրած է, անանկ որ գործածական կամ վաւեր ըլլալու համար՝ նաեւ ձեւը նորոգութեան պէտք ունի:

Կ'ըսենք նորոգութեան միայն. վասն զի բարեբախտութեամբ՝ սա Գիշերաժամին

ուրիշ բան չէ՝ բայց եթէ Յունաց վերջինօծման կամ Սուրբ Իւղոյն մինչեւ ցայսօր գործածած պաշտամանը* թարգմանութիւնը, սա տարբերութեամբ՝ որ հայերէնը յոյն բնագրին համառօտութիւնն է, յունական երգերուն տեղ՝ շարականներէն կտորներ եւ ժամագիրքէն վերջաբանական աղօթքներ, եւ ուրիշ մանր փոփոխութիւններ մնամ են որոնք իրին էութեանը չեն դպչիր։ Բայց դժբախտութեամբ կան անանկներ ալ՝ որ կը դպչին։ Օրինակի աղագաւ՝

Ա. Յոյն բնագրին առաջին ընթերցուածն է՝ ինչպէս բնական է, Յակոբայ Առաքելոյն Ե. գլխէն Համ. 10—20։ « Եղբարք, օրինակ առէք, մինչեւ յօգնուկանութեան »։ Հայերէնը մինչեւ 15 համարը թող կու տայ, վասն զի անոնց մէջ կը յանձնուի՝ որ երիցունք իւղով հիւանդն օծեն, եւ կ'ըսկսի հայերէն թարգմանութեան ընթերցուածը 16։

---

* Ἁγιασματάριον μέγα, Մեծ ծիսարան (Տպ. ի Վենետ. ի Հելլենական տպարանի 1848։) էջ 120-153։

համարէնդ սեպելով՝ թէ աս համարին խօսքերը՝ մինակ աղօթքով վերջին օծման խորհուրդ տալու նպատակաւ են։

բ. Աղօթքին կամ աղօթքներուն մէջէն իւղոյն օրհնութեանը վերաբերեալ խօսքերը վերցուած եւ մնացած պատառուածքը ողջ կերպով կարկտուած են։ Ահաւասիկ աս աղօթքներէն երկու առջինները՝ օրինակի համար։

## ՅՈՅՆ ԲՆԱԳԻՐԸ

### ԱՂՕԹՔ

### Զ Տէր աղաչեսցուք

Տէր՝ որ ողորմութեամբ եւ գթութեամբ քով բժշկես զբեկմունս հոգւոց եւ մարմնոց մերոց, դու Տէր [illegible], զի որ օծանին նովաւ լինիցի նոցա ի բժշկութիւն եւ ի մերժումն ամենայն ցաւոց, ախտից մարմնոյ եւ հոգւոյ եւ ամենայն չարի, զի եւ ի սմին փառաւոր լիցի ամենապատիւ անուն քո, Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից։ (Յուն. Մխ. էջ 127։)

## ՀԱՅԵՐԷՆ ԳԻՇԵՐԱԺԱՄԸ

### ԱՂՕԹՔ

«Տէր՝ որ ողորմութեամբ քով բժշկես »զբեկումն հոգւոց եւ մարմնոց մերոց, Եւ-

» բժշկեա զամենայն ախտս եւ զհիւանդութիւնս » հոգւոյ եւ մարմնոյ ( այս անուն ) ծա- » ռայի քո . զի փառաւորեսցի ամենապատիւ » անունքո . զի քո է ողորմել եւ կեցուցա- » նել , Աստուած մեր , եւ քեզ փառս մա- » տուցանեմք Հօր եւ Որդ . . » (Հայ . Մաշտ . էջ 117) ։

Վերջին կտորը՝ « Զի քո է ողորմել » եւ այլն , յունարէն բնագրին հետեւեալ ընդարձակ աղօթքին վերջերէն առնուած հոս աւելցուած է ։ Դարձեալ՝ յունարէն բնագրին մէջ աս աղօթքը մինակ իւղն օրհնելու համար է , հայերէնին մէջ՝ հիւանդին վրայ առնուած է ։

## ՅՈՅՆ ԲՆԱԳԻՐԸ

### ԱՂՕԹՔ

ԶՏէր աղաչեսցուք

Անսկիզբն , անկատարած , սուրբդ սրբոց՝ որ զմիածին քո զՈրդիդ առաքեցեր բժշկել զամենայն ախտ եւ զամենայն հիւանդութիւն հոգւոց եւ մարմնոց մերոց , առաքեա զՀոգիդ քո սուրբ եւ «օրհնեա զիւղս զայս» , եւ արա՛ ընդ նոյն ծառայի քում (այսմ անուան) ի կատարեալ քաւութիւն մեղաց իւրոց, ի ժառանգութիւն արքայութեան երկնից . զի քո է ողորմել եւ կեցուցանել զմեզ . Քրիստոս Աստուած մեր , եւ քեզ փառս ի վեր առաքեմք , Հօր

եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ , այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից :

( Յետ այսորիկ առնու երէցն ի սուրբ ձիթոյն և օծանէ զհիւանդն .) էջ 131 :

## ՀԱՅԵՐԷՆ ԳԻՇԵՐԱԺԱՄԸ

### ԱՂՕԹՔ

« Անսկիզբն Աստուած , սուրբդ սրբոց ,
» որ զմիածին քո Որդիդ առաքեցեր բժշկել
» զամենայն ախտս հոգւոց եւ մարմնոց մե-
» րոց , առաքեա զՀոգիդ քո սուրբ . եւ փըր-
» կեա ( զայս անուն ) ծառայ քո , եւ ազատեա
» յամենայն մեղաց . զի ողորմած ես եւ
» գթած . եւ քեզ փառս մատուցանեմք ընդ
» Որդւոյ եւ ընդ սրբոյ Հոգւոյդ այժմ . . . »
( էջ 127 :)

Մնացածներն ալ ասոնց պէս :

Արդ՝ վերոյիշեալ երկու տեսակ փոփո-խութեանց առաջինը՝ (այսինքն՝ Առաքե-լական ընթերցուածին գլխաւորի զեղ-չումը) եկեղեցական վարդապետութեան կը դպչի , երկրորդն ալ (այսինքն՝ Իւղոյն օրհնութեան խօսքերուն աղօթքներուն մէ-ջէն զեղչերը) խորհրդոյն վաւերութեանը կը դպչի , որովհետեւ չէ թէ միայն Իւղն եւ օծումը , հապա միանգամայն

Սակայն, ինչպէս գիտենք, առջի անգամ չէ՝ որ ձիթենեաց իւղը Հայոց եկեղեցական պաշտամանցը մէջ սա բախտը կ'ունենայ։ Վերը (էջ 150) չորս իրարու նման դէպք քովէ քով դրինք՝ հիմա ՀԻՆԳԵՐՈՐԴ մ'ալ պիտ'որ աւելցնենք՝ ուր դարձեալ օրհնեալ ՅԵՂԸ տեղի կու տայ։

Ինչպէս Արեւմտեան եկեղեցին Զատկին (նաեւ Պենտեկոստէին) նախընթաց շաբաթ օր, ջուրը օրհնելով եւ վրան երախայից իւղն և միւռոն թափելով՝ նախնական սովորութեան յիշատակը կ'ընէ, որովհետեւ չափահաս երախայք Արեւմտեան եկեղեցւոյ մէջ նոյն օրը կը մկրտուէին, նոյնպէս Արեւելեան եկեղեցին, որովհետեւ շատ տեղ Քրիստոսի Տեառն մերոյ Յայտնութեան կամ Մկրտութեան օրն ալ չափահաս երախաները կը մկրտէր,

---

զայս ի յօծումն ոտից քոյոց հաւատացելոց, եւ խնդրեմք ի մարդասիրութենէ քումմէ, առաքեա ի մեզ զնոյն Հոգի շնորհաց քոց, որ եկեալ բնակեսցի ի մեզ եւ բժշկեսցէ զվէրս հոգւոց մերոց. Եւայլն։

Յայտնութեան օրը նոյն յիշատակը կ'ընէ Ջրօրհնէքով։ Արդ՝ Հայոց եկեղեցին նոյնն է սկզբանէ կը կատարէր ջուրն օրհնելով եւ ձէթ վրան թափելով։ Բայց արդէն աս ձէթը՝ Ջրօրհնէքով մէկտեղ նոյն իսկ Իմաստասէրի ատենները բոլորովին խափանուելու վտանգի մէջ կը տեսնենք*։

Թէպէտ կանոնադրութեամբ կրցաւ Ջրօրհնէքը պահուիլ, բայց պարզ ձէթը դարձեալ սովորութեամբ տեղի տուաւ՝

---

* Յովհ. Իմաստ. էջ 12. «Նախնական սովորութիւն ի վաղնջուց հետէ նախահաւեալ եւ մինչեւ առ մեզ հասեալ, ի վերայ ջուրց զքսան եւ զութերորդն նուագելով յաւուրդ յայդմիկ սաղմոս — Ձայն Տեառն ի վերայ ջուրց — օրհնէին զջուրն ձէթ արկանելով ի նա, որ եւ այժմ ոչ է ամենեւին ի բաց խափանեալ, թէպէտ եւ խանգարիչն Իսրայէլի (սատանայ) տզօր եւ կնատ զօրեղութեամբն նկրտի խափանել»։ — Ետքը՝ ԻԶ. Կանոնը կ'ըսէ. «Պարտ եւ արժան է յայտնութեանն աւուր կատարել զջրոյն օրհնութիւն ի վերայ ջուրց՝ ձէթ արկանելով ի նա եւ աղօթս մատուցանելով։»

անոր տեղն աս անգամ ծիածան գալով : բայց աս փոփոխութեամբ կորսուեցա-ան համեմատութիւնը՝ զորոնք ձէթն աս արտորողութեան մէջ երախայից ձի-թոյն հետ ունէր :

Սակայն եթէ Զրօրհնեաց խնդիրն ըստ ինքեան ծանր չէ, ուրիշ մը կայ որ նոյնչափ թեթեւ չէ, այս ինքն՝ երա-խայից իւղոյն եւ երախայից օծման խնդիրը, որն որ կրնայ շատ բացա-յայտ ցուցընել՝ թէ որչափ դիւրաւ կը մտնէր Էջմիածնական կղերը՝ խորհրդա-ւոր գործողութեանց մէջ պարզ ձէթ չգոր-ծածելու : Որովհետեւ, ինչպէս վերը (էջ 149) ակնարկեցինք՝ արդէն 8րդ դարէն յառաջ՝ կար Հայաստանի մէջ երախայից ձէթ եւ օծում գործածելու եւ կամ նոյն իսկ երախայութեան կարգը կատարելու զանցառութիւն : Բայց աս զանցառու-թիւնն ընդհանուր չէր*, եւ կանոնադր-.

* Յովհ. Իմաստ. « Տեառնականք առ. այսո-քիւք եւ զայս եւս, զի ոմանք զատ ի մկրտու-թիւնն զաղ հանդերձելոյն՝ զհրաժարելոյն ի սատանայէ նոցա հարցմամբ ի վերայ ոչ բե-

րութեամբ առջեւն առնուեցաւ, այս ինքն՝ Ժ. եւ ԺԴ. կանոններով՝ որոնք կը պատուիրեն երախայից ձէթ օրհնել եւ 1. անով մկրտութենէն յառաջ երախան օծել, եւ 2. աւազանին ջրոյն մէջ նոյնպէս մկրտութենէ յառաջ՝ երախայից ձէթէն թափել։ Ըստ արեւելեան ծէսի աս երախայից ձէթը (ինչպէս՝ հիւանդաց ձէթն ալ) քահանան ամէն անգամուն զատ զատ կ'օրհնէ՝ երբ որ պէտք կ'ըլլայ, եւ նոյն ժամայն կ'սպառէ։ Ասանկ՝ կանոնները, ասանկ՝ հին Հայաստանեայց եկեղեցին*։

---

րեն զերջմունս, եւ զորբոյ Երրորդութեանն խոստովանութիւն, եւ ոչ յերեխայութեանն նախկին մատուցանեն ձեռնադրութեամբ յօծումն այլ միայն առ մկրտութիւն աւազանին վաղվաղեալ՝ ի ներքս արկանեն։» (էջ 8։)

* Յովհ. իմաստ. կանոն Ժ. «Պարտ եւ արժան է զմկրտութեանն ձէթ՝ քահանային օրհնել մի ըստ միոջէ ընդ (է) մկրտելն, ըստ բաւականի ժամուն պիտոյից, եւ նոյն ժամայն առ մկրտեալսն (մկրտելիսն) մերձեցուցանելով զօրհնեալն սպառել, . . . եւ միայն 1. օծանել նովաւ զերախայսն եւ 2. զմը-

Բայց այսօրուան Հայաստանեայց Եկեղեցին, չենք գիտեր՝ երբ սկիզբ ընելով, բոլոր երախայից իւղն անհետ ըրած վերցուցած է, անանկ որ քահանայք ոչ երախայից ձէթ աւազանին մէջ կը հեղուն եւ ոչ ալ անկէ առաջ նոյն ձիթով երախան կ'օծեն: Թէպէտ երախայից ձիթոյն տեղ՝ աւազանին մէջ միւռոն կը թափեն եւ անով դարձեալ միւռոնը օրհնեալ ձէթին տեղն անցած կ'ըլլայ: սակայն երախայից օծումը բոլորովին խափանուած է:

---

կըրտեալն (մկրտելին) ընդ (ի) մկրտելն յաւազանին, եւ յայլ խորհուրդ օծման մի՛ իշխեսցէ մատուցանել զնա: » — Դարձեալ՝ Կանոն ԺԴ. « Պարտ եւ արժան է զերախայից ձեռնադրութիւնն եւ զշնչումն եւ զխոստովանելն առ դրունս մկրտարանին կատարել, եւ ապա տանել ի ներքս՝ ուր աւազանն է եւ մկրտել: » (էջ 26 — 27):

Յովհան Իմաստասէր (էջ 8.) երեք իրարու ետեւէն ըլլալու օծում կը համրէ: « Երախայութեանն օծումն », 2. « Աւազանին օծումն », 3. « Զկնի մկրտութեան օծումն » (այս ինքն օծումն դրոշմի:) — Ասոնցմէ

*Այսպէս Երախայից օծումը՝ հիւանդաց օծման բախտակից եղած է, վասն զի երկուքին ալ նիւթը նոյն է։*

*Թէ որ Զւորհնեաց ձիթոյն խափանումը մեծ նշանակութիւն մը չի կրնար ունենալ, թէ որ Երախայից ձիթոյն եւ անոնց օծմանը զանցառութիւնը՝ որն որ թէ՛ Արեւմտեան եւ թէ՛ Արեւելեան եկեղեցւոյ, ինչպէս նաեւ հին Հայաստանեայց եկեղեցւոյ, ամէն ատենուան սովորութեանը բոլորական բարձումն է,*

---

*առջինը՝ այս ինքն երախային անձն օծելը կրնանք տեսնել Հայոց առջի անգամ երախայանալուն. տես Ագաթանգ. Տպ. 162 էջ 621. « իւղն օծութեան՝ զոր արկանէր Գրիգորիոս ի վերայ մարդկանն, շրջան առեալ ի մէջ գետոյն շուրջ մարդկան խաղայր։ » — իւղ օծութեան անունը դեռ Մաշտոցին մէջ մնացած է (էջ 26), որովհետեւ հին լեզուաւ (ինչպէս Ասորւոց քով ալ) այսպէս կ'անուանուի Երախայից իւղը։ Սարգիս վարդապետ (երկոտասաներորդ դարուն) նոյնը կ'անուանէ « իւղ օծութեան Երախայից՝ » զորն որ Ներսէս Լամբրոնացի նոյն դարուն մէջ կը ցուցընէ դեռ ի գործածութեան (Մեկն. Պատարագի)։*

մկրտութեան խորհուրդն անվաւեր չ՚ը-
նէր, հիւանդաց օծման բարձումը՝ հիւ-
անդաց խորհուրդն անվաւեր կ՚ընէ։

Էջմիածնական Մաշտոցին տպագրու-
թեանցը (ինչպէս Ա. ադերտամ տպուա-
ծին մէջ) եւ Մայր Մաշտոցին մէջ երա-
խայից իւղոյն գործածութիւնը չկայ այլ
նէ՝ գոնէ երախայից իւղ օրհնելու աղօթ-
քըն ու քարոզը դեռ անարատ կեցած են,
բայց Նոր Մաշտոցին մէջ երկուքն ալ փո-
փոխութիւն կրած են։

Իսկ ան վերջին ապաւէնը՝ որուն կը
դիմեն Էջմիածնի Աթոռոյն քրիստոնէ-
ականները, այս ինքն իւղով օծման տեղ
ձեռաց դրութիւնն աս խորհրդոյս հաւա-
սարազօր նիւթ ցուցընելով, չէ թէ մի-
նակ սուրբ Գրոց, աւանդութեան եւ
եկեղեցական վարդապետութեան մէջ
տեղի չունի, հապա եւ ոչ Գիշերժա-
մուն մէջ անանկ անմիջական կերպով ձեռք
դնել մը նշանակուած կայ, այլ մի-
նակ Աւետարան դնել հիւանդին գլու-
խը (տես Մաշտոց էջ 156)։ Ցունաց
քով աւագերէցը նոյնպէս աւետարանը

կը դնէ, եւ (կաթուղիկեայ յունածէս քահանան) միանգամայն բթամատը գլուխը դպցուցած աղօթելու առեն կ՚ըսէ. «Ոչ դնեմ ես զմեղաւոր ձեռն իմ ի վերայ գլխոյ սորա, այլ դու զքո ձեռըն զկարողն եւ զզօրաւոր՝ որ ի սուրբ աւետարանիս յայտնի է, ձգեա ի վերայ գլխոյ ծառայի քո» եւայլն:

Նոյն իսկ Էջմիածնական քահանայք՝ որոնք մեր օրերը սկսած են նաեւ աս աւետարանադրութիւնը զանց առնել՝ հիւանդը եւ շրջականները չխրտուցանելու համար, ասով յայտնի կ՚ընեն՝ թէ լրջաբար չի խօսուիր երբոր կ՚ըսուի՝ թէ ձեռնադրութիւնը վերջին օծման խորհրդոյն նիւթն է:

Ալ կնքենք խօսքերնիս, վերջապէս սա խորհրդածելով՝ թէ չկայ անանկ կէտ մը՝ որուն մէջ Նոր Հայաստանեայց եկեղեցւոյն գործածութիւնն այնչափ ուղղակի հին Հայաստանեայց եկեղեցւոյն վարդապետութեանն անհամաձայն, չկայ կէտ մը՝ որուն մէջ այնչափ ուղղակի իր կանոնագիրքն իր Մաշտոցին եւ

Մաշտոցն ալ՝ բուն մասին Պաշտօնէից գործքին հակառակ ըլլայ, որչափ առանց օծման՝ վերջին օծման խորհուրդ մը։

Մի ընդհանուր Նորոգութեան՝ որն որ առոր եւ նմաններուն համար ութերորդ դարուն կատարուեցաւ, այս օրուան օրս նորէն կարօտութիւն կայ։

Մօտ ատեններս՝ Հոգեւոր ժողովոյ հաւանութեամբն ելած հրատարակութիւն մը* վերջին օծման խորհուրդը՝ վերջին խորհուրդ աղօթից կ՚անուանէ, ուզելով՝ որ անունը գործքին համաձայնի. կը յուսանք՝ որ կը լուսընայ նաեւ այն մեծ օրը՝ որ չէ թէ այսպէս անունը գործքին, հապա գործքը անուան միաբանի եւ վերջին խորհուրդը վերջապէս ըլլայ «խորհուրդ աղօթից եւ եւղոյ» — Εὐχέλαιον —։

## ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ

Աս խորհրդոյս, ինչպէս տիեզերական ժողովները կ՚ըսեն, թէ նիւթը, թէ ձեւն եւ թէ պաշտօնեայն որոշ են Առաքելոյն խօսքին մէջ, բայց ձեւը միայն ըստ գոյացութեան որոշ է.

* Քրիստոսի եկեղեցին եւ անոր հակառակորդները · էջ 25։

այսինքն՝ թէ նիւթը մինակ (օրհնեալ) ձէթ է, ձեւը՝ (ըստ ընդհանրագոյն գործածութեան) աղօթք, եւ պաշտօնեայն՝ երէց (այսինքն՝ մինակ եպիսկոպոս եւ քահանայ)։ Մնացածը Առաքելոյն խօսքէն որոշուած չէ, եւ Արեւմտեան եւ Արեւելեան եկեղեցւոյ սովորութիւնը կը տարբերի։

1. Նիւթոյն՝ այսինքն իւղոյն օրհնութեանը կողմանէ։ - Արեւմտեան եկեղեցւոյ մէջ մինակ եպիսկոպոսը տարուէ տարի Աւագ Հինգշաբթի օրը Հիւանդաց իւղը կ'օրհնէ, որ երկրորդ տարին՝ ա՛լ չի գործածուիր, անանկ՝ որ եթէ Արեւմտեան ծխի քահանայ մը իրմէ օրհնուած իւղով աս խորհուրդը տայ, պէտք չէ՝ որ վաւերաբար խորհուրդ տրուած բըռնուի։ Բայց ասոր հակառակ՝ Արեւելեան ծխին մէջ կրնան նաեւ քահանայք այս օրհնութիւնը կատարել. բայց տարին անգամ մը չէ, հապա ամէն անգամուն զատ զատ՝ երբոր գործածութիւնը պէտք կ'ըլլայ։ Ասանկ Յունաց քով, ասանկ երբեմն նաեւ Հայոց մէջ։ Իբրեւ օրինաւոր հաստատած են աս սովորութիւնը՝ Կղեմէս Ը. եւ Բենեդիկտոս ԺԴ. իրենց Սահմանադրութիւններուն մէջ։

2. Կերպին այսինքն աղօթքին ձեւին կողմանէ։ — Արեւմտեան եւ Արեւելեան

եկեղեցիներն ի սկզբանէ մի եւ նոյն որոշ աղօթքի ձեւն ունեցած չեն, բայց ամենուն իմաստն այն նոյն է, եւ Հռոմէական եկեղեցին իր ձեւէն ուրիշ ձեւ այլ գործածելու ազատութիւն թողուցած է, երբոր նիւթը հնութիւնն աւանդած է եւ բացայայտ կամ լռելեայն ճանչցուած, առաքելական Գահէն՝ թէ կրնայ խորհրդեան գործքը նշանակել։

Հայոց Գիշերժամուն մէջ ունեցած ձեւը Յունաց ձեւն է, թէ որ, ինչպէս ըսինք, բնագրին համեմատ ճշդուի։

3. Պաշտօնէից թուոյն կողմանէ։ — Արեւմըտեան եկեղեցւոյ սովորութիւնն է՝ որ մինակ մէկ քահանայ կամ եպիսկոպոս սա խորհուրդը մատակարարէ, իսկ Արեւելեան եկեղեցւոյ մէջ՝ բազմաթիւ (ըստ կարգի՝ եօթը) քահանայք մէկտեղ նոյն խորհրդոյն սպասաւորեն. միայն թէ մի եւ նոյն քահանան թէ պէտք է օծել եւ թէ կերպը զրուցել (Բենեդ. ԺԴ. Թեմ. սինհ. Ը. Գլ. 4)։ Բայց (ինչպէս հիմակ ալ Յոյնք կ'ընեն) նաեւ հինգ կամ երեք, երբեմն նաեւ մինակ մէկ քահանայ կրնայ մատակարարել. վասն զի մէկ քահանայ մըն ալ բաւական է յանուն բովանդակ եկեղեցւոյ գործելու։ Հայոց հին սովորութիւնն ալ չէր կրնար ասկից տարբեր ըլլալ։ Արդէն Գիշերժամուն մէջ կը տեսնենք՝ բազմաթիւ եւ անզոյգ թուով երի-

ցունքը՝ երբ որ (էջ 156) կ՚ըսէ. Յայնժամ կէս ի քահանայից կալցի յաջմէ հիւանդին, եւ կէս ի ձախմէ, եւ առաջներեցն եկեալ դնէ զԱւետարանն ի վերայ գլխոյ հիւանդին։ Բայց իմաստասիրի Ժողովոյն ԺԱ. կանոնը՝ զոր որ արդէն վերը յիշեցինք, կ՚ենթադրէ՝ թէ միայն մէկ քահանայ մ՚ալ կրնայ աս խորհուրդը մատակարարել։

4. Օծուելու անդամներուն կողմանէ։ —Արեւմտեան եկեղեցին, ինչպէս վերը տեսանք, տեսանելիքը, լսելիքը եւայլն կ՚օծէ։ Արեւելեանք (գոնէ Յոյնք) կ՚օծեն հիւանդին ճակատը, ծնօտը, երկու այտերը. ետքէն՝ կուրծքը. ետքէն ալ՝ երկու ձեռքը. եւ վերջապէս ոտուըները։ (Արկուդ. Գիրք Ե. Գլ. 7։)

Անշուշտ աս էր նաեւ Հայոց սովորութիւնը, երբոր դեռ աս խորհուրդը կը գործածէին. Ուստի Կ-Պոլսոյ 1858ին քրիստոնէականին նշանակած անդամներուն օծումը Արեւմտեան ծիսին կը վերաբերի։ Հիմակուան Յոյները, գոնէ մայրաքաղաքիս մէջ, ոտուըները զանց կ՚առնեն; իսկ ձեռուըներուն թէ՛ մէջը եւ թէ՛ վրան խաչաձեւ կ՚օծեն։ Իսկ Աւագ հինգշաբթի օրը՝ թէ՛ կուրծքին եւ թէ՛ ոտուըներուն օծումը զանց կ՚առնէ եպիսկոպոսը կամ քահանան։

## ԳԼՈՒԽ Ե.

### ՊԱՏԱՐԱԳԻ ԲԱԺԱԿԻՆ ՄԷՋ ԳԻՆԻՈՑՆ ՀԵՏ ՋՈՒՐ ԽԱՌՆԵԼ ՀԱ՛ՐԿ Է ԹԷ ՉԷ ։

### 1.

Կաթողիկէ ուղղափառ վարդապետութիւնը ։

Անտարակոյս շատերը, գուցէ երկու բանակէն ալ, աս մեր վերնագրին կը զարմանան ու կ'ըսեն. ինչպէս ասանկ թեթեւ նիւթ մը ծանր խնդիրներու կարգ կ'անցնի, անանկ նիւթ մը՝ զորն որ կրնայ Հռովմէական եկեղեցին ազատ թողուլ, թէ որ միայն ուզէ ։

Ճիշդ աս պատրանքն է խնդրոյս մի միայն դժուարութիւնը ։

Արդա՞յ թեթեւ կամ փոքր ըլլալ անբանը՝ զորն որ եկեղեցւոյ դատումը, անոր անընդհատ եւ ընդհանրական գործողութիւնն ու տիեզերական սիւնհոդոսներն ի Հոգւոյն սրբոյ ուսեալ՝ որն որ իմաստութեան, հանճարոյ եւ խոր-

Հըրդ-ոյ հոգի է (Ժող. Տրիդ. Նիստ ԻԱ.) ծանր եւ մեծ կը սեպեն ։

Կաթուղիկէ եկեղեցին կրկին պատ-ճառաւ պատարագի բաժակին վրայ խօ-սելու եւ պատուիրելու առիթ ունեցաւ ։

Նախ երբոր անոնց դէմ միայն գործք ունեցաւ՝ որոնք գինւոյ ջրով կը կարծէին նոր օրինաց պատարագը կատարել ։ Այսպէս՝ Եբիոնացիք, Ժուժկալները եւ Ջրամատոյցները (Hydroparastates), կամ Ջրաւորները (Aquarii)։*

Ետքէն՝ անոնց հետ գործք ունեցաւ՝ որոնք պատարագի բաժակը գինւոյ գինւով կը մատուցանէին ։ Ասանկ Միաբը-նակ Ասորւոց մէկ մասը մինակ վեցե-րորդ դարէն՝ որոշ ատեն մը ։ — Հայք մինչեւ ցայսօր ։ — Վերջապէս բողոքա-կանք վեշտասաներորդ դարէն ։

Անաստասիոս Սինայեցի Անտիոքայ Ա-սորւոց գլխաւոր քաղքին Պատրիարքը (յամէ

* Ասոնց դէմ գրեցին Կիպրիանոս, Բար-սեղ, Ոսկեբերան (Մեկնութիւն Մատթ. ճառ. 84. ուր ասոնց աղանդը չար աղանդ կ'անուանէ), Օգոստինոս եւ այլք ։

561) իրեն Առաջնորդ անուանուած գրքին մէջ, իբրեւ ժամանակակից կը վկայէ թէ կան Միաբնակ Ասորիք՝ որոնք իր ատենները «անխառն կամ անապակ գինի առանց ջրոյ կը մատուցանեն, որպէս զի ասովյուցընեն թէ զՔրիստոս մերկաբար եւ պարզապէս աստուածութիւն կը դաւանին»: Նոյնը կը հաստատեն Դեմետրիոս Կիւզիկենացի եւ Նիկեփորոս (Պատմ. Գիրք ԺԸ. Գլ 53):

Միաբնակ Ասորւոց կամ Յակոբիտեանց ուրիշ մէկ մասը ուրիշ կերպով՝ այս ինքն իրենց ջուր խառնելու նախնական սովորութեան չդպչելով՝ մի եւ նոյն մոլորութիւնը դաւանելու հնարքը գտան: Ասոնց չխանդարուած պատարագամատոյցներէն մէկը ասանկ է. «Կ'առնու օլէհն ու կ'ըսէ. Զբաժակ փրկութեան ընկալայց եւ այլն, ու գինին մէջընէ-լով կ'ըսէ. գինիս այս նշանակ է արեան որ ել ի կողէ Որդւոյ քո Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ եւ այլն: Կը խառնէ քիչ մը ջուր գինւոյն մէջ ըսելով. խառնեմ զսա իբրեւ օրինակ ջրոյն՝ որ ել ի կողէն Յիսուսի Քրիստոսի»: — Այսպէս իրենց մոլորութեամբը չի խանգարուած պատարագամատոյցը: Բայց ուրիշ մը՝ որն որ իրենց մոլորութեանը համեմատ չինուած է, կ'ըսէ. «Քահանան գինին ու ջուրը բաժակին մէջ խառնելով կ'ըսէ. Միացո Տէր զջուրս

զայս ընդ գինւոյս ընդ այսմիկ, որպէս միացեալ աստուածութիւն քո ընդ մարդկութեանս» խօսքեր՝ որոնք կրնան Յակոբիտեանց մոլորութիւնը նշանակել (Տես. Լը Պրէօն Ճառ Թ. Յօդ. 1)

Լութեր՝ որն որ նոր պատարագի ձեւ մը գրեց, դեռ չեմ որոշած, ըսաւ՝ թէ արդեօք գինւոյն ջուր պէտք է խառնել թէ չէ. բայց աւելի վերջնոյն հակեալ եմ, կ՚ըսէր. անոր համար թող իւրաքանչիւր ոք այնպէս ընէ՝ ինչպէս կ՚ուզէ: Իսկ Հենրիկոս Ը.ին դէմ գրած գրքին մէջ ջուր խառնելը՝ մարդկային գիւտ կ՚անուանէ:

Իրեն հետեւողները, ինչպէս նաեւ կալուին եւ իրենները, աս ազատութիւնը գործածեցին՝ իրենց ընթրիքն առանց ջրոյ խառնման կատարելով:

Անգղիացւոց Եդուարդ Զ.ին ատեն 1548ին շինուած բողոքական պատարագամատոյցը ջրոյ խառնումը կը հրամայէր՝ չուզելով հին սովորութիւնն աւրել: Բայց որովհետեւ ասիկա Լութերականաց եւ կալուինականաց ճաշակին համաձայն չէր, վերջապէս 1552ին խորհրդարանն ուրիշ պատարագամատոյց մը հրատարակեց՝ որուն մէջ ջրոյ յիշատակութիւն չկայ. բայց արգելք ալ չկայ: (Տես Լը Պրէօն, Պատարագամատոյցք:)

Հիմակուան Բողոքականք՝ թէպէտ գործ-

քերնին փոխած չեն, բայց ըստ մեծի մասին ընդունած են՝ թէ Քրիստոս Տէրն մեր Ընթրեաց վրայ բաժակը ջրով բարեխառնած է ։

Բայց Հայոց Էջմիածնական եկեղեցին աս նիւթիս մէջ թէ՛ ան Ասորիներէն եւ թէ՛ աս Բողոքականներէն կը տարբերի պարագաներով՝ որոնք խնդրոյն էութիւնը չեն փոխեր ։

Այս ինքն հիմակուան Հայք՝ չէ թէ ան ատենուան Ասորիներուն պէս՝ գինին բաժակին մէջ անոր համար առանց ջրոյ կը թողուն՝ որպէս զի Քրիստոսի Տեառն մերոյ մի միայն (աստուածային) բնութեան մոլար դաւանութիւնը հաստատեն, եւ ոչ ալ Բողոքականներուն պէս անոր համար գինւոյն ջուր չեն խառներ, վասն զի անանկ կը պնդեն՝ թէ Քրիստոս Տէրն մեր չխառնեց ։ Հապա մինակ անոր համար՝ որ Գրիգոր Լուսաւորչէն ասանկ իրենց աւանդուած կը սեպեն ։

Բայց՝ ինչպէս յայտնի է ; երբեք ալ աս էական կէտին վրայ իրարու կը միաբանին՝ թէ պատարագի կամ ընթրեաց

բաժակին մէջ՝ գինւոյն ջուր խառնել հարկ չէ․ կամ թէ առանց ջրոյ մինակ գինւով մատուցուած բաժակն օրինաւոր է ։

Արդ՝ աստ հակառակ կաթուղիկէ եկեղեցւոյ ամէն ատեն եւ ամէն տեղ սովրեցուցած, պատուիրած եւ գործածած պատարագի բաժակը կամ՝ Տէրունական բաժակն ոչ մինակ գինի եւ ոչ մինակ ջուր է, հապա գինի եւ ջուր միանգամայն ։

Կաթուղիկէ եկեղեցին չ՚ըսեր որ առանց ջրոյ բաժակն անվաւեր է․ բայց աս կ՚ըսէ՝ թէ առանց ջրոյ բաժակն ապօրինաւոր է, եւ թէ աս քիչ մը ջրոյ պակսառութիւնն առանց ծանր մեղաց չ՚ըլլար ։ Կաթուղիկէ եկեղեցին չ՚ուրանար՝ թէ աս պատուէրը՝ Քրիստոսի Տեառն մերոյ աստուածային պատուէրն է․ բայց որոշ կ՚ըսէ՝ թէ եկեղեցին նոյնը կը պատուիրէ․ եւ որովհետեւ եկեղեցին՝ Քրիստոսի Տեառն մերոյ Հոգւովը կը պատուիրէ, անոր եղած դիմադարձութիւնը վերջապէս աստուածային հրամանի մը դիմադարձութիւն է ։ Ռամկական խօսք մը

կ'ըլլայ՝ եթէ ըսուի՝ որ ամփոփ հաւատոյ մաս չէ։ Այո՛ 1. հաւատոյ մաս է՝ որ եկեղեցին չէ թէ միայն կրնայ ու պէտք է որոշել՝ ինչ որ մոլար է, հապա նաեւ կրնայ եւ պէտք է որոշել՝ ինչ որ ճշդ է կամ Աստուծոյ անհաճոյ է. 2. հաւատոյ մաս է միանգամայն՝ որ իշխանութիւն ունի ան իր որոշածը ծանր կերպով հրամայելու եւ ամենայն քրիստոնեայ ծանր կերպով պարտականութիւն ունի հնազանդելու։ Կաթողիկէ եկեղեցին, գթած մայրը, իր նզովքը չ'ուղեր անոր մերձեցընել՝ որն որ միայն կ'ըսէ թէ Քրիստոս Տէրն մեր առանց ջրոյ բաժակ օրհնեց. բայց ով կրնայ առանց մեծ յանդգնութեան՝ ուրախ եւ մեղքի, նոյնը հաստատել, երբ որ տիեզերական ժողովք՝ աւանդութիւնք յառաջ բերելով կ'ըսեն՝ թէ սաանկ կը հաւատացուի՝ որ 1. Քրիստոս Տէրն մեր ընթրեաց բաժակը ջրով խառնեց. եւ 2. բովանդակ եկեղեցին իրեն խանձարուրքէն նոյնպէս ըրաւ. եւ թէ 3. «անպատեհ բան» է. որ երկիր մը կամ ժողովուրդ մը, որ եւ ի-

ցէ ․ առ կանոնէն խոտորի ․ (Ժող ․ Փլոր ․
եւ Ժող ․ Տրիդ ․ ․ )

Առ աւանդութեան կանոնն էր՝ զորն
որ Հայաստանեայց եկեղեցւոյն առջեւը
դրաւ Առաքելական Աթոռը՝ երբ որ առ
եկեղեցւոյն ներքին վիճակը ճանչնալու
մյսաւ ։

Բոլոր Կիլիկիոյ թագաւորութեան ա-
տեն՝ մեր կաթուղիկոսաց թղթակցու-
թեան երկայն շղթային մէջ չյոգնեցա-
պահանջելէն՝ որ առ զանցառութիւնը
վերջ մը առնու ․ ի Արբոց Հարց ․ վաւե-
րական մասնական ժողովներէ եւ կանո-
նական իրաւանց հեղինակութենէ եկե-
ղեցական աւանդութիւնն առջեւնին
դնելով ։

Ետքէն՝ երբոր ալ Ռուբինեան աթո-
ռը կործանած էր, Փլորենտեան ժողո-
վոյն ատեն՝ Հայոց պատգամաւորներուն
առջեւ առանձին բանակցութեամբ բո-
լոր խնդիրն ի հանդիսի անցաւ, եւ վեր-
ջապէս 1439, Նոյ․ 22ին նիստին մէջ,
վերոյիշեալ պատգամաւորները ․ իրենց
եւ իրենց ամենապատիւ Հայրապետին

եւ բոլոր Հայոց անուանքը» ընդունած եւ տուած դաւանութեան մէջ լսին. «Սեղանոյ պատարագին մէջ՝ երբոր բաժակը կը մատուցուի՝ պէտք է գինւոյն հետ քիչ մը ջուր խառնել». որն որ նոյն տարւոյն Դեկտ. 10ին, հաւանութեամբ փլորենտեան տիեզերական սիւնհոդոսին, տրուած Հայոց հրահանգէն մէջ իբրեւ հրաման եւ սահման կրկնուած է:

Ասկէ հարկ ի ըստարկ մ'եւսքն է՝ որ թէ՛ աս հրահանգին եւ թէ՛ կանոնական կրաւանց մէջ գտնուած հրամանն ակնարկելով՝ յիշեցուց Տրիդենտեան տիեզերական սիւնհոդոսը՝ թէ եկեղեցին քահանայից կը պատուիրէ որ աս քիչ մը ջուրը բաժակին մէջ խառնեն:

Որովհետեւ միշտ Էջմիածնական եկեղեցւոյ Առաքելական աթոռոյն հետ հաշտուելու յոյսերն ատեն ատեն վուչ պէս վառելով փայլած անցած են, վերջին տիեզերական սիւնհոդոսէն հարիւր տարի մ'ալ ետքը, ասանկ հաշտութիւն մը դիւրացընելու միտք կը հարցուի Հռոմ՝ թէ արդեօք կրնայ նորութիւ

որ Հայոց եկեղեցին աս բանիս մէջ իր սովորութիւնը պահէ ։ Առաքելական աթոռը՝ որուն առջեւ հոգւոց փրկութենէն վեր բան չկայ, չկրցաւ ուրիշ կերպ պատասխան տալ՝ բայց եթէ ժխտական, երբոր 1635ին Յունուարի 30ին վըճռովը Սրբազան Ժողովը պատասխան գըրեց՝ քանի մ'ուրիշ պատճառներուն վըրայ աս ալ աւելցնելով թէ՝ Հայք միշտ Առաքելական գահէն խնդրեցին՝ որ առանձ սովորութիւն մը իրենց թոյլ տըրուի, բայց նոյնն իրենց միշտ զլացուեցաւ ։ Վասն զի Գրիգոր Ի. ինչպէս որ իրեն թղթերուն Եերորդ գրքին մէջ կըտեսնուի, Աղեքսանդր Գ., Կալիքստոս Գ., Եւգենիոս Գ. վերոյիշեալ Փլորենտեան ժողովոյն մէջ, Յովհաննէս ԻԲ., Բենեդիկտոս ԺԱ. եւ վերջապէս Պաւղոս Ե. իրեն առ Մելքիսեդեկ պատրիարք՝ ըսն որ Կաթուղիկոս կ'ըսուի, գըրած թուղթին մէջ, բացայայտ ըսած են՝ որ այսանկ սովորութիւն մը թոյլ չեն ի տար ։ »

Անկէ դարձեալ դար մը ետքն էր՝ երբ

որ նորէն միաբանութեան խօսքեր կ՚ըլլային Էջմիածնի Կարապետ կաթուղիկոսին առենը ; Հռոմ՝ հարկաւոր պայմաններուն վրայ հարցուելով՝ 1727ին Օգոստոսի 30ին Հ. Տ. սրբազան ժողովոյն կողմանէ Կոստանդինուպոլսոյ պատրիարքական փոխանորդին եկած հրահանգին մէջ երեք պայմաններուն երկրորդը կը պահանջէ կաթուղիկոսէն՝ որ « Սրբագործութենէն յառաջ բաժակին մէջ գինւոյն հետ ջուր դնել տայ » :

Ո՛վ կրնայ աս պահանջման մէջ անողոքելի խստութիւն մը կամ զամէնքն իրեն նմանցընելու մարդկային նպատակ մը տեսնել : Աս ջուր խառնելու սովորութիւնը՝ երբեք Հռովմէական կամ Արեւմտեան եկեղեցւոյ անանկ յատուկ եղած չէ՝ որ մէկալները չունենային, եւ ոչ ալ Արեւելեան եկեղեցիք Արեւմտեան եկեղեցիներէն սորվեցան . անոր համար Առաքելական Աթոռն առաջինը չեղաւ անջուր բաժակին զեղծմանը դէմ ձայնը բարձրացընելու :

Արդէն անկէ հինգ դար առաջ Հայոց

դրացի քրիստոնեաները, Յոյնք եւ Ասորիք կանխեցին այս սովորութեան դէմ բողոքելու՝ 692ին Տրուղեան կամ Հինգվեցեան ժողովէն սկսելով։ Այս ժողովոյն 32երորդ կանոնը մասնաւորապէս Հայաստանի մէջ տեսնուած այս գործման դէմ է։

Թէ՛ Յոյնք՝ որոնք ան ատեն դեռ Արեւմտեան եկեղեցւոյ հետ միութեան մէջ էին, եւ թէ՛ Ասորիք ուրիշ բան չունէին այս խնդրոյս մէջ ընելու, բայց եթէ ան բազմաթիւ եկեղեցիներուն սովորութեանը նայիլ՝ զորոնք այլ եւ այլ առաքեալք սկսեալ յԵրուսաղէմէ՝ Արեւելից այլ եւ այլ կէտերուն վրայ հիմնած էին։

Արդ՝ թող տալով ինչ որ Տրուղեան ժողովէն՝ այս ինքն եօթներորդ դարէն ետքը եկեղեցական աւանդութեան վկաները խօսած են, մինակ այս ժողովէն, այս ինքն առաջի անգամ Հայոց սովորութեան դէմ հրապարակական բողոք ըլլալէն առաջ տրուած վկայութեանց դիմերը դիտելու ըլլանք, չենք կրնար չը-

տեսնել՝ որ ատոնք հարկաւ ընդհանուր առաքելական աւանդութեան կէտէն ամէն կողմ ճառագայթած են ։

Դիտենք հին եկեղեցիները ։

Ս. Յուստինոս վկային՝ առ Անտոնինոս Պիոս կայսր եւ անոր որդեգիր Մարկոս Աւրելիոս եւ Ղուկիոս Վերոս՝ քրիստոնէից համար (140-145ին) գրած Ջատագովութեան Թուղթին մէջ առաջին վաւերական Պատարագամատոյցի ծրագիրն ունինք. «Մենք՝, կ'ըսէ սուրբ Վըկայն, զայն անձը՝ որնոր իր հաւատքը վըկայեց եւ մեր վարդապետութեան հաւանութիւն տուաւ՝ աս կերպով լուանալէն (մկրտելէն) ետքը անոնց քովը կը բերենք՝ որոնք Եղբարք կ'ըսուին, հոն՝ ուր որ ատոնք ժողվուած են հասարակաց աղօթքներ ընելու ի բոլոր սրտէ թէ՛ մեզի եւ թէ՛ ամենքին համար՝ որն որ լուսաւորուած (մկրտուած) է, եւ թէ՝ ամենուն համար ընդհանուր, որպէս զի ճշմարտութեան ծանօթութիւն ստանալէն ետքը՝ սա շնորհքին արժանի ըլլանք՝ որ գործքով ուղիղ վարք ունեցող

եւ պատուիրանապահ գտնուինք եւ ա-
նով յաւիտենական կենաց հասնինք։» »

«Երբ որ աղօթելէ կը դադրինք, ի-
րար համբուրիւ կ'ողջունենք։ Ետքը դա-
հերէց նատողին (այսինքն եպիսկոպոսին
կամ երիցուն) առջեւը կը բերուի հաց
եւ բաժակ Ջրոյ և գինւոյ (Ποτήριον ὕδατος καὶ
κράματος)). դահերէցը զանոնք ընդու-
նելով՝ օրհնութիւն եւ փառք կու տայ
ամենեցունց Հօրը՝ Որդւոյ եւ Հոգւոյն
Սրբոյ անուամբը. եւ գոհութիւնը կը
կատարէ երկայն աղօթելով զա ըն-
դունած պարգեւներուն վրայ։ Երբ-
որ աղօթքն ու գոհութիւնը կը լմըն-
ցընէ, բոլոր ժողովուրդը կը գոչէ. Ա-
մէն։ Իսկ Ամէն՝ եբրայեցերէն կը նշա-
նակէ Եղիցի։»

«Իսկ երբոր դահերէցն աղօթքը լմըն-
ցուցած կ'ըլլայ եւ բոլոր ժողովուրդն
ալ անոր ձայնակից եղած, անոնք ո-
րոնք որ մեր քովը Սարկաւագ կ'ըսուին,
ներկայ եղողներէն ամէն մէկուն կու
տան որ հաղորդուին՝ վրան գոհութիւնը
կատարուած հացէն ու գինիէն և ջուրէն

եւ հոն չեղողներուն ալ կը տանին : » . . .

«Անանկ սորված ենք՝ որ ան կերակու-րը՝ որուն վրայ գոհացուեցաւ իրեն (Յի-սուսի Քրիստոսի) խօսքերը պարունա-կող աղօթքով մը, որով միանգամայն մեր արիւնն ու մարմինը կը սնանին փոխա-րկութեամբ, ան մարմնացեալ Յիսու-սին թէ՛ մարմինն ու թէ արիւնն է. վա-սն զի առաքեալները իրենց յիշատա-կարաններուն մէջ որոնք Աւետարան կ'ը-սուին, աւանդեցին թէ Յիսուս իրենց անանկ պատուիրած է. այս ինքն՝ հացն առնելով գոհացած եւ ըսած է. Առէք իմ յիշատակիս համար. Աս է իմ մարմի-նըս. նոյնպէս բաժակն առնելով ու գո-հանալով ըսած է. Աս է իմ արիւնս : Բայց չար դեւերն ալ նոյնը նմանցընե-լով սորվեցուցած են՝ որ նաեւ Միհրայ խորհուրդներուն մէջ աս բանս ըլլայ : Վասն զի կամ՝ գիտէք եւ կամ կրնաք սորվիլ՝ որ անոնց առջեւը՝ որոնք Միհրայ խորհուրդներուն միջամուխ կ'ըլլան, հաց եւ ջրոյ բաժակ կը դրուի՝ որոշ խօսքեր աւելցընելով . . . . .

Իսկ Արեգական օրը (Կիւրակէի օրը) թէ՛ քաղաքներու եւ թէ՛ գեղերու բնակիչները մի եւ նոյն տեղը կը ժողվըւին, առաքելոց յիշատակարանները ու մարգարէից գրուածները կը կարդացուին, որչափ կարելի է կանուխ։ Երբոր կարդացողը կը դադրի, գահերէցը կը սկսի խրատ տալու, խօսելով եւ յորդորելով՝ որ այս լուսաւոր բաներուն նմանին։ Անկէ ետքը ամէնքնիս մէկտեղ ոտք կ'ելլենք ու աղօթքներ կ'ընենք. եւ ինչպէս արդէն ըսինք, երբ որ աղօթելէն կը դադրինք, հաց եւ գինի ու ջուր կը բերուի. եւ գահերէցը աղօթքներ եւ գոհութիւններ կ'ընէ ի բոլոր սրտէ, ժողովուրդն ալ կը գոչէ. Ամէն։ Եւ վրան գոհութիւն եղած բաները կը բաշխուին ու կը հաղորդուին ներկայ գտնուողներէն ամէն մէկուն. իսկ ներկայ չեղողներուն սարկաւագաց ձեռօք կը խաւրուին։.

Տեսած ենք որ Յուստինոս՝ որն որ հոս երեք չորս անգամ տէրունական բաժակին ի գինւոյ եւ ի ջրոյ ըլլալը կը նշանակէ, անշուշտ հեթանոս կայսեր եւ անոր

որդւոցն առջեւ՝ քրիստոնէից վրայ եղած տղու արիւն խմելուն սուտ համբաւն աւելի զօրաւոր կերպով ջրելու համար կը ցուցընէ՝ որ իրենց պաշտամանցը մէջ եւ ոչ գինին առանց բարեխառնութեան կը խմեն, աս Յուստինոսը կ'ըսեմ՝ 1. հազիւ Յովհաննու առաքելոյ մահուընէն 40—45 տարի ետքն աս թուղթը կը գըրէ, 2. Յուստինոս Պաղեստինի եւ ի մասնաւորի Երուսաղեմի եկեղեցւոյն կը վերաբերէր, ուր որ եկեղեցական պաշտամանց կարգերն ամէն տեղէն առաջ կարգաւորուելով քրիստոնէական հնութեան գանձարան սեպուած էր։ 3. Իրօք ալ Յուստինոսի ստորագրած պատարագամատոյցն արեւելեան նկարագիրը կը կրէ, օրինակի աղագաւ՝ սրբութեան համբոյրը սրբագործութենէն առաջ կը դնէ. ինչպէս արեւելեան Պատարագի պաշտաման կարգը կը պահանջէ, ուր որ արեւմտեանն աս համբոյրը ետքը կը կատարէ։

Ինչպէս Ս. Յուստինոս Պաղեստինէն Հռոմ գալով իրեն արեանը հետ հոն

աս գեղեցիկ վկայութիւնն աւանդեց, ասանկ ալ Ս. Իրենէոս՝ որն որ Ս. Պօղիկարպոսին (Յովհաննու առաքելոյ աշակերտին) աշակերտած էր. Ասիոյ նահանգին եօթը եկեղեցիներէն Գաղղիա գալով հոն իբրեւ Լուգդունոնի (Լիոնի) եպիսկոպոս արիւն թափեց, կ'ըսէ (ընդդէմ Հերձուածոց գիրք Դ. գլ. 57. զորն որ 172էն մինչեւ 193երորդ տարին գրած է). «Առնելով (Քրիստոս) հացը՝ կը վկայէր որ իր մարմինն է, եւ բաժակին խառնուրդը (temperamentum) առնելով՝ կը հաստատէր թէ իր արիւնն է:»

Դարձեալ (Գիրք Ե. գլ. 2.). «Որդ՝ կ'ըսէ երբոր խառնեալ բաժակը (Τὸ ποτήριον κεκραμένον) եւ յօրինեալ հացը Աստուծոյ խօսքը կ'ընդունի, կ'ըլլայ Քրիստոսի արեան եւ մարմնոյ գոհութիւնը:

Դարձեալ Ս. Իրենէոս Մարկոս Վաղենտինեան աղանդաւորին դէմ գրած ճառերին մէջ (Գիրք Ա. գլ. 13. թիւ 2.) աս Վաղենտինեան Գնոստիկեանին համար կ'ըսէ թէ «գինով խառնուած բաժակներ սրբագործել կը կեղծէ ու կոչ-

մեան խօսքերը շատ կ՚երկնցընէ ։»

Ասանկ Ս. Իրենէոս Առաքելոց հետ խօսողներուն եւ ապրողներուն, այս ինքն Պողիկարպոսի, Պապիասայ եւ ուրիշ առաքելոց ժամանակակիցներուն աւանդերը՝ Քրիստոսի Տեառն մերոյ համար կը վկայէ՝ թէ բաժակը ջրով խառնեց եւ թէ եկեղեցին ալ խորհուրդը նոյնպէս կը կատարէ. եւ միանգամայն հին աղանդաւորներն երբոր կաթուղիկէ եկեղեցւոյ ըրածը ձեւացընել կ՚ուզեն, նոյնպէս կ՚ընեն ։

Արեւելքի եկեղեցական աւանդութեան ուրիշ մէկ գլխաւոր կէտն Աղեքսանդրիա էր ։ Հոն համբաւաւոր Երախայական դպրոցին վարիչն էր Կղեմէս Աղեքսանդրացի՝ հռչակաւոր Որոգէնեայ վարպետը, ան դպրոցին՝ ուսկից Դիոնեսիոս Աղեքսանդրացի, Աթանաս եւ ետքը Կիւրեղ ելան ։ Կղեմէս (Դաստիարակ. գիրք Բ. Գլ. 2. զորն որ 192-ին ատեները գրած է) կ՚ըսէ. «Բնական եւ լուրջ ըմպելին ան որ ծարաւելոց հարկաւոր ըլլայ, ջուրն է ։ Ջա-

տիկա ապառաժ քարէն բխեցընելով հին Իսրայելացւոց մի միայն եւ պարզ պարկեշտութեան ըմպելի շնորհեց Աստուած։ Ինոնք վասն զի Թափառական էին, մեծապէս պէտք ունէին ջուրի ըմպելու։ Բայց ետքը Սուրբ Որթը մարգարէական ողկոյզը բուսցուց (Թըւոց ժԳ.)։ Ասիկա նշան մըն է անոնց՝ որոնք Թափառականութենէն հանգստութեան սահմանուեցան։ Մեծ ողկոյզը՝ ինքն Բանն Աստուծոյ է՝ որն որ մեզի համար կոխուեցաւ, եւ ուզեց որ խաղողոյ արիւնն ալ, այս ինքն Բանին Աստուծոյ արիւնը՝ Ջրով բարեխառնուի, որպէս զի փրկութեամբ ալ բարեխառնուի իր արիւնը։ Տեառն մերոյ արիւնը կրկին է. մէկը մարմնաւոր՝ որով ի կորստենէ փրկուեցանք, իսկ մէկալը հոգեւոր, այս ինքն՝ որով որ օծուեցանք. ասիկա է Յիսուսի արիւնը խմել, այս ինքն Տեառն մերոյ անեղծութեան հաղորդ ըլլալ. վասն զի Բանին զօրութիւնը Հոգին է, ինչպէս որ մարմնոյնն ալ՝ արիւնն է։ Ուստի ինչպէս որ գինին Ջրոյ հետ, այսպէս

ալ Հոգին՝ մարդոյն հետ կը խառնուի, եւ խառնուած գինին կոչնականաց հաւատ կու տայ, իսկ Հոգին անեղծութեան կ'առաջնորդէ։ Իսկ երկուքին խառնուրդը ( κρᾶσις ), այս ինքն ըմպելոյն եւ Բանին Աստուծոյ, Գոհութիւն կ'ըսուի, եւ որոնք որ ասոր հաղորդ կ'ըլլան հաւատով, թէ մարմնով թէ հոգւով կը սրբուին. վասն զի աստուածային կամքը՝ Հոգւով եւ Բանիւ կը բարեխառնէ խորհրդաւորապէս զայն աստուածային խառնուրդը ( θεῖον κρᾶμα) այս ինքն զմարդը :»

Ափրիկէի արեւելեան մասին մայրաքաղաքէն՝ ուսկից բովանդակ Եգիպտոս քրիստոնէութիւնը տարածուեցաւ, անցնինք Ափրիկէի արեւմտեան մասին։ Հոս Կարքեդոնի եպիսկոպոսը Կիպրիանոս փառաւոր վկան Ջրաւորներուն դէմ 253ին ամբողջ թուղթ մը գրած է առ Ցեկիլիոս. ասոր մէջ կրկին կրկին կը դառնայ ըսելու թէ «Մ՛ն մինակ պէտք ենք ընել զորն որ մեր Տէրն ըրաւ ; եւ Տեառն բաժակը նոյն կերպով խառնելով

մեր Վարդապետին օրինակէն չհեռանանք»: — «Տէրունական բաժակը սրբագործելու ատեն չի կրնար մինակ ջուր մատուցուիլ, ինչպէս որ մինակ գինի ալ չի կրնար մատուցուիլ»: — «Տէրունական բաժակը մինակ ջուր չէ, եւ ոչ ալ մինակ գինի, հապա երկուքը իրարու խառնուած»:

Կարքեդոնի Գ. ժողովքը դարձեալ Ջրաւորներուն դէմ սահմանեց որ «Տեառն մերոյ մարմնոյն եւ արեան խորհուրդը կատարելու ատեն ուրիշ բան չըմատուցուի, բայց եթէ ինչ որ ինք Տէր աւանդեց, այս ինքն հաց եւ գինի ջրով խառնեալ»: (Կանոն 24.)

Ս. Օգոստինոս (+ 430) Ճառ. 120 Մեկն. Յովհ. «Ան արիւնը, կ'ըսէ մեղաց թողութեան համար հեղաւ. ան փրկարար ջուրը աս ժողովուրդը կը բարեխառնէ, այս ջուրը թէ լուացում եւ թէ ըմպելի կը մատակարարէ»: — Դարձեալ (գիրք 3. վասն Երրորդ. Գլ. 11.) «Տեառն մերոյ կողէն՝ երբոր զարնուեցաւ, ան հեղուկը վազեց, որն որ բաժակին մէջն է:

Բայց ինչպէս յայտնի է, Աֆրիկէի արեւմտեան մասին քրիստոնէութիւնը Հռոմէն անցած էր, ուստի ան սովորութիւնը զորն որ Աֆրիկէ այսպէս կանուխ կը տեսնենք, իրեն ծագումը Իտալիայէն ունէր: Հոս Հռոմէական եկեղեցւոյն ի Պետրոսէ եւ ի Պօղոսէ ընդունած աւանդութեանը վկաներէն է Ս. Յերոնիմոս, (+420) որն որ (Մեկն. Մարկ. Գլ. 14.) կ'ըսէ. «Առաւ Յիսուս հացը եւ իր արիւնը ընելով բաժակը՝ որն որ ի գինւոյ եւ ի ջրոյ խառնեալ էր. որպէս զի առջինով մեղքէ սրբուինք, եւ վերջինովն ալ պատիժներէն ազատինք:» Ասանկ նաեւ Ամբրոսիոս կամ «Խորհըրդոց» անուամբ գրքին հին հեղինակը:

Կարքեդոնի ժողովքէն ետքը Գաղղիա Աւրեղիանոնի (Օռլէանի) ժողովը 641ին (կանոն 4.) կ'ըսէ. «Մէկը չյանդըգնի սրբազան բաժակը նուիրելու ատեն ուրիշ բան մը նուիրել, բայց եթէ ի բերոյ որթոյ եւ ան ալ ջրով խառնեալ:» — Դարձեալ Օզէրի ժողովը 578ին (կանոն 8.) «Օրէն չէ որ սեղանի վրայ աս-

տուածային պատարագի մէջ մեղրաջուր եւ կամ ուրիշ ըմպելիք մը նուիրուի, հապա միայն գինի ջրով խառնեալ»։ — Սուրբ Գերմանոս Պարիսացի վեցերորդ-դարուն կէսին (Ճառ Դ. Յօդ. Զ.) «Պէտք է ջուր խառնել, վասն զի կը վայլէ որ ժողովուրդը Տիրոջը հետ միաւորի, եւ վասն զի Քրիստոսի կողէն խաչի վրայ թէ արիւն եւ թէ ջուր վազեց»։ — Գեննադիոս գրեթէ նոյն ատենները (վասն եկեղ. վարդապ. Գլ. 75.) կ՚ըսէ. «Գոհութեան մէջ չէ արժան միայն ջուր նուիրել, ինչպէս որ ոմանք զգաստութեան պատրուակօք կը սխալին, հապա գինի ջրով խառնուած»։

Սպանիա անցնելով՝ Բրաքարայի Գ. ժողովը 675ին (Գլ. Զ.) կ՚ըսէ. «Հաց և գինի միայն ջրով խառնեալ նուիրուին պատարագին մէջ»։ — Սպանիայւոց հին գոթացի կամ մոզարաբացի ըսուած Պատարագամատոյցը զորն որ վեցերորդ-դարուն վերջերը գլխաւորաբար Ս. Իսիդորոս Սեւիլլացին կարգաւորած է, ատոր համեմատ է։ — Իսիդորոս Մեր-

կատոր Սպանիացի՝ Ս. Կիպրիանոսի խօսքերէն առնելով Աղեքսանդր Ս. ին կ'ընծայէ սա խօսքերը. «Չէ որժամ (ինչպէս ի Հարց ընդ ունեցանք եւ պատճառն ալ կը յորդորէ) տէրունական բաժակին մէջ կամ մինակ գինի եւ կամ մինակ ջուր նուիրուիլ, հապա երկուքն ալ խառնուած ։ »

Գերմանիոյ եկեղեցիները, ինչպէս նաեւ Անգղիայինները ասկէ տարբեր կիրառութիւն մը չէին կրնար ունենալ. վերջիններուն Պատարագամատոյցը կարդաւորեց Օգոստինոս իրենց Առաքեալը՝ վեցերորդ դարուն վերջերը ։

Գանանք Արեւելք։ Հոս՝ ինչպէս տեսանք, Յակոբայ եղբօր Տեառն, Յովհաննու Աւետարանչի ու Մարկոսի Առաքելոյ առաջնորդած եկեղեցիները, այս ինքն Պաղեստին, Փոքր Ասիա եւ Եգիպտոս անյիշատակ ժամանակներէն միաբանած են սա աւանդութեան վկայելու ։

Անտիոքայ նահանգին համար չէ թէ միայն Ոսկեբերան, որն որ (Ս. Կորընթ.

Ճառ 24) կ'ըսէ «Ի՞նչ կայ բաժակին մէջ՝ բայց եթէ ինչ որ (Քրիստոսի) կողէն վազեց», հապա նաև Թէոդորետոս Կիւրեայ (Տրամախ. Ա.) կ'ըսէ, «Քրիստոս խորհուրդներն աւանդելու ատեն զհացն իւր մարմինն անուանեց, և այն բանն արիւն անուանեց՝ որն որ բաժակին մէջ հեղուած եւ խառնուած էր»: Ինչպէս Ս. Իրենէոս (200ին մօտերը) Եբիոնացի հերետիկոսաց համար ըսած էր թէ «Ջեն ուզեր երկնաւոր գինւոյն խառնումը, հապա միայն ջրով խորհուրդը կը կատարեն», նոյնպէս Ս. Եպիփան (չորրորդ դարուն վերջը) Տատիանոսի (երրորդ դարու) հերձուածողին համար կը գրէր թէ «Եկեղեցւոյ մէջ եղածին պէս խորհուրդ կ'ուզէր կատարել (Տատիանոս), բայց միայն ջուր կը գործածէր»։ Նոյնը ժուժկալ ըսուող հին հերետիկոսաց համար կը գրէ Ս. Եպիփան. «Անոնք ալ, կ'ըսէ, խորհուրդը ջրով կը կատարեն, գինի ամենևին չգործածելով, վասն զի գինին սատանայական է է կ'ըսեն, և խմողներն ամպարիշտ եւ մեղաւոր են»:

Նոյն Անտիոքայ նահանգին մէջ տարածուած Նեստորական եւ Միաբնակ Ասորւոց բազմաթիւ Պատարագամատոյցները վկայութիւն կու տան. Ասորիք բաւական կանուխ Արեւելից ուղղափառ եկեղեցիներուն հաղորդութենէն բաժնուած ըլլալով չէին կրնար սա սովորութիւնն իրենց հակառակորդներէն ժառանգել, թէ որ անոնցմէ չբաժնըուած՝ արդէն ունեցած չըլլային։

Պատարագամատոյցներուն մինակ հնագոյնն առնելով՝ այս ինքն Յակոբայ, Բարսղի եւ Ոսկեբերանի անուան ընծայուածները, ամէնքն ալ բաժակին խառնուրդը կը հրամայեն։ Պատարագամատոյցներուն ամենէն հնագոյնը Առաքելական Սահմանադրութիւնք ըսուած գրքին մէջ գտնուածն է, որն որ սրբագործութեան խօսքերէն առաջ կ'ըսէ. «Առաւ (Քրիստոս) ի ջրոյ եւ ի գինւոյ խառնուած բաժակը, օրհնեց, գոհացաւ» եւ այլն։

Մօտենալով Հայաստանի սահման-

ներուն, Կապադովկիոյ նահանգին՝ ուր
որ Գրիգորեներն ապրեցան, ուսկից մեր
Ս. Գրիգորի ձեռօք քրիստոնէութիւնը
Հայաստան անցեցաւ, Ս. Գրիգոր
Նիւսացի, Բարսղի կեսարու կապադով-
կացւոց եղբայրը, իրեն Մեծ Երախայա-
կան ճառին մէջ (Գլ. 37) ասանկ կը խօ-
սի. « Որովհետեւ կրկին է մարդը, վասն
զի ի հոգւոյ եւ ի մարմնոյ բաղադրեալ
է, պէտք է որ կրկին բանով ալ ի կեա-
նըս առաջնորդուի, ուստի հոգին մար-
մնոյն հետ խառնեալ ըլլալով փրկութեան
առիթը ի մարմնոյ ունի»։ Ո՞րն է աս
փրկութեան առիթը կամ դեղը։ « Ան
մարմինն է՝ որն որ մահուընէ աւելի զօ-
րաւոր ցուցուեցաւ եւ մեր կենացն ըս-
կիզբ եղաւ։ Վասն զի ինչպէս քիչ մը
խմոր բոլոր զանգուածը իրեն կը նման-
ցընէ, այսպէս ալ ան մարմինը մեր ներ-
սի դին կու գայ եւ բոլորը իրեն կը փո-
խարկէ, . . . իբրեւ կերակուր եւ ըմ-
պելի մեր ներսի մասերուն խառնուե-
լով, ապա թէ ոչ՝ մեր մարմինը չէր կըր-
նար անմահ ըլլալ, թէ որ անմահին

հետ հաղորդուելով անեղծութեան մաս-
նակից ըլլար . . . . »

« Բայց ամէն մարմիններու մի եւ նոյն սննդեան նիւթ որոշուած չէ , հապա բնութեան տեսուչն եւ մատակարարն ամէն մէկուն իր պատշաճը կը մատուցանէ : . . . Մարդուս գլխաւորաբար պատշաճականն է հաց եւ խոնաւութեան տեւականութեանն ու պահպանութեանը համար՝ ըմպելի , որն որ մինակ ջուր չըլլայ , հապա գինով խառնուած ըլլայ , որպէս զի ներքին ջերմութեան օգնական ըլլայ : Ասոնք երբոր ներս կ'առնուին , արիւն եւ մարմին կ'ըլլան : . . . . »

« Այս զանազանութիւնն ընելնէս ետքը , դառնանք մեր առաջարկեալ նպատակին , որուն հաւանական պատճառէն գուցէ հեռու չենք : Վասն զի ամէն մարդու գոյութիւնը սննդեան նիւթէն , այս ինքն կերակուրէ եւ ըմպելիէ կը բաղկանայ , եւ ան կերակուրն ալ հացն է , եւ ըմպելին ալ ջուր գինով խառնեալ . Բանն Աստուծոյ մարդկային բնութեան

հետ խառնեցաւ. մարդկային բնութեան նոր կազմութիւն մը չշինեց, հապա սովորական եւ պատշաճական եղած բաներով իր մարմինը հնայուն ըրաւ. մարդկային գոյացութիւնը կերակրով եւ ըմպելեօք բովանդակեց ....»

« Եւ որովհետեւ ամէն մարմին նաեւ խոնաւութեամբ ալ կը սնանի. վասն զի մեր մէջը գտնուած հողային մասը չի կրնար կենդանութեան մէջ տեւել եթէ խոնաւութեամբ չի պանդանիր: Ուստի ինչպէս որ պինդ կերակրով՝ մարմնոյն պնդութիւնը կը պատսպարենք ու կը հաստատենք, նոյն կերպով մեր ներքին խոնաւութեան վրայ կ'աւելցընենք իրեն համազգին: Այս համազգի խոնաւութիւնը ներս առնուելով՝ այլափոխիչ զօրութեամբ կ'արիւնանայ, մանաւանդ՝ երբոր աս խոնաւութիւնը կամ ջուրը գինւով՝ ջերմացընելու զօրութիւնը կ'ընդունի: »

Ուստի՝ Գրիգոր Նիւսացի իրեն սովորական եղած փիլիսոփայական մտածութեամբը ենթադրելով միշտ որ Հա

զօրդութեան բաժակը ի ջրոյ եւ ի գինւոյ կազմուած է, կը համեմատէ նոյնը մարմնոյ մնընդեան գլխաւորաբար հարկաւոր եղած ըմպելւոյն, որն որ, ինչպէս կ'ըսէ, ջուր եւ գինի խառն է։

Աւասիկ ան երկրին սովորութիւնն ու աւանդութիւնն՝ ուսկից քրիստոնէութիւնը եւ անոր պաշտօնեաները Հայաստան եկան։

Այս աւանդութեան պատկերը միայն այն վկայութիւնները կը ցուցընէ՝ որոնք որ Տրուղեան ժողովէն (692էն) յառաջ են, այսինքն այն ժամանակն՝ որ առջի անգամ Հայոց սովորութեանը դէմ բողոք եղած կը տեսնենք։

Արդ՝ Հռովմէական Եկեղեցին՝ որն որ ի Քրիստոսէ Տեառնէ մերմէ յանձին Պետրոսի կոչումն առած է՝ բոլոր եկեղեցւոյ մէջ եկեղեցական վարդապետութեան եւ օրինաց ամբողջութեանը հսկելու; կրնա՞յ ինք զինք ուրանալ՝ առանց հսկայագործ աւանդութեան մը չէնքը տապալելով, ան իշխանութեանը՝ որն որ իրեն մինակ չինելու համար

տրուած է ։ Վստահ ենք՝ որ Կաթուղի-կէ Եկեղեցւոյ միջէն չենք հեռանար եթէ ըսենք՝ որ Առաքելական Աթոռը գիտնալով թէ ան տունկերը զորոնք Քրիստոսի Տեառն մերոյ Հայրը տնկած է, սաստիկ հողմերէն չեն խլուիր, նա-եւ ան [illegible] չի խոտորիր իր ճամբէն, երբ որ բոլոր Թորգոմայ զաւակը ՚ իբ-րեւ այր մի՝ խոստանայ Կաթուղիկէ Եկեղեցւոյ գաւիթը դառնալու՝ միայն սա պայմանը դնելով՝ որ բաժակին մէջ ջուր չխառնէ ։

Կաթուղիկէ եկեղեցին Տէրունական բաժակին խառնմանը նկատմամբ չէ թէ միայն կը պատուիրէ՝ թէ ինչպէս պէտք է ըլլալ, հապա կը սորվեցնէ միանգա-մայն թէ ինչ պիտ'որ նշանակէ ։ Այս նը-շանակութիւններն որ բաւական ծանրա-կշիռ են, դարձեալ եկեղեցական աւան-դութեան վրայ հիմնուած, եւ սրբա-զան խորհրդոյն էութեանը գործքին եւ անոր դրութեանը աստուածային խօս-քերուն հետ սերտիւ կապուած են ։

Երբ Փրկիչն ու Տէրը վերջին ան-

դամ կատարելով ան պատանքը՝ զորն որ Իսրայելի որդւոց բազմութիւնն իրենց Եգիպտոսէ ելլելուն նշանակ՝ Թէ կը զենուր իբրեւ զոհ եւ Թէ կ՚ուտէր իբրեւ խորհուրդ, իր առ իւրան ունեցած սիրոյն բոլոր հարստութիւնը դուրս հանեց՝ երբոր իր նոր պատանքը [illegible] արհէ առ Հայր ելլելուն յիշատակը, հաստատեց գդալի յիշատակաց տակ՝ Եկեղեցւոյ, իր սիրելի հարսին, մինչեւ իր միւսանգամ գալուստը դրաւական մը թող տալով ասս սրբազան Գոհութիւնը, Թէ իբրեւ սեղան, որպէս զի մեր հոգւոյն երկնաւոր սնունդ ըլլայ, եւ Թէ իբրեւ տեսանելի պատարագ՝ որպէս զի չարունակուի խորհրդապէս մեր զոհարաններուն վրայ շատ անգամ՝ ինչ որ ի մօտոյ պիտի ընծայուէր խաչին վրայ իբրեւ գին փրկանաց մի անգամ։ (Ժող. Տրիդ. Նիստ ԻԲ. գլ. 1. Նիստ ԺԳ։ գլ. 2։ Կոչ. ընծ. Տրիդ. Ժող.՝ Մնան. բ. գլ. Դ. 1։)

Դիտենք Տէրունական բաժակը Թէ իբրեւ Հաղորդութեան խորհրդոյ եւ

թէ իբրեւ պատարագի՛ միս ։

Հաղորդութեան խորհուրդը սեղան մըն է, այսինքն անանկ մարմնաւոր սեղանի վրայ ձեւուած է՝ ինչպէս մարմնաւոր սեղանն ալ մեր մարմնաւոր կենացը պիտոյքը, սնընդեան եւ կազդուրման, համեմատուած է ։ Ուստի Քրիստոսի Տեառն մերոյ ամենասուրբ մարմինն ու արիւնը հացի եւ գինւոյ կերպարանաց տակ խորհրդապէս իրարմէ կը զատուին որպէս զի մեր երկնաւոր կենացը սնընդեան ու կազդուրման համար կերակուր եւ ըմպելի ձեւանալով մեր հոգեւոր սեղանն ամբողջանայ ։ (Կոչ. ընծ. Տրիդ. ժող. մասն Բ. գլ. Դ. 35։)

Արդ՝ բովանդակ հնութեան մէջ՝ թէ Հրէից եւ թէ քաղաքակիրթ ազգաց քով, մարդուս խանդարեալ զօրութիւնները կանոնաւորելով՝ զանիկա կազդուրելու ամենէն յարմար ըմպելին չափաւոր ջրով բարեխառնուած գինին է ։

Ինչպէս գինին հացի հետ կամ արիւն խաղողոյ նաշհոյ հետ իբրեւ կենսական պիտոյից նշանակ եւ գոյացա-

կամ Նիւթ սեպուած էին (Միրաք ԼԹ · 31 · 32), եւ անոնց գիւտը կամ ծա-գումը մարդկային ընկերութեան ծագ-մանը մէջ անյայտ կը կորսուի, ինչպէս հաց, եւ գինի Նուիրող քահանային ազ-գահամարը (Եբր · Է · 3), եւ ամէն ազ-գաց քով անոնց սրբութիւն կ'ընծայ-ուէր · բայց գինին երբեւ անապակ կամ անխառն (ἄκρατος) թէ՛ Հրէից եւ թէ՛ Յունաց եւ Հռովմայեցւոց մէջ անժուժ-կալութեան կամ անխառնութեան ((ἀκρα-τείας, intemperantiae) եւ մարմնաւոր կենաց անձնատուր ըլլալու թէ՛ նը-շանակ եւ թէ առիթ սեպուած էր*: «Վասն զի երկուքն ալ այսինքն գինի

*Եսթեր Ա · 10 · եւ Եսայ · ԻԸ · 3 ըստ բը-նագրացն : — Կղեմէս Աղեքսանդրացի ամ-բողջ գլուխ մը մէջ այս Նիւթիս վրայ կը խօ-սի (Դաստիար · Գիրք · գլ · Բ·) ուր յառաջ կը բերէ միանգամայն Մենանդրոս քանա-ստեղծին Ստոբէոսէն սա խօսքը՝ զորն որ. ծառան անխառնութեան վրայ խօսելով — մեծավերջական տողով մը կ'ըսէ : «Շատ անապակը քիչ զգաստանալ կուտայ» : Գրիգ · Նիւսացի Ճառ Երախայական գլ · 37 :

եւ ջուր, կ'ըսէ Կղեմէս Աղեքսանդրացին, Աստուծոյ գործքն են, եւ այն կերպով երկուքին, այս ինքն ջրոյն եւ գինւոյն, խառնուրդը (κρᾶσις) առողջութեան կուտայ, որովհետեւ կեանքը հաստատութիւն կ'առնու հարկաւորէն եւ օգտակարէն »: Ասոր համար հին ազգաց մէջ պարկեշտութեան ընդունուած ի մօտոյ խմելու համար մէջը գինի դրուած ամանը կամ բաժակը խառնարան (κρατήρ), խմընելու համար մէկուն գինի լեցնելը՝ խառնել (κεράννυμι, misceo, tempero), խմելու համար լեցուած գինին խառնուրդ (κρᾶσις*, κρᾶμα, temperamentum) կ'ըսուէր: Ասանկ Սողոմոն, Հոմերոս, Արիստոփանէս, Ովիդիոս:

Դարձեալ՝ անխառն գինին կամ անապակ բաժակը Հրէական ընբռնման մէջ Աստուծոյ բարկութեանը, ողորմութենէ անխառն ցասմանը նշանակ էր, և ասանկ բաժակ խմցընելը մարգարէական լեզուին մէջ՝ Աստուծոյ սաստիկ

---

* Ասկէ նոր Յունարէնի մէջ τὸ κρασί.

պատրիժներուն վրայէ վրայ թափուիլը կը նշանակէ ։

Կրնա՞ր արդեօք Տէրունական բաժակը՝ որնոր մարդը մարմնաւոր կեանքէն վեր առնելով աշխարհային ախորժակն եւ հին մարդոյն յիշատակը մոռցնելով լուրջ հոգեւոր իմաստութեան առաջնորդելու և մեղաց տրտմութեամբ բռնուած կուրծքերն աստուածային ողորմութեան ուրախութեամբը լեցնելու սահմանուած է , անխառն բաժակով նշանակուիլ՝ որն

* Սաղմ. ՀԴ.8. « Բաժակ ի ձեռին Տեառն գինի լի անապակ արկեալ . . . մրուր նորա ոչ սպառեցի. եւ արբցեն զնա ամենայն մեղաւորք երկրի »։ Յայտն. Յովհ. ԺԴ. 10. « Որ ոք երկիր եպագ գազանին, այնպիսին արբցէ ի բաժակէ ցասմանն Աստուծոյ, արկելոյ յանապակէ բարկութեան բաժակին։ »

Որպէս զի չըլլայ թէ մէկուն փորձութիւն գայ ԻԲ. Սաղմոսին 5. տունը — « Բաժակ քո որպէս անապակ արբեցոյց զիս » — մեզի հակառակ գտնելու, կ՚ըսենք՝ որ ոչ եբրայեցի եւ ոչ յոյն բնագիրն սանկ է, այլ ևս անապակ բառս հոս ասորի թարգմանութենէն անցնելով մնացած է։ Յոյն բնագիրն է τὸ ποτήριόν σου ὡς κράτιστον, calix tuus tamquam optimus. Բաժակ քո որպէս ամենալաւ։

որ ըստ ամենայնի հակառակը այսինքն մարմնաւոր կենաց մէջ ընկղմումն և մնաց թուլութիւն կ'երեւցընէ ։ կամ ի՞նչպէս այն բաժակը՝ որն որ ի քաւութիւն մեղաց կը հեղուի, անապական աղի՛ որ նշանակուէր, որն որ ըստ ամենայնի ներհակը այսինքն առանց քաւութեան մեղաց պատուհաս կ'երեւցընէր ։

Վարձեալ՝ Հաղորդութեան խորհուրդը ընթրիք մըն է Քրիստոսի Տեառն մերոյ վերջին պասեքի ընթրեացը վրայ հաստատուած ։ Ի՞նչ էին այս ընթրեաց բաժակին կազմիչ մասունքը ։ Նոյն ինքն Քրիստոսի եւ անոր սեղանոյն եւ պատարագին հին եւ անհաշտ թշնամիներն են՝ որոնք այս պասեքին աւանդութիւնը պահած են ։ « Երբոր կերակուրէն վերջը օչհնո-բեան բոծոկէ կ'օրհնուի, անապակ գինի կը լեցուի եւ բաժակին մէջ ջրով կը խառնուի » կ'ըսէ իրենց Փե-սախիմ, այսինքն պասեքի արարողութեան գիրքը ։ Նոյնպէս իրենց Աստուածաբանական բովանդակութիւնը (Տուշան Հարուք) պասեքի ընթրիքը կատարուելէն

ետքը ըլլալու բաժակի օրհնութեան վը-
րայ խօսելով ։ Պէտք է կ'ըսէ, բաժակին
մէջ անապակ գինի դնել, եւ երբոր
գինւոյն օրհնութեան ժամանակը կու-
գայ ջրով խառնել ։ Այս խառնման գոր-
ծողութեանը մէջ, կ'ըսէ, Հրէական
Մեկնիչը ։ աւանդութեան խորհուրդ մը
կայ ։ »

Աս «բաժակ օրհնութեանն է» ποτήριον
τῆς εὐλογίας) որն որ հին սեղանէն նոր սե-
ղանոյն անցաւ եւ աս համեմատութեան
վրայ հիմնուած է (երբոր Առաքեալ կ'ըսէ ·
«Բաժակն օրհնութեան (τὸ ποτήριον τῆς εὐλογίας
զոր օրհնեմք ո՞չ ապաքէն հաղորդու-
թիւն է արեան Քրիստոսի » ։(Ա · Կորնթ ·
Ժ · 16) ։ Ասով միանգամայն կ'իմանանք
որ (Աւետարանիչք Մատթէոս, Մար-
կոս եւ Ղուկաս) իրենց ժամանակակից
ազգակցացը համար բաւական բացա-
յայտ խօսած են թէ բաժակը ջրով
խառնուած էր՝ երբոր Տէրն մերնոյնն ա-
ռաւ եւ օրհնեց ։

Բայց աս Տէրունական բաժակը մի-
նակ հաղորդութեան մաս չէ իբրեւ ըմ-

ղենի, հապա միանգամայն Նոր օրինաց պատարագին մասն է իբրեւ արիւն հեղ-եալ, որով զոհ կամ զենումն կը կատա-րուի՝ երբոր Քրիստոսի Տեառն մերոյ ա-րիւնը մարմնէն խորհրդապէս կը բաժ-նուի ։

Արդ՝ Քրիստոսի Տեառն մերոյ ձեռ-քի բաժակը երկու հեղման արեան հետ յարաբերութեան մէջ էր, որոնք երկուքն ալ, առանց ջրոյ չկատարուեցան ։

Քրիստոս Տէրն մեր ընթրեաց վրայ Նոր օրինաց պատարագը հաստատելու ատեն ան չարչարանաց բաժակը յառաջ բերելով՝ զորն որ Հայր իրեն սահմանած էր եւ հասած էր խմելու ատենը ըսաւ. «Այս է արիւն իմ որ վասն ձեր հեղու»։ Արդ՝ ան արիւնն որ մինակ չհեղաւ կո-ղէն, հապա ջրով մէկտեղ, չէր կրնար ամբողջ ճշդութեամբ նշանակուիլ թէ որ Քրիստոսի բաժակը մինակ արիւնն ե-րեւցընէր առանց ջրոյ տեսակին, կամ չարչարանաց բաժակն ուրիշ՝ եւ օրհնու-թեան բաժակն ուրիշ կերպարանք ու-նենար ։ Ի՞նչ կայ կ՚ըսեն, Ոսկեբերան

եւ Օգոստինոս, բաժակին մէջ՝ բայց եթէ այն հեղուկը որն որ կողէն ելաւ »։

Քրիստոս Տէրն մեր, ճշմարիտ մարգարէ իբրեւ զՄովսէս, եւ լաւագոյն ուխտի միջնորդ, ընթրեաց վրայ Նոյնին տեղ Նոր ուխտ հաստատեց՝ հեղեալ արեամբ, երբոր ըսաւ. «Այս է արիւն իմ Նորոյ ուխտի որ վասն ձեր հեղու» գրեթէ նոյն խօսքը կրկնելով՝ զորն որ Մովսէս Աբրահամու հնագոյն ուխտը նորոգելու համար՝ զենուած որթոյն արիւնը խառնարանէն առած ժողովուրդեան եւ օրինաց գրքին վրայ ցանելու ատեն ըսած էր. «Այս է արիւն ուխտին զոր ուխտեաց ձեզ Աստուած» (Եբ. Ի Դ.)։

Առաքեալ՝ որն որ աս զարմանալի համեմատութիւնը կ'ընէ եւ որն որ զօհերուն արարողութիւնը տեսած էր, երբոր առաջին խորանը դեռ հաստատուն էր, կը ցուցընէ օրինակին եւ ճշմարտութեանը մէջ եղած համեմատութիւնը, նշանակելով՝ թէ Մովսէս զոհին արիւնը ջրով ցանեց, այսինքն զոպան կամ մշտիկը՝ որ կարմիր բրդեայ լարով մը խուրձ

կապուած էր, թէ՛ ջրոյ եւ թէ՛ արեան մէջ թաթխելով. ապա թէ ոչ՝ թանձր արիւնը չէր կրնար դիւրաւ ցանուել կամ վազել*։

Սանկ թէ՛ օրինակն եւ թէ՛ խաչին ճշմարտութիւնը կը պահանջեն՝ որ նորոյ ուխտի բաժակն ալ ջրոյ բաժինն ունենայ։

Քրիստոսի Տեառն մերոյ սեղանը մարգարէական ժամանակին մէջ կը նըկարուէր, երբ Մելքիսեդեկ, Քրիստոսի Տեառն մերոյ քահանայութեան օրինակը՝ հաց եւ գինի կը մատուցանէր**, եւ երբոր Մովսէս, որուն պէս մարգարէ մը պիտ'որ յարուցանէր Աս-

---

* Եւ ո՞չ առաջինն (ուխտ) առանց արեան նորոգէր։ Քանզի իբրեւ պատմեցան ամենայն պատուիրանք ըստ օրինացն ի Մովսիսէ ամենայն ժողովրդեանն առեալ զարիւն որթուցն եւ նոխազաց, ջրով եւ բրդով կարմրով եւ զոպայիւ եւ զկտակարանօքն (զգրովքն) իսկ եւ զամենայն ժողովրդեամբն սրսկեաց եւ ասէ. Այս է արիւն կտակին՝ զոր պատուիրեաց ձեզ Աստուած։ (Եբր. Թ. 19)։

** Կիպ. Թղ. 63. «Քրիստոսի պատարագին օրինակը յառաջագոյն հացով ու գինով կազմուած կը կանխէ՝ զորն որ Տէրը կատարէ-

տուած, ժողովրդեան մանանայ․ Հաց յերկնից տուաւ, եւ իր գաւազանին հարուածովը ջուր, իբրեւ ըմպելի, բըխեցուց վիմէն*։ Թէ որ առջի օրինակին մէջ Ջուրը չ'յիշուիր, եւ երկրորդին մէջ Գինին չ'երեւար, երրորդ մարգարէական տեսութիւն մը երկուքն ալ կը միացընէ՝ երբոր Իմաստութեան հարսանիքը կը նըկարագրէ։ «Իմաստութիւնը, կ'ըսէ Սողոմոն (Առակաց. Թ. 2-5) իրեն տուն շինեց եւ եօթը սիւն կանգնեց, կտրեց իր զենքերը, պատրաստեց իր սեղանը, խառնեց խառնարաններուն մէջ իր գինին, խաւրեց իր սպասաւորները որ բարձրաձայն քարոզեն «Եկէք կերէք իմ հացէս, խմեցէք իմ գինիէս զորն որ ձեզի խառնեցի։» — «Նա հաստատէ խառնեալ գինին, կ'ըսէ Ա.

---

լոգործեալ հաց եւ բաժակ խառնեալ գինւոյ մատոյց, եւ որովհետեւ ինք լրումն է՝ նախանկար պատկերին ճշմարտութիւնը լրացուց։»

* Ինք. Քրիստոս Տէրն մեր եւ Առաքեալ նոյններուն մէջ տէրունական սեղանոյն ու պատարագին գուշակութիւնը կը տեսնեն. Յով. Զ. եւ Ա. Կորնթ. Ժ. 4.

Կիպրիանոս, այսինքն՝ Տէրունական բաժակին ջրով եւ գինւով խառնուած ըլլալը մարգարէական ձայնով յառաջուընէ կը քարոզէ, որպէս զի յայտնի ըլլայ՝ թէ Տէրունական չարչարանաց մէջ ան գործըւեցաւ, ինչ որ յառաջագոյն գուշակուեցաւ։ »

Երբոր հասաւ ժամանակաց լրումը, ինք Քրիստոս Տէրն մեր, ինչպէս ուրիշ խորհուրդներու համար ըրաւ, յառաջագոյն հոգիներն իր ընթրեացը պատրաստեց, երբոր անապատին մէջ սքանչելեօք հազարաւորներու հաց տուաւ. եւ ի Կանա ջրէն գինի, պահելով ամէնէն ետքը իր սքանչելեաց սքանչելիքը տալու ջրէն ու գինիէն՝ իր արիւնը իբրեւ ճշմարիտ ըմպելի։

« Որովհետեւ Հրէից քովը հոգեւոր շնորհքը պակսած էր, կ'ըսէ Ս. Կիպրիանոս, պակսեցաւ գինին ալ, վասն զի այգի Տեառն զօրութեանց՝ Իսրայէլի տունն էր։ Քրիստոս իմացընելով որ հեթանոսաց ժողովուրդը պիտ'որ յաջորդէ, եւ Հրէից բռնած տեղը հա-

ւատոյ արժանաւորութեամբը պիտի
հասնի, ջրէն գինի ըրաւ, այսինքն որ
Քրիստոսի եւ Եկեղեցւոյ հարսանեացը.
Հրէաները դադրելով, աւելի ազգաց
բազմութիւնը խուռնընթաց պիտի՛ որ
գայ։ Որովհետեւ Յայտնութեան մէջ
Աստուածային գիրքը կը յայտնէ որ ջը-
րերը ժողովուրդներ կը նշանակեն։ Նոյ-
նը բաժակին խորհրդեան մէջ ալ կը
տեսնենք։ Որովհետեւ զմեզ զամենք-
նիս կը կրէր Քրիստոս, վասն զի մեր
մեղքերն ալ կը կրէր. կը տեսնենք որ
ջրով ժողովուրդը կ՚իմացուի. գինւով
ալ Քրիստոսի արիւնը կ՚երեւայ։ Իսկ
երբոր բաժակին մէջ գինւոյն հետ ջուր
կը խառնուի, Քրիստոսի հետ ժողովուր-
դը կը միաւորի, եւ հաւատացելոց բազ-
մութիւնն անոր հետ կը զօդի՝ որուն որ
կը հաւատայ։ Ինչպէս որ ջրոյ եւ գինւոյ
միաւորութիւնն այնպէս տէրունանկա
բաժակին մէջ կը խառնուի՝ որ ա՛լ աս
խառնուրդն իրարմէ չի կրնար զատուիլ,
այսպէս ալ եկեղեցին, այսինքն եկե-
ղեցւոյ մէջ եղած ժողովուրդը, երբո՛ր

հաւատարիմ եւ հաստատուն կերպով յայնմ կը յարատեւէ՝ որուն որ հաւատացած է, ամենեւին բան մը չի կրնար զանիկա ի Քրիստոսէ զատել, անանկ՝ որ աս սիրելութիւնն անբաժանելի կը յարի կը մնայ։ Ուստի տէրունական բաժակը սրբագործելու ատեն, չի կրնար մինակ ջուր մատուցուիլ, ինչպէս որ մինակ գինի ալ չի կրնար մատուցուիլ։ Վասն զի եթէ որ մէկը մինակ գինի նըուիրէ, Քրիստոսի արիւնը կը սկսի առանց մեզի ըլլալու։ Իսկ եթէ որ մինակ ջուր ըլլայ, ժողովուրդը կը սկսի առանց Քրիստոսի ըլլալ։ Իսկ երբոր երկուքը կը խառնուի, եւ միաւորութեամբ իրարու կը զօդի, ան ատեն հոգեւոր եւ երկնաւոր խորհուրդը կատարեալ կ'ըլլայ։

Ուստի աս խառնուրդը կը նշանակէ միանգամայն Հաղորդութեան խորհըրդոյն գործքը՝ որն որ Քրիստոսի Տեառն մերոյ իր եկեղեցւոյն հետ հոս խորհրդական միաւորութեան եւ անդին դէմյանդիման միաւորութեան կենդանի պատկերն է։ Որովհետեւ Քրիստոս Տէրն մեր ընթրեաց վրայ յայտնելով իր սիրելինե-

րուն որ ա՛լ առ Հայր պիտ՛որ երթայ , իր սիրելի Հարսին , իր ներկայութեանը գրաւական մը Թողուց երկրի վրայ , ուզելով որ գոհութեան խորհուրդն ու պատարագը իրեն յիշատակին համար կատարուի , մինչեւ որ գայ նորէն՝ փառօք եւ իրեն եկեղեցին իբրեւ յաղթական՝ Փեսային կամ Գլխոյն հետ միաւորած ըլլալով՝ ալ պէտք չունենայ խորհրդական քօղերու , կատարուած ըլլալով Երկինք՝ Աստուծոյ գառին հարսանիքը :

Ուստի՝ Թէ որ ճշմարտութիւն է՝ ինչ որ Ս. Հարք կ՚ըսեն , ինչ որ տիեզերական ժողովք կը հաստատեն , նաեւ անո՛ր համար . Հաղորդութեան բաժակին պէտք է ջուր խառնել՝ վասն զի ջուրերը Ս. Գրոց մարգարէական լեզուաւը ժողովուրդը նշանակելով՝ աս խառնմամբ բաժակը խորհրդաւորապէս (mystiquement) աւելի յարմար կ՚ըլլայ խորհրդոյ գործքը կամ արդիւնքը երեւցընելու , այսինքն ան հաւատոյ , յուսոյ եւ սիրոյ հաղորդութիւնը նշանակե-

լու ։ այն որ Քրիստոնեայ ժողովուրդը թէ իրենց մէջ իբրև իրարու անդամ, եւ թէ Քրիստոսի՝ իրենց Գլխոյն հետ՝ իբրև մի խորհրդական մարմին դերազանց կերպով կը կապէ ։

Ո՜րչափ յարմար եւ վայելուչ՝ որ Քրիստոսի բնական մարմինը Հօր Աստուծոյ նուիրելու ատեն՝ երևցուի անոր խորհրդական մարմինն ալ, այս ինքն հաւատացելոց Եկեղեցին՝ որ նոր է «ոսկր յոսկերաց նորա, մարմին ի մարմնոյ նորա», որուն համար ինք զինք մատնեց և իր մահացու թմբրութեանը մէջ զանիկայ իբրև ճշմարիտ «մայր կենդանեաց» ստացաւ, և չի դադրիր տրելու եւ սնուցանելու խորհուրդներով՝ որոնք արեան և ջրոյն հետ իրեն կողէն բխեցին*։

* Ան աշակերտն որ Քրիստոսի Տեառն մերոյ մահուանը ներկայ էր, քիչ մտադրութեան արժանի չի սեպեր արեան եւ ջրոյն դէպքը, երբոր իր աւետարանին մէջ (Յովհ. ԺԹ. 34) կ'ըսէ. «Ոչ խորտակեցին զսրունս նորա, այլ մի ոմն ի զինուորաց տիգաւ խոցեաց զկողս նորա, եւ ել վաղվաղակի արիւն եւ ջուր։ (Զաղկանոք, փշէ, պսակով եւ

Երբոր ջրոյն հակառակորդները կ՚ուզեն՝ որ Քրիստոսի Տեառն մերոյ կողէն ելած ջուրը միայն մկրտութեան խորհուրդը նշանակէ, ասով պատարագի բաժակը ջրով խառնելուն հարկը չէ թէ մինակ չեն տկարացըներ, հապա աւելի եւ կը հաստատեն։

---

բնւեռմամբ բոլոր մարմնոյն արիւնը թափած էր, աս հարուածը սրտին արիւնն ալ դուրս հանեց եւ աս արեան հետ մէկտեղ ջուր ալ ելաւ վերջէն)։ Եւ որ տեսան՝ վկայեաց եւ ճշմարիտ է վկայութիւն նորա, եւ նա գիտէ՝ թէ ճշմարիտ է զի եւ դուք հաւատասջիք։ Այս եղեւ զի լցցի գիրն թէ—Ոսկր նորա մի փշրեսցի — եւ դարձեալ՝ միւս գիր ասէ եթէ — Հայեսցին ի նա՝ յոր խոցեցինն —։ » Նոյն աշակերտն է միայն, որ կը պատմէ թէ Քրիստոս զԹովմաս հրաւիրեց՝ որ իր կողը շօշափէ ։ Չի մոռնար իր թղթին մէջ (Ա. Յովհ. Ե.) դարձեալ կրկնելու՝ երբոր կ՚ըսէ. «Սա է որ եկն ոչ ջրով միայն (ինչպէս Յովհաննէս Մըկըրտիչ), այլ եւ արեամբ եւ ջրով ։ » Վերջապէս իր Յայտնութեանը մէջ (Ա. 7) Նորէն կ՚ակնարկէ երբոր կը գրէ. «Ահաւասիկ գալոց է ընդ ամպս, եւ տեսցեն զնա ամենայն աչք . . . եւ ամենեքին որ խոցեցինն զնա յերկրի.

1. Այո՛, ճիշդ նաեւ անոր համար՝ պէտք է բաժակին մէջ ջուր հեղուլ՝ վասն զի կողէն հեղուած ջուրը մկրտութիւնը կը նշանակէ. ապա թէ ոչ՝ սեղանոյն պատարագը՝ որն որ չարչարանաց պատարագին գոյացական պատկերն է, կը կորսնցընէ իր ճշդութենէն՝ երբ որ աս վերջինը ջուր ունենայ՝ մկրըտութիւնը նշանակելու, եւ ան առջինը չունենայ եւ չնշանակէ.

2. Նոյն կողին ջուրը, վասն զի մըկըրտութիւնը կը նշանակէ՝ բոլոր մկրտելոց բազմութիւնը, եւ անոնց իրենց գըլխոյն հետ միաւորութիւնն է՝ որն որ Հաղորդութեան բաժակին մէջ ջրոյն գինւոյ հետ խառնմամբը կը նշանակուի.

3. Նոյն կողին ջուրը՝ վասն զի մկըրտութիւնը կը նշանակէ, կը նշանակէ ընդհանրապէս բոլոր խորհուրդներն՝ որոնց երեւեցուցիչ եւ դուռն է մկրտութիւնը, եւ անկէ կը մտնենք քրիստոնէական կենաց ընկերութեան եւ անկէ սկիզբ կ'ընենք, աստուածային պատուէրներուն հնազանդելու (կոչ. ընծ.

Աս ընթրեաց վրայ վերցուած են ան սրբազան քողերն՝ որոնց ներքեւը հիմայ մեր Զատիկը կ'ուտենք՝ մինչեւ որ անցնինք մեր երկնաւոր հայրենիքը (Խօղ. Տրիդ. Նիստ. ԺԳ. Գլ. 8) ուր չենք կրնար (կ'ըսէ Ս. Կիպրիանոս) ի բերոյ որթոյ Նոր գինին ընդ Քրիստոսի անոր Հօրը արքայութեան մէջ խմել. Թէ որ Աստուծոյ Հօր եւ Քրիստոսի պատարագին մէջ տէրունական բաժակը տէրունական աւանդութեան համեմատ չենք խառներ։

Նոր օրինաց պատարագը՝ որն որ խաչի պատարագին գոյացական կամ կենդանի երեւեցուցումն է, ան խորհրդա-

---

մասին «Տէր Թագաւորեաց, վայելչութիւն զգեցաւ։ Ամբարձան գետք, Տէր, ամբարձին գետք զձայնս իւրեանց, յարիցեն գետք ի գնացս իւրեանց, ի ձայնէ ջրոց բազմաց սքանչելի եղեն զբօսանք ծովու։ Սքանչելի ես դու Տէր ի բարձունս»։ Աս սաղմոսը մեր պատարագամատուցին ան տեղուանքն է՝ ուր որ ըստ օրինի բաժակին մէջ ջուր խառնուած պիտ որ ըլլայ։

նան (sacramentel) ամբողջութենէն եւոքը՝ որն որ հացին ու գինւոյն տեսակացը բաժանմամբն եւ ճաշակմամբը կ'ըլլայ, ինչ այնչափ ծանրակշիռ մաս ունի՝ որչափ ան խորհրդաւոր ( mystique ) ամբողջութիւնը՝ որն որ գինւոյն եւ ջրոյն միաւորութեամբը կը կատարուի:

Թէ որ առջի ամբողջութիւնը զոհին վաւերութեանը, երկրորդը՝ անոր օրինաւորութեանը կը վերաբերի: Թէ որ խորհրդական ամբողջութիւնը պակսելով մեր սեղաններուն պատարագը կը դադրի գոյացապէս խաչին պատարագընչանակելէն՝ այսինքն՝ արեան 'ի մարմնոյ բաժանումը՝ որով զենումը կատարուեցաւ, այսպէս ալ՝ երբ որ խորհրդաւոր ամբողջութիւնը, այս ինքն՝ արեան եւ ջրոյ զանազանութիւնը կը պակսի, կը պակսի մեր պատարագը իր յարմարութենէն Քրիստոսի Տեառն մերոյ մահուան ճշմարտութիւնը երեւցընելու:

Լսենք Տիեզերական ժողովներն՝ որոնք թող չեն տար որ աս խորհրդաւոր ամբողջութեան դպչուի:

• Երրորդ խորհուրդն է, կ'ըսէ Փլո-

դենտեան ժողովոյն համաձայնութեամբը տրուած Հայոց Հրահանգը, հաղորդութեան խորհուրդը, որուն նիւթն է ցորենի հացը եւ որթոյ գինին՝ որուն յառաջ քան զսրբագործութիւնը պէտք է չափ քիչ ջուր խառնել։»

«Ջուրն անոր համար կը խառնուի, որովհետեւ Սրբոց Հարց ու վարդապետաց վկայութեանցը համեմատ ասանկ կը հաւատացուի՝ որ նոյն իսկ Տէրն աս խորհուրդը ջրով խառնուած գինւով հաստատեց։»

«Երկրորդ՝ որովհետեւ ասիկայ տէրունական չարչարանքն երեւցընելու յարմար է, վասն զի կանոնները կ'ըսեն՝ թէ խորհրդոց նուէրներու համար՝ որոնք պատարագի ատեն Տեառն կը մատուցուին, մինակ հաց ու ջրով խառնուած գինի պատարագի հանուի։ Որովհետեւ չիկրնար ըլլալ՝ որ բաժակի տեղ կամ մինակ գինի եւ կամ մինակ ջուր Տեառն մատուցուի, հապա երկուքը խառնուած, վասն զի կը կարդացուի՝ որ Քրիստոսի կողէն երկուքն ալ, այսինքն՝ արիւն եւ

ջուր ելաւ*։

« Երրորդ՝ որովհետեւ նոյնը յարմար է աս խորհրդեան գործքը ցուցընելու, որ քրիստոնեայ ժողովրդեան Քրիստոսի հետ միաւորութիւնն է ։ Վասն զի ջուրը՝ ժողովուրդը կը նշանակէ՝ Յայտնութեան խօսքին համեմատ. — Ջուրք բազումք, ժողովուրդք բազումք — ։ Տէրունական բաժակը, ինչպէս որ կանոնները կը պատուիրեն, պէտք է որ գինւով ու ջրով խառնուած մատուցուի. որովհետեւ կը տեսնենք՝ թէ ջրով ժողովուրդը, իսկ գինւով Քրիստոսի արիւնը կ՚իմացուի. ուստի բաժակին մէջ գինին ու ջուրը կը խառնուի, Քրիստոսի հետ ժողովուրդը կը միաւորի ու հաւատացելոց ժողովուրդը անոր հետ կը զօդի ու կը զուգի՝ որուն որ կը հաւատայ ։

---

*Ինովկենտիոս Գ. (վճռականաց Գիրք 3. տիտղ. 41. գլ. 6 եւ 8) առանց որոշելու՝ թէ ինչ էր այն ջուրը՝ որն որ կողէն ելաւ, այսինքն բնական թէ հրաշական, աս միայն կը հաստատէ թէ ճշմարիտ ջուր էր, եւ թոյլ չի տար՝ նոյնը մաղաս (phlegme) կարծել ։

«Արդ՝ ստուգելու թէ Հռովմէական եկեղեցին՝ որն որ Պետրոս եւ Պօղոս երջանիկ Առաքեալներէն տնկուած է, եւ թէ մէկալ ամէն թէ Լատինացւոց եւ թէ Յունաց* եկեղեցիները՝ որոնց ամենուն մէջ սրբութեան ու գիտութեան լոյսեր փայլեցին, եկեղեցւոյ սկիզբէն ասանկ ըրին եւ հիմայ ալ ասանկ կ՚ընեն, շատ անհարկ բան է՝ որ ուրիշ որ եւ իցէ գաւառ կամ երկիր առ ընդհանրական ու բանաւոր կանոնապահութեան անմիաբան ըլլայ»։

«Ուստի կը սահմանենք՝ որ նաեւ Հայք՝ Քրիստոնեայ տիեզերաց հետ համաձայնին եւ անոնց քահանաները բաժակին նուէրին մէջ քիչ մը ջուր, ինչպէս որ ըսինք, գինւոյն հետ խառնեն»։

Ասանկ Եւգինէոս Դ.ի Վճիռ ձեւն Հայոց կոնդակին մէջ։

Տրիդենտեան տիեզերական ժողովն ասկից հաւաքելով Բողոքականաց վարդապետութեան դէմ ասանկ կ՚ըսէ.

* Որոնք նոյն միջոցին նորէն Հռովմէական Եկեղեցւոյն միութեանը դարձած էին։

· Կը յիշեցընէ սուրբ Աւգոստինոսը՝ թէ Եկեղեցիէն Քահանայից հրամայուած է՝ որ բաժակին մէջ գինւոյն հետ ջուր խառնեն, թէ վասն զի կը հաւատացուի՝ որ Քրիստոս Տէրն մեր ատանկ ըրաւ եւ թէ վասն զի անոր կողէն արեան հետ միանգամայն ջուր ելաւ, եւ թէ որովհետեւ ջրերն Երանելի Յովհաննու Յայտնութեան մէջ ժողովրդոց համար կ'ըսուին, հաւատացեալ ժողովրդեան Քրիստոսի՝ իր գլխոյն հետ միաւորութիւնը կ'երեւցուի ։

Եւ վերջապէս նոյն Տրիդենտեան ժողովոյն կանոնը ( 9 · վասն զոհի պատարագին ) կ'ըսէ ·

«Թէ որ մէկն ըսելու ըլլայ · · · որ բաժակը նուիրելու ատեն ջուր պէտք չէ խառնել, որովհետեւ Քրիստոսի դըրածին դէմ է, նզովեալ ըլլայ»։

Ուրեմն 1 · Եկեղեցւոյ կատարելապէս հանդիսական պատուիրանն է. ամէն քահանայից համար՝ որ պատարագի բաժակին մէջ քիչ մը ջուր խառնեն ։

2 · Այս պատուիրանն՝ Եկեղեցւոյ ըսկիզբէն անընդհատ աւանդութեան վը-

բայ հիմնուած է. անանկ որ այս արարողութեան նկատմամբ ծիսի բաժանում ոչ եղած է եւ ոչ թոյլ կը տրըւի՝ որ ըլլայ, վասնզի ասոր պատճառները շատ ծանրակշիռ են. եւ ան արարողութեանց կարգէն չէ՝ որոնք փոփոխութեան ենթակայ են օրինաւոր իշխանութեամբ կամ սովորութեամբ մը.

3. Այս պատուիրանն անանկ բան մը կը հրամայէ՝ որն որ ա) Քրիստոսի Տեառն մերոյ օրինակին, (ինչպէս աւանդութիւնը կը ցուցնէ), բ) Քրիստոսի Տեառն մերոյ չարչարանաց պատմութեանը համաձայն, եւ գ) խորհրդոյն գործքն երեւցնելու յարմար է.

4. Այս պատուիրանին գործադրութեան կողմանէ՝ էական են սա պարագաները, այսինքն՝ սա պատուէրը կամ արարողութիւնը կատարուած ըլլալու համար՝ հարկ է որ ջուրը ա) փոքրիկ քանակութեամբ, բ) սրբագործութենէն յառաջ, գ) ի պաշտօնէ կամ պատարագին հանդիսութեանը վերաբերութեամբ, դ) ի ձեռն պատարագչին կամ սարկաւագին եւ կամ կիսասարկաւագին, ե)

բաժակին մէջ, ղ) գինիէն ետքը եւ կամ գինւոյն հետ մէկտեղ* հեղուլ:

5. Աս պատուիրանն աս պարագաներով մէկտեղ ծանր կը պարտաւորէ, որովհետեւ ծանր նիւթի մէջ ծանր եւ հանդիսական կերպով Եկեղեցին պատուիրած եւ յիշեցուցած է: Աստ պատճառներն այնչափ ծանրակշիռ են, կ'ըսէ Տրիդ. ժող. կոչ. ընծ. մասն. Բ. գլ. Դ. 17.) որ առանց ծանր մեղաց չի կրնար զանց առնուիլ:

Իսկ բաժակին մէջ խառնուած ջրոյն սրբագործութեամբ փոխարկուելուն նըկատմամբ եղած խնդիրներն ազատ են, վասն զի Եկեղեցին ասանց եւ ոչ մէկը սահմանած է: Բայց զանազան կարծեաց մէջ ան կարծիքն աւելի հաւանական կը սեպուի որն որ կ'ըսէ թէ ջուրը գինւոյն հետ մէկտեղ արեան կը փոխուի (վճռականաց գիրք 3. տիտղ. 41. գլ. 6):

* Ցուցնաց քով սարկաւագը կամ կիսասարկաւագը մի եւ նոյն ատեն աջ ձեռօք գինին եւ ձախ ձեռօք ջուրը բաժակին մէջ կը հեղու:

## Դ.

## Հայոց Էջմիածնայ Քրիստոնէականներուն վարդապետութիւնը։

Տաճկաստանի քրիստոնէականները բոլորովին աս նիւթիս վրայ կը լռեն, որովհետեւ՝ ինչպէս կ'երեւայ, շատ անտարբեր խնդիր մը կը սեպեն, կարծելով որ անանկ ազատ բան մըն է ջրով կամ առանց ջրոյ խորհրդոյ բաժակը կատարելը, ինչպէս ազատ է խմորեալ կամ անխմոր հաց նուիրելը։

Մինակ Էջմիածնական մայր աթոռոյն վերաբերեալ 1850ին կրկին (ընդարձակ եւ համառօտ) Քրիստոնէականներն աս նիւթը զանց չեն ըներ։ Աս երկուքն, որչափ ալ մի եւ նոյն գրչէ ելած ըլլան, վերջինն՝ առջինէն շատ տարբեր լեզու ունի։

Ընդարձակը կ'ըսէ.

Հ. Որո՞վք նիւթովք արժան է կատարել զայդ խորհուրդ (Հաղորդութեան)։

Պ. Անխմոր (այս ինքն բաղարջ) հացիւ եւ անապակ (այս ինքն՝ անջուր)

»գինեաւ, որպէս Հայաստանեայցս ե-
»կեղեցւոյ է սովորութիւն՝ ըստ օրինա-
»կի Տեառն մերոյ Քրիստոսի» (էջ 49-50)։

Երկրորդ մասին մէջն ալ սա երեք նախադասութիւնները կը ձեռնարկէ հաստատելու։

«Զխորհուրդն Հաղորդութեան ար-
»ժան է կատարել՝ անխմոր հացիւ եւ
»անջուր գինեաւ»։

«Հայաստանեայց եկեղեցի բաղարջ
»հացիւ եւ գինեաւ միայն՝ առանց ջրոյ
»խառնման կատարէ զխորհուրդն Հա-
»ղորդութեան»։

«Քրիստոս անխմոր հացիւ եւ ան-
»ջուր գինեաւ աւանդեաց զխորհուրդն
»Հաղորդութեան» (էջ 313—316)։

Ո՞վ չի տեսներ՝ որ աս Քրիստոնէականն՝ առաջնակայ նիւթիս մէջ՝ չէ թէ մինակ պաշտպանողական, հապա նաեւ յարձակողական շարժում կը ցուցնէ, չէ թէ մինակ՝ անջուր բաժակն օրհնաւոր կը սեպէ, հապա ջուր ընդ գինի խառնուած բաժակն՝ ապօրինաւոր [illegible] կական ըմբռնման հետեւելով՝ անջուր գինին անխմոր հացին հետ կապուած կը

կարծէ եւ անանկով կը համարձակի մինչեւ նաեւ Քրիստոսի Տեառն մերոյ աւանդութեանը հանելու։

Ասանկ ան Քրիստոնէականը՝ որն որ իբրեւ Էջմիածնական եկեղեցւոյ հարազատ վարդապետութիւն՝ կաթողիկոսական կնքով վաւերացած է։

Բայց ասանկ չէ նոյն տարւոյն եւ տեղւոյն համառօտ Քրիստոնէական հաւատոյ Հրահանգը (էջ 53)։

«Հ. Որովք նիւթովք, կ՚ըսէ, կատարի առ մեզ այդ խորհուրդ (Հաղորդութեան)։

«Պ. Բաղարջ հացիւ եւ անապակ գինւով»։

Հոս խոհեմ հեղինակը կը խորշի խընդիրը կրկնելու, վասն զի գիտէ՝ որ աս խնդրոյն մէջ ալ ամենուն ձեռքն իր վրայ եւ իր ձեռքն ամենուն վրայ է. անոր համար՝ առանց աս անպատեհ սովորութիւնը պաշտպանելու, առանց ուրիշ եկեղեցեաց միացեալ զօրութեանը դպչելու՝ Էջմիածնական եկեղեցւոյն գրեթէ միայն գործոյն պատմիչ կ՚ըլլայ, բայց հարկաւ աս գործքը ապօրինաւոր չի սեպեր։

Ահաւասիկ հոս բռնուած դիրքը մինակ պաշտպանողական է։

Այսչափ զգուշաւոր չէ Համգիտարանին հեղինակը՝ որն որ կ՚ուզէ խորերը յուզել։

«Հայոց եկեղեցւոյն անապակ գինեաւ կատարելը, կ՚ըսէ, հին վաւերական սովորութիւն է։ Վասն զի առաջին Աղեքսանդր պապն սահմանեց ջուր խառնելը բաժակին Հռովմէական եկեղեցւոյն մէջ։ . . . Որուն սովորութիւն չէր ջուր խառնել ի բաժակն եւ նոր սահմանադրութիւն մը հնարեց առնելով Աւետարանին խօսքէն — Եւ արիւն եւ ջուր — ։ Բայց այն ջուրն, որ ել ի կողէն Քրիստոսի, էր հաստատութիւն սրբարար մկրտութեան խորհրդոյն, եւ արիւնն հաստատութիւն կենդանարար Հաղորդութեան խորհրդոյն»։ (Համգ. էջ. 338)։

Արդ վկայութիւններն ալ մէկանց առնելով՝ որոնք իբրեւ վաւերական (*) յառաջ կը բերուին*, սա հաստատուած

* (Էջ 339. 345)։

կը տեսնենք՝ թէ Հայք պէտք չեն պատարագի բաժակին մէջ գինւոյն հետ ջուր խառնել՝ վասն զի

1. Ոչ ճշմարտութիւնն, այս ինքն Քրիստոսի օրինակն ասանկ էր,

2. Ոչ նախնական ընդհանրական եկեղեցւոյ աւանդութիւնն ասանկ էր, եւ ոչ ալ

3. Ս. Գրիգոր Հայոց ասանկ աւանդեց։

Այսոնցմէ սա յաղթական եզրակացութիւնը կը հանէ Հանդիսարանը՝ թէ «Ուրեմն Հայոց եկեղեցին հին եւ վաւերական սովորութեան եւ աւանդութեան եւ Ս. Գրոց համեմատ անապակ գինեաւ պատարագելով, ոչ միայն է ուղղափառ եւ բարեպաշտ, այլ եւ հին արարողութեան սրբոյ Եկեղեցւոյն Քրիստոսի իսկապէս աւանդապահ»։ (Իջ, 342)։

Երբեք պիտ՚որ չկրնայ մարդ սա նիւթիս մէջ անկէ աւելի՝ եկեղեցւոյ հեղինակութեան, եկեղեցական պատմութեան, եւ մատենագրութեան եւ վեր-

Ջապէս առողջ բանադատութեան դէմ խօսիլ։

1. Կաթողիկէ եկեղեցին, արեւելեան ժողովոց հաւանութեամբ, կը պատուիրէ ամէն քահանայից եւ ի մասնաւորի Հայոց քահանաներուն՝ որ գինւոյն հետ քիչ մը ջուր խառնեն տէրունական բաժակին մէջ։ Հայոց Էջմիածնական եկեղեցին՝ Էջմիածնական եկեղեցւոյ քրիստոնէականներուն, Հանդիսարանին եւ ընդհանուր գործածութեանը համեմատ, ասոր ճիշդ հակառակը կը պատուիրէ իր քահանայիցը, այսինքն՝ թէ Տէրունական բաժակն առանց ջրոյ ընեն։ Երկու ըստ ամենայնի իրարու հակառակ եկեղեցւոյ հրամաններ։

2. Կաթողիկէ եկեղեցին կ՚ըսէ՝ թէ անոր համար պէտք է աս քիչ մը ջուրը խառնել, վասն զի կը հաւատայ՝ թէ Քրիստոս Տէրն մեր ասանկ ըրած է։ Հանդիսարանը կը հաստատէ՝ թէ նաեւ անոր համար Էջմիածնական եկեղեցին աս քիչ մը խառնումը չ՚ըներ, վասն զի Քրիստոս Տէրն մեր ալ չխառնեց։ Եր-

կու ըստ ամենայնի իրարու հակառակ տէրունական օրէնքներ ։

3 . Կաթողիկէ եկեղեցին , տիեզերական ժողովոց համաձայնութեամբ , կը ծանուցանէ՝ որ եկեղեցին իրեն խանձարուրքէն՝ առաքելական աւանդութեամբ՝ սանկ ըրած է . սոր հակառակ Հանդիսարանը կ՚ըսէ՝ թէ Հռոմէական եկեղեցին . Նոր սահմանադրութիւն մը հնարեց . , երբ որ նախնական աւանդութիւնը խափանելով հրամայեց որ գինուոյն հետ ջուր խառնուի ։ Երկու ըստ ամենայնի իրարու հակառակ առաքելական աւանդութիւններ ։

4 . Կաթողիկէ եկեղեցին Տէրունական բաժակին եւ Քրիստոսի կողէն վազած ջրոյն մէջ խորհրդաւոր համեմատութիւն մը կը վարդապետէ , տիեզերական ժողովոց համաձայնութեամբ ։ Հանդիսարանն աս համեմատութիւնը բացէ ի բաց կ՚ուրանայ , միայն մկրտութեան խորհրդոյն նոյնը վերաբերեցընել ուզելով ։

5 . Էջմիածնական եկեղեցին, անանկ ինչպէս որ Հանդիսարանը վերոյիշեալ

նախադասութիւններովը կը ցուցընէ , ո՛րչափ արդեօք ճամբայ ունի սա կանոնին սահմանը կոխելու՝ զորն որ Տէրդենտեան տիեզերական սիւնհոդոսը ( Նիստ . ԻԲ . ) կ'որոշէ , երբ որ կ'ըսէ . «Թէ որ մէկն ըսէ՝ թէ պէտք չէ նուիրելու ատեն գինւոյն հետ ջուր խառնել , վասն զի Քրիստոսի դրութեանը հակառակ է , նզովեալ ըլլայ » :

Սիւնհոդոսն՝ որուն Հոգին սուրբ , Հոգի իմաստութեան եւ հեզութեան առաջնորդած է , համեմատ եկեղեցւոյ մտացը , որն որ իբրեւ գթած մայր մը՝ աւելի կ'ուզէ՝ որ օրհնէ , քան թէ «ի բանէն ապստամբեալներն» անիծէ , Հայոց համար՝ եկեղեցւոյ պատուիրանը բաւական սեպելով՝ իրեն սովորական զգուշութեամբն անանկ իր կանոնը կազմեց , որ ուղղակի մինակ բողոքականներուն վերաբերի , որոնք իրենց Առաջնորդին հետ սա ջրոյ խառնուրդը «մարդկային գիւտ» կը սեպէին՝ Հռոմայ քահանայապետներէն հնարուած :

Առ փափուկ զգուշաւորութենէն Համդիտարանին ալ բաժին մը կը բաղ-

ձայնիւք ։ Զարմանալի՛ իրաց փոփոխութիւն ։ Սիւնհոդոսին Հարքը չէին կըրնար մտածել որ վերոյիշեալ կանոնով հերքուածը 300 տարի ետքը՝ այլ անոնք պիտ'որ չըսեն՝ որոնց համար նոյն կանոնը կը շինեն, հապա գրեթէ միայն անոնք՝ որոնց համար չեն ուզեր ուղղակի՝ որ նոյն կանոնը շինուած ըլլայ ։

Թէ որ Հանդիսարանը դեռ Մակարիոս Երուսաղէմի Հայրապետէն, դեռ Ոսկեբերանէն, Կիւրեղ Աղեքսանդրացիէն, դեռ Կիպրիանոսէն եւ վերջապէս դեռ Առաքելոց ըսուած սահմանադրութիւններէն Էջմիածնական եկեղեցւոյն մէջ գերծմամբ մտած անջուր բաժակին վկայութիւններ կը կարծէ գտած ըլլալ, որոնք ըստ մասին անգոյ, ըստ մասին սուտ եւ շինծու են, ստուգիւ մեր օրերուն տպագրութեան եւ քննադատութեան վարդագոյն լուսոյն մեծ անպատուութիւն է, վասն զի անցած են, թէ որ չենք սխալիր, նաեւ մեր տոհմային պատմութեան ան երկայն դարերը որոնք այս սուտ կանխեցներով

տու ժամանակ մի ցնծացին, որոնց լոյսը չկրցաւ մինչեւ առաւօտ տեւել։ Երբեք չէ ապացուցուած, երբեք պիտ'որ չապացուցուի՝ որ աս չարաչար սովորութիւնը Հայաստանէ դուրս անկիւն մը գոյութիւն ունեցած ըլլայ, բայց եթէ աղանդներու մէջ։

Ինչպէս Հանդիսարանին, նոյնպէս ալ վերոյիշեալ քրիստոնէականներուն համար (Հրահ. քրիստ. հաւատոյ. Մոսկ. 1850, էջ 53—54) մի միայն նեցուկ կը մնայ՝ որով կը կարծեն թէ անհակառակելի կերպով գոնէ սա ցուցուած ըլլայ թէ աս սովորութիւնն այնչափ հին է, որչափ Հայաստանի դարձը հին է, այս ինքն՝ թէ Ս. Գրիգոր առանց աւանդած ըլլայ։

Ո՞րն է արդեօք աս կարծեաց մի միայն յենարանը։

Միայն սա Յով. Իմաստասիրի խօսքը։

«Արժան է եւ զհացն անխմոր եւ զգինին անապական հանել ի սուրբ սեղանըն ըստ աւանդելոյ մեզ Սրբոյն Գրիգորի. զի Սուրբ Լուսաւորիչն յօրինա-

քին գոնէ շատ մօտենայ։[1]

Կա՞յ սակայն վկայութիւն մը կամ ապացոյց մը վերոյիշեալ խօսքերուն մէջ։ Այմենեւին։ Այնպիսի անձ մը՝ որ կաթողիկոսական բարձր իշխանութեամբն ամենէն աւելի միջոց ձեռքն ունէր՝ հետազօտութիւններ ընելու, այնպիսի անձ մը՝ որ Հայաստանի եկեղեցական օրէնսդրութիւնը կրկնեց՝ զանազանից քով ցան եւ ցիր գտնուած յիշատակարաններէն կանոնագիրք մը շինելով*, ի վերայ այսր ամենայնի ո՛չ վերի խօսքերուն մէջ եւ ոչ ալ կանոնագրքին մէջ վաւեր կանոն մը կարող եղած է յառաջ բերել։ Ուստի վերոյիշեալ խօսքը մեր խնդրոյն նկատմամբ՝ պարզ ենթադրութիւն է կամ կարծիքէ մ'աւելի արժէք չի կրնար ունենալ։

Զ. Վերոյիշեալ խօսքը նաեւ երբեւ յետնաշինութեան՝ բոլորովին անզօր է։ Ա. Նոր պարունակած ձեռնարկութիւնը սա է. «Որովհետեւ հին օրինաց համ Պասեքին ընթերցուաց հացը բաղարջ էր եւ

*Ինչպէս ինք կանոնագրոց յիշատակարանին մէջ կ'ըսէ (Մատենագր. Յովհ. Իմ. էջ 115)։

գինին՝ անջուր կամ անապակ ։ Ս. Գրիգոր ասկէ առնելով՝ իրեններուն համար պատարագի գինին անջուր կամ անապակ սահմանեց։

Ուրեմն բովանդակ հիմն՝ որուն վրայ աս ձեռնարկութիւնը կեցած է, հին օրինաց (ուստի եւ Քրիստոսի Տեառն մերոյ) Պասեքի ընթրեաց բաժակին անջուր ենթադրելն է ։ Բայց, ինչպէս գիտենք ։ աս ենթադրութիւնը տեղի չունի . այսպիսի սովորութիւն մը հին օրինաց կամ Հրէից Պասեքին մէջ չկայ, եւ «օրհնութեան բաժակը» ջրով բարեխառնուած գինի է*։ Ասանկով առանց

*Վերը էջ 225 նշանակուածներուն վրայ կ'աւելցընենք Յան գերմանացւոյն (Հնախօս Ս. Գրոց, տպ. Վիէն. էջ 484-5) ըսածը. «Աս (Պասեքատօնին) ընթրեաց արարողութիւնները հիմնուած Հրէից Պասեքի յիշատակին ընթրեացը վրայ կատարուածներուն հետ գրեթէ նոյն էին, ինչպէս որ փեսաքիմ ըսուած գրքին մէջ կը նշանակուին (Համեմատ Ա. Կորընթ. ԺԱ. 26). Նոյները Քրիստոսի Տեառն մերոյ վերջին ընթրեացը վրայ ալ կը տեսնուին. վասն զի հոս ալ հացի եւ գինւ-ւոյ ան կանոնագրեալ օրհնութիւնք (Մատթ.-

սաներորդեանց դէմ՝ որոնք զատկի կամ պասեքի ժամանակին նկատմամբ՝ փոխանակ քրիստոնէից ընդհանրագոյն սովորութեան համաձայնելու, նոր օրինաց պասեքը Հրէից հետ մի եւ նոյն ատեն կ'ուզէին տօնել :

Գ. Վերոյիշեալ խօսքերուն մէջ նախընթացներուն վրայ ուրիշ երկու ենթադրութիւններ ալ կ'աւելցուին՝ գուցէ նոյները հաստատելու համար. բայց առ վերջիններն առջիններէն աւելի հաստատութեան կարօտ են։ Այս ինքն՝ թէ Ս. Գրիգոր սահմանադրած ըլլայ՝ որ քահանայութիւնը Հայաստանի մէջ (Ղեւտացւոց ցեղին նման) քահանայից ցեղին մէջ մնայ իբրեւ ժառանգական պաշտօն մը եւ հին օրինաց զոհերուն նման արարողութեամբ մատաղներ կամ ագապներ մատուցուին եւ բաժնուին. Բաւական ատեն է՝ որ ինք Հայ ժողովուրդը քրիստոնէական ազգոյ բերման հետեւելով ինք զինք կամաց կամաց աս երկու անպատեհ սովորութիւններէն սրբեց՝ (թէ որ առջինը հին Հայաստանի քրմաց սովորութենէն զեղծմամբ ծագում առած է,

Ինչպէս որ երկրորդն ալ դրացի Ասորի-ներէն սպրդելով մտած է) շահախնդրութիւնն աւելորդապաշտութեան երեւոյթ ունեցող արարողութիւններով զարդարեց եւ (Յունաց հետ) հակառակութիւնը նոյնն արմատացուց ։ Ասոնք Իմաստասէր մինակ քանի մը ոտայօղ յիշատակարաններէ պատրեալ՝ կրցաւ Ս. Գրիգորէն սերպել, որոնց ստութիւնը հիմայ արեւուն լուսոյն պէս յայտնի է ։

Արդ վերոյիշեալ խօսքին բովանդակ հիւսուածին մտադիր ընթերցողը դիւրաւ կը տեսնէ՝ որ Իմաստասէր պատմական կերպով կամ իրական տեղեկութիւն մը տալու եղանակաւ չի խօսիր , հապա միայն կը մակաբերէ , հիմ կը փնտռէ , կը համեմատէ , կ՚ենթադրէ կամ կը կարծէ ։ Աս ամէնն ընելու ատեն՝ Իմաստասէր դեռ աս նիւթիս մէջ տիեզերական աւանդութեան մեծայարգ պատկերը այնպէս աչայծառ տեսած չէր , ինչպէս մեր եւքի Հարքն եւ մենք տեսանք , եւ ոչ առաքելական Աթոռէն դեռ իրեն ականջը ձայն հասած էր ; եւ ոչ ալ վերջապէս իրեն ժամա-

ձայնիք ։ Զարմանալի՛ իրաց փոփոխութիւն ։ Միւնհոդոսին Հարքը չէին կընար մտածել որ վերոյիշեալ կանոնով հերքուածը 300 տարի ետքը՝ ալ անոնք պիտ՛որ չըսեն՝ որոնց համար նոյն կանոնը կը շինեն, հապա գրեթէ միայն անոնք՝ որոնց համար չեն ուզեր ուղղակի՝ որ նոյն կանոնը շինուած ըլլայ ։

Թէ որ Հանդիսարանը դեռ Մակարիոս Երուսաղէմի Հայրապետէն, դեռ Ոսկերբերանէն, Կիւրեղ Աղեքսանդրացիէն, դեռ Կիպրիանոսէն եւ վերջապէս դեռ Առաքելոց ըսուած սահմանադրութիւններէն Էջմիածնական եկեղեցւոյն մէջ զեղծմամբ մտած անջուր բաժակին վկայութիւններ կը կարծէ գտած ըլլալ, որոնք ըստ մասին անգոյ, ըստ մասին սուտ եւ շինծու են, ստուգիւ մեր օրերուն տպագրութեան եւ քննադատութեան վարդագոյն լուսոյն մեծ անպատուութիւն է, վասն զի անցած են, թէ որ չենք սխալիր, նաեւ մեր տոհմային պատմութեան ան երկայն դարերը որոնք աս սուտ կանխեղծներով

տու ժամանակ մի ցնծացին, որոնց լոյսը չկրցաւ մինչեւ ասօր տեւել: Երբեք չէ ապացուցուած, երբեք պիտ'ոչ յապացուցուի' որ սա չարաչար սովորութիւնը Հայաստանէ դուրս անկիւն մը գոյութիւն ունեցած ըլլայ, բայց եթէ աղանդներու մէջ:

Ինչպէս Հանդիսարանին, նոյնպէս ալ վերոյիշեալ քրիստոնէականներուն համար (Հրաւ. քրիստ. հաւատոյ. Մոսկ. 1850, էջ 53—54) մի միայն նեցուկ կը մնայ' որով կը կարծեն թէ անհակառակելի կերպով գոնէ սա ցուցուած ըլլայ թէ սա սովորութիւնն այնչափ հին է, որչափ Հայաստանի դարձը հին է, այս ինքն' թէ Ս. Գրիգոր առանց աւանդած ըլլայ:

Ո՛րն է արդեօք սա կարծեաց մի միայն յենարանը:

Միայն սա Յով. Իմաստասիրի խօսքը:

«Արժան է եւ զհացն անխմոր եւ զգինին անապակ հանել ի սուրբ սեղանըն ըստ աւանդելոյ մեզ Սրբոյն Գրիգորի. զի Սուրբ Լուսաւորիչն յօրինա-

կանէն բերեալ զայս առաքելաբար հըր-
յամանն եւ կատարել խուրց միճակելո-
ցըն. եւ մեզ 'ի նմին պարտ է յարանալ
եւ չառնել նորաձեւս ինչ.:

Այսանկ յառաջ կը բերեն վերոյիշեալ
քրիստոնէականներն ինչպէս նաեւ Հան-
դիսարանը։ Բայց բնագիրն իր ամբող-
ջութեանը մէջ սաանկ է.

«Արժան է եւ վայելուչ՝ անխափան, եւ
զկէնսն՝ անապական հանել ի սուրբ սեղա-
նոյն, ըստ աւանդութեան մեզ Սրբոյն Գրի-
գորի; եւ ոչ խոնարհել յայլ ազգաց
քրիստոնէից աւանդութիւնս. զի Սուրբ
Լուսաւորիչն յօրինականէն բերեալ զայս՝
առաքելաբար հրամանն եւ կատարել
խորոց միճակելոցն. որպէս եւ զաղն
օրհնութեան յագապայն զենմունս խառ-
նել. եւ ըստ կարգի Ղեւտացւոցն՝ աղ-
դաւ սեպհականել զեկեղեցւոյ. չորրհ.
եւ մեզ ի նմին պարտ է յարանալ եւ չը-
թողուլ ի բաց եւ չառնել նորաձեւս ինչ.:

Ապա է ճշմարիտ են բանադատութեան
կանոնները՝ որոնք վերջապէս մեզ գրուս
բնածին ընդարձկութեան օրէնքներն են,
վերոյիշեալ խօսքերն անենեւ ինչ չեն կր-

քին գոնէ շատ մօտենայ :'

Կա՛յ տասնեակ վկայութիւն մը կամ ապացոյց մը վերոյիշեալ խօսքերուն մէջ : Ամենեւին : Այնպիսի անձ մը՝ որ կաթողիկոսական բարձր իշխանութեամբն ամենէն աւելի միջոց ձեռքն ունէր՝ հետազօտութիւններ ընելու, այնպիսի անձ մը՝ որ Հայաստանի եկեղեցական օրէնսդրութիւնը կրկնեց՝ զանազանից քով ցան եւ ցիր գտնուած յիշատակարաններէն կանոնագիրք մը շինելով*, ի վերայ այսըր ամենայնի ո՛չ վերի խօսքերուն մէջ եւ ոչ ալ կանոնագրքին մէջ վաւեր կանոն մը կարող եղած է յառաջ բերել : Ուստի վերոյիշեալ խօսքը մեր խնդրոյն նկատմամբ՝ պարզ ենթադրութեան կամ կարծիքի մ'աւելի արժէք չի կրնար ունենալ :

Զ. Վերոյիշեալ խօսքը նաեւ իբրեւ յետադարձութեան՝ բոլորովին անզօր է : Անոր պարունակած ձեռնարկութիւնը սա է . «Որովհետեւ հին օրինաց կամ Պասեքին ընթրեաց հացը բաղարջ էր եւ

* Ինչպէս ինք կանոնագրոց յիշատակարանին մէջ կ'ըսէ ( Մատենագր. Յովհ. Իմ. էջ 115 ) :

գինին՝ անջուր կամ անապակ ․ Ս․ Գրի–գոր աւելի առնելով իրենններուն համար պատարագի գինին անջուր կամ անա–պակ սահմանեց։

Ուրեմն բովանդակ հին՝ որուն վրայ աս ձեռնարկութիւնը կեցած է, հին օ–րինաց ( ուսաւ եւ Քրիստոսի Տեառն մերոյ ) Պասեքի ընթրեաց բաժակին ան–ջուր ենթադրելն է ։ Բայց , ինչպէս գի–տենք , աս ենթադրութիւնը տեղի չու–նի ․ այսպիսի սովորութիւն մը հին օրի–նաց կամ Հրէից Պասեքին մէջ չկայ , եւ «օրհնութեան բաժակը» ջրով խառնուած գինի է*։ Աստնկով առանց

*Վերը էջ 225 նշանակուածներուն վրայ կ'աւելցընենք նաեւ գերմանացւոյն ( Հնախօս Ս․ Գրոց, տպ․ Վիէն․ էջ 484-5) ըսածը․ «Աս ( Պասեքատօնին ) ընթրեաց արարողութիւն–ները հիմնկուան Հրէից Պասեքի յիշատակին ընթրեաց վրայ կատարուածներուն հետ գրեթէ նոյն էին , ինչպէս որ փեսաքիմ ըս–ուած գրքին մէջ կը նշանակուին ( համեմատ Ա․ Կորընթ․ ԺԱ․ 26)․ նոյները Քրիստոսի Տեառն մերոյ վերջին ընթրեացը վրայ ալ կը տեսնուին ․ վասն զի հոս ալ հացի եւ գինւոյ ան կանոնագրեալ օրհնութիւնը ( Մատթ․

սներորդեանց դէմ՝ որոնք զատկի կամ պասեքի ժամանակին նկատմամբ՝ փոխանակ քրիստոնէից ընդհանրական սովորութեան համաձայնելու, նոր օրինաց պասեքը Հրէից հետ մի եւ նոյն ատեն կ'ուզէին տօնել։

Գ. Վերոյիշեալ խօսքերուն մէջ նախընթացներուն վրայ ուրիշ երկու ենթադրութիւններ ալ կ'աւելցուին՝ գուցէ նոյները հաստատելու համար. բայց աս վերջիններն առջիններէն աւելի հաստատութեան կարօտ են։ Այս ինքն՝ թէ Ս. Գրիգոր սահմանադրած ըլլայ՝ որ քահանայութիւնը Հայաստանի մէջ (Ղեւտացւոց ցեղին նման) քահանայից ցեղին մէջ մնայ իբրեւ ժառանգական պաշտօն մը։ եւ հին օրինաց զոհերուն նման արարողութեամբ մատաղներ կամ ագապներ մատուցուին եւ բաժնուին. Բաւական ատեն է՝ որ ինչ Հայ ժողովուրդը քրիստոնէական ազգայ բերման հետեւելով ինք զինք կամաց կամաց աս երկու անպատեհ սովորութիւններէն սրբեց՝ (թէ որ առջինը հին Հայաստանի քրմաց սովորութենէն զեղծմամբ ծագում առած է,

ինչպէս որ երկրորդն ալ դրացի Ասոր-
ներէն սպրդելով մտած է) չահախնդրու-
թիւնն աւելորդապաշտութեան երեւոյթ
ունեցող արարողութիւններով զարդարեց
եւ (Յունաց հետ) հակառակութիւնը
նոյնն արմատացուց ։ Ասոնք Իմաստա-
սէր մինակ քանի մը ստայօդ յիշատա-
կարաններէ պատրեալ՝ կրցաւ Ս. Գրի-
գորէն սորվել, որոնց ստութիւնը հիմայ
արեւուն լուսոյն պէս յայտնի է ։

Արդ վերոյիշեալ խօսքին բովանդակ
հիւսուածին մտադիր ընթերցողը դիւ-
րաւ կը տեսնէ՝ որ Իմաստասէր պա-
մական կերպով կամ իրական տեղեկու-
թիւն մը տալու եղանակաւ չի խօսիր,
հապա միայն կը մակաբերէ, հիմ կը
փնտռէ, կը համեմատէ, կ'ենթադրէ
կամ կը կարծէ ։ Աս ամէնն ընելու ա-
տեն՝ Իմաստասէր դեռ սա նիւթիս մէջ
տիեզերական աւանդութեան մեծա-
յաղթ պատկերը այնպէս աչայծառ տե-
սած չէր, ինչպէս մեր ետքի Հայրքն եւ
մենք տեսանք, եւ ոչ առաքելական Ա-
թոռէն դեռ իրեն ականջը ձայն հասած
էր, եւ ոչ ալ վերջապէս իրեն ժամա-

նելը՝ կրնայ բաւական ապացոյց մը սեպուիլ՝ որ Հայաստանի մէջ անջուր բաժակին ծագումը Միաբնակաց մոլորութենէն կախում ունեցած չէ ։

---

*Չենք կրնար պնդել՝ թէ Հայաստանի մէջ երբէք յիշեալ թիւր ըմբռնման տէր մարդիկ եղած չըլլան. փոքր գրութիւն մը կայ, ժողովոց պատմութիւն ըսուած եւ իրաւամբք տղայ կոչուած, դեռ ձեռագիր (Թիւ 101) Ասոր համեմատ՝ 725ին, Մանազկերտ իբրեւ թէ ժողով եղեր եւ 6-7 ասորի միաբնակ եպիսկոպոսներն ալ ներկայ գտնուելով՝ ուրիշ որոշումներէն զատ սա ալ սահմաներ է. «Զխմոր եւ զջուր յայսմ հետէ արտաքս ընկեսցուք ի կենսաբեր խորհրդոյն, զի մի յայս նայելով առաջնորդացն՝ որք գայցեն զկնի մեր, դարձեալ ապականութեամբքն խոտորեսցին անկանել յերկաբնակն Քաղկեդոնի.... Զխմոր եւ զջուր յաստուածային խորհրդոյն որոշեսցուք, զպատճառս ապականութեան մարմնոյն Քրիստոսի եւ զանջատման ի բանէն Աստուծոյ, յայսմ հետէ կէտ եղեալ մի ոք իշխեսցէ խառնել խմոր եւ ջուր յանապական խորհուրդ մարմնոյ եւ արեան Տեառն..: զի մի եւս բաղձանցեալ լիցի աղանդ երկաբնակ խոստովանութեանն. Շատ սրամտութիւն հարկաւոր չէ տեսնե-

2. Յովհաննու իմաստասիրի խօսքերը (ենթադրելով դարձեալ իրեն անկեղծութիւնը՝ որուն վրայ չենք կրնար իրաւամբք տարակոյս ունենալ) գրեթէ կ՚ապացուցանեն որ աս սովորութեան Հայաստանի մէջ թէ ծագումը եւ թէ ընդհանրականութիւնը (ինչ սկիզբնէ կ՚ուզէ ըլլայ) միշտ Յովհաննու իմաստասիրի ատեններէն այնչափ հեռու է՝ որ կրնայ կոր ատոր սկզբնաւորութիւնը թէ իմաստասիրին եւ թէ անոր հետ եղողներուն այսպէս բոլորովին անծա-

---

լու՝ որ աս գրութիւնը ծայրէ ծայր աղաւաղ եւ չինծու է, բայց անշուշտ ունի իր ուղ[illegible], ունի իր [illegible], ուստի եղած են Հայաստանի մէջ յամառ տաք գլուխներ՝ որոնք (Ասորւոց մէկ մասին, Յուլիանիտաց հետեւելով) ան թիւր ըմբռնումը՝ իրենց արդէն ունեցած սովորութեանը հետ կապած են։ Աս ռամկական գաղափարը՝ թէ ջրոյն խառնուրդը՝ ապականութիւն կը նշանակէ. դժբախտութեամբ դարէ ի դար ժառանգուելով՝ Սսոյ եւ Ատանայի ժողովներուն մէջ մեր Հայոցը քիչ աշխատութիւն տուած չէ ըմբոստ եւ ազգէն հառաւկորդները համոզելու։

նոթ ըլլայ ։ Ասով Յովհաննու իմաստասիրի խօսքերն անուղղակի՝ մեզի կամուրջ մը կը ձգեն , խնդրոյն ճշմարիտ լուծմանն անցնելու , այս ինքն՝ սա անյայտ ծագման պատճառը գտնելու ։

Մինչ այսպիսի անյայտ ծագում կ՚ունենայ ընդհանուր անկարգութիւն մը , երբ որ անոր առիթը չէ թէ մի միայն կէտի վրայ , հապա ընդհանրապէս շատ կէտերու վրայ մի եւ նոյն ատեն կը գտնուի ։ Այո՛ սա զեղծման առիթը Հայաստանի ժողովրդեան բարուց մէջ փնտռելն ամենէն բնականն է ։ Իրօք՝ ինչ որ շատոնց այս նիւթիս քննութեանց ատեն կասկածած էինք , տեսանք որ մեզմէ 600 տարի առաջ մեր Հայրը նոյն քննութիւններն ըստ օրինի ընելով իրենց հետազօտութեանց արդիւնքը մի եւ նոյնն եղեր է , Գրիգոր Է․ Կաթուղիկոս սա Հեթում թագաւորահայր գրած թղթոյն մէջ իր հետազօտութիւնները յիշելէն ետքը՝ սա մտադրութեան արժանի խօսքերը կը գրէ ։ «Հոս կը յիշեմ քեզի , կ՚ըսէ ։ Մինաս վարդապետին խօսքը , որ

որ կ՚ըսէր՝ թէ Արեւելք* մեղք կ՚ըլլայ . թէ որ աս ներքին երկրին մէջ սեղանի վրայ մարդ նաեւ իր ընծամայոյն անջուր գինւոյ բա-ժակ տալը չըլլայ**։

«Ուրեմն, կ՚ըսէ յիշեալ Հայրապետը, երբ որ անջուր գինիով պատարագե-լը Սուրբ Գրիգոր գրած չէ . ահաւասիկ իր գիրքը, եւ ոչ ալ Սուրբ Սահակ, ահաւասիկ իր կանոնները . ուրեմն ուս-տի՞ ելեր է ։ Սայդն աս է՝ որ Արեւելք (Բուն Հայաստան) գինին անջուր կը խմեն . աս սովորութենէն սկսան պա-տարագն ալ նոյնպէս ընելու, եւ երբոր Յունաց չարութեամբը մէջերնին գրգը-ռութիւն ինկաւ, յամառեցան նոյն սո-վորութեան վրայ՝ որպէս զի անոնցմէ բաժնուին ։ . . . Ի՞նչ զարմանք է՝ թէ որ Արեւելք, որովհետեւ անջուր կը խը-մեն, անջուր ալ պատարագեցին ։»

---

* Այսինքն՝ Բուն Հայաստանի մէջ, չէ թէ Կիլիկիա ։

** «Մեղք յԱրեւելս լինի՝ թէ յայս ներքին աշխարհս մարդ ի սեղանն հանապազ (բաժակ) անապակ գինւոյ իւր չարկանին ոչ տայ »։

Այսպէս ան հայրապետը՝ որնոր 13երորդ դարուն բուն Հայաստանի ամէնէն երևելի վարդապետներուն աջակցութեամբը խնդիրը քննելով՝ թողուցած է վերոյիշեալ՝ հմտութեամբ, բարեպաշտութեամբ եւ զարմանալի օծութեամբ գրուած թուղթը։ Աս գրութիւնն է՝ որուն վրայ միաբանեցան Սսոյ (1307) և Ատանայի (1316), ազգային ընդհանրական ժողովները, որոնք աս լուսաւոր անուան արժանի եղած գումարմանց մէջ հեղինակութեամբ, եւ պատւով ստուգիւ առաջին աստիճանի պէտ՝ որ սեպուին*։

Ուստի աս գիտողութեամբ՝ որն որ, ինչպէս ըսինք, հետազօտութեանց արդիւնք մըն է, եւ աս խնդրոյն ամէն ե-

* Կաթողիկոս, մետրապոլիտներ, եպիսկոպոսներ, վանահայրներ, վարդապետներ, փիլիսոփաներ՝ թէ Հայաստանէն եւ թէ Կիլիկիայէն, երեք թագաւոր (Հեթում, Լեւոն, Օշին), տէրութեան Սպարապետը, տէրութեան մարաջախտը, ամէնքն ալ իրենց ստորագրութեամբ հաւանութիւն տալով։ Կաղ. Ա. 447—507։

րեւոյթները շատ բնական կերպով կը մեկնէ, կրնանք բանաւորապէս անտարակուսելի սեպել՝ որ աս սովորութեան ետեւը՝ Հայոց կենցաղավարութիւնը տըւած է, հաստատութիւն կամ տեւականութիւն՝ (Յունաց հետ) հակառակութիւը :

Ասանկով ձիթոյն զանցառութիւնը՝ վերջին օծման խորհրդոյն, եւ ջրոյն զանցառութիւնը զոհութեան խորհրդոյն մէջ համեմատ ծագում մը կ՚ունենան, առջինը Հայաստանի տեղական հանգամանքէն (այս ինքն՝ ձիթենւոյ անպըտղաբեր ըլլալէն) եւ երկրորդը հին բնակչացը կենցաղավարութեան մէջ գտնըւած սովորութենէն առիթ առնելով :

Հոս հարկ կ՚ըլլայ Յովհաննու Իմաստասիրի ձիթոյ եւ ուրիշ խորհրդական բաներուն նկատմամբ՝ հին անփութութեան վրայ ըրածը ջրոյն զանցառութեանը վըրայ ալ կրկնել թէ «Պատճառ ոչ ունիմ ասել զանփոյթն առնելոյ զառաջնոցն այսպիսի խառնարնդոր եւ եղծագործ սովորութեանց : Զայս ի նոսա (յառաջինսն) եւ յԱստուած թողլի է. Իսկ մեզ ներքին հայրապետաց ոմանց որդւոց՝ զոր ի նոցա-

հաստա անձերու եւ հարստանալու ։

Այս սովորութեան ծագումն ըլլայ՝ ուսկից կ'ուզէ, խնդրոյն վիճակն ամենեւին չի փոխեր ։ Թող րոպէ մը ենթադրենք ապացուցուած են բանք՝ զորս որ տեսանք որ ապացուցուած չէ ։ Գործնականի համար ի՞նչ կը հետեւի ։ Սուրբ Գրիգոր անշուշտ անոր համար միայն՝ մեզի Հայր է, վասն զի եկեղեցւոյ որդի է, անոր համար միայն՝ մեզի Վարդապետ է, վասն զի եկեղեցւոյ աշակերտ է ։ Ո՞ր քրիստոնեայ կարող չէ ընտրելու՝ թէ ո՞ր կողմը ծանր կը կշռէ ։ Իջմիածնական Հայը կը հաւատայ՝ թէ հարկ չէ ջուր խառնել ․ քրիստոնեայ տիեզերքը կը հաւատայ՝ որ հարկ է ջուր խառնել ։ Հայ քահանան անոր համար չի խառներ՝ վասն զի կը կարծէ՝ որ Սուրբ Գրիգոր ասանկ ըրած է ․ բովանդակ կաթուղիկէ եկեղեցին (տիեզերական ժողովներով) կ'ըսէ՝ թէ կը հաւատացուի՝ որ Քրիստոս Տէրն մեր ալ խորհուրդն ասանկ կատարեց եւ Առաքեալք ասանկ ըրին ։ Թէ Սուրբ Գրիգոր ջուր չխառնեց՝ առաջին անգամ 4 դար ետքը Իմաստասիրէն կը լսենք ․ թէ-

Քրիստոս Տէրն մեր ջրով խառնեալ բաժակ օրհնեց՝ Սուրբ Իրենէոսէն կը վկայուի, որն որ սեղանին վրայ Քրիստոսի լանջքը ինկող Առաքելոյն աշակերտին աշակերտըն էր (այս ինքն՝ Ս. Պողիկարպոսի). Վերջապէս՝ Թէ որ հին Հայաստանը գինին ուրիշ կերպ խմելու սովորութիւն չէ ունեցած, սուրբ հակառակ եկեղեցւոյ, Առաքելոց եւ Քրիստոսի Տեառն մերոյ հոգեւոր սեղանին վրայ՝ միայն ան գինին օրհնուած եւ սրբուած է՝ որն որ պարկեշտ եւ շնորհաւոր է՝ Թէ՛ ամէն կիրթ ազգաց եւ Թէ՛ ընտրեալ ժողովըրդեանը գաղափարով: «Թէ չգինի ոչ առանց ջրոյ ընդունի, եւ դարձեալ ջուր առանձինն, անարգ է. այլ յորժամ ջուր ընդ գինի ոչ խառնի, քաղցր եւ անոյշ առնէ զշնորհս նորա»: Բ. Մակաբայ. ԺԵ.

(: Ո՞ր մնացի քրիստոնեայ կրնայ աս հակադրութեանց մէջ տատանիլ:

Աս կաթողիկէ եկեղեցւոյ պատուէրը կատարելը՝ Հայաստանեայց եկեղեցւոյ սահմանադրութեանցն օրինազանցութիւն չէ: Զկան մեր եկեղեցական պատմութեան մէջ ամէն մասամբ

եւ բոլոր Թէութիւններով լիակատար ժողովներ՝ որոնք, ինչպէս ըսինք, այս անուան այնչափ արժանի ըլլան, որչափ վերոյիշեալ Սսոյ եւ Ատանայ ժողովները ։ Ասոնք են՝ որ Հայաստանի եկեղեցական եւ աշխարհական իշխանութեանը կրութեամբը վճռեցին սա Թիւր սովորութեան բարձումը ։

Ինչպէս Իմաստասիրի վերոյիշեալ (էջ 257) խօսքերուն մէջ, նոյնպէս անկէ 25 տարի մ'առաջ Տրուլլեան ժողովոյն կանոններուն մէջ՝ անջուր բաժակի խնդրոյն յարակից կը գտնուին ուրիշ կրկին խնդիրներ, այս ինքն՝ Մատաղներու եւ Ղեւտական յաջորդութեամբ տեւող քահանայութեան սովորութիւնը * ։ Ազգին առողջ միտքը կամաց կամաց երկու վերջին անախորժ սովորութիւնները

* Տրուլլեան ժողովոյն 32 երորդ, 33 երորդ եւ 34 երորդ կանոնները կարգաւ աս սովորութեանց դէմ են ։ Բաղարջ հացի դէմ Տրուլլեան ժողովը (692 ին) ամենեւին բան մը չ'ըսեր . որովհետեւ դեռ, ինչպէս յայտնի է, Յունական եկեղեցին Առաքելական Աթոռէն բաժնուած չէր ։

սրտերէ վերցուց ։ Այս խնդիրներուն խումբը բոլորովին ընծայած կ'ըլլայ՝ թէ որ հաւա_ քուն եկեղեցին մէկն ալ որ ծնուցած է , ա_ ռաքելական քայլով մ'առնուի ։

Վերջապէս մեզմէ շատ հեռաւոր դարերու մէջ ապրող քանի մը մեզի ամե_ նայն յարգելի անձինքն անբասիր ընելով ան խօսքը կ'ըսենք՝ զոր որ Ս. Աւգուս_ տինոս մինակ ջրով պատարագողներուն համար ըսաւ ։ « Թէ որ մեր նախորդնե_ րէն մէկը կամ չգիտնալով եւ կամ միա_ մտութեամբ չպահեց , չըրաւ ինչ որ մեզի մեր Տէրն իր օրինակաւն եւ վար_ դապետութեամբը սորվեցուց , կրնայ ա_ նոր միամտութեանը Տեառն մերոյ ներո_ ղութենէն թողութիւն ըլլալ ։ Բայց մե_ զի անհնար է՝ որ ներուի , երբոր հիմա ի Տեառնէ ազդարարութիւն ընդունած եւ սորված ենք՝ որ տէրունական բաժա_ կը ջուր—ընդ—գինի խառնած նուիրենք։ Այս բանիս նկատմամբ՝ մեր պաշտօնա_ կիցներուն թուղթ ուղղենք՝ որպէս զի ամէն տեղ Աւետարանական օրէնքն եւ Տէրունական աւանդութիւնը պահուի , եւ երբոր Տէրն իր փառօքը եւ երկնա_

ւոր մեծվայելչութեանը գալու սկսի , գտնայ՝ որ ան կը բռնենք՝ ինչ որ ինք ազդեց , կը պահենք՝ ինչ որ սորվեցուց , կ'ընենք՝ ինչ որ ըրաւ ։ Ո՛ղջ լեր , եղբայր սիրելի ․ ։ ( Թուղթ 63 ․ առ Կեկիլիոս ։)

## ՅԱՒԵԼՈՒԱԾ

Շատ կը ցաւինք՝ որ կայ ուրիշ խումբ մը մանր տարբերութիւն ալ՝ որով Էջմի-ածնական եկեղեցին դարձեալ քրիստո-նէից արեւելեան ներդաշնակութենէն դուրս կ'ելլէ ։

Քրիստոնէական տարին կամ Տօմարին՝ ինչպէս յայտնի է , երկու հաստատուն բեւեռներ ունի , Զատիկ՝ իրեն յարակից տօներովը եւ Ծնունդ՝ իրեն յարակից տօներովը։ Երկուքին նկատմամբ ալ ի սկըզ-բան Արեւելք՝ Արեւմուտքէն կը բաժ-նուէր , իրարմէ տարբեր ատեն Զատիկ եւ Ծնունդ կատարելով ։

Բայց արդէն երկրորդ դարէն սկսեալ՝ Առաքելական Աթոռը՝ որուն բովանդակ կաթողիկէ եկեղեցւոյ սովորութիւնը կը վերաբերի , սա սկիզբն ունեցած է՝ թէ սա գլխաւոր տօներուն ժամանակը բո-

լոր եկեղեցւոյ մէջ պէտք է մի եւ նոյն ըլլալ: Պարապ տեղ Ասիացիք՝ այսինքն Ասիայի եօթն եկեղեցիները՝ Յովհաննու Առաքելոյ հեղինակութիւնը յառաջ բերելով կ'ուզէին Զատկին նկատմամբ իրենց սովորութեանը մէջ մնալ. արդէն ատոնք տեղի տուած էին՝ երբոր Նիկիոյ Ա. տիեզերական ժողովը (325ին) Առաքելական Աթոռոյն սկիզբն ու դատաստանը հաստատեց: Գրեթէ 50 տարի ետքը Հռովմայ քահանայապետաց առաջնորդութեամբը՝ հետ զհետէ բոլոր Արեւելք նաեւ Ծննդեան տօնը Դեկտեմբերի 25ին կապելով, Արեւելեան եւ Արեւմտեան Տօմարին ան գեղեցիկ չափակցութիւնը տեղի ունեցաւ՝ որն որ ան ատեն նորէն զգալի պիտի՝ որ ըլլայ, երբ որ Նոր կամ ուղղեալ Տօմարն ուշ կամ շուտ նաեւ Արեւելք ընդհանուր ըլլայ:

Էջմիածնական եկեղեցին աս ընդհանուր ներդաշնակութեան մինակ կէսին մասնակից է: Հայաստանի մէջ՝ որ Հռովմէական պետութեան սահմանէն դուրս էր, Ծննդեան եւ անոր յարակից տօներուն նոր կարգաւորութիւնն· առե-

նին չծանուցանելով՝ կաթողիկէ եկեղեցւոյ մէջ սկսած ընդհանուր Նորոգութիւնը. հոս կէս ճամբուն մէջ արձանացաւ մնաց ։ Բայց որովհետեւ դար կու գայ, դար կ'երթայ, սակայն Առաքելական եկեղեցւոյ սկզբունքը կենդանի կը մնայ, ան ժամանակէն՝ որ Հռոմայ Հայրապետներն աս խրաց վիճակը գիտցան, չպակսեցան զՀայաստանի Հովիւները յորդորելու՝ որ աս բարեկարգութիւնը գործադրուի ։ Խրօք նոյնը լուլի Իշխանութեամբ Սսոյ եւ Ատանայ ժողովներուն մէջ կատարուեցաւ, բայց աւա՜ղ՝ որ Եօլըը Հայոց համար տեւականութիւն չունեցաւ ։ Փլորենտեան տիեզերական ժողովոյն հեղինակութեամբը (Վ. ճիռ վարըն Հայոց) նոյն պատուէրը հաստատուեցաւ եւ Հայոց կաթողիկոսին պատգամաւորներուն ընդունեցան եւ ստորագրեցին իբրեւ «ճշմարտութեան եւ պատշաճութեան համաձայն», բայց միշտ անպտուղ ։

Հոս ալ Էջմիածնական եկեղեցին դէպ ի բարեկարգութիւն արդէն քայլ մ'առած է, սակայն շատ ծանր ։ Հայ-

աստան ; գոնէ մինչեւ Չորրորդ դարուն մէջերը, Յունուարի 6ին երեք տօն մէկէն կը տօնէր, այսինքն՝ Աւետումն, Ծնունդ եւ Մկրտութիւն մի եւ նոյն օրը, ինչպէս որ թէ Յովհաննու Իմաստասիրի խօսքերէն (Մատենագր. Յովհ. Իմաստ. էջ 30) եւ թէ Ծննդեան Շարականներէն յայտնի է ։ Շատ դարեր են՝ որ Աւետումը բաժնուեցաւ, կը մնայ՝ որ Ծնունդն ալ նոյնպէս բաժնուելով իրեն յարակից տօներուն հետ մէկտեղ զետեղուի՝ ուր որ կաթողիկէ եկեղեցին դրած է ։

Իրօք՝ սխալ եւ անպատշաճ սովորութեան մը հնութիւնը՝ անոր պահպանութիւնը չ'արդարացըներ. եւ չենք կրնար ըսել՝ թէ Հայոց եկեղեցին մինակ որոշուած ըլլայ մեռեալ հնութեանց կոթող մնալու՝ կենդանի յառաջատուութիւնն ուրիշներու սեպհական բաժինն թող տալով ։

Ազգային մէջ՝ Էջմիածնական եկեղեցին անշուշտ պիտի՝ որ ստիպուի սա բարեկարգութիւնը կատարելու՝ երբ որ նոր Տօմարը ընդհանուր մուտ գտնելէն ետքը՝ բոլոր քրիստոնեայ դրացեաներուն մէջ ինք միայն սա քանի մ'անժամ տօներով

կցկցուած ձեւերով, աս անհամաձայնութեան անպատեհութիւնն աւելի զգալի, ուստի անտանելի պիտ' որ ըլլայ։

### Վերջին երկու գլխոց խնդիրներուն համեմատութիւնը։

1. Երկու գլխոց մէջ խօսուածն ալ խորհրդոց կը վերաբերի։ Մէկը՝ վերջին օծման խորհրդոյն նիւթին, մէկալը՝ Հաղորդութեան խորհրդոյն նոյնպէս նիւթին վրայ է. վերջինը խորհրդոյն օրինաւորութեանը կը դպչի, առջինը խորհրդոյն թէ օրինաւորութեանն եւ թէ վաւերութեանը։

2. Մէկուն մէջ կաթողիկէ եկեղեցին քանի մը կաթիլ օրհնեալ ձէթ, մէկալին մէջ քանի մը կաթիլ ջուր կը պահանջէ։

3. Թէ առաջին եւ թէ վերջին ընթացութեանն առիթները Հայոց երկրին ու ժողովրդեանը հանգամանաց մէջ են։

4. Միայն աս գլխոց մէջի խնդիրներն են՝ որոնց մէջ Հայոց Էջմիածնական եկեղեցին չէ թէ մինակ կաթողիկէ Հռոմէական եկեղեցւոյ դէմ կը գտնուի,

հապա բոլոր քրիստոնեայ եկեղեցեաց վարդապետութեան եւ գործածութեան հաւաքական կը ջանայ իրաւունք ունենալ։

5. Թէ որ աս երկու կամ երեք խնդիրները նախընթաց երեք խնդիրներուն հետ համեմատենք, չենք տեսներ աս վերջին երեք խնդիրներուն մէջ վարդապետութեան ան տեղական զանազանութիւնը՝ որն որ նախընթաց երեք գլուխներուն մէջ առջեւնիս եղաւ։ Աս բասրելի սովորութեանց մէջ բովանդակ Էջմիածնական եկեղեցին ըստ գործադրութեան միաբան է։

6. Դարձեալ՝ ո՞վ չի տեսներ՝ թէ աւելի դիւրին է՝ որ Հայոց Էջմիածնական եկեղեցին նախընթաց երեք խնդիրներուն մէջ կաթողիկէ Հռոմէական եկեղեցւոյ հետ բոլորովին համաձայնի, քան թէ աս վերջին երկու կամ երեք խնդիրներուն մէջ։ Որովհետեւ անոնք միայն տեղական վարդապետութիւններ են, գրչի ծայրով ալ կրնան շիտկուիլ, իսկ ասոնք չէ թէ միայն տեսական, հապա գործնական մաս մ՚ալ ունին։

Ի վերայ այսր ամենայնի՝ ասոնց գործ-

Նախկին մասն ալ գործադրութեան կողմանէ այնչափ դժուարին չէ, որչափ ան մեծ վարդապետութեան գործնական կողմը, որուն վրայ միայն կը [illegible] որ խօսինք, այնպիսի վարդապետութեան մը՝ որ չէ թէ կաթիլ մը ձէթ կամ ջուր, հապա հնազանդութիւն կը պահանջէ, աշխարհքիս ամենէն դժուարին գործքը։ Բայց ի՜նչ ճար, ամենէն դժուարինը՝ իրօք ամենէն հարկաւորն ու բոլորին դիւրին ու կատարն է։

Բայց դեռ աս եօթներորդ վէրքին չմօտեցած՝ կը կանխենք Էջմիածնական եկեղեցւոյ Քրիստոնէականներէն՝ անանկ վարդապետութեանց հաւաքումմ՚ ընելու, որոնք չէ թէ միայն կաթողիկէ վարդապետութեան հետ միաբան չեն, հապա՝ ինչպէս կը կարծենք, շատերը Էջմիածնական եկեղեցւոյն գոնէ տիրող վարդապետութեանը դժուարաւ կրնան հակառակ չըլլալ, թէպէտ իրօք նոյն եկեղեցւոյն իշխանութեամբը հաստատուած կամ վկայուած Քրիստոնէականներուն մէջ ժողովրդեան առջև իբրև հաւատոյ վարդապետութիւն աւանդուած են։

# ԳԼՈՒԽ Զ.

## ԷՋՄԻԱԾՆԱԿԱՆ ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆՆԵՐՈՒՆ ՇԱՏ ՄԸ ՏԱՐՑԱՄ ԵՒ ՄՈԼԱՐ ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԻՒՆՆԵՐԸ

### 1.

### Սուրբ Գրոց կանոնը ։

Սուրբ գրոց կանոնն ըսելով՝ բոլոր այն գիրքերն եւ մինակ այն գիրքերը կ'իմացուին՝ զորոնք Եկեղեցին իբրեւ աստուածաշունչ գիրք կը ճանչնայ ։

Կաթուղիկէ եկեղեցւոյ՝ Տրիդենտեան տիեզերական Սինհոդոսին վըճռովը՝ սահմանուած Հին եւ Նոր կտակարանաց կանոնն հետեւեալն է. կանոն մը՝ որն որ ըստ ամենայնի՝ չորրորդ դարուն (այս ինքն՝ 497ին) Կարքեդոնի Գ. Սինհոդոսին (գլ. 47) մէջ արձանագրուած կանոնին հետ նոյն է ։

« Հին Կտակարանին՝ Մովսէսի 5 գիրքերը, այս ինքն՝ Ծնունդք, Ելք, Ղեւտական, Թիւք, Երկրորդումն օրինաց, եւ Յեսու, Դատաւորք, Հռութ, 4 Թագա-

ւորաց, 2 Մնացորդաց, Եզրի Առաջին եւ Երկրորդ որ Նէեմի կ՚ըսուի, Տովբիթ, Յուդիթ, Եսթեր, Յոբ, Դաւթի սաղմոսարան 150 սաղմոսաց, Առակք, Ժողովող, Երգ երգոց, Իմաստութիւն, Յեսու Սիրաքայ, Եսայի, Երեմիա՝ Բարուքայ հետ, Եզեկիէլ, Դանիէլ, 12 փոքր Մարգարէներ . . . , 2 Մակաբայեցիք՝ Առաջին եւ երկրորդ»։

«Նոր Կտակարանին՝ 4 Աւետարանները . . . Գործք Առաքելոց Ղուկասէն գրուած, Պօղոսի Առաքելոյ 14 թուղթերը . . . , Պետրոսի Առաքելոյ 2 թուղթերը, Յովհաննու Առաքելոյ 3 թուղթերը, Յակոբայ Առաքելոյ 1, եւ Յուդայի Առաքելոյ 1 թուղթը, եւ Յովհաննու Առաքելոյ Յայտնութիւնը»։

Ասանկ Տրիդենտեան ժողովը (Նիստ Դ. վճիռ վասն կանոնական գրոց), որն որ անմիջապէս կ՚աւելցընէ.

«Ով որ աս գիրքերն ամբողջ ամէն իրենց մասերովը, ինչպէս որ կաթուղիկէ եկեղեցւոյ մէջ սովորութիւն է կարդացուելու, սուրբ եւ կանոնական գիրքերու տեղ չի դներ, նզովեալ ըլլայ»։

# ԳԼՈՒԽ Ջ.

## ԷՋՄԻԱԾՆԱԿԱՆ ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆՆԵՐՈՒՆ ՇԱՏ ՄԸ ՏԱՐՏԱՄ ԵՒ ՄՈԼԱՐ ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԻՒՆՆԵՐԸ

### 1.

### Սուրբ Գրոց կանոնը։

Սուրբ գրոց կանոնն ընելով՝ բոլոր ան գիրքերն եւ մինակ ան գիրքերը կ'իմացուին՝ զորոնք Եկեղեցին իբրեւ աստուածաշունչ գիրք կը ճանչնայ։

Կաթուղիկէ եկեղեցւոյ՝ Տրիդենտեան տիեզերական Սիւնհոդոսին վըճռովը՝ սահմանուած Հին եւ Նոր կտակարանաց կանոնն հետեւեալն է. կանոն մը՝ որն որ ըստ ամենայնի՝ չորրորդ դարուն (այս ինքն՝ 497ին) Կարքեդոնի Գ. Սիւնհոդոսին (գլ. 47) մէջ արձանագրուած կանոնին հետ նոյն է։

«Հին Կտակարանին՝ Մովսէսի 5 գիրքերը, այս ինքն՝ Ծնունդք, Ելք, Ղեւտական, Թիւք, Երկրորդումն օրինաց, եւ Յեսու, Դատաւորք, Հռութ, 4 Թագա-

ւորաց, 2 Մնացորդաց, Եզրի Առաջին եւ Երկրորդ որ Նէեմի կ՚ըսուի, Տովբիթ, Յուդիթ, Եսթեր, Յոբ, Դաւթի սաղմոսարան 150 սաղմոսաց, Առակք, Ժողովող, Երգ երգոց, Իմաստութիւն, Յեսու Սիրաքայ, Եսայի, Երեմիա՝ Բարուքայ հետ, Եզեկիէլ, Դանիէլ, 12 փոքր Մարգարէներ . . . , 2 Մակաբայեցիք՝ Առաջին եւ երկրորդ» ։

«Նոր Կտակարանին՝ 4 Աւետարանները . . . Գործք Առաքելոց Ղուկասէն գրուած, Պօղոսի Առաքելոյ 14 թուղթերը . . . . , Պետրոսի Առաքելոյ 2 թուղթերը, Յովհաննու Առաքելոյ 3 թուղթերը, Յակոբայ Առաքելոյ 1, եւ Յուդայի Առաքելոյ 1 թուղթը, եւ Յովհաննու Առաքելոյ Յայտնութիւնը» ։

Ասանկ Տրիդենտեան Ժողովը (Նիստ Դ. վճիռ վասն կանոնական գրոց), որն որ անմիջապէս կ՚աւելցընէ.

«Ով որ այս գիրքերն ամբողջ անէն իրենց մասերովը, ինչպէս որ կաթուղիկէ եկեղեցւոյ մէջ սովորութիւն է կարդացուելու, սուրբ եւ կանոնական գիրքերու տեղ չի դներ, նզովեալ ըլլայ» ։

ճիշդ աս Սուրբ Գրոց կանոնն էր՝ զոր Եւգինէոս Դ. Փլորենտեան ժողովոյն առեն Հայոց պատգամաւորներուն անոնց Հրահանգին հետ աւանդեց։

Էջմիածնական եկեղեցւոյ Քրիստոնէականներն աս ամէն գիրքերը սուրբ կանոնական (այս ինքն՝ անտարակուսելի կերպով աստուածաշունչ) գիրքերու տեղ կը դնե՞ն, ան գիրքերուն կարգը՝ կ՚ըսեմ՝ որոնք Աւանդութեան եւ Եկեղեցւոյ հեղինակութեան հետ՝ քրիստոնէական հաւատոյ վարդապետութեանց երեք գլխաւոր աղբիւրները կը կազմէ։

Կաթողիկոսական կնքով իբրեւ ճիշդ հարազատութեամբ Հայոց Էջմիածնական եկեղեցւոյ վարդապետութիւնը խօսող՝ 1850 ին ընդարձակ Քրիստոնէական հաւատոյ Հրահանգը իբրեւ նոյն եկեղեցւոյն գրոց կանոնը հետեւեալ գիրքերն առջեւնիս կը դնէ։

«Հ. Զի՞նչ են Հաւատք.

«Պ. Ճանաչել՝ ընդունիլ եւ խոստովանիլ զամենայն ճշմարտութիւնս յայտնեալս յԱստուծոյ»։

«Հ. Ուստի՞ մարթ է առնուլ զյայտ-

նութիւն աստուածային ճշմարտութեանց ։

« Պ. յԱստուածաշունչ սուրբ գրոց, « այն է՝ ի հին եւ ի նոր կտակարանաց ։ .

« Հ. Ի քանի՞ գիրս բովանդակին ։

« Պ. Հին կտակարանն բովանդակի ի 45 գիրս, իսկ նորս՝ ի 27 ։ (էջ 4-5 ։)

« Ի հին կտակարանի են՝ 5 Գիրք « Մովսէսի, այս է՝ Ծնունդ, Ելք, Ղեւտա- « կանք, Թիւք, Երկրորդումն օրինաց, « 1 Յեսուայ, 1 Դատաւորաց, 1 Հռու- « թայ, 4 Թագաւորութեանց, 2 Մնա- « ցորդաց, 2 Եզրայ, 1 Տովբիթայ, 1 « Յուդիթայ, 1 Եսթերայ, 3 Մակաբա- « յեցւոց, 1 Յովբայ, 1 Սաղմոսաց Դաւ- « թի, 4 Սողոմոնի, այս ինքն՝ Առակք, « Ժողովող, Երգ երգոց, Իմաստութիւն, « 1 Սիրաքայ, 4 Մեծ Մարգարէից՝ Ե- « սայեայ, Երեմիայ՝ հանդերձ Բարուքայ « Թղթովն, Եզեկիէլի, Դանիէլի, 12 փո- « քըր մարգարէից ։ (էջ 113–115 ։)

Նայելով Պարտաւայ ժողովոյն կանոնին՝ որուն հետ նոյն կը կարծէ վերոյիշեալ Քրիստոնէականը առ իր համրած կանոնը*, խնդակից կ'ըլլանք Իջ-

*Իրաւ շատ տարբեր է Պարտաւայ ժողո-

միածնական եկեղեցւոյ՝ որ այսօր ասանկ դ րոց կանոն մ՚ունի՝ որուն մէջ իբրեւ աներկբայելի կերպով՝ աստուածաշունչ կը սեպուին ան գիրքերն՝ որոնք ատենօք Հայաստանեայց եկեղեցին առաւելապէս երկբայելի կը կարծէր, այս ինքն՝ Հին կտակարանէն Իմաստութիւն Յեսուայ որդւոյ Սիրաքայ (ինչպէս նաեւ ատեն մը Ա. եւ Բ. Մակաբայեցւոց գիրքերը,) եւ Նոր կտակարանէն Յովհաննու Առաքելոյ Յայտնութիւնը։ Հոս իրական յառաջադի-

---

վոյն (768ին) 24 երրորդ կանոնը. որուն մէջ Սիոն Կաթողիկոս կ՚ըսէ. «Եւ եկեղեցի ձեզ ամենեցուն եկեղեցականաց եւ աշխարհականաց պաշտելի գիրք սուրբ ի Հին եւ Նոր Կըտակարանաց. Մովսէսի գիրք՝ Ծննդոցն, Ելից, Ղեւտականն, Թիւք, Երկրորդ օրէնք, Յեսու Նաւեայ, Դատաւորացն եւ Հռութայ, Թագաւորութեանց դ; Մնացորդաց աւուրք բ, Եզրի բ բանք, գիրք Յովբայ, Սաղմոսացըն գիրք մի, Սողոմոնի գ գիրք, ժբ Մարգարէիցն, Եսայի, Երեմիա, Եզեկիել, Դանիէլ»։

«Եւ [illegible] պատգամաւորեցի առ ի յուսուցանել զձեր մանկունս զուսումն բաղմամասն Աստուծոյ իմաստութիւնն, Մակաբայեցւոց գ»։

մութիւն մը անժխտելի է։

Թէ որ Էջմիածնական եկեղեցւոյն վերոյիշեալ կանոնը քանի մը գիրք աւելի ունի, զորոնք տիեզերական սինհոդոսները չեն հաստատած, ինչպէս մեր թարգմանութեան մէջ Առաջին ըսուած Եզրը եւ Երրորդ Մակաբայեցիք. հոս հաւատոյ կանոնին դէմ՝ չ'ելլեր, որովհետեւ վերոյիշեալ տիեզերական Սինհոդոսն ալ չ'որոշեր՝ որ աս գրքերէն դուրս սուրբ գիրք չկայ։ Բայց աս ստոյգ է՝ որ աս գրքերէն գոնէ շատերը դժուարաւ կրնան Գիտութեան ատեանին առջեւը ոտքանալ։

Բայց վերոյիշեալ Քրիստոնէական հաւատոյ Հրահանգին կանոնն ըստ ամենայնի տիեզերական Սինհոդոսներուն կանոնին հաւասարելու համար՝ մինակ գիրք մը կը պակսի, այս ինքն Նեեմ. Թէ որ Պարտաւայ ժողովոյն կանոնին մէջ աս գիրքը տեսնէինք, կրնայինք կարծել՝ թէ մոռացմամբ է՝ որ դուրս ձըգուած է։

Ասոր ըստ ամենայնի հակառակ՝ Կ-Պոլսոյ հոգեւոր ժողովոյն վճռովը վա-

ւորացած 1850ին Բրիտանէականը Նե-
եմին կանոնին մէջ կը թողու իբրեւ «աստ-
ուածաշունչ գիրք» եւ «բոլոր պարունա-
կածը՝ ճշմարտութիւն», բայց Յեսու Սի-
րաքայն դուրս կը հանէ ։ (էջ 14—15 ։)

Առանկով Ընդհանրական եկեղեցին
սուրբ Գրոց կանոնը թէ՝ ինչ իր մէջը՝ Ա-
րեւելքէն Արեւմուտք, եւ թէ կաթո-
ղիկէ եկեղեցւոյ Հոգւով սրբով սահման-
ուած կանոնին առ այժմ կատարելա-
պէս համաձայն չէ, բայց վստահ ենք՝
որ դիւրաւ կ'ըլլայ ։

2.

ՄԵՂՔ ։

Ընդհանրական եկեղեցւոյ Քրիստո-
նէականները՝ կաթուղիկէ վարդապետու-
թեան համեմատ կ'ընդունին՝ որ մեղքը
նախ կրկին կը բաժնուի, այս ինքն՝ ըս-
կզբնական, եւ ներգործական կամ անձ-
նական ; եւ թէ ներգործականն ալ դար-
ձեալ կրկին է, այս ինքն՝ մահուչափ եւ
ներելի կամ թեթեւ ։

Տաճկաստանի վերջին Քրիստոնէա-

կանն ուղղափառ գրոց համար կ՚ըսէ.

«Հ. Սկզբնական մեղքն ի՞նչ է։

«Պ. Ադամայ եւ Եւայի գործած եւ
«իր բոլոր սերնդոցը անցած մեղքն է. (էջ
«43)։

«Հ. Ադամ Եւա մեղքի մէջ իյնա-
«լով ի՞նչպէս ամէն մարդիկ մեղաւոր եւ
«յաւիտենական պատժոց արժանի ե-
«ղան.։

«Պ. Անոնք բոլոր մարդոց նախահայր
«ըլլալով՝ իրենց Աստուծմէ առած շը-
«նորհքնին որ իրենց սերունդին ալ պի-
«տ՚որ անցնէր՝ կորսնցուցինն է՝ մեղքով
«վաստըկած տկարութիւննին անցաւ ի-
«րենց զաւակացը. (էջ 17)։

(Յայտնի է՝ որ ճշդիւ խօսելով ոչ Ե-
ւայէն ուղղակի շնորհք պիտ՚որ ժառան-
գէինք եւ ոչ Եւայէն ուղղակի մեղք ժա-
ռանգեցինք, վասն զի սկզբնական մեղ-
քըն ի սկզբան կամ՚ի ծագման Զէ մեղք
էր», այս ինքն՝ «Ադամայ անհնազան-
դութիւնը» եւ «ամէն մարդիկ Ադամայ
(չէ թէ Եւայի) անհնազանդութեան
մէջ անմեղութիւննին կորսնցուցին»։ Բո-
լոր մարդկային սեռը մէկ նախահօրմէ

(յԱդամայ) մեղք եւ մահ, մեկալէն (ի Քրիստոսէ) արդարութիւն եւ կեանք կը ժառանգէ *։

« Հ. Ի՞նչ տկարութիւն էր այն։

« Պ. Բանականութիւնը կամ խելքը՝ « որով մարդս անասուններէն կը տարբե- « րի, կիրքերուն բռնութեան տակ իյ- « նալ. որով մարդս Աստուծոյ կամքին « համաձայն կեանք վարելու կարողու- « թիւնը կորսունցուց » (էջ 18։)

Դիւրաւ կը համոզուինք՝ թէ այս վերջին հատուածը Գրողին միտքը չիտար ըլլայ. բայց խօսքերուն տուած բնական իմաստը շատ անզգոյշ է։

Սկզբնական մեղքով մարդկային հոգին (ըստ կաթողիկէ վարդապետութեան եւ ըստ տիեզերական ժողովոյ) ոչ երբէք այնչափ կիրից բռնութեան տակ ինկաւ կամ այնչափ խանգարեցաւ՝ որ ասով « Աստուծոյ կամացը համաձայն կեանք վարելու կարողութիւնը կորսնցուց »։

Ի՞նչ է « Աստուծոյ կամքին համա-

* Ժողով Տրիդ. նիստ Զ. վճ. վ. Արդարացման, գլ. 1 եւ 3։

ձայն կեանք վարելը», բայց եթէ հաւատալ ու պատուիրանքները պահել. ուրեմն սա Քրիստոնէականին խօսքերուն համեմատ՝ մարդկային միտքն ու կամքը միայն ատով՝ որ կրից բռնութեան տակ ինկան, հաւատալու, յուսալու ու սիրելու կարողութիւնը կորսնցուցին. իսկ Կաթողիկէ վարդապետութեան համեմատ մարդկային միտքն ու կամքը՝ ատով որ կրից բռնութեան տակ ինկան, տկարացան, վիրաւորեցան, ոյժերնին կորսնցուցին, բայց կարողութեան բոլորովին կորուստ չեղաւ։ Քրիստոսի Տեառն մերոյ շնորհքը՝ այն որ վերստին ծննդեանը կը տրուի, մարդուս նորէն կարողութիւն կը ստեղծեր. թէ կարողութիւն. չկայ՝ ի՛նչ բանը կանխելով կ'արթնցընէ շնորհքը, ի՞նչ բանին զուգընթաց եւ օգնական կ'ըլլայ, եւ թէ որ սա կարողութիւնը մարդկային հոգւին ի բնական անկումէն ետքն ալ պահած չէ՝ ի՞նչպէս կ'ըլլայ՝ որ «արդարացած մարդուն բարի գործքերն այնպէս Աստուծոյ պարգեւներ են՝ որ միանգամայն նոյն արդարացած մարդուն արդիւնքներն են» ( . ) ։

Տրիդ ։ )

Շատ փափուկ կէտ մըն է՝ որ կը շօշափենք. սա վարդապետութիւնը՝ թէ մարդկային բանական բնութիւնը սկըզբնական մեղքով անանկ խանգարուեցաւ՝ որ Աստուծոյ կամացը համաձայն կեանք վարելու կարողութիւնը կորսնցուց, ճըշդիւ ան թունաւոր ակրին է՝ ուսկից բոլոր բողոքական վարդապետութեանց ծառըն եղած եւ ամէ՛ն կողմ մահ սփռած է։ Այս ներհակ վարդապետութիւնը՝ Կաթողիկէ եկեղեցւոյ՝ ազատութեան ու շնորհաց, մեղաց եւ արդարութեան, պատժոց ու վարձուց վրայ ունեցած վարդապետութեանցը հիմն ու խարիսխն է։

Խնդիրը բոլորովին տարբեր կերպարանք կ՚առնու, եթէ վերոյիշեալ Կըրիստոնէականն ըսէր թէ մարդն՝ սկըզբնական մեղօք սկզբնական շնորհքէն զըրկուելով՝ անկարող եղաւ Աստուծոյ կամացը համաձայն կեանք վարելու։ Այս դիպուածիս մէջ խնդիրը բարոյական մասին վրայ կ՚իյնար, ուր որ վերոյիշեալ Քըրիստոնէականին խօսքերը բնական մասին վրայ կ՚իյնան։

Ասիկայ սկզբնական կամ ժառանգական մեղաց համար ։

Ներգործական կամ անձնական մեղաց վրայ Տփխիսի եւ Կալկաթայի 1846 ին Քրիստոնէական վարդապետութեան Հրահանգը, որն որ, ինչպէս շատ անգամ՝ ըսած ենք, Ներսէս Կաթողիկոսէն հիմնուած Դպրոցին մասնաւորապէս նըւիրուած էր, կ՚ըսէ ․

« Հ ․ Մեղք ի քանիս բաժանին՝ ( այս
« խօսքն Ներգործական մեղքի վրայ խօսելով ) ։

« Պ ․ Յերկուս, ի ներելիս եւ ի մահացուս ։

« Հ ․ Ո՞յք են ներելիքն ։

« Պ ․ Այնոքիկ՝ յորժամ ըստ աղխտութեան, ըստ տարակուսութեան կամաւ
« մտաբար յանկարծահաս դիպուածով
« խիք զանց զօրինօքն առնեմք ։

« Հ ․ Մահացուքն ո՞յք են ։

« Պ ․ Այնոքիկ՝ յորժամ ոխրապէս տեղեակք գոլով օրինաց, ոչ միտ եդեալ
« յանդգնանութեան խղճի մտաց՝ կամաւոր յօժարութեամբ գործեմք զչարիս » ․
« ( էջ 99 — 100 ) ։

Ո՞րչափ ծուռ բարոյական, ո՛րչափ

վտանգաւոր կանոն ։

1 . Մէկ կողմանէ՝ ներելի մեղքին սահմանն այնչափ նեղ է՝ որ շատ ներելի մեղք դուրս կը մնայ ։

Դարձեալ՝ մահացու մեղաց սահմանն այնչափ ընդարձակ է՝ որ ան դուրս մնացած ներելի մեղաց ըստ թուոյն կէսը ՝ մահացու մեղաց կարգը կը դրուին ։ Վասն զի մինակ օրինաց ծանօթութեան կողմանէ մեղաց չափը կ'առնու վերոյիշեալ Քրիստոնէականը՝ բոլորովին մոռնալով օրինաց նիւթը՝ որն որ կրնայ ըստ ինքեան թեթեւ ըլլալ եւ անանկով ալ օրինաց դէմ գործողը կրնայ տիրապէս նոյն օրինաց տեղեակ ըլլալ, կրնայ իր խղճին յանդիմանութեանը դէմ դնել, կրնայ լիովին յօժարութեամբ չարիք գործել ի վերայ այսր ամենայնի՝ ան չարիքը , աս օրինազանցութիւնն ըստ ինքեան իրեն նիւթէն աւելի ծանր չըլլայ ։ Ուստի՝ աս կողմանէ՝ վերոյիշեալ կանոնները շատ խիստ են եւ կրնան իրենց հետեւողներուն մեղաց որոգայթ ըլլալ՝ թեթեւը կամ ներելին ծանր կամ մահացու սեպել տալով , ո. ով գործնա-

ջանի մէջ՝ իրօք թեթեւը մահացու կ'ըլլայ։

2. Ուրիշ կողմանէ՝ վերոյիշեալ կանոններուն առջինը միանգամայն չափազանց Թոյլ է, վասն զի անորոշանէ կը վարդապետէ՝ որ փորձառութեամբ գործըւած մեղքը ներելի է։ Մեր ամենուս բանական դատաստանը կրնայ կաթողիկէ բարոյականին վկայել որ եթէ մարդ թեթեւ կամ ծանր կերպով մեղանչելու տարակոյսին կամ վախին մէջ մնալով գործելու ըլլայ, նոյն համեմատութեամբ՝ թեթեւ կամ ծանր կը մեղանչէ, որովհետեւ ինք զինք՝ առջի դէպքին մէջ թեթեւ, երկրորդ դէպքին մէջ ծանր կերպով զԱստուած վշտացնելու վտանգի մէջ դրաւ։ Ուստի տարակուսելով օրինաց դէմ գործելը՝ ճիշդ ներելի մեղք չէ։

Նոյնպիսի պակասութիւններով զգածեալ է 1850ին ընդարձակ Քրիստոնէական Հաւատոյ Հրահանգը, երբ որ կ'ըսէ.

« Հ. Ո՞յք են մահացուցանի մեղք եւ քանի՞։

« Պ. Մահացուցանի են մեղք՝ որ ի կամակարուց գործին, որոց եւ գլխաւոր
« են եօթն. հպարտութիւն, ևն։

« Ո՞ր մեղք կոչին Թեթեւք ։

« Պ. Ա՛յնք, որք կամ տկարութեամբ « կամ անգիտութեամբ կամ յոչ կամաց « գործեալք՝ չհասանեն ի ծանր մեղս ․ » (85 եւ 86) ։

Ու միայն կամակարութիւն եւ ոչ միայն տկարութիւն կրնայ միշտ մահացու չափ եւ թեթեւ մեղաց որոշիչ ըլլալ ։

Համառօտ ըսելով կաթողիկէ վարդապետութեան համեմատ՝ մահացու մեղաց համար 3 բան կը պահանջուի, ծանրութիւն նիւթոյ, բաւական մտադրութիւն ու հաւանութիւն ։ Այսինքն մէկը թէ որ պակսի՝ մեղքը միայն ներելի է ։

3 .

ԽՈՐՀՈՒՐԴՔ ·

Մէջբերութիւն . — Մկրտութեան վրայօք վաւերութեանը վերաբերեալ վէճ մը ոչ նիւթոյն՝ եւ ոչ ձեւոյն նկատմամբ ունինք . բայց պաշտօնէին նկատմամբ ունինք հարցում մը՝ որն որ բաւական ծանրակշիռ է, վասն զի գործնական է ։

Կաթողիկէ եկեղեցւոյ մէջ՝ սովորաբար նաեւ փոքր Քրիստոնէականնե-

րը զանց չեն առներ մատաղ հասակէն հաւատացեալոց սա կարեւոր վարդապետութիւնը սորվեցընելու, այս ինքն՝ թէ երբ որ մահուան վախ կայ՝ որ եւ իցէ մարդ կրնայ մկրտել ջուրը գլուխը թափելով եւ ըսելով «Մկրտի ծառայս յանուն Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ»։ Ասոր հակառակ Էջմիածնական եկեղեցւոյ Քրիստոնէականներէն եւ ոչ մէկըն աս կէտին վրայ վանկ մը գրած ունի, ամէնքը խորին լռութիւն կը պահեն։

Ինչո՞ւ արդեօք։ Որովհետեւ ան կաթողիկէ վարդապետութիւնը՝ որուն հիմ՝ Քրիստոսի Տեառն մերոյ գթութիւնն եւ իմաստութիւնն է, որուն գործադրութիւնը Եկեղեցւոյ խանձարուրքէն կը տեսնենք *, զորն որ քիչ մը ետքը Առաքելական Աթոռը՝ հերետիկոսաց տուած մկրտութիւնը վաւեր չսեպող Ափրիկեցւոց եւ Ասիացւոց դէմ պաշտպանելով՝ ընդունել տուաւ եւ Դ. Լատերանեան տիեզերական ժողովն իր Հանգանակին մէջ սահմանեց եւ վերջա-

*Տերտուղ. գիրք վասն Մկրտ. գլ. 17։

պէս փլորենտեան Սիւնհոդոսին առենը Եւգինէոս Դ. իրաւամբք Հայոց Հրահանգին մէջ սա խօսքերով դնել տուաւ. «Հարկաւորութեան դիպուածի մէջ չէ թէ մինակ քահանան կամ սարկաւագը, հապա նաեւ աշխարհականը կամ կնիկ մարդ, մանաւանդ թէ հեթանոսն ու հերետիկոսն ալ կրնայ մկրտել». Աս հատուածոյ ճշգրտութիւնը, կ՚ըսեմ, դեռ (ինչպէս Յունաց, նոյնպէս) Էջմիածնական եկեղեցւոյ հետեւող ժողովրդեան ընդհանուր համոզումն եղած չէ։ Տարակոյս չունինք՝ որ դոնէ ան երկիրներն՝ ուր Կաթողիկեայ ժողովրդեան հետ շօշափումը շատ է, օրէ օր աւելի ընդհանուր եղա՛ծ որ ըլլայ։ Բայց ան կողմնականներն՝ որոնք գաւառով եղած են եւ դեռ չեն կրնար յանկարծ դադրիլ. ի՞նչ ծանր եւ ահագին պատասխանատուութիւն են Էջմիածնական հովիւներուն պարանոցին վրայ։

Հաղորդութիւն։ — Հաղորդութեան կամ դոհութեան խորհրդոյն նիւթոյն մէկ մասին վրայ բաւական խօսուեցաւ, բայց ձեւոյն կամ ձեւին վրայ ալ փոքր քաշիւ

մ՚ունինք, այս ինքն՝ թէ ինչ խօսքերով կ՚ըլլայ՝ պատարագին մէջ՝ հացին եւ գինւոյն ի մարմին եւ յարիւն Քրիստոսի գոյափոխիլը կամ փոխարկուիլը ։

Այս նիւթիս վրայ՝ մեր ձեռքը գտնըւած՝ Էջմիածնական եկեղեցւոյ քրիստոնէականներէն մէկ մ՚ամէնէն հինը, մէկ մ՚ալ ամէնէն նորերը կը խօսին ։

Կ — պօլսոյ 1737ին եւ 1747ին տըպըւած Քրիստոնէական ուսանելին ասանկ կ՚ըսէ (էջ 306 — 8).

« Այս խորհրդոյս (Հաղորդութեան) « չորս բան պէտք, որ կատարեալ լինի ։

« Նախ՝ որ օրհնողն լինի քահանայ ։

« Երկրորդ՝ նիւթն, որ լինի հաց ցո« րենոյ եւ գինի ի բերոյ որթոյ ։

« Երրորդ՝ դիտաւորութիւն քահա« նային՝ թէ զայս գինիս Քրիստոսի բե« րանովս կամիմ մարմին եւ արիւն Քր« իստոսի ։ Մէկ քահանայ մի՝ որ զհա« ցըն եւ զգինին ի ձեռն առնէ ոչ օրհնե« լոյ միտօք, եւ զբանն Քրիստոսի ասէ « միայն պատմելու միտօք, այն հացն եւ « գինին չի լինիր խորհուրդ ։

Չորրորդն է ձեւ բանին որ է այս .

« Առէք կերէք այս է մարմին իմ. եւ Ար-
« բէք ի սմանէ՝ այս է արիւն իմ։

« Եւ թէ որ մէկ քահանայ մի հար-
« ցանէ՝ թէ որովհետեւ Առէք կերէք՝
« այս է մարմին իմ՝ ասելով, Արբէք ի
« սմանէ՝ այս է արիւն իմ ասելով, մար-
« մին եւ արիւն կու լինի. ապա ե՞ր է՝
« որ կասենք ի վերջին թէ Որով զհացս
« զայս եւ զգինիս արասցես ճշմարտա-
« պէս մարմին եւ արիւն Տեառն մերոյ
« Յիսուսի Քրիստոսի. ուրեմն դեռ եւս
« չէ եղեր։

« Պէտք է գիտել՝ որ կամի ասել՝ թէ
« Հայր Աստուած, զՀոգիդ սուրբ ա-
« ռաքեա ի մեզ եւ ի յայս հացս եւ գի-
« նիս, որ բանիւն քո Որդւոյն միածնի՝
« զայս հացս եւ գինիս մարմին եւ արիւն
« Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի կա-
« տարէ։

« Ուրեմն այն որ կասէ թէ որով, կա-
« մի ասել թէ բանիւն Քրիստոսի քո Որդ-
« ւոյն Միածնի՝ որ ասաց թէ Այս է
« մարմին իմ եւ Այս է արիւն իմ, այն
« բանիւն դու զայս Հացս եւ գինիս մար-
« մին եւ արիւն քո Որդւոյն Միածնի կա-

տարեւցես՝ փոխարկելով Հոգւովդ սըր-
բով : »

Պէտք էր յուսալ՝ որ ժամանակին ա-
ւելի հաստուն պտուղներ տայ , սակայն
իրօք՝ ուրիշ բան չենք գտներ մէկ ու
կէս դար ետքը , բայց եթէ տերեւ :

Հոգեւոր ժողովէն ուսումնարանաց
համար վաւերացած Միջակ վարդապե-
տարանը (էջ 94) կ՚ըսէ .

« Հ . Աս փոխարկութիւնը երբ կ՚ըլ-
« լայ :

« Պ . Սուրբ պատարագին սրբագոր-
« ծութիւն ըսուած մասին մէջ , որ Սուրբ
« սուրբէն » սկսեալ մինչեւ Հօգւ Ա-
« ստուծոյ՝ աղօթքը կը տեւէ . ուստի եւ
« էական բան խորհրդոյս կը համարին ո-
« մանք՝ հնչելով Քրիստոսի օրհնեալ բե-
« րանին՝ այս խօսքը . » Որով զհացս օրհ-
« նեալ » եւն . եւ ոմանք ալ՝ « Առէք կե-
« րայք , այս է մարմին իմ » եւ « Արբէք
« ի սմանէ, այս է արիւն իմ » խօսքերը : »

« Հ . Սուրբ եկեղեցին , եւ կամ որ
« նոյն է ընդհանուր սուրբ ժողովները՝
« այս երկու կարծեաց զո՞րն վճռեր եւ
« ընդուներ են :

«Գ. Սուրբ եկեղեցւոյ կողմանէ վճ-
«ճիռ մը չկայ այս բանիս վրայ, միայն
«աստուածաբանք քաջ կը վճռեն, եւ զօ-
«րաւոր կը հիման ունին՝ որ Առէք կե-
«րայք, Այս է մարմին իմ, եւ Արբէք
«ի սմանէ ամենեքեան, Այս է արիւն
«իմ. խօսքերը կը համարին գլխաւոր եւ
«էական մասն խորհրդոյս:»

Ուրեմն մեր վարդապետարանին համեմատ՝ Եկեղեցւոյ մէջ աս խնդրոյս վրայ երկու աղանդ, մէկը փոքր մէկալը զօրաւոր կարծիք կայ, այս են՝

1. Թէ փոխարկութիւնը վերոյիշեալ օրհնութեամբ կամ Հոգւոյն սրբոյ կոչմամբը կ՚ըլլայ. անոր համար խորհրդոյն էական բանն աս օրհնութիւնը կամ կոչումըն է, իսկ Քրիստոսի Տեառն մերոյ խօսքերը խորհրդոյն էական բանը չեն: Եւ ըստ ամենայնի ասոր հակառակ՝

2. Փոխարկութիւնը վերոյիշեալ՝ Քրիստոսի Տեառն մերոյ խօսքերովը կ՚ըլլայ, անոր համար խորհրդոյն էական բանն Քրիստոսի խօսքերն են ուստի եւ օրհնութիւնը կամ կոչումը էական բան չէ:

Կաթողիկէ եկեղեցւոյ մէջ սանկ

երկուս ալ որ կարծիք չկայ ։ Զի թէ միայն անցեալ ատեններն ասանկ ազատութիւն եկեղեցւոյ կողմանէ տրուած չէ, հապա միանգամայն այս օրուան օրս համառօտ ըսելու համար, ով որ չընդունիր, թէ Քրիստոսի Տեառն մերոյ խօսքերովը եւ միւս անոր խօսքերովը փոխարկութիւնը կամ դոյափոխութիւնը ընդդիմաւոր է, եկեղեցւոյ եւ հաւ որ նոյնն է՝ ընդհանուր սուրբ ժողովներու յայտնի եւ համընդհանական դատաստաններուն անտարակոյս կը դառնայ ։

Ճշմարտութիւն չէ, երբ որ վարդապետարանն ազատ համարձակ կ'ըսէ թէ տիեզերական ժողովները ասոր վրայ բան մը որոշած չեն ։ Բիչ մնաց՝ որ աս կէտին համար ի դերեւ պիտ'որ ելլէր Փլորենտեան տիեզերական ժողովոյն բովանդակ աշխատութիւնը, այս ինքն Հռոմէական եւ Յունական եկեղեցեաց միաբանութիւնը ։ Եւ իրօք (ինչպէս Եւգինէոսի Դ. պատգամաւորները յունաց կայսեր ըսին) առանց ասոր վրայ Յունաց կողմանէ հաստատուն դաւանութիւն ունենալու՝ Բաժանութիւնը հա-

չեւէ չէր : Այսր համար 1439ին Յունիսի 18ին լիակատար գումարման մէջ ժողովոյն Աստուածաբանը (Յովհ. Տուրքէկրամատա), եւ 20ին նիստին մէջ ինք Եւգինէոս Դ. խօսելէն ետքը՝ թէ՝ չենք կարծեր՝ որ մէկը այնպէս համարի թէ միայն Քրիստոսի խօսքերովը չի կատարիր Քրիստոսի մարմինն եւ արիւնը», Յունիսի 26ին երկու կողմանէ ընտրուած (12) անձինքներով մասնաժողով մ'եղաւ, որուն մէջ առաքելական եկեղեցւոյ պատճառները լսելով խոստովանեցան Յոյնք՝ որ միշտ սանկ ըմբռնած են թէ միայն տէրունական խօսքերով կը կատարուի խորհուրդը, եւ նզովեալ կը սեպեն զանիկայ՝ որն որ այլազգ կը հաւատայ : Ուզուեցաւ որ՝ ժողովոյն սահմանին մէջ գրուի, բայց Յոյնք ըսին՝ թէ աս հարկաւոր չէ, վասն զի ասիկա գրուելով՝ ամօթ կ'ըլլայ իրենց եկեղեցւոյն : Բայց որպէս զի ապահով ըլլաք՝ որ սանկ կը հաւատանք, նայեցէք, ըսին, Յովհաննու Ոսկեբերանին՝ որն որ նոյնը բացայայտ կ'ըսէ, եւ պատրաստ ենք հրապարակաւ դաւանելու՝ որ ձեզի

պէս մենք ալ կը հաւատանք, թէ մինակ տէրունական խօսքերով կը կատարուի։ Ասանկ Յուլիանոս Սաբինայ կարդինալը հետեւեալ օրը հրապարակաւ ծանոյց։

Յոյնք իրենց խոստումը կատարեցին, երբ որ վերջին նիստին մէջ Բեսարիոն Նիկիոյ Արքեպիսկոպոսն իրենց բերան ըլլալով՝ ժողովոյն մէջ ասանկ խօսեցաւ*։

«Որովհետեւ մեր մէջն եղած տարբերութեանց վրայ քննութիւններ ըլլալու ատեն՝ գոհութեան աստուածային խորհրդոյն սրբագործութեանը համար տարակոյս եղաւ, եւ ոմանք կասկած ըրին՝ որ մենք եւ մեր եկեղեցին չի հաւատար՝ թէ աս խորհուրդը Տեառն մերոյ խօսքերովը կը կատարուի, ասոր համար է՝ որ ահաւասիկ, երանելի Հայր, ձեր Սրբութեան առջեւն եկանք։ . . . Որովհետեւ բոլոր սուրբ վարդապետ-

*Բեսարիոն դեռ խօսելու չսկսած՝ Նոտարներուն գլխաւորին հրամայուած էր՝ որ [illegible] դրէ։ Աս ժողովոյն Նոտարին ինքնագիրը կեցած է Թոսքանայի գանձարանը։

նեքէն, մանաւանդ Երանելի Յովհան Ոսկեբերանէն* լսած ենք՝ թէ Տէրունական խօսքերն են՝ որոնք կը փոխարկեն հացն՝ ի մարմին, ու գինին՝ յարիւն Քրիստոսի, եւ թէ Փրկչին այն աստուածային խօսքերը ամէն [illegible] զօրութեան փոխարկելու, հարկաւ նոյն վարդապետին եւ անոր մտացը կը հետեւինք:»

Նոյն տիեզերական ժողովոյն վարդապետութիւնը Հայոց Կաթողիկոսին պատգամաւորներուն ալ աւանդուեցաւ՝ անոնց տրուած վճռոյն մէջ դնելով.

---

*Ահաւասիկ Ս. Ոսկեբերանին խօսքը ճառ Ա. վասն Մատն. Յուդ. 6: «Հիմայ ալ նոյն Քրիստոսն է հոս, որն որ այն սեղանը պատրաստեց, նոյնն ալ սեղանն ալ կը յարդարէ: Չէ թէ մարդն է, որ անոնք կ'ընէ՝ որ առաջի եդեալ ընծաները՝ մարմին եւ արիւն Քրիստոսի ըլլան, հապա ինք Քրիստոս, որ մեզի համար խաչեցաւ: Անոր դէմքն առած կը կենայ քահանան, եւ այն խօսքերը կ'արտաբերէ, իսկ զօրութիւնն ու շնորհքը Աստուծոյ է: Այս է մարմին իմ, կ'ըսէ: Այս խօսքն է՝ որ առաջի եդեալ ընծաները կը փոխարկէ:»

«Աս խորհրդոյս ձեւն է Փրէնչէն խօսքերը՝ որոնցմով աս խորհուրդը կը կատարուի ։ Վասն զի քահանան ի դէմս Քրիստոսի խօսելով կը կատարէ խորհուրդը ։ Որովհետեւ նոյն խօսքերուն զօրութեամբն է՝ որ հացին գոյացութիւնը՝ Քրիստոսի մարմնոյն, եւ գինւոյն գոյացութիւնը՝ Քրիստոսի արեանը կը փոխուին ։ »

Վերոյիշեալ ժողովոյն մէջ աս խնդրոյն վրայօք ինչ անցած ըլլալուն ըստ բաւականին տեղեակ չէին ան երկու կամ երեք մատենագիրները ( Լը Պրէօն եւ Ռէնօ ) որոնք անցեալ դարուն մէջ արեւելեան պատարագամատոյցներուն մէջ Քրիստոսի խօսքերէն ետքը , եւ արեւմտեան պատարագամատուցին մէջ Քրիստոսի խօսքերէն յառաջ դրուած օրհնութեան կամ կոչման խօսքերը փոխարկութեան հարկաւոր սեպեցին , բայց հարկ եղաւ՝ որ շուտով լռեն ։ Երբ որ նոյն վէճը մեր օրերը Անտիոքայ թեմին մէջ յոյն ծիսի Արեւելեայնց մէջ արթընցաւ , 1822ին Պիոս Է . ամէն բան խաղաղեց համեմատ Փլորենտեան տիեզերական ժողովոյ ծանուցանելով թէ ՝ Գ-

ույն Քրիստոսի խօսքերով կը սրբագործի սեղանի խորհուրդը » ։

« Որովհետեւ ինք Քրիստոս , կ՚ըսէ Տրիդ. Կոչ. Ընծ. Մասն Բ. գլ. Դ. 19. աս ձեւը փոխարկութեան համար գործածեց , անոր համար ամէն ատեն նոյնը կաթողիկէ եկեղեցին կը գործածէ։ Աս բանս Փրկչին հետեւորդ խօսքէն ալ կրնայ տեսնուիլ. զայս արարէք առ իմոյ յիշատակի. ( Ղուկ. ԻԲ. 19 )։ Վասն զի ինչ որ Տէրն մեր պատուիրեց՝ (զայս արարէք ըսելովը), չէ թէ մինակ ըրածէն , ՚հապա նաեւ ըսածէն պէտք է որ վերաբերի , եւ գլխաւորաբար անոր խօսքերուն համար պէտք է իմանալ, զորոնք հաւասարապէս թէ՛ նշանակելու եւ թէ՛ ընելու (գոյացուցանելու) համար արտաբերեց »։

Նոյն ( 1858 ) տարւոյ Նոյն Հոգեւոր ժողովէն հաստատուած Քրիստոնէական մ՚ալ կ՚ըսէ .

« Հ. Ի՞նչպէս կը կատարի Յիսու-
« սի Քրիստոսի մարմնոյ եւ արեան խոր-
« հուրդը ։

« Պ. Քահանային—հացին վրայ Քը-

« րիստոսի այս է մարմին իմ, եւ գինի-
« ին վրայ այս է արիւն իմ ըսելով նոյն
« հացը ու գինին իրեն ճշմարիտ մարմին
« եւ արիւն ընելը յիշեցընելէն ետքը՝ Հո-
« գին սուրբ կը կոչէ. որով իր ձեռքի
« հացն ու գինին ալ Քրիստոսի ճշմարիտ
« մարմին եւ արիւն կ՚ըլլան » ( էջ 33 ):

Ասիկայ վերոյիշեալ Վարդապետարանէն բաւական տարբեր է: փոխարկութեան ձեւը կամ Քրիստոսի խօսքերուն, եւ կամ կոչման խօսքերուն վրայ կը դնէր Վարդապետարանը: Թէ Քրիստոսի խօսքերուն, եւ թէ կոչման խօսքերուն վրայ միանգամայն կը դնէ առաջիկայ Քրիստոնէականը՝ հարկաւ գոյափոխիչ զօրութիւնը՝ ասոր եւ անոր մէջ բաժնելով:

Անծանօթ չէ մեզի, թէ ուստի յառաջ կու գայ աս երկու Քրիստոնէականներուն ճիգը: Յոյնք վերոյիշեալ տիեզերական ժողովոյն մէջ՝ միայն ասոր համար կը խորշէին աս նիւթիս վրայ խօսք բանալու, վասն զի կը կարծէին որ պիտ՚որ ստիպուէին իրենց պատարագամատուցին խօսքերը փոխելու: Բայց

ոչ այս ժողովը կամ Եւգինէոս Դ. ան-
ատենը, եւ ոչ Պիոս Թ. մեր ատենե-
ները Յունացմէ ասանկ պահանջում ը-
րաւ: Ինչպէս յոյն պատարագամատոյց-
ները, նոյնպէս հայերէն պատարագա-
մատոյցն ալ՝ որն որ մեծաւ մասամբ ա-
նոնցմէ առնուած է, իր ամէն պարա-
գաներովը բացայայտ կը ցուցունէ որ Քր-
իստոսի Տեառն մերոյ խօսքերովն ալ
դէն լիակատար գոյափոխութիւն եղած
լմնցած է. իսկ կոչումն ուրիշ բան չի
կրնար աւելցընել, բայց եթէ աղօթողա-
կան ամբողջութիւն մը:

Ընդհանրապէս արարողութեանց եւ
ի մասնաւորի արեւելեան Մաշտոցի, այս
բանն՝ լեզուին կամ ոճոյն մէջն է՝ որ շատ
անգամ խորհուրդը կամ գործողութիւ-
նը կատարուելէն ետքը՝ իբրեւ դեռ ըլ-
լալու կամ լմննալու կերպով խօսուի:

*Հայաստանեայց եկեղեցին քրիս-
տոնեայ տիեզերաց հետ կը հաւատայ՝
որ մկրտութեան խորհուրդը Քրիստոսի
Տեառն մերոյ աւանդած խօսքերովը,
Ա. Ա. «մկրտի յանուն Հօր եւ Որդւոյ
եւ Հոգւոյն սրբոյ» կատարելապէս կը-

մընացած է . ի վերայ այսր ամենայնի՝ ետքէն դեռ քահանան կ'աղօթէ . « Սուրբ արա զսա , Տէ՛ր , ճշմարտութեամբ քով , եւ լուսով շնորհաց սուրբ Հոգւոյդ , զի եղիցի տաճար եւ բնակարան աստուածութեանդ քո » ( Մաշտ. էջ 42 ) , թէպէտ ամէնքնիս գիտնանք՝ որ արդէն սուրբ է , արդէն Հոգւոյն սրբոյ շնորհքը լուսաւորուած է եւ Աստուծոյ տաճար ու բնակարանն է , եւ չի կրնար աս յատկութիւնները կորսընցընել , բայց եթէ շատ տարիներ ետքը , երբ որ մանուկը բանականութեանը տէր ըլլայ :

Դարձեալ Հայաստանեայց եկեղեցւոյ ծիսարանին համեմատ՝ կարգի խորհըրդոյն մէջ՝ քահանայութեան ձեռնադրութիւնը լմընցընելէն ետքը՝ հինգ վեց դար կայ՝ որ ետքէն եպիսկոպոսն իր ձեռնադրուածին կ'ըսէ . « Առ զՀոգի սուրբ որում թողուցուս զմեղս՝ թողեալ լիցի , որում ունիցիս՝ կալեալ : »

Այսպէս ալ վերջին օծման խորհըրդոյն մատակարարութեան ատեն ինչպէս Յունաց նոյնպէս Հայոց քով ան

բանը զորն որ արեւմտեան ծէսը՝ խոր-հուրդը մատակարարելէն յառաջ կ՚ընէ նոյնը ասոնք խորհուրդը մատակարա-րելէն (այս ինքն օծելէն եւ օծման ա-ղօթքները լմընցընելէն) ետքը կ՚ը-նեն երբոր հիւանդին վրայ ձեռք դնե-լով հոգւոյ եւ մարմնոյ բժշկութիւն եւ զօրութիւն կ՚աղօթեն, թէպէտեւ աս աղօթքն ամենեւին նախընթաց աղօթքներուն զօրութեանը չի հա-նիր, եւ ոչ խորհրդոյն էական ամ-բողջութիւն մըն է, վասն զի չի կրնար ալ անոնց վրայ ի գործոյ գործեցելոյ բան մ՚աւելցընել (Մաշտ. էջ 156—7)։

Ասանկ արեւելեան արարողութեան ոճ.յն պէտք է ընծայել՝ չէ թէ մինակ Կատարեալէն տեղ Ադամնին, հապա նա-եւ Ապառնւոյն տեղ կատարեալը, օ-րինակի աղագաւ. երբ որ Հայ պատարա-գամատոյցը սրբագործութենէն յառաջ կ՚ըսէ. «Քրիստոս ի մէջ մեր յայտնե-ցաւ, որ էն Աստուած աստ բազմեցաւ։» Դարձեալ՝ «մարմին տէրունական եւ արիւն փրկչական կայ առաջի» եւայլն։

Քրիստոսի խօսքերով սրբագործու-

թիւնը լմընցած ըլլալուն կը վկայեն, օ-րինակի ազգաւ սա պարագան՝ որ Քրիստոսի խօսքերը քահանան ձայնի-կը զրուցէ, եւ ժողովուրդը Ամէն կը յարգէ, իսկ կոչման խօսքերը քահանան ինք իրեն կը զրուցէ, եւ ժողովուրդը չի լսեր. դարձեալ սա պարագան՝ որ Քրիստոսի խօսքերը լմըննալու ատեն՝ ժողովուրդը կ'ըսէ Ամէն, որն որ հաստատողական կամ հաւանողական խօսք է եւ կը նշանակէ Այո, անա՛նկ է. այսինքն Քրիստոսի մարմինն է. Քրիստոսի արիւնն է: (Աս Ամէնը ձեռագրաց մէջ կայ, Լամբրոնացւոյն պատարագամատուցին մէջ կրկին կայ, այսինքն թէ՛ հացին եւ թէ՛ գինւոյն սրբագործութեանը՝ զատ զատ. էջ 216: Ձեռքերնիս եղած էջմիածնական ՌՃՂ Հ. թուականին տպուած խորհրդատետրին մէջ աս Ամէնը չենք գտներ:)

Ապաշխարութիւն: – Կոստանդնուպօլսոյ 1847ին քրիստոնէական վարդապետութիւնը՝ որն որ 1843ին քրիստոնէականին վրայ շինուած է ու մինչեւ գոնէ երբեք անգամ տպուած է, կ'ըսէ.

«Հ. (Մկրտեալը մեղք գործէ նէ) «ինչպէս կը հաշտուի ։

«Պ. Հարկ է՝ որ իր մեղքերուն վրայ «զղջայ, ու զղջալէն ետեւ երթայ Աս- «տուծոյ առաջը խոստովանածի պէս քա- «հանային խոստովանի՝ զորոնք որ Աստ- «ուած իր եկեղեցւոյն մէջ իրեն փոխա- «նորդ դրեր է այս բանիս համար ։

«Հ. Մինակ խոստովանիլը բաւա- կա՞ն է ։

«Պ. Ոչ. այլ հաստատ դիտաւորու- «թիւն մը պիտի ընէ միտքին մէջը, որ «մէյ մ՚ալ մեղքով զԱստուած չբարկա- «ցունէ, եւ խոնարհութեամբ քահա- «նային դրած ապաշխարանքը յանձնա- «ռու ըլլայ. եւ կատարէ, եւ Աստուծոյ «հետ հաշտուի՝ որ քահանային արձա- «կում տալովը կ՚ըլլայ ։

«Հ. Մեղաւորը միայն այսքանով «Աստուծոյ հետ կը հաշտուի եւ արքայ- «ութեանը ժառանգ կըլլա՞յ ։

«Պ. Ձէ. որովհետեւ մեղօք Քրիս- «տոսի արդարութեանը հաղորդ ըլլալէն «զրկուած է. ուստի պէտք է որ ապաշ- «խարելէն ետքը Քրիստոսի մարմինը եւ

« արիւնը առնելով, նորէն Քրիստոսի
« շնորհացը հաղորդ ըլլայ եւ առաջին
« սրբութիւնը ստանայ . . . եւ ասանք ը-
« նելով եկեղեցւոյ հետ միացեալ կը մը-
« նայ » ( 14-16 ) ։

Բոլորովին նոր վարդապետութիւն ։ Ուրեմն մեղաւորը զղջալէն ու խոստովանութեան խորհրդական արձակումէն ետքը Աստուծոյ հետ դեռ կատարելապէս հաշտուած չէ, Քրիստոսի արդարութեան հաղորդ, շնորհաց արժանի եղած չէ, ու վերջապէս եկեղեցւոյ կենդանի անդամ չէ, աս ամէն բանը՝ խորհրդական արձակումէն ետեւ Քրիստոսի մարմինն ու արիւնն առնելէն ետքը պիտ՚ որ ըլլայ ։

Գիտենք ո՞ւր է աս ըմբռնման հիմը ։ Էջմիածնական եկեղեցւոյ մէջ Հաղորդութենէն անկախ՝ խոստովանութեան խորհրդոյն գործածութիւնը շատ հասարակ չի կրնար ըսուիլ, խորհրդոյ մը՝ որուն այնպէս շարունակ կարօտ ենք, ինչպէս շարունակ մեղաւոր ենք ։ Ո՞վ չի տեսներ՝ թէ որչափ ծուռ է աս տեսութիւնը ։ Կաթողիկէ եկեղեցւոյ մէջ՝ ա-

մէն ճիգ կը թափուի , ամէն հնարք կը գործածուի, ամէն դիւրութիւն կը պատրաստուի՝ որ Խոստովանութեան խորհըրդոյն գործածութիւնը թէ՛ յաճախ եւ թէ անմիջական ըլլայ , որպէս զի չէ թէ միայն մահը՝ որն որ շատ անգամ գիշերուան գողոյ պէս կը հասնի , հոգիները Աստուծոյ . շնորհքէն դուրս չգտնայ , հապա միանգամայն՝ մեղաց մահկանացու մարմիններուն վրայ ունեցած թագաւորութեան նոյն իսկ օրերն եւ ժամերը կարճնան , եւ հաւատացեալք իրենց մաքրութեան մէջ երկնից արքայութեան աւելի պտղաբեր՝ ըլլան :

Ասկից քիչ զարմանալի չէ Հայաստանեայց Էջմիածնական եկեղեցւոյ Կոստանդինուպոլսոյ վերջին քրիստոնէականին մեղաց խոստովանութեան վրայ սա խօսքերը :

« Հ . Թէ որ ( խոստովանութեան « մէջ ) մոռցածը գտնուի նէ՝ խոստովա-« նութիւնը անկատա՞ր կ'ըլլայ :

« Պ . Չէ . անոնց ալ թողութիւն կը « գտնէ . բայց այս պայմանով՝ որ ետքը « միտքը եկած ատենը խոստովանի . վա-

« որն զի այն ատենը չխոստովանի նէ ,
« այն մեղքը խոստովանածներուն կար-
« գէն ելլելով Թողութիւն ալ չի գըտ-
« ներ ։ » ( էջ 35 ) ։

Ոչ երբեք ասանկ պայմանաւ մեղաց Թողութիւն կու տայ Աստուած , եւ ոչ ալ մէկ անգամ Թողուած ու ջնջուած մեղք մը հետագայ մեղքով նորէն ետ կը դառնայ կամ կը կենդանանայ Աստուծոյ անզեղջ շնորհացն առջեւ ։

Վերջին օծման՝ որուն վրայ բաւական խօսած ենք , 1858ին «Քրիստոնէականը կ'ըսէ .

« Հ . Հիւանդին ամէն մեղքն ալ այս
« ( վերջին օծման ) խորհրդովս չե՞ն մաք-
« րուիր » ։

« Պ . Ոչ . ծանր մեղքերը մաքրելու
« համար ապաշխարութեան խորհուրդէն
« զատ հնարք չկայ » ( էջ 13 ) ։

Նոյնպէս Կոստանդինուպոլսոյ 1847-ին «Քրիստոնէականը՝ որն որ առէպ նորէն տպուած է , կը կրկնէ և կ'երեքնէ՝ Թէ վերջին օծումը մահու չափ մեղքէ չ'ազատեր ( էջ 23 ) ։

Արդ հակառակ՝ ամէն աստուածա-

բանձերու և ի մասնաւորի Տրիդենտեան Քրիստոնէականին (Մասն Բ. գլ. Զ. 14) վարդապետութիւնն է՝ թէ վերջին օծման խորհուրդն ըստ ինքեան թեթեւ մեղքերը, բայց անուղղակի և ըստ պատահման նաեւ ծանր և մահու չափ մեղքերը ջնջելու համար ի Քրիստոսէ Տեառնէ մերմէ սահմանուած է, և շատ անգամ կ'ըլլայ՝ որ աս խորհրդով հոգիներ կը փրկուին՝ որոնք առանց անոր պիտ'որ կորսուէին։

Կարգ։ — Կարգի խորհրդոյն վրայ Քրիստոնէականներէն մէկ քանին լսենք։

«Մանր ուսմունք քրիստոնէական հաւատոյ» անուամբ գրուածը (էջ 23-30) սանկ կը խօսի։

«Հ. Կարգը քանի՞ աստիճան ունի։
«Պ. Եօթն։
«Ա. Դռնապանութիւն,
«Բ. Ընթերցողութիւն,
«Գ. Երդմնեցուցչութիւն,
«Դ. Ջահընկալութիւն,
«Ե. Կիսասարկաւագութիւն,
«Զ. Սարկաւագութիւն,
«Է. Քահանայութիւն։

« Հ. Եպիսկոպոսութիւնը ի՞նչ է։
« Պ. Գլխաւոր քահանայութիւն է որ
« քահանայապետութիւն ալ կ՚ըսուի։
« Հ. Կաթուղիկոսութիւնը ի՞նչ է։
« Պ. Գլխաւոր եպիսկոպոսութիւն է,
« անոր համար եպիսկոպոսապետութիւն
« ալ կ՚ըսուի։

Կոստանդնուպոլսոյ 1847ին քրիստոնէականը՝ որն որ 1843ին քրիստոնէականին վրայ շինուած ու գոնէ երեք անգամ նորէն նորէն տպուած է, կ՚ըսէ.

« Վեցերորդ խորհուրդն է Ձեռնա-
« դրութիւն՝ որ Կարգ ալ կ՚ըսուի, որով
« եկեղեցւոյ պէսպէս գործքերը կատա-
« րելու . . . պաշտօնեաներ կ՚ընտրուին,
« ինչպէս են՝ կաթուղիկոսը, եպիսկոպո-
« սը, քահանայն, սարկաւագը, որ ա-
« մէնք իրարմէ վեր աստիճաններ ու-
« նենալնուն համար՝ վար աստիճան ու-
« նեցողը, իրմէ վեր աստիճանի գործը
« կատարելու իշխանութիւն չունի» (էջ 21—22)։

Կոստանդնուպոլսոյ 1858ին քրիստոնէականը կ՚ըսէ.

« Հ. Սուրբ աստիճաններն ո՞րն են։

«Պ. Կիսասարկաւագութիւն, սար-
կաւագութիւն, քահանայութիւն, եպիս-
կոպոսութիւն, և կաթուղիկոսութիւն»։

«Ասոնքամէնն ալ զատ զատ գործ
պաշտօն ունին, և վերջի երեք կարգը
առնողները միայն օծում կ'ունենան
(էջ 29)։

«Հ. Եպիսկոպոսին գործն ի՞նչ է։

»Պ. Ձեռնադրութիւն ընել (այս
«ինքն՝ քահանայ, սարկաւագ եւայլն ձեռ-
«նադրել»)։

«Հ. Կաթուղիկոսին գործն ի՞նչ է։

«Պ. Եպիսկոպոս ձեռնադրել, մե-
«ռոն օրհնել» եւայլն (էջ 40)։

Թէ որ աս քրիստոնէականներէն ո-
մանք եպիսկոպոսութիւնը կարգի խոր-
հրդոց մէջ զատ կարգ չեն սեպեր, հա-
պա միայն պաշտօնի իշխանութեամբ
քահանայութենէ վեր կը դնեն, եւ ո-
մանք ալ ընդ հակառակն՝ կարգի խոր-
հրդեան մէջ քահանայութենէ զատ ու
վերագոյն կարգ կը դնեն (որն որ բուն
ստոյգն է), կաթողիկէ վարդապետու-
թեան դպած չեն ըլլար, որովհետեւ
կաթուղիկէ եկեղեցին ալ երկու կար-

ծեաց մէջ ազատութիւն թողուցած է՝ միայն ան որոշելով թէ եպիսկոպոսութիւնը ի Քրիստոսէ Տեառնէ մերմէ դրուած նուիրապետութեան մասն է ։ Աս նուիրապետութիւնը եպիսկոպոսներէ, քահանաներէ ու պաշտօնեաներէ կազմուած է * ։

Բայց վերոյիշեալ Քրիստոնէականներն աս ազատութեան սահմանին մէջ չեն կենար, հապա կաթողիկէ եկեղեցւոյ վարդապետութեանը ծանր կերպով կը դպչին՝ երբ որ կաթուղիկոսութիւնը իբրև կարգի կամ աստուածային դրութիւն ունեցող նուիրապետութեան աստիճան կամ մաս մը կը դնեն՝ անոր կարծես թէ աստուածային իրաւամբք յատուկ պաշտօն որոշելով եւ կաթուղիկոսի օծումն եւ օրհնութիւնը խորհրդեան նիւթ ու ձև սեպելով ։

Ի Քրիստոսէ, ուստի եւ աստուածային իրաւամբք, եպիսկոպոսական կարգին եւ իշխանութեան յատուկ եղած պաշտօններէն քանի մը բան՝ ինչպէս եպիսկոպոսի ձեռնադրութիւնը, միւռո-

* Ժող. Տրիդ. Նիստ. ԻԳ. Կան. 6։

նի օրհնութիւնը եւայն կը կտրեն, որպէս զի կաթուղիկոսութեան իբրև յատուկ պաշտօն տան, կաթուղիկոսութեան՝ զորն որ, ինչպէս ըսինք, զատ կարգի աստիճան կը սեպեն։

Երբեք չի կրնար գովուիլ անոր տրամադրութիւնը՝ որնոր երկրի մը կամ տէրութեան մը կամ ազգի մը եպիսկոպոսները՝ միւռոն օրհնելու գործողութենէն կը զրկէ, նոյնը երկրին գլխաւոր եպիսկոպոսին կամ Կաթողիկոսին վերապահելով, տրամադրութիւն մը՝ որնոր ոչ եկեղեցւոյ մտաց համաձայն է և ոչ Հայաստանի մէջ նախնաբար գտնուած եկեղեցական կարգադրութեան համեմատ։ Ասկից շատ աւելի եկեղեցական վարդապետութեան կը դպչի՝ երբոր ասով և ասանկներով զատ կարգի աստիճան մը կը ձեւացուի եւ եպիսկոպոսաց աստուածային իրաւամբ ունեցած պաշտօնը՝ եւ ոչ ի վարդապետութեան կը ճանչցուի։

Ո՛րչափ աւելի ուղիղ կը խօսի ասկից 170 տարի առաջ Քրիստոնէական ուսոնէւէն՝ որնոր կ'ըսէ.

— «Եպիսկոպոսութիւնն եւ հայրապետութիւն ոչ են այլ ինչ եւ հարգ. զի քահանայութիւնն է որպէս թագաւորութիւն, եւ եպիսկոպոսութիւնն եւ կաթողիկոսութիւնն՝ որպէս զկայսերութիւն հոգեւոր (էջ 343)»։

Դարձեալ՝ վերոյիշեալ 1858ին Քրիստոնէականը կ'աւելցնէ.

«Հ. Վարդապետ չեղող քահանաները չեն կրնար կարգուիլ։

«Պ. Չէ. սուրբ աստիճաններ առնողները առաջուց կարգուած կրնան ըլլալ. բայց այս սուրբ աստիճանները առնելէն ետքը ասոնց մէկն ալ չեն կրնար կարգուիլ. եւ կարգուելն ալ նէ՝ իրենց եկեղեցական աստիճաններէն կ'իյնան։

«Հ. Ասանկներուն կարգուիլը մեղք է։

«Պ. Այո. վասն զի կարգ առած աստենիկին եկեղեցւոյ մէջ Աստուծոյ առաջը ուխտ ըրած են չկարգուելու. ուստի ուխտադրժութեան ծանր մեղքին տակը կ'իյնան (էջ 41)»։

Թէ որ խօսուցընէ աս ասանկ է, այս ինքն՝ թէ որ խօսուցընէ Էջմիածնական

նի օրհնութիւնը եւայլն կը կորեն, որպէս զի կաթուղիկոսութեան իբրև յատուկ պաշտօն տան, կաթուղիկոսութեան՝ զոր որ, ինչպէս ըսինք, զատ կարգի աստիճան կը սեպեն։

Երբեք չի կրնար զօրութիւն տրամադրութիւնը՝ որնոր երկրի մը կամ տէրութեան մը կամ ազգի մը եպիսկոպոսները՝ միւռոն օրհնելու գործողութենէն կը զրկէ, նոյնը երկրին գլխաւոր եպիսկոպոսին կամ Կաթողիկոսին վերապահելով, տրամադրութիւն մը՝ որնոր ոչ եկեղեցւոյ միայն համաձայն է և ոչ Հայաստանի մէջ նախնաբար գտնուած եկեղեցական կարգադրութեան համեմատ։ Ասկից շատ աւելի եկեղեցական վարդապետութեան կը դպչի՝ երբոր ասով և ասանկներով զատ կարգի աստիճան մը կը ձեւացուի եւ եպիսկոպոսաց աստուածային իրաւամբ ունեցած պաշտօնը՝ եւ ոչ ի վարդապետութեան կը ճանչցուի։

Ո՛րչափ աւելի ուղիղ կը խօսի ասկից 170 տարի առաջ Քրիստոնէական ուսանելին՝ որնոր կ'ըսէ.

«Եպիսկոպոսութիւնն եւ Հայրապե-
«տութիւն ոչ են այլ ինչ եւ կարգ. զի
«քահանայութիւնն է որպէս թագաւո-
«րութիւն, եւ եպիսկոպոսութիւնն եւ
«կաթողիկոսութիւնն՝ որպէս գերայսերու-
«թիւն հոգեւոր (էջ 343):

Դարձեալ՝ վերոյիշեալ 1858ին Քրիս-
տոնէականը կ՚աւելցընէ.

«Հ. Վարդապետ չեղող քահանա-
ները չե՞ն կրնար կարգուիլ։

«Պ. Ջէ. սուրբ աստիճաններ առ-
«նողները առաջուց կարգուած կրնան
«ըլլալ. բայց այս սուրբ աստիճանները
«առնելէն ետքը ասոնց մէկն ալ չեն
«կրնար կարգուիլ. եւ կարգուին ալնէ՝
«իրենց եկեղեցական աստիճաններէն
«կ՚իյնան:

«Հ. Ասանկներուն կարգուիլը մե՞ղք է։

«Պ. Այո. վասն զի կարգ առած
«աստիճանին եկեղեցւոյ մէջ Աստուծոյ
«առաջը ուխտ ըրած են չկարգուելու.
«ուստի ուխտադրժութեան ծանր մեղ-
«քին տակը կ՚իյնան (էջ 41):

Թէ որ իրաւցընէ աս ասանկ է, այս
ինքն՝ թէ որ չիրաւցընէ Էջմիածնական

եկեղեցւոյ վարդապետութիւնն է՝ որ սուրբ աստիճաններն առնելէն ետքը ոչ ոք կրնայ կարգուիլ, եւ սուրբ աստիճան լսուածներն ալ, ինչպէս քիչ մը վերը նոյն քրիստոնէականին մէջ տեսանք, չէ թէ միայն եպիսկոպոսութիւն, քահանայութիւն եւ սարկաւագութիւնըն է, հապա միանգամայն կիսասարկաւագութիւնը, եւ վերջապէս թէ որ Իրաւ ցընէ Էջմիածնական եկեղեցին անանկ կը սեպէ թէ աս կարգերն (գոնէ վերջին երեքն) առնողները՝ կարգ առած ատենին Աստուծոյ առաջը ուխտ ըրած են չկարգուելու, ասանկներուն կարգուիլը միա՛յն ուխտադրժութիւն է, միա՛յն ծանր մեղք, եւ միայն աստիճաններնէ՞ն վար կ'իյնան։ Աս չորս կէտերուն նկատմամբ Էջմիածնական քրիստոնէականները որոշ գաղափար մը չեն ի տար, թէպէտ եւ իրը, ինչպէս յայտնի է, գործնական հետեւութիւն ալ ունի։

Պոլսէ խորհրդոյն համար 1850ին Քրիստոնէական Հաւատոյ Հրահանգը կը հաստատէ թէ եկեղեցական կամ ժողովական օրինօք Զորրորդ կամ հին-

դերորդ կամ աւելի եւս ամուսնութիւնք չհամարին օրինաւորք. (էջ 52 եւ 325։) Ասոր հակառակ՝ կաթողիկէ եկեղեցին (ժող. Փլոր. վճ. վասն Յակոբիկեանց) կ՚ըսէ. Որովհետեւ կ՚ըսուի թէ ոմանք չորրորդ պսակը իբրեւ գէշ բան կը մերժեն, որպէս զի չըլլայ թէ մեղք սեպուի՝ ուր որ մեղք չկայ, (վասըն զի ըստ Առաքելոյ՝ երկանը մեռնելովը՝ կինն անոր օրէնքէն լուծուած է եւ իշխանութիւն ունի Տէրամբ ամուսնանալու որուն հետ որ կ՚ուզէ, եւ չի զանազաներ Առաքեալը՝ առաջին կամ երրորդ մեռածը) կը սահմանենք՝ որ չէ թէ միայն երկրորդ, հապա նաեւ երրորդ եւ չորրորդ եւ աւելի եւս պսակ կրնայ օրէնաւորապէս ընդունուիլ։ Բայց աւելի գովութեան արժանի են՝ որոնք որ անկէ ետքը ամուսնութենէ ժուժկալելով՝ ողջախոհ կ՚ապրին. վասն զի ինչպէս կուսութիւնը՝ այրիութեան, ասանկ ալ ողջախոհ այրիութիւնը՝ ամուսնութեան նախադաս կը սեպենք՝ թէ՛ գովութեամբք և թէ արդեամբք։

4.

Պատուիրանք.

Էջմիածնական եկեղեցւոյ Քրիստոնէականներն եկեղեցւոյ պատուիրաններուն վրայ քանի մը զարմանալի տարաձայնութիւններ ունին։

« Հ. Եկեղեցւոյ երրորդ պատուիրանը ո՞րն է։

« Գոնէ տարին մէկ անգամ մը խոստովանիլ ու հաղորդուիլ»։

Այսինքն՝ Հայաստանեայց եկեղեցւոյ քրիստոնէականներէն շատերը, եւ ի մասնաւորի՝ 1858ին Հոգեւոր ժողովէն քննուած Միջակ վարդապետարանը (էջ 84)։

Բայց նոյն 1858 տարին քիչ մը ետքը նոյն ժողովէն քննուած քրիստոնէական վարդապետութեան մէջ աս պատուիրանը կը փոխուի։

« Հ. (Եկեղեցւոյ պատուիրաններուն) երրորդը ո՞րն է։

« Պ. Գոնէ տարին երկու անգամ քահանային առաջը կատարելապէս խոստովանիլ։

«Հ. Զորրորդը ո՞րն է։
«Պ. Տարին գոնէ երկու անգամ կատարեալ խոստովանելէն ետքը սուրբ հաղորդութիւն առնել (էջ 58)»։

Բայց ասկէց առաջ 1826ին ասկէց աւելի խիստ էր եկեղեցւոյ պատուիրանը, որովհետեւ Կոստանդինուպոլսոյ Լապտեր հոգւոց անուամբ՝ քրիստոնէականին մէջ տարին գոնէ երեք անգամ խոստովանիլ ու երեք անգամ հաղորդուիլ կը պատուիրէր եկեղեցին։

«Եկեղեցւոյ երրորդ պատուէրն է, «կ'ըսէ վերոյիշեալ քրիստոնէականը, երկար ժամանակ առանց խոստովանութեան չմնալ»։

«Զորրորդն՝ սուրբ հաղորդութիւնն առնուլը չուշացընել, գոնէ Ծնունդին, «Զատկին ու Սուրբ Աստուածածնին «Քրիստոսի սուրբ մարմնոյ եւ արեանը «խոստովանութեամբ հաղորդուիլ» (էջ «8-9)։

Այսպէս Հայաստանեայց եկեղեցւոյ քրիստոնէականները եկեղեցւոյ պատուիրանը՝ եկեղեցւոյ խրատուն հետ կը շփոթեն։

Բայց իրօք եկեղեցւոյ պատուիրանը միակ ա՛ն է՝ որ չափահաս քրիստոնեան տարին գոնէ մէկ անգամ խոստովանի , տարին գոնէ մէկ անգամ այս ինքն Զատկի տօներուն հաղորդուի :

Հայաստանեայց եկեղեցւոյ քրիստոնէականները ուրիշ մէկ պատուիրանի վրայ ալ ծուռ վարդապետութիւն ունին :

« Հ . Ծառայութեան գործքերն ո-
« րո՞նք են :

« Պ . Ո՛ր եւ իցէ աշխատանք կամ ձեռագործ՝ որով մարդս ապրուստ կը ճարէ : »

Աւանդ Միջակ վարդապետարանը ( էջ 78 ) :

Ըստ ամենայնի նոյն մտաց վրայ է ուրիշ քրիստոնէական մ'ալ ( Մանր ուսմունք քրիստոնէկան հաւատոյ , էջ 40 ) :

« Հ . Ծառայական գործքերն որո՞նք
« են :

« Պ . Մարմնաւոր շահերու համար եղած աշխատութիւններն են : »

Կաթողիկէ եկեղեցւոյ կամ պատուիրանին միտքն աս չէ : Պատուիրանը

ծառայութեան գործքը կ'արգելու ։ Իսկ գործք մը ծառայութեան գործք ըլլալն ու չըլլալը՝ անով ապրուստ ճարուելէն կամ չճարուելէն չ'որոշուիր , հապա գործքին բնութենէն ։ Կիրակի մէկը կիրակի կամ տօն օրով , ապրուստ ճարելու կամ շահաւոր գործ մ'ընել՝ առանց ծառայութեան գործ մ'ըրած ըլլալու , այս ինքն ազատ և ոչ ծառայի գործ գործելով , օրինակի աղագաւ պատկեր գծել կամ գծագրութիւններ ընել , գիրք գրել․ ասոր հակառակ եկեղեցւոյ պատուիրանին դէմ կ'ընէ թէ որ՝ նաեւ ձրի կամ զբօսանքի համար ծառայի գործ գործէ , օրինակի աղագաւ՝ հողագործութիւն ընէ , կար կարէ եւայլն ։

Իսկ 1858ին վարդապետարանը կ'աւելցընէ ․

« Հ ․ Եկեղեցւոյ երկրորդ պատուի-
« րանը ո՞րն է ։

« Պ ․ Կիրակի եւ տօն օրերը ժամէ
« եւ սուրբ պատարագէ չպակսիլ ( էջ
« 84 ) ։

Պատարագէն անշուշտ մէկը կը պակսի՝ երբ որ անոր գոնէ էական մա-

օին նորէկայ չ՚ըլլար ։ Ուստի աս պատուէրը Հայաստանեայց Էջմիածնական եկեղեցւոյ պատարագներուն քիչութեանը եւ միանգամայն երկայնութեանը հետ դժուարաւ կրնայ միաբանիլ ։ Ի վերայ այսր ամենայնի՝ վերոյիշեալ Հոգեւոր ժողովէն վկայուած վարդապետարանը իբրեւ եկեղեցւոյ հանդիսական պատուէր (այս ինքն՝ իբրեւ ծանր կերպով պարտաւորիչ) իրեն ուսանողներուն առջեւը կը դնէ ։

5

Խաչի ու պատկերաց պաշտօն ։

Ծանօթ է՝ որ Հայաստանեայց եկեղեցին խաչերու երկրպագութիւն ու սըրբոց պատկերներու պաշտօն (ընդհանրապէս խօսելով) մինակ ան ատեն կը մատուցանէ՝ երբ որ միւռոնով օծուին ու աղօթքով օրհնուին ։

Ասոր համեմատ է շատ անգամ յիշուած Կոստանդինուպոլսոյ 1858ին վերջին քրիստոնէականին վարդապետութիւնը ։

« Հ . Եկեղեցիներուն մէջ ոսկիէ ու

« արծաթէ եւ ուրիշ բաներէ շինուած
« խաչերը ինչո՞ւ համար կը պատուենք ։
« Պ. Թէպէտ ասոնց վրայ Քրիստոսի
« արիւնը թափուած չէ, բայց Քրիստո-
« սի բուն սուրբ խաչին յիշատակը մեր
« միտքին մէջ նորոգելով, երկրպագու-
« թեան արժանի ըլլալուն համար սուրբ
« միւռոնի օծումովը կը սրբագործին, ո-
« րով ասոնց ըրած պատիւնիս ալ բուն
« սուրբ խաչին ու անոր միջնորդութեամբ
« բը Քրիստոսի կը վերաբերի » (46) ։

Գրեթէ նոյնպէս կը խօսի սրբոց
պատկերներուն վրայ ալ (էջ 48-49) ։

Նոյնպէս 1847ին Կոստանդնուպոլ-
սոյ քրիստոնէականը կ'ըսէ ։

« Հ. Սրբոց պատկերքը ինչո՞ւ կը
« յարգենք ։

« Պ. Կը յարգենք սրբոց օծեալ
« պատկերներն ալ ... օծմամբ զանոնք
« կրօնական յարգութեան կը սեպհա-
« կանենք, ինչպէս որ Աստուած կը
« պատուիրէր Իսրայելացւոց՝ որ կրօնա-
« կան բաներու համար գործածելու ա-
« նօթները օծեն » (էջ 34-35) ։

Ուրեմն ասոնք երկրպագութեան ու

յարգութեան ան ատեն յարմար կ'ըլլան՝ երբոր միւռոնով օծուին, եւ անոնց եղած երկրպագութիւնն ու յարգութիւնը անոնց սկզբնատիպին ան ատեն կը վերաբերի՝ երբ որ միւռոնով օծուին ու օրհնուին ։

Ասանկ չէ կաթողիկէ եկեղեցւոյ վարդապետութիւնը ։ Եօթներորդ տիեզերական ժողովն ու Տրիդենտեան Սիւնհոդոսը, մէկը Պատկերամարտից ու միւսը Բողոքականաց դէմ, խաչերն ու պատկերները յառաջ քան օծումը ու նաեւ առանց օծման երկրպագութեան ու յարգութեան արժանի սահմանեցին եւ անոնց եղած պատուոյն իրենց սկզբնատիպին վերաբերիլը միւռոնի կամ սրբագործութեան կամ օրհնութեան հետ ի հարկէ չկապեցին ։

Վերը ըսինք՝ ընդհանրապէս խօսելով․ որովհետեւ ուրախութեամբ կը տեսնենք՝ որ աս նախապաշարումը Էջմիածնական ժողովրդեան մէջ երթալով կը տկարանայ, եւ օրէ օր առողջ մտածութեան եւ վարդապետութեան տեղի կու տայ, գոնէ մեր մօտերը ։

Զանց կ'ընենք ուրիշ շատ մը կիսկատար կամ Թիւր զրուցուածները, ընդհանրապէս սա դիտողութիւններն ընելով Թէ

1· Ա՛յնչափ եւ ան Քրիստոնէականներուն մէջ այսպիսի սխալներ կը պակսին՝ որչափ, եւ որոնք որ կաթուղիկէ հռոմէական եկեղեցւոյ ծոցին մէջ շարադրուած գրութիւն մ'առջեւնին ունեցած են. ատանկ են՝ օրինակի աղագաւ, վերը դրուած Քրիստոնէականաց ցանկին մէջ առջի երեք Թիւերը։ Ասոր հակառակ՝ որչափ եւ որոնք որ սեպհական հեղինակութեամբ կը գրեն, հասարակօրէն խօսելով, այնչափ Թերութիւններ կը յաճախեն։

2 · Աս Գլխոյս մէջ նշանակուածներէն շատերն անանկ ղափահաչան են՝ որ զանոնք Էջմիածնական եկեղեցւոյն դաւանութեանը իրաւամբք չենք կրնար ընծայել, բայց ասոր հակառակ կան քանի մը կէտեր՝ որոնց մէջ, ինչպէս տեսանք, դեռ ինք Էջմիածնական եկեղեցին որոշ խօսած չէ։

## ԳԼՈՒԽ Լ.

### ՀՌՈՄԱՅ ԵՊԻՍԿՈՊՈՍԻՆ ԳԼԽԱՒՈՐՈՒԹԵԱՆ ԴՐՈՒԹԻՒՆՆ՝ ԱՍՏՈՒԱԾԱՅԻ՞Ն Է ԹԷ ՄԱՐԴԿԱՅԻՆ։

1.

Կաթողիկէ ուղղափառ վարդապետութիւնը։

*Բանանք մեր վերնագրին իմաստը՝ ընդարձակելով խօսքերը, այս ինքն՝ Թէ «Սրբեօք Հռոմայ եպիսկոպոսը բոլոր եկեղեցւոյ վրայ՝ չէ Թէ ի մարդկանէ, հապա Քրիստոսէ սահմանուած, չէ Թէ պատուոյ միայն, հապա իշխանութեան միանգամայն գլխաւորութեան կառավարելու եւ վարդապետելու՝ ունի՞ Թէ չունի. ուստի՝ ամէն քրիստոնեայ, կղերական եւ աշխարհական, կրօնական նիւթոյ մէջ, անոր չէ Թէ միայն յարգութիւն, հապա հնազանդութիւն ծանրակէս պարտակա՞ն է Թէ չէ։*

*Ա՛հա ստոյգ է՝ Թէ որչափ ծանր*

եւ դժպհի կը հնչէ մեր եղբարցը՝ սա մեր լեզուն ։ Այո՛, հինցած ունակութեամբ մը ամէնքը դաշնաւոր են աս վարդապետութեան դէմ, երբ որ խնդիրը դրական գործողութեան մը վրայ է․ բայց որչափ կարծիքները՝ հմտութեան եւ երկիւղածութեան աստիճաններուն համեմատ կը բաժնուին Իջմիածնական եկեղեցւոյն մէջ, երբ խնդիրը պարզապէս խօսքի սահմանին մէջ կը մնայ ։

Ահաւասիկ անոնց գլխաւորները ։

1․ Ոմանք միշտ «տապարն առ արմին» պատրաստ ունենալով՝ շուտով խնդիրը կը լուծեն կամ կը խզեն, երբոր մեր վերոյիշեալ վարդապետութեան մէջ ուրիշ բան չեն գտներ, բայց եթէ զուտ մարդկային դրութիւն եւ զուտ մարդկային նպատակ ։ Ի՛նչ դիւրին ։

2․ Ուրիշ խումբ մը՝ որն որ կրնայ տիրող ըսուիլ, վերոյիշեալ վարդապետութեան մէկ կէսին տեղի կու տայ, այս ինքն կ'ընդունի՝ որ Պետրոս մէկալ առաքելոցմէ վեր եւ Հռոմայ եպիսկոպոսը մէկալ եպիսկոպոսներէն վեր գերագոյն գլխաւորութիւն ունի, ըստ մեծին

առաքելածայն եւ ըստ մասին եկեղեցական օրինօք. եւ ինչ որ անկէ աւելի է, Նորդինայն կը սեպէ, կարծելով թէ այսչափով՝ թէ Ս. Գրոց պատգամները եւ թէ՝ աւանդութեան խօսքերը գոհ կ'ընէ :

3. Մեր օրերը ուրիշ փոքր խումբ մը՝ աւելի հմուտ եւ աւելի երկիւղած, առաջ անցնելով բովանդակ վերոյիշեալ կաթողիկէ վարդապետութիւնը իբրեւ ծայրէ ծայր առաքելածայն (այս ինքն ի Քրիստոսէ սահմանուած) դրութիւն մը կ'ընդունի : Բայց գործադրութեան գալով՝ դարձեալ մի եւ նոյն գոց դրան առջեւը կ'ելլենք. վասն զի՝ ինչպէս կ'ըսեն, Առաքելական գահը Հայաստանեայց եկեղեցւոյ անկախութիւն տուած է՝ նոյնն իրմէ ազատ հանելով. արտօնութիւն մը՝ զորն որ նոյն գահը, թէ որ հիմա ետ առնուլ ուզէ, ալ կարող չէ : Այսպէս՝ խիղճերը կը հանդարտին թէ վերոյիշեալ գլխաւորութեան վարդապետութիւնը ծայրէ ծայր ընդունելով եւ թէ՛ գործնական դժուարութենէն դերծ ըլլալով : Ահաւասիկ կարծիք մը՝

որուն պտղը իր մէջն է, այս ինքն սա հաստատութիւնը՝ որ կարելի կը սեպէ՝ թէ Արարչային հաճոյքով փոխուի վաւերաբար ան գոյութիւնը՝ զոր որ ինքն իսկ իբրեւ աստու–ածային կ'ընդունի ։

Կաթուղիկէ եկեղեցւոյ թէ արեւմտեան թէ արեւելեան, թէ՛ Հարց, թէ՛ ժողովոց, եւ միաձայնաբար թէ՛ արեւմուտքէն եւ թէ՛ արեւելքէն գումարուած տիեզերական ժողովոց վարդապետութիւնը սա է ։

« Սուրբ Հռոմէական եկեղեցին բաղանդակ ընդհանրական եկեղեցւոյ վըրայ գերագոյն ու լիակատար գլխաւորութիւն եւ իշխանութիւն ունի ։

« Ծնօղու–Բեանք եւ միաձայնաբար խոնարհու–Բեանք կը խոստովանին նոյն հռոմէական եկեղեցին որ սա գլխաւորութիւնը՝ իշխանութեան լրութեամբ մէկտեղ՝ նոյն իսկ ի Տեառնէ տուած է յանձին երանելի Պետրոսի առաքելոյ իշխանին կամ գլխոյն՝ որուն յաջորդն է Հռոմայ քահանայապետը ։

« Եւ որովհետեւ սուրբ Հռոմէական եկեղեցին ուրիշ ամէն եկեղեցիներէն

ունելէ ճշմարիտ հաւատքի պաշտպան ըլլալու պարտականութիւն ունի, անոր համար՝ երբոր հաւատքի վրայ խնդիրներ կ'ելլեն, աս խնդիրները՝ պէտք է որ իրեն դատաստանաւը կամ վճռոյն որոշուին :

« Աս սուրբ Հռոմէական եկեղեցւոյն կարող է բողոքելու՝ եկեղեցական ատենի վերաբերեալ նիւթերու վրայօք՝ որ եւ իցէ ամբաստանեալ, ու ամէն եկեղեցական քննութեան վերաբերեալ դատերուն մէջ՝ կրնայ անոր դատաստանին դիմուիլ :

« Նոյն Հռոմէական եկեղեցւոյն իշխանութեան տակն են ամէն եկեղեցիները ու անոր հնազանդութիւն եւ յարգութիւն կ'ընծայեն : Իսկ Հռոմէական եկեղեցւոյն քով իշխանութեան լրութիւնն այնպէս կայ՝ որ զուրիշ եկեղեցիներն իրեն ունեցած հոգացողութեան պաշտօնին մասնակից կ'ընէ : Նոյն Հռոմէական եկեղեցին աս եկեղեցիներէն շատերը՝ մանաւանդ պատրիարքական եկեղեցիները զանազան արտօնութիւններով պատուեց, բայց միշտ իրեն առաւելութիւնները՝ թէ տիեզերական ժողովոց

մէջ եւ՝ թէ ուրիշ քանի մը բաներու մէջ՝ պահելով»։

Ասանկ ընդունեցաւ, դաւանեցաւ եւ ստորագրեց Յունաց եկեղեցին իրենց կայսերովը մէկտեղ՝ Երկրորդ Լուգդունեան տիեզերական ժողովոյն մէջ (1274)։

Ուրիշ բան չ՚ըներ բայց եթէ նոյները համառօտ կերպով կը կրկնէ Փլորենտեան տիեզերական ժողովը, երբ որ կ՚ըսէ.

«Կը սահմանենք՝ որ սուրբ Առաքելական աթոռն եւ Հռոմայ քահանայապետը բոլոր տիեզերաց վրայ Գլխաւորութիւն ունի եւ թէ ինքը Հռոմայ քահանայապետը երանելի Պետրոսի առաքելոց գլխաւորին յաջորդն է ու Քրիստոսի ճշմարիտ փոխանորդ, բովանդակ եկեղեցւոյ Գլուխ ու ամէն քրիստոնէից հայր եւ վարդապետ, եւ թէ իրեն՝ յանձին երանելւոյն Պետրոսի՝ ի Տեառնէ մերմէ Յիսուսէ Քրիստոսէ լիակատար իշխանութիւն տրուած է՝ ընդհանուր եկեղեցին արածելու, ուղղելու եւ կառավարելու, ինչպէս որ տիեզերական ժողո-

վաց գործքերուն ու սրբազան կանոննե-
րուն մէջն ալ կայ ։»

Այսանկ Փլորենտեան ժողովոյն վճի-
ռը՝ զոր որ Յոյնք իրենց Պատրիարքովը
կղերովը ու կայսերովը ընդունեցան,
դաւանեցան ու ստորագրեցին, եւ իրենց
ինքնագիր ստորագրութիւնները կեցած
են։ Անոնց հաւանեցան, եւ նոյներն ըն-
դունեցան եւ ստորագրեցին Հայոց կող-
մանէ խաւրուած պատգամաւորներն ալ ։

Արեւելք ասոնցմով նոր բան մը չը-
րաւ ։ Ինչ որ արդէն արեւելեան ժո-
ղովներով, ի մասնաւորի՝ Սարդիկեայ
ժողովոյն, երրորդ ու չորրորդ արեւե-
լեան տիեզերական ժողովներուն մէջ բո-
լոր քրիստոնեայ տիեզերքը ընդունած էին
Լուգդունեան ու Փլորենտեան ժողով-
ներով կրկնուեցաւ ։

Եփեսոսի տիեզերական ժողովոյն
մէջն է՝ որ այսանկ կը խօսուի ։

« Ամենուն մէկը չի տարակուսիր ու
բոլոր դարեր խոստովանած են՝ որ սուրբ
Պետրոս առաքելոց իշխանը, հաւատոյ
սիւնն ու եկեղեցւոյ հիմը ի Տեառնէ
ընդունած է արքայութեան բանալիքներ

րը եւ մեղքերը կապելու եւ արձակելու իշխանութիւնը։ Անիկա միշտ կենդանի է իրեն յաջորդներուն վրայ եւ ինքն է՝ որ դատաստան կ՚ընէ անոնց ձեռքովը։ (Ֆաղով. Եփես. Գործ Գ.։)

Ի՞նչ աւելի որոշ, ի՞նչ աւելի ճիշդ դաւանութիւն այս նիւթիս մէջ կրնար ըլլալ՝ քան զոր չորրորդ արեւելեան տիեզերական ժողովոյն Հայրքը՝ Հռոմայ հայրապետին կու տան՝ երբ որ կ՚ըսեն.

« Դուն յանձին Պետրոսի մեր Թարգմանը դրուած ըլլալով՝ անոր հաւատքին շարունակութիւնը մինչեւ մեզի կը հասցընես՝ ինչպէս որ Տէրն ալ սահմանած էր։ Անոր համար՝ զքեզ առաջնորդ գընելով ճշմարտութիւնը հաւատացելոց ծանուցինք, չէ թէ առանձնական մեկնութեամբ մը, հապա միաբան հաւանութեամբ։ Թէ որ երկու կամ երեք հոգի Քրիստոսի անուամբը միաբանելու ըլլան Քրիստոս անոնց մէջն է, ի՞նչ օգնութիւն ըրած պիտ՚որ ըլլայ իր 520 պաշտօնեաներուն։ Ինչպէս որ գլուխն անդամներուն գլխաւորութիւն եւ առաջնորդութիւն կ՚ընէ, ասանկ ալ քու տե-

ղապահններէդ առաջնորդուեցանք։ Ուստի կ'աղաչենք՝ որ մեր որոշումը քու վճիռներովդ պատուես. եւ որովհետեւ մենք Գլխոյդ հետ միաբան եղանք. թող քու բարձրութիւնդ ալ ան բանը կատարէ՝ զոր որ օրթոտոքս կը վայլէ որ ընես. Դիոսկորոս անոր դէմ մոլեգնեցաւ, որուն որ Փրկիչը այգւոյն հոգը յանձնեց, այս ինքն՝ քու առաքելական սրբութեանըդ դէմ։»

Լսենք Հորմիզդ Հռոմայ հայրապետին դաւանութիւնը՝ որուն բոլոր արեւելեան եպիսկոպոսները, Յուստինիանոս կայսրը, Կոստանդինուպոլսոյ պատրիարքները՝ Եպիփան, Յովհաննէս ու Մեննաս եւ վերջապէս վեցերորդ տիեզերական (կամ երրորդ Կոստանդինուպոլսոյ) ժողովոյն թէ՛ յոյն եւ թէ՛ հռոմայեցի Հարքն ընդունեցան ու ստորագրեցին։

« Առաջին փրկութիւնն է՝ ուղիղ հաւատոյ կանոնը պահել ու Հարց Սահմանադրութիւններէն ամենեւին չխոտորիլ։ Որովհետեւ չի կրնար Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի խօսքը պարապի

եղեր՝ որ կ'ըսէ. Դու ես վէմ եւ ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ եւ դրունք դժոխոց զնա մի յաղթահարեսցեն։ Այս խօսքերը՝ գործքերով ալ հաստատուեցան, որովհետեւ Հռոմայ առաքելական գահուն վրայ միշտ անարատ մնաց կրօնը։ . . . Ուստի, ինչպէս ըսինք, Հռոմայ առաքելական աթոռոյն հետեւելով ու անոր ամէն սահմանադրութիւնները դաւանելով՝ կը յուսամ որ ձեզի հետ մէկտեղ ան հաղորդութեան մէջ ըլլալու արժանի ըլլամ, ան հաղորդութեան՝ զորն որ կը քարոզէ Հռոմայ առաքելական աթոռը՝ որուն վրայ կեցած է քրիստոնէական կրօնին անարատ ու ճշմարիտ հաստատութիւնը»։

« Թէպէտ բոլոր երկրիս վրայ, կ'ըսէ 494ին Գեղասիոսի ատեն Հռոմայ ժողովը, ուղղափառ եկեղեցիները Քրիստոսի մէկ առագաստն է, բայց սուրբ հռոմէական, կաթուղիկէ եւ առաքելական եկեղեցին չէ թէ սինհոդոսական սահմանադրութիւններով ուրիշ եկեղեցիներէն վեր դասուած է, հապա Տեառն մերոյ ու Փրկչին աւետարանա-

կան խօսքովը. գլխաւորութիւնն ընդունեցաւ. Դու ես վէմ եւ ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ եւ դրունք դժոխոց զնա մի յաղթահարեսցեն: Ուստի առաջին Պետրոսի առաքելոյ աթոռը՝ հռոմէական եկեղեցին է՝ որ արմատ մը, խորշ մը կամ ասոր նման բան մը չունի :»

Անոր համար իրաւամբք Տրիդենտեան դաւանութիւնն ամէն հաւատացեալներէ կը պահանջէ՝ որ խոստովանին.

« Կ'ընդունիմ՝ որ կաթուղիկէ եւ առաքելական հռոմէական եկեղեցին ամէն եկեղեցիներուն մայրն ու վարդապետն է, ու Հռոմայ քահանայապետին՝ որն որ երանելի Պետրոսի առաքելոց գլխաւորին յաջորդն ու Յիսուսի Քրիստոսի փոխանորդն է, ճշմարիտ հնազանդութիւն կը խոստանամ ու կ'երդնում*» :

Զկարծենք՝ որ կաթուղիկէ վարդապետութիւնը Հռոմայ եպիսկոպոսին

*Պիոսի Դ. դաւանութիւնը՝ ըստ վճռոյ Տրիդենտեան տիեզերական ժողովոյն, Նիստ 24, գլ. 12. ու Նիստ 25, գլ. 2.

Պետրոսի յաջորդ ըլլալը սորվեցըներու-տեսնեն՝ մոռցած ըլլայ որ ուրիշ եպիսկոպոսունք ալ առաքելոց յաջորդ են, կամ թէ Քրիստոսի աշակերտաց մէջ Պետրոսի անանկ անդրանկութեան իրաւունք մը տրուած սեպէ՝ որ ուրիշներուն անենեւին․ օրհնութիւն մը․ պահուած չըլլայ *։

Զէ․ կաթուղիկէ վարդապետութիւնը հօս ամէն մէկուն իւրը տալ գիտէ։

Հաւատարապէս հաւատոյ ճշմարտութիւն է՝ ինչպէս Հռոմայ եպիսկոպոսին Պետրոսի առաքելոյ յաջորդ, նոյնպէս բոլոր եպիսկոպոսաց առաքելոց յաջորդ ըլլալը։ (Ժող․ Տրիդ․)

Իրաւ է՝ Քրիստոս Տէրն մեր Յովհաննու որդի Սիմոնին՝ որն որ երկոտասանից մէջէն միայն ինք անոր աստուածութիւնը նախ խոստովանած էր, ըսաւ․ « Սակայն Հա՛յրս քեզի յայտնեց,
» ես ալ քեզի կ'ըսեմ՝ որ դուն ես վէմ,
» ու այդ վիմիդ վրայ պիտ'որ իմ եկե-
» ղեցիս շինեմ, ու դժոխոց դռներն ա-
» նոր պիտ'որ չկրնան յաղթել, եւ եր-

*Ծննդ․ իէ․ 56․

» կնից արքայութեան բանալիքները քեզի՛ » պիտ'որ տամ. ինչ որ երկրի վրայ կը » կապես, երկինքը պիտ'որ կապուի, » ինչ որ երկրի վրայ կ'արձակես, եր- » կինքը պիտ'որ արձակուի ». Մատթ. ԺԶ: Այսպէս յարութենէն յառաջ: Իսկ յարութենէն ետքը՝ երբ որ ապահովութիւն առաւ՝ թէ նոյն Սիմոն Պետրոս Յովհաննու որդին ուրիշ առաքեալներէն աւելի զինքը կը սիրէ, ըսաւ անոր. « Արածէ իմ գառինքս, արածէ իմ ոչխարներս »:

Բայց գլխուն նոյնպէս տիեզերական ժողովներն որ Քրիստոս Տէրն մեր ան ամէնը մինակ Պետրոսի ընելէն ետքը՝ բոլոր Դասուն ալ ըսած է. « Առէք Հոգի սուրբ, որոնց որ մեղքերը կը թողուք, թողուած ըլլայ, եւ որոնց « մեղքերն որ կը բռնէք, բռնուի »: Դարձեալ՝ « Ամէն իշխանութիւն եր- « կինքն ու երկրի վրայ ինծի տրուեցաւ, « ինչպէս Հայր զիս առաքեց, ես ալ ըզ- « ձեզ կ'առաքեմ, գացէք, աշակերտե- « ցէք ամէն ազգերը, մկրտեցէք զա- « նոնք, սորվեցուցէք անոնց ամէն բան՝

«Ինչ որ ես ձեզի պատուիրեցի, և ես ձե-
«զի հետ եմ ամէն ատեն մինչուկ աշ-
«խարհիս կատարածը*»։

Հոս է բովանդակ խնդրոյն ծխնին, այս ինքն չէ թէ մի, հապա նըէն տառօ-ճն, մասնաւոր եւ ընդհանուր, զանազանել եւ միանգամայն չբաժնել։ Աս է կաթուղիկէ վարդապետութեան ա-ռանցքը՝ նըէն տառօճնոց նղողճյոռբխնը, որով ոչ անանկ կ՚ամփոփէ՝ որ ամէն բան մինակ Պետրոս ունենայ, եւ ոչ այնչափ կը տարածէ՝ որ Պետրոս դադրի առան-

---

*Ոռոգինէս՝ որ բոլոր արեւելեան Հարց մէջ սուրբ գրոց մեկնութեան հայրն է, կ՚ը-սէ, «Ինչ որ ի սկզբան Պետրոսի տրուեցաւ, այնպէս մը կ՚երեւայ՝ որ ամենուն տրուած ըլլայ։ Բայց որովհետեւ Փրկիչը Պետրոսի ա-ւելի գերազանց բան մը տալ կ՚ուզէր, աս գերազանց բանն անոր առանձին տուաւ՝ ը-սելով Քեզի պիտ՚որ տամ երկնից արքայու-թեան բանալիքները, ինչ որ կապես երկրի վը-րայ։ . . Թէ որ աւետարանական բնագիրը դի-տենք, իրաւ է՝ կը գտնենք որ ետքի խօսքերը Պետրոսէն ուրիշ առաքելոց ալ ըսուած են, բայց առջի խօսքերը՝ որոնք միայն Պետրոսին ըսուած են, մեծ ընդարձակութիւն մը եւ մեծ գերազանցութիւն մը կը պարունակեն։»

ձին բան մ՚ունենալէն ։ Այս հիման վրայ է՝ որ կաթուղիկէ վարդապետութիւնը Քրիստոսի Տեառն մերոյ միայն Պետրոսի տուածը միայն Պետրոսի յաջորդին , բոլոր առաքելոց ալ հասարակ տուածը բոլոր անոնց յաջորդներուն ալ հասարակ կու տայ ։ Ուստի չի տար եպիսկոպոսաց այնչափ՝ որ առաքեալներէն աւելի ունենան , յաջորդները նախորդներէն աւելի , վասն զի եւ ոչ ալ առաքելոց այնչափ կու տայ՝ որ առաքելոց գլխոյն , Սիմոն Պետրոսին հետ հաւասար ունենան ։

Այսպէս կ՚իմանան սուրբ Հարք , բոլոր ժամանակներ , բոլոր երկիրներ նոյնը կը խօսին . ուստի աւանդութիւնը, որն որ եկեղեցական վարդապետութեան երկու աղբիւրներէն մէկն է , եւ սուրբ Գրոց իմաստը որոշելու կանոնն է, ասանկ կը սորվեցընէ ։ Մեր Հարց վըկայութիւնները քիչ մը ետքը կը տեսնենք ։

Քրիստոսի Տեառն մերոյ եկեղեցւոյն նկատմամբ ամէն Առաքեալք՝ հիմ են , բայց Պետրոս սկզբնական հիմ է , ասոնց հիմ ըլլալը անոնց Պետրոսի չէ

վէմ եղած են ամէն Առաքեալք, բայց Պետրոս՝ նախապետական վէմ է, առանց Պետրոսի՝ մէկալ Առաքեալք վէմ չեն. Իշխան, պետ, գլուխ, գլխաւոր էր Առաքելոցմէ ամէն մէկը, բայց առանց Պետրոսի՝ որն որ ծայրագոյն իշխան, պետ, գլուխ դրուած էր, ոչ իշխան եւ ոչ գլուխ էին:

Նոյն յարաբերութիւնն է երկու կողմանց յաջորդներուն վրայ՝ « որոնք, ինչ-
« պէս մեծն Պօսիւէ կ'ըսէ, հովիւ են՝
» նկատմամբ ժողովրդեան, եւ հօտ՝ նկատ-
« մամբ առ Պետրոս », ուստի (կ'աւելցընենք) հովիւ չեն՝ նկատմամբ ժողովրդեան, երբ որ հօտ չեն նկատմամբ առ Պետրոս:

Միտ դնենք Քրիստոսի Տեառն մերոյ թէ խօսքերուն եւ թէ գործքերուն: Առաքելոց՝ առանց Պետրոսի 'իշխանութիւն մը չտրուեցաւ, բայց Պետրոսի՝ առանց առաքելոց՝ իշխանութեան գլխաւորութիւն տրուեցաւ: Վասն զի Պետրոսի՝ առանց ուրիշներուն՝ ըսուեցաւ « Զոր կապեսցես » . . . , բայց ուրիշ-

ներուն՝ առանց Պետրոսի չըսուեցաւ « Զոր կապիցէք » եւայլն ։ Ուստի Պետրոսի անձնական իշխանութիւն մը տրուած է՝ որ ինք առանց ուրիշներուն կրնայ իրեն տրուած իշխանութեան առաւելութիւնը գործածել, բայց ուրիշներն առանց անոր իրենցը չեն կրնար ։

Արդ եպիսկոպոսունք՝ թէ որ առաքելոց յաջորդներն են, առաքելոց չէ թէ միայն իշխանութեանը յաջորդ պէտ՝ որ ըլլան, հապա անոնց իշխանութեանը՝ Պետրոսի եւ անոր յաջորդին գլխաւոր իշխանութեանը հետ ունեցած կապին ։ ստորակարգութեանն ու կախմանն ալ յաջորդ պէտ՝ որ ըլլան ։

Եթէ սանկ չըլլար, ան ատեն առաքելոց յաջորդները, եպիսկոպոսունք, առաքեալներէն աւելի կ'ունենային, ու առաքեալներն իրենց տեղը եպիսկոպոսներ դնելու ատեն՝ ան բանը անոնց տուած պէտ՝ որ ըլլային՝ զորն որ իրենք չունեցան ։

Պետրոս՝ որովհետեւ մէջ մը մէկանոնց պէս առաքեալ էր ու մէջ մ'ալ մէկանոնցմէ՝ վեր առաքելոց գլուխ, ի-

րեն իշխանութիւնը առ նրչէն յատկու-
թիւնն ունէր՝ որ մէկ կողմանէ մէկալ ա-
ռաքելոց իշխանութեանը հաւասար, ու
մէկալ կողմանէ անոնց իշխանութենէն
վեր էր ։

Այսինքն ալ՝ մէկալ առաքեալք որով-
հետեւ մէյ մը Պետրոսի պէս առաքելոց
գլուխ չէին, իրենց իշխանութիւնն առ
նրչէն յատկութիւնն ունէր՝ որ մէկ կող-
մանէ Պետրոսի իշխանութեանը հաւա-
սար, ու մէկալ կողմանէ Պետրոսի իշ-
խանութենէն վար էր ։

Այսինքն՝ Պետրոս մէկ կողմանէ մէ-
կալ առաքելոց եղբայր, ու մէկալ կող-
մանէ՝ միւս առաքելոց հայրն էր ։ Նոյն-
պէս միւս առաքեալները մէկ կողմանէ
Պետրոսի եղբայրներ ու մէկալ կողմանէ
Պետրոսի որդիք էին ։

Ուստի եթէ եպիսկոպոսներն առա-
քելոց յաջորդներն են, չի կրնար ըլլալ՝
որ իրենց իշխանութիւնն՝ առաքելոց ու-
նեցած իշխանութեան ան նրչէն յատկու-
թիւնը չունենայ ։ Եպիսկոպոս մը կամ
առ կրկին յատկութեամբ իշխանութիւն
ունի եւ կամ ամենեւին չունի ։ Առաքե-

լոց յաջորդը ան ատեն միայն իշխանութիւն ունէր՝ երբոր Պետրոսի յաջորդքին հայրապետութիւն կ'ունենային։ Չի կրնար անոր եղբայր, եպիսկոպոսակից և իշխանակից ըլլալ՝ առանց անոր որդի ու հպատակ միանգամայն ըլլալու։ Ի Քրիստոսէ Տեառնէ մերմէ ան իշխանութիւնն ալ հայրապետութեան հետ կապուած տրուած է, և քանի որ Աստուած զուգեց, մարդ չի կրնար զատել։

Եպիսկոպոսունք առաքելոց յաջորդներն են։ Բայց ի՞նչ էին առաքեալք։ Առաքեալք բոլորովին հաւասար իշխանութիւն ունեցող իրարմէ անկախ անձանց բազմութիւն մը չէին, հապա Քրիստոսի Տեառն մերոյ կամօքը մէկ ամբողջ առաքելական դաս մը կը կազմէին, որուն միութեան կեդրոնն Պետրոս դրուած էր։ Ասանկ կազմութիւն ունեցող առաքելոց դասուն տուաւ Քրիստոս ինչ իշխանութիւն կամ պաշտօն որ առհասարակ տուաւ։

Ասանկ կազմութիւն ունեցող առաքելոց դասուն միայն ասանկ կազմութիւն ունեցող եպիսկոպոսաց դասը կրնայ յա-

Ջողոպեց։ Առաքելոց դասուն կազմութիւնն ալ էր՝ որ մէջերնին Պետրոս մը իբրեւ գլուխ՝ ամբողջանց վրայ, իբրեւ կեդրոն՝ ճառագայթից մէջտեղը՝ գըտնուէր։

Ուրեմն սա եպիսկոպոսները՝ որոնք Պետրոսի յաջորդն իրենց հետ ունին, միասին անոնք առաքելոց դասուն յաջորդող եպիսկոպոսաց դասն են։ Այսան դի եպիսկոպոսաց դասն առանց եպիսկոպոսաց դաս է՝ որ այս դասուն մէջ Պետրոսի յաջորդ կայ։ Գաւառ մը կամ երկիր մը եպիսկոպոսունք ըլլան չափ՝ որչափ կ՚ուզեն. ցորչափ որ Պետրոսի յաջորդն իրենց հետ չէ, Պետրոս մէջերնին ունեցող առաքելոց դասուն ոչ յաջորդութիւնն եւ ոչ իշխանութիւնն ունին։

Ամենեւին առաքեալ մը չէր կրնար ուրիշ կերպով եպիսկոպոս ընել (օրինակի աղագաւ՝ զՏիտոս, զՏիմոթէոս, զՓիլիմոն), բայց եթէ ան կապակցութեան մէջ որուն մէջ ինք կը գըտնուէր։ Ինք Պետրոսի հետ կապակցութեան մէջ էր., իրեն գրած եպիսկո-

պոսն ալ առ կապակցութեններն դուրս չէր կրնար ըլլալ։ Ամէն եպիսկոպոս առջինէն մինչուկ վերջին ձեռնադրուածը՝ անով օրինաւոր կամ իշխանութիւն ունեցող եպիսկոպոս է՝ որ Պետրոսի կամ անոր յաջորդին նկատմամբ ստորակարգութեան մէջ է։

Անոր համար՝ շատ պարապ փորձ մը կ'ըլլայ թէ որ եպիսկոպոս մը առաքելոց գլխաւորին յաջորդէն ինք զինք անկախ ընելով ըսէ թէ իր եպիսկոպոսական իշխանութիւնը ուրիշ առաքելոյ մը (Յովհաննու կամ Թադէի) ձեռնադրութեններն յառաջ կու գայ, իբրեւ թէ առաքեալ մը կարող եղած ըլլայ՝ Պետրոսի միութեններն դուրս եպիսկոպոս մը դնել, կամ, Սուրբ Կիպրիանոսի ըսածին պէս՝ Քրիստոսի Տեառն մերոյ սահմանադրութիւնք փոխելով աստուածային եկեղեցին՝ մարդկային ընել։

Աս այսպէս միայն ան ատեն կարելի էր՝ թէ որ Քրիստոս Տէրն մեր առաքելոց մէկուն առաքելական գահէն դուրս եւ Պետրոսէն անկախ իշխանութիւն կամ պաշտօն տուած ըլլար, որպէս զի

—չէն հիման վրայ ու—չէն եկեղեցի մը կանգնուի ։

Յորչափ որ աս ասանկ չէ, չէ թէ պարզ Առաքեալ մը, հապա ինք Պետրոս կամ իրեն յաջորդն ալ, թէ որ ասանկ ուզէ, չի կրնար այնպիսի եպիսկոպոս մը դնել՝ որն որ իրեն միութենէն դուրս, իրմէ անկախ ըլլայ ։

Քաղաքային կառավարութեան մէջ՝ շատ անգամ բռնութիւնը, երբ որ կը տեւէ, կամաց կամաց իրաւունք կը ձեւանայ. յափշտակութիւնը, եթէ իր աթոռը կարող ըլլայ հաստատուն բռնել, օրինաւոր կ'ըլլայ ։ Քրիստոսի Տեառն մերոյ տէրութեանը մէջ ասանկ չէ. եկեղեցական իշխանութեան յափշտակութիւնը՝ հազարաւոր տարիներ ետքը դարձեալ յափշտակութիւն է եւ ոչինչ է. մինչուկ որ (բացայայտ կամ լռելեայն) օրինաւոր ընդունելութիւն կամ հաստատութիւն ի վերուստ չգայ ։ Որովհետեւ եկեղեցական իշխանութիւնը՝ ոչ կրնայ երբեք ժառանգութիւն նախորդէն յաջորդին թող տրուիլ եւ ոչ վարէն այս ինքն հաւատացելոց հասարակու-

թենէն առնել:

Ոչ ընտրութիւնն եւ ոչ ձեռնադրութիւնն է՝ որ դատողական կամ հովուական իշխանութիւն կու տայ: Այնպէս կղերը եկեղեցական օրինաց համաձայն եպիսկոպոս նաեւ Հռոմայ եպիսկոպոս ընտրել, բայց եպիսկոպոսը կամ Հռոմայ եպիսկոպոսը իր իշխանութիւնը յառաջածայէն Էրբանոց կ՚ունենայ: Ձեռնադրութիւնը, որ եւ իցէ վերագոյն իշխանութենէ անկախ, նախորդներէն յաջորդներուն կը հաղորդուի, բայց կառավարութեան իշխանութիւնը՝ նախորդները չեն՝ որ յաջորդներուն կու տան: Այնպէս ինչպէս Պետրոս կամ իրեն յաջորդքը՝ նոյնպէս մէկալ առաքեալք եւ իրենց յաջորդն իրենց մահուընէ ետքը իրենց ձեռնադրութիւնն ունեցող անձինք թողուլ, բայց իրենց իշխանութիւնը չեն կրնար մէկուն թողուլ. վասն զի պաշտօնաւոր միայն՝ չէ թէ տէր ըլլալով (Բ. Կորնթ. Ե. 20), աս իշխանութիւնն իրենց անձէն անդին երբեք չեն կրնար անցընել: Ուստի՝ ինչ հովուական իշխանութիւն՝ որ իրենց յաջորդներն ունեցած

են եւ պիտի՛ որ ունենան , անմիջական կերպով Քրիստոսի Տեառն մերոյ սահմանադրութենէն կամ առաքումէն կ՚առնուն եւ հարկաւ ան չափով եւ համեմատութեան մէջ միայն կ՚առնուն , որ չափով եւ համեմատութեան մէջ Պետրոս եւ մէկալ Առաքեալք առին ։ Այսպէս աստուածապէս հոգացուած է՝ որ մարդիկ կարող չըլլան անանկ ընել՝ որ երկնաւոր իմաստութեամբ կարգադրըւած յաւիտենական սահմանադրութիւնը երկրաւոր հնարագիտութեամբ ի դերեւ ելլէ ։

Ուստի՝ աս Գլխաւորութեան վարդապետութեան մէջ գլխաւորաբար սըտադրութեան արժանի աս երկու կէտերն են ։

1. Ան ատեն եպիսկոպոսունք իշխանութիւն ունին Տէրունական հօտին Ջէճոռը կառավարելու , երբոր անկախ չեն Պետրոսի յաջորդէն՝ որն որ բոլոր Հօտին վրայ գերագոյն իշխանութիւն ունի ։

2. Ան ատեն ստոյգ է՝ որ եպիսկոպոսունք անխախտ կը վարդապետեն , երբ որ կը միաբանին Պետրոսի յաջոր-

դին՝ որուն կը վերաբերի Գլխաւորաճառ՝ վարդապետութեան պաշտօնը ։

Աս Գլխաւորութեան վարդապետութեան տրամաչափապէս հակառակն է անջատութեան դրութիւնը՝ որուն վրայ կ՚ը դառնայ բովանդակ ։

## Զ.

### Էջմ. ծնական եկեղեցւոյ տիեզերաժողովներուն վարդապետութիւնը ։

Ի՞նչ կ՚ըսէ սոր Հայոց Էջմիածնական եկեղեցին, ա՛ն եկեղեցին՝ որ կը դաւանի թէ տիեզերական ժողով մը չի կրնար սխալիլ ։

Նախ լսենք ինչ որ 1820ին համբաւաւոր սինհոդոսը կը վճռէ ։

« Սուրբ առաքեալն Պետրոս, կ՚ըսէ « սինհոդոսական դաւանութիւնը, է « գլուխ առաքելոց սրբոց եւ վէմ՝ հաս- « տատութեան ամենայն եկեղեցեաց, որ- « պէս երգեմք ։) || Որ գերագոյն ընտ- « րելոց առաքելոցն դասուց անուանե- « ցեր լինել զերանելին զՊետրոս, գլուխ

«սուրբ հաւատոյ հիմն եկեղեցւոյ ||
«(Տարական ԺԹ)։ Եւ Ս. Լուսաւո-
«րիչն մեր ասէ. || Քրիստոսադաւանք եւ
«խաչակիր առաքելոյն, որոց գլխաւորն
«Պետրոս. || (Ա.գամ. 303); եւ թէ
«||Արար զնա վէմ հաստատութեան ա-
«մենայն եկեղեցեաց. || (Ա.գամ 198)։ »

«Եւ որպէս իւրաքանչիւր առա-
«քեալք ունին ի Քրիստոսէ զիշխանու-
«թիւն առաքելական, նոյնպէս եւ ա-
«մենայն աթոռք՝ որք ունին զօրի-
«նաւոր յաջորդութիւն առաքելոց՝
«աստուածային իրաւամբք ունին զամե-
«նայն իշխանութիւն եւ զիրաւասութիւ-
«նըս առաքելոց ըստ իւրեանց կարգի
«եւ սահմանի։ » (էջ 28—30։)

Աս դաւանութիւնն առջի տեսութեամբ այնպիսի կերպարանք մ'ունի՝ որ կաթողիկէ ուղղափառ հաւատացեալ մը կրնայ անմիջապէս ստորագրել։

Որովհետեւ աս խօսքերուն առջի մասին մէջ կաթողիկէ վարդապետութեան սորվեցուցած գլխաւորութեան հիմունքը շատ խորունկ ու ինչպէս որ պէտք է՝ անանկ դրուած են. վասն զի աս

խօսքերուն համեմատ՝

1. Պետրոս առաքելոց ու առաքելոց դասուն կամ գնդին գլուխ, գլխաւոր ու գերագոյնն է:

2. Պետրոսի աս գլխաւորութիւնն ու գերագահութիւնը չէ թէ ի մարդկանէ, հապա ի Քրիստոսէ Տեառնէ մերմէ ընդունած է:

3. Պետրոսին աս գլխաւորութիւնն ու գերագահութիւնը կը նշանակէն Քրիստոսի Տեառն մերոյ խօսքերը. «Դու ես վէմ եւ ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ»:

4. Աս Քրիստոսի Տեառն մերոյ խօսքին մէջ ինք (Քրիստոսի աստուածութիւնը դաւանող) Պետրոսն է՝ որուն վրայ եկեղեցին շինուած է, չէ թէ Քրիստոսի աստուածութեան դաւանութիւնն ի վերացեալն:

5. Ուստի Պետրոս այն հիմն ու վէմն է՝ որուն վրայ բոլոր եկեղեցին ու անոր (ուստի նաեւ ուրիշ առաքեալներէն հիմնուած) մասնաւոր եկեղեցիները հաստատուած են, նոյն իսկ Քրիստոսի Տեառն մերոյ սահմանադրութեամբը:

6. Նոյնպէս ինք Քրիստոս է՝ որ հաւատոյ վարդապետութեան մէջ Պետրոսի գլխաւորութիւն տուած է։

Ասոնք բոլոր ամենայնի վերոյիշեալ դաւանութեան կտորին մէջն են։

Ի՞նչ կ'աւելցընէ նոյն դաւանութեան երկրորդ կտորը։

Կաթողիկեայ ուղղափառ հաւատացեալ մը աս երկրորդ կտորին խօսքերը վերի կտորին համեմատելով չի կրնար ուրիշ կերպ իմանալ՝ բայց եթէ ասանկ.

1. Ամէն առաքեալք ի Քրիստոսէ առաքելական իշխանութիւն առած են։

2. Աս առաքելոց իշխանութիւնը աստուածային իրաւամբք իրենց յաջորդներուն (այս ինքն եպիսկոպոսաց) կ'անցնի, ուստի հարկաւ Պետրոսի իշխանութիւնը՝ Պետրոսի յաջորդին, ու մէկալ առաքելոցը՝ մնացած եպիսկոպոսներուն կ'անցնի։

3. Աս առաքելոց յաջորդ եղողները միայն անոնք են՝ որոնք առաքելոց օրինաւոր յաջորդութիւնն ունին, այս ինքն՝ որոնք որ առաքելոց ունեցած իշխանութիւններն ունին. այս ինքն Պետրո-

ի՞նչ ճամբայ կը բռնեն Էջմիածնական եկեղեցւոյն քրիստոնէականները ։

Նոյն սիւնհոդոսական դաւանութեան ճամբուն վրայ յառաջ կը քալեն, ինչ որ Էջմիածնական եկեղեցին գործքով կը կատարէ՝ վարդապետութեամբ ալ հաստատելով ։ Անոնց ու վերոյիշեալ սիւնհոդոսական դաւանութեան մէջ եղած տարբերութիւնը բոլոր բովանդակ-ած է՝ որ անոնք ազատ համարձակ բացարձակապէս անկախ եկեղեցիներու վարդապետութիւն մը առջեւնին կը հանեն, որուն ազդեցութեանը վրայ սիւնհոդոսը դեռ ան ատենները ամօթխածութեամբ քող մը կը ձգէր ։

Ահաւասիկ աս ապացուցեմ քրիստոնէականներուն յատուկ խօսքերը ։

Հոգեւոր ժողովոյ վկայութեամբը հաստատուած 1858ին Կ. Պոլսոյ քրիստոնէական վարդապետութիւնը սանկ կը խօսի ։

« Հ. Եկեղեցւոյ գլուխն ո՞վ է ։

« Պ. Նոյն եկեղեցին հաստատողն
« է՝ որ է Յիսուս Քրիստոս որ աշխարհ-
« քէս ամբառնալէն ետքը իրեն փոխա-

« Նորա ձգեց տասպերտալները . սանց
« ալ յանձնորդ եղան հայրապետները՝ որ
« Քրիստոսի փոխանորդն ըլլալով եկե-
« ղեցւոյ գլուխ ալ են ։ » (էջ 27 ։)

(Հոս գրողը դեռ չէ սկսած՝ քե-
րականական ճշգրտութեամբ խօսելու ։ Քրի-
ստոսի փոխանորդներ ըլլալով եկե-
ղեցւոյ գլուխներ ալ են ., ինչպէս քիչ
մը վերը համարձակած է խօսելու ) ։

« Հ . Քրիստոս որ Աստուած ըլլա-
« լով անեղանակաբար է , ինչո՞ւ համար ի-
« րեն փոխանորդ եկեղեցւոյ գլուխ սահ-
« մանեց ։ (Փոխանակ ըսելու՝ փոխա-
նորդներ ու գլուխներ ) ։

« Պ . Որովհետեւ ինքը հիմա աշ-
« խարհի վրայ աչքի տեսնուելու
« կերպով ներկայ չէ , և եկեղե-
« ցին աչքի տակ ինկած տեսանելի
« սուրբ ընկերութիւն մը հաստատեց ,
« անոր համար անանկ սահմանեց՝ որ ա-
« նիկա տեսանելի գլուխներով կառա-
« վարուի միշտ ։ » (էջ 27 , 28 ։)

« Հ . Ո՞վ են սա գլուխները ։

« Պ . Հայաստանեայց սուրբ եկե-
« ղեցւոյն վրայ , Հայոց սրբազան կա-

«Թուղիկոսն է, Յունաց՝ իրենց Կոստան-
«դինուպօլսի պատրիարքը, Լատինա-
«ցւոց՝ Հռոմայ հայրապետը, և նմանա-
«պէս ամէն քրիստոնեայ ազգաց՝ իրենց
«կաթուղիկոսը»։ (էջ. 28։).

Ահա յառաջ նոյն տարւոյն հոգեւոր ժողովոյն վկայականովն ամրացած ու պատրիարքական հաւանութեամբ հաստատուած՝ ուսումնարանաց համար գրուած Վարդապետարանը դարձեալ նոյներն ազատ համարձակ կը սորվեցրնէ ։

«Հ. Ընդհանուր եկեղեցւոյ գլուխն
«ո՞վ է։

«Պ. Ընդհանուր եկեղեցւոյ գլուխն
է Քրիստոս. և ամենայն պատրիարքներն
«ու եպիսկոպոսները փոխանորդ են
«Քրիստոսի* ։

«Հ. Ինչո՞ւ համար Քրիստոս է ե-
«կեղեցւոյ գլուխը։

«Պ. Վասն զի ինքն է զեկեղեցին
«կառավարողը աներեւոյթ կերպով,
«իսկ Պատրիարքները և եպիսկոպոսնե-

* «Փոխանակ ըսելու «Քրիստոսի փոխանորդներն են».

«րը երբեք իրեն փոխանորդ՝* տեսա-
«նելի կերպով կը կառավարեն զեկե-
«ղեցին.: (Էջ 50, 51:)

«Հ. Առաքելոց մէջ մեծն ո՞վ էր:

«Պ. Քրիստոս Տէրն մեր չկամեցաւ
«որ Առաքելոց մէջ մեծ մը գտնուի՝ ու-
«րիշներուն հրամայող. բայց սուրբն
«Պետրոս այլ եւ այլ պատճառներով
«առաջին ի մէջ առաքելոց կամ գլխա-
«ւոր առաքեալ ըսուեցաւ.: (Էջ 34:)

«Հ. Եպիսկոպոսաց մէջ ամէնէն
«մեծն ո՞վ է:

«Պ. Ամենայն եկեղեցիք քրիստոնէ-
«ից իրենց մէյ մէկ գլխաւոր եպիսկո-
«պոս ունին, որ այն եկեղեցւոյն միւս ե-
«պիսկոպոսաց մէջ մեծն է եւ անոնց վրայ
«իրաւասութիւն (իշխանութիւն) ունի,
«ուստի եւ կ՚ըսուի Պատրիարք, կամ
«Պապ կամ Կաթուղիկոս, եւ իր մաս-
նաւոր եկեղեցւոյն գլուխն է.:

«Հ. Պատրիարքաց մէջ ամէնէն մե-
ծը կա՞յ թէ չէ:

«Պ. Պատրիարքները իշխանութեան
«ու աստիճանի կողմանէ իրարու հա-

---

*փոխանորդներ:

«ամէնքն ալ հաւասար են, ինչպէս որ
«առաքելոց առաքեալքը ալ հաւասար էին,
«եւ իւրաքանչիւրը նոյն իրաւասութիւնն
«ունի իրեն սեպհականեալ հօտին կամ
«հովուաց վրայ, բայց միայն արտաքին
«պատճառներով մէկը քան զմէկալը
«Նախապատիւ կրնան համարուիլ»։ (Էջ
50։)

«Պատրիարքաց մէջ նախապատու-
«թեան կողմանէ միշտ առաջին սեպ-
«ուած է Հռոմայ Պապը, իբրեւ յաջորդ
«առաքելոյն Պետրոսի։ Երբ որ Կոս-
«տանդինուպոլիս կայսերական մայրա-
«քաղաք եղաւ և երկրորդ Հռոմ անուա-
«նուեցաւ, անոր ալ Պատրիարքը երկ-
«րորդ սեպուեցաւ....։»

«Հ. Հայոց Կաթուղիկոսին իշխա-
«նութիւնը եւ նախապատուութիւնը
«ո՞րչափ է։

«Պ. Նախապատուութեան կողմանէ
«Պատրիարքաց մէջ վեցերորդն է. իշ-
«խանութիւնն ու աստիճանը՝ ամենայն
«հաւասար, ու Հայաստանեայց սուրբ
«եկեղեցւոյ՝ Բացարձակ-Գլուխ. անանկ որ
«իրեն է սեպհականեալ իրաւասութիւ-

«իշխանութիւնը հաւասար ամենայն ա-
«ռաքելոց Յիսուսէ Քրիստոսէ պարգեւ-
«եցաւ որպէս առաքելոց» (Յովհ. ԺԷ. 18)։ (էջ 210)։

«Ինչ որ Պետրոս առաքելոյն ըսաւ Մատթ. ԻԶ. 19, նոյնպէս միւս առաքեալներուն ալ խոստանալով ըսաւ Մատթ. ԻԸ. 18։ Ինչպէս Պետրոսի նոյնպէս ալ միւս առաքելոց խոստացաւ՝ որ հաւատացեալները յետոյ կարծիքի մէջ չիյնան, որ աս փականքը իշխանութեան կապելոյ եւ արձակելոյ միայն Պետրոսի առաքելոյն խոստացաւ տալու եւ միւս առաքեալները չունին աս իշխանութիւնը. վասն որոյ յառաջագոյն կը խոստանայ ամէն մէկուն եւ յետ յարութեան իւրոյ ամէնուն՝ հաւասար կը պարգեւէ Յովհ. Ի. 22 (էջ 222—223)»։

«Այսպէս ի լեառն Գալիլեայ ամենուն հաւասար պարգեւեց դատողական իշխանութիւնը, որով հաւատոյ խնդիրներուն մէջ պատահած վէճերը քննեն եւ դատեն եւ հարկաւոր վճիռը տան։ Մատթ. ԻԸ. 1»։

«Եւ եւս առ հասարակ ամենուն տուաւ հոգեւոր իշխանութիւնը՝ մեղաց թողութիւն տալու փոխանորդաբար իրեն կողմանէ՝ առաքելութեան խորհրդով։ Յովհ. Ի. 22., (էջ 218։)

«Ուրեմն ամէնքը ունեցան դերագոյն իշխանութիւն դատողութեան եւ իրաւասութեան եւ ամէնքը փոխանորդ Քրիստոսի անուանեցան։ (էջ 226։)

«Պետրոս սրբազան առաքեալը գըլուխ առաքելոց կ'անուանուի, չէ թէ միւս սրբազան առաքեալներէն աւելի իշխանութիւն մը եւ կամ դերագանց առաքելական շնորհք մը Յիսուս Քրիստոսէն ունենալով, այլ առաքելոց դասակարգութեանը գասագլուխ համարուելով եւ անոնց երկոտասան անուններուն սկզբնաթիւն ըլլալով՝ յատուկ պատիւ նախագահութեան առաքելոց մէջ ունեցաւ։ Մատթ. Ժ. 2. Գործ. Ա. 15. Գործ. Բ. 12։ (էջ 233—236)։»

«Ուրեմն ամէն հաւատացեալներն կը պարտաւորէն ամէն մէկ սրբազան առաքեալները, համապատիւ պաշտօն-

բարձ կը գիտնանք, անանց օրինաւոր յաջորդներն ու հարկաւ այնպէս պէտք ճանչնանք։ Ահա ասկից կը պատճառի հակառակութիւն»։ (էջ 213)։

Ուրեմն հոս է ան կէտը՝ ուր որ Կաթուղիկէ հռոմէական եկեղեցին ու Հայաստանեայց էջմիածնական եկեղեցին իբրեւ երկու բանակ իրարու դէմ կը կենան, հոս է՝ որ էջմիածնական եկեղեցին Ղովտայ պէս Աբրահամէն՝ որն որ ազգաց բազմաց հայր է, կը զատնուի՝ երթալու իր հովիւներովն ու ոչխարներովը Յորդանանէն անդին ուրիշ վտանգաւոր արօտ մը փնտռելու։

Ուստի էջմիածնական եկեղեցւոյ քրիստոնէականներուն նոյն եկեղեցւոյն գլխոյն վարդապետութեանը համեմատ՝ Քրիստոս Տէրն մեր իր եկեղեցւոյն սա հիմնական սկզբունքը որոշած է։ Այսինքն՝

1. Քրիստոս Տէրն մեր բոլոր եկեղեցւոյ վրայ ընդհանուր իշխան կամ գլուխ կամ մեծ մը իբրեւ փոխանորդ դրած չէ, վասն զի սա ընդհանուր իշխանը, գլուխը ու մեծն ինքն է, հապա մինակ

մասնաւոր փոխանորդներ ունի եկեղե-
ցւոյ այլ եւ այլ մասերուն մէջ։ Ուստի
եկեղեցւոյ մէջ մէկ աներեւոյթ գլուխ Քրի-
ստոս կայ ու շատ մը երեւելի գլուխներ։

2. Աս Քրիստոսի փոխանորդներն ու
եկեղեցւոյ երեւելի գլուխները ամէն ա-
ռաքելոց յաջորդները, այս ինքն՝ ամէն
եպիսկոպոսներն են, եւ ի մասնաւորի
Պատրիարքներն ու Կաթուղիկոսները։
Ուստի եկեղեցւոյ երեւելի գլուխներ ու
Քրիստոսի փոխանորդներ այնչափ կան՝
որչափ պատրիարքներ կամ կաթուղի-
կոսներ կան, որոնց թիւը, ինչպէս յայտ-
նի է, կրցաւ դարերով շատնալ, կրնայ
դարերով ալ քիչնալ։

3. Ասոնց իշխանութիւնը իրարու բո-
լորովին հաւասար է, ու ամէն մէկը իր
թեմին մէջ գերագոյն իշխան է, իրմէ
վեր իշխանութիւն մը չի ճանչնար եւ ոչ
ալ կարօտ է։ Ամէն մէկն իր թեմին մէջ
գերագոյն իշխանութեամբ հաւատոյ ու
կանոնական որոշումներ կ՚ընէ անբողո-
քելի կերպով։

4. Աս վարդապետութեան հիմն է
ամէն առաքեալներուն ի Քրիստոսէ հա-

դրութիւնը՝ չէ թէ միայն, ինչպէս ըննական է, կաթոլիկէ վարդապետութեան այնպէս հակառակ է, ինչպէս Այոն՞ Ոչին, հապա նաեւ թէ՝ ինք իր մէջը իր ապականութիւնն ունի, ինք իրեն համաձայն չըլլալով, եւ թէ՝ Էջմիածնական եկեղեցոյն՝ նաեւ իր քրիստոնէականներուն մէջ գտնուած՝ հիմնական վարդապետութիւնները մօտանց եւ հեռուանց կը տապալէ։

1. Թէ որ, (ինչպէս կ'ըսեն քրիստոնէականներն եւ ինչպէս կը հաստատէ Էջմիածնական եկեղեցոյն հիմնական Գլուխը), հրամայող մեծ մը ի Քրիստոսէ դրուած չէ, եւ ամէն առաքեալք հաւասար իշխանութիւն առած են, ու անոնց յաջորդներն ալ՝ այս ինքն եպիսկոպոսները հարկաւ հաւասար իշխանութիւն պէտ'որ ունենան, ի հարկէ՝ որչափ եպիսկոպոս, այնչափ ալ իրմէ վեր իրեն հրամայող մեծ չունեցող առաքելոց յաջորդներ կամ անկախ եպիսկոպոսներ պէտ'որ ըլլան, որոնց ամէն մէկն Առաքելոց իշխանութիւնն ու իրաւասութիւնն անկախ պէտ'որ գործածէր։

լամ կարող պիտ՚ որ ըլլար գործածել. եւ անանկով այնչափ իրարմէ անկախ եկեղեցիներ պէտք էին ըլլալ կամ կրնան ըլլալ՝ որչափ որ եպիսկոպոսներ կան ու կրնան ըլլալ:

Թէ որ Առաքելոց վրայ՝ ուրիշ Առաքեալ մը իշխանութիւն ի Քրիստոսէ չունեցաւ, ինչո՞ւ անոնց յաջորդներուն, այս ինքն եպիսկոպոսաց վրայ եպիսկոպոս մը իբրեւ Պատրիարք կամ Կաթողիկոս կամ Մետրապոլիտ իշխանութիւն ունի իբրեւ հրամայող գլուխ մը, եւ ասանկով եպիսկոպոսաց մէջ հրամայող ու հնազանդող, մեծ ու պզտիկ կայ: Պետրոսի եւ անոր յաջորդացը ի Քրիստոսէ տրուած վերնագոյն իշխանութիւնը ժխտելէն ետքը՝ ո՞ւսկից կը բխեցընէ Էջմիածնական դրութիւնը աս եպիսկոպոսաց իշխանութենէն վեր՝ եպիսկոպոսաց վրայ իշխանութիւնն ու իրաւասութիւնը, ի՞նչպէս ձեւացած է աս բռնաւորութիւնը, կրնա՞ն եպիսկոպոսունք իրենց ծառայական յանձնառութեամբը աւրել ան հաւասարական դրութիւնը՝ զոր, ինչպէս կ'ըսեն, Քրիստոս Տէրն մեզ ու-

ղած է, Քրիստոս Տէրն մեր դրած է։

Բայց Էջմիածնական Քրիստոնէականներն՝ որ կ՚ըսեն թէ հրամայող Պետտը չուզեց Քրիստոս, չէ թէ Պէտ հաստատեց հրամայող մեծ կը համրեն։

Այսպէս՝ վերոյիշեալ դրութիւնն իր ապականութեան սերմը ի ծնէ իր մէջը ունի, վասն զի ամէն առաքելոց բացարձակ հաւասարութիւնը՝ որն որ աս դրութեան հիմն է, նոյն դրութեան մէջ դարձեալ կը վերցուի։

Բայց կաթուղիկէ վարդապետութեան մէջ սանկ չէ։ Աս կաթուղիկէ վարդապետութիւնը կը ցուցընէ աղբիւրը՝ ուսկից քանի մը եպիսկոպոսաց մէկալ եպիսկոպոսաց վրայ ունեցած իշխանութիւնը կը բխէ։ Առաքեալք ու իրենց յաջորդները անյպէս հաւասար չեն՝ որ Պետրոս ու իրեն յաջորդը անոնցմէ վերագոյն իշխանութիւն ունենալով անոնց ըստ էին անհաւասար չըլլայ։ Անոր համար Պետրոս եւ իր յաջորդը՝ իր անոնցմէ վերագոյն իշխանութեամբը՝ իբրեւ իշխանութեան ու իրաւասութեան աղբիւր մը՝ իրարու հաւասար եպիսկո-

պոսներէն շատերը կրնայ ըստ մասին ե-րեն վերագոյն իշխանութեանն ու իրաւասութեանը զանազան իշխանութեան ու պատուոյ աստիճաններով հաղորդակից ընել լռելեայն կամ բացայայտ, ուղղակի կամ անուղղակի․ իբրեւ եպիսկոպոսապետ կամ մետրապոլիտ, Պատրիարք կամ Կաթողիկոս դնելով կամ ընդունելով։ Ըստ այս տիեզերական ժողովոյ համեմատ աս եպիսկոպոսներէ վեր եպիսկոպոսաց վրայ եղած իշխանութիւնն ուրիշ աղբիւր մը չի կրնար յառաջ գալ, բայց եթէ նոյն իսկ Պետրոսի մէկալ առաքեալներէն աւելի ու Պետրոսի յաջորդին մէկալ առաքելոց յաջորդներէն վեր ունեցած իշխանութենէն։

« Հռոմէական եկեղեցւոյն (այս ինքըն՝ Հռոմայ եպիսկոպոսին) քով իշխանութեան լրութիւնն այնպէս կայ, որ զուրիշ եկեղեցիները (այս ինքն՝ անոնց եպիսկոպոսները) իրեն ունեցած հոգացողութեան պաշտօնին մասնակից կ՚ընէ։ Նոյն Հռոմէական եկեղեցին (այս ինքն՝ Հռոմայ եպիսկոպոսը) աս եկեղեցիներէն

շատերը (այսինքն՝ ան եկեղեցիներուն եպիսկոպոսները), պատրիարքական եկեղեցիները զանազան արտօնութիւններով պատուեց, բայց միշտ իրեն առաւելութիւնները թէ տիեզերական ժողովոց մէջ եւ թէ ուրիշ քանի մը բաներու մէջ՝ պահելով։ Ասանկ Լուգդունեան երկրորդ տիեզերական ժողովը։

Նաեւ Հայաստանեայց եկեղեցւոյ գաղափարներուն համեմատ չէր կրնար ուրիշ կերպ ըլլալ։

Ի՞նչպէս կրնայ հաւասար մայրաքաղաքաց մէջ մայրաքաղաքապետ մը մայրաքաղաքաց վրայ, հաւասար երիցանց կամ քահանայից մէջ երիցապետ կամ աւագերէց մը քահանայից վրայ վերագոյն իշխանութիւն կամ իրաւասութիւն մը ունենալ, թէ որ չըլլայ ան մայրաքաղաքներէն ու քահանաներէն վեր իշխանութիւն ունեցող մը, այս ինքն անոնց եպիսկոպոսը, որն որ իբրեւ իշխանութեան եւ իրաւասութեան աղբիւր՝ քահանայից մէջէն կամ մայրաքաղաքաց մէջէն մէկուն իր իշխանութենէն կամ իրա-

ւասութենէն մաս մը հաղորդած կամ յանձնած ըլլայ՝ զինքը իր թեմին կառավարութեանն օգնական ընելու համար ։

Բայց ինչպէս սարկաւագապետ մը սարկաւագաց վրայ, երիցապետ մը երիցանց վրայ իշխանութիւն մը չունի ու ոչինչ է՝ թէ որ իր եպիսկոպոսը անոնց իշխանութիւն յայտնի կամ բացայայտ տուած չէ ; ասանկ ալ եպիսկոպոսապետ մը, Պատրիարք մը կամ Կաթուղիկոս մը եպիսկոպոսաց վրայ իշխանութիւն կամ իրաւասութիւն մը չի կրնար ունենալ՝ թէ որ եպիսկոպոսներէ վեր Պետրոսի յաջորդ մը չկայ, եւ կամ ինք չի ճանչնար ։

Ասանկ՝ նոյն իսկ առաքելոց ու եպիսկոպոսաց իշխանութեան բացարձակ հաւասարութիւնը՝ զոր որ իրենց անկախութեան վարդապետութեանը հիմ կ՚ընեն Էջմիածնական եկեղեցւոյ Քրիստոնէականները, նոյն վարդապետութեան կործանումն է ։

2. Վերոյիշեալ Քրիստոնէականներն՝ երբոր կ՚ըսեն թէ Քրիստոս Տէրն մեր չըրեց՝ որ Առաքելոց եւ անոնց յաջոր-

գաց մէջ մեծ մ'ըլլայ, սա աւետարանական խօսքերը կ'ակնարկեն. Եղեւ հակառակութիւն ի մէջ նոցա (առաքելոց), թէ ո՞ համարիցի մեծ: Եւ նա ասէ ցնոսա, թագաւորք ազգաց տիրեն նոցա, եւ որ իշխենն նոցա՝ բարերարք կոչին, այլ դուք ոչ այնպէս. այլ որ մեծն է ի ձեզ, եղիցի իբրեւ զկրտսերն, եւ առաջնորդն իբրեւ զսպասաւորն: Ո՞վ է մեծ, բազմականն եթէ սպասաւորն, ո՞չ ապաքէն բազմականն, բայց ես եմ ի միջի ձերում իբրեւ զսպասաւոր: Ղուկ. ԻԲ. 24—27: Որ կամիցի ի ձէնջ առաջին լինել, եղիցի ձեր պաշտօնեայ, քանզի եւ որդի մարդոյ ոչ եկն առնուլ պաշտօն, այլ պաշտել եւ տալ զանձն իւր փրկանս փոխանակ բազմաց: Մարկ. Ժ. 45: — Մեծն ի ձէնջ եղիցի ձեր ըսպասաւոր: — Որպէս Որդի մարդոյ ոչ եկն պաշտօն առնուլ, այլ պաշտել: Մատթ. ԻԳ. 11. Ի. 28:

Կրնա՞յ արդեօք մարդ Աստուծոյ խօսքին աւելի բռնութիւն ընել:

Պետրոսի խոստացուած առաւելութիւնը ըսելէն ետքը՝ առաքելոց մէջէ-

րը եւ սրտերը դեռ ըստ բաւականին լուսաւորուած չըլլալով՝ կերքերը վէճ կը դրգռեն. կը հանդարտեցընէ զանոնք իրենց Տէրն ու վարդապետը, աստուածային հեզութեամբ եւ իմաստութեամբ ըսելով. Այո՛ պիտ՚որ ըլլայ ձեր մէջը մեծ մը (որ մեծ է ի ձեզ, մեծն ի ձէնջ), բայց ոչ որպէս մեծ պիտ՚որ չըլլայ, ինչպէս մեծ են ազգաց թագաւորները իշխանները՝ տիրապետութեամբ մը ( Despotiquement ) հապա այնպէս մեծ պիտ՚որ ըլլայ՝ ինչպէս ես ձեր մէջը մեծ եմ (որպէս Որդի մարդոյ), ձեր մէջէն մեծը անանկ ձեզի պիտ՚որ սպասաւորէ, ինչպէս ես ձեր մէջը մեծ եմ, բայց իբրեւ սպասաւոր եմ՝ ( Ես եմ ի մէջ ձերում իբրեւ սպասաւոր ) : Ձեր մեծը՝ ինծի պէս մեծ պիտ՚որ ըլլայ, ինծի պէս մեծութիւն պիտ՚որ ընէ :

Որչափ քիչ տրամաբանութիւն որ մէկն ունենայ, կրնայ դատել՝ թէ հաՏէրն մեր մեծ մը առաքելոց եւ անոնց յաջորդացը մէջ կ՚ենթադրէ՝ թէ կ՚ուրանայ, մեծի մը գոյութիւնը կը ժխտէ՝ թէ անոր յաջորդութիւնը, այս ինքն՝ ինչ-

պէս ըլլալիքը կը յայտնէ։

Բայց ինչ օգուտ. ուրի՛շ է մտաց, ուրի՛շ է սրտի տրամաբանութիւնը։ Ան կը տեսնէ, աս չ՚ուզեր։

Վերջինին վրայ հիմնուած են ան ամէն չար մեկնութիւնները՝ զորոնք Հանդիսարանը, Արեւելից եւ Արեւմտից տիեզերական ժողովներուն հեղինակութեանը դէմ, Մատթ. ԺԶ եւ Յովհան. ԻԱ. գլուխներուն կու տայ։ Հանդիսարանին եւ իր կողմանը տուած եւ տալու մեկնութեան ընդհանուր կանոնն ա՛ս է. «Մէկը առ, մէկալը թող»։

Բոլոր առաքելոց համար ըսաւ Տէրը. Գացէք, սորվեցուցէք, ես ձեզի հետ եմ։ Ասիկա պէտք է առնուլ թէ առաքելոց եւ թէ յաջորդներուն համար։ Միմիայն Պետրոսի ըսաւ. Սիմոն, Սիմոն, սատանան զքեզ ցորենի պէս մաղել ուզեց, բայց ես աղաչեցի իմ Հօրս քեզի համար՝ որ քու հաւատքդ չպակսի եւ երբեմն դառնաս եւ քու եղբայրներդ հաստատես։ Ասիկա պէտք է թողուլ։ — Բոլոր առաքելոց համար ըսաւ Տէրն մեր. Որում որ մեղքը կը թողուք՝

Թողուլ. որուն որ մեղքը կը բանէք, բանուի։ Ասի պէտք է առնուլ թէ՝ առաքելոց եւ թէ՝ յաջորդներուն համար։ Մինակ Պետրոսի բառ. Սիմոն որդի Յովհաննու ես քեզի կ՚ըսեմ՝ թէ դուն ես ան վէմը՝ որուն վրայ իմ եկեղեցիս պիտի որ շինեմ. Քեզի պիտի որ տամ իմ արքայութեանս (եկեղեցւոյս) բանալին՝ որ Ս. Գրոց լեզուին մէջ տան մը գերագոյն հրամանատարութիւնը կը նշանակէ, բացատրութիւն մը՝ զոր մէկալ առաքելոց համար չգործածեց մեր Տէրը*։ Դարձեալ. Սիմոն Յովհաննու, կը սիրե՞ս

---

*Եսայի ԻԲ. 22—24. «Կոչեցից զծառայ իմ զԵղիակիմ Քեղկեայ (զքահանայապետն) եւ տաց ի ձեռս նորա զհազարապետութիւնդ քո (տանդ ընդհանուր վերակացութիւնը) եւ եղիցի իբրեւ հայր բնակչացդ Երուսաղեմի եւ տանն Յուդայ եւ տաց զփական Դաւթի նմա —, բացցէ եւ ոչ ոք իցէ՝ որ փակիցէ, եւ փակիցէ եւ ոչ ոք իցէ՝ որ բանայցէ, եւ եղիցին կախեալ զնմանէ։»

— Բնագիրը կ՚ըսէ. «Եդից զփականս տանն Դաւթի ի թիկունս նորա, . . . . որովհետեւ. հազարապետին (այսինքն բոլոր տան մը ծառայից վրայ դրուած վերակացուին)

զիս՝ տասնցմէ ( մէկալ աշակերտներէն ) առնէ՛, արածէ իմ գառինքս, արածէ իմ ոչխարներս, այսինքն՝ բոլոր հօտը՝ ( վասն զի հօտ մը միայն՝ տասնցմէ բաղկացած է։) Ասի պէտք է նկատել։ – Ասով Տէրն մեր իր երկնաւոր կտակարանին մէջ ան տանուտէրը կը ձեւանայ՝ որն որ ուզելով իր գերդաստանին զօրութիւնը չը ցրուել՝ իրեն կտակին մէջ՝ իր անդրանկին աւատաւանդ* մը կ'որոշէ, բայց

---

պաշտամանը նշանակին՝ աս ուաէն կախուած բայլիքն էր։

Նոյնպէս Յայտնութեան մէջ ԳԼ. Գ. Է. կը կարդանք. «Զայս ասէ Սուրբն, Ճշմարիտն, այն որ ունի զփականսն Դաւթի, որ բանայ եւ ոչ ոք է՝ որ փակէ, որ փակէ եւ ոչ ոք է՝ որ բանայ։» Աս բանալին է՝ զորն որ Տէրն մեր փոխանորդաբար Պետրոսի կուտայ, այս ինքն՝ իր Աստուծոյ տանն ընդհանուր հազարապետութեան բանալին, անանկ պաշտօնի մը որն որ ձեռք տան մը համար [illegible] չ'ընդունիր, թէ որ չ'ուզուիր՝ որ ըլլայ տուն բաժանեալ յանձն իւր եւ աւերեալ։»

*Fideijussum

ետքէն (Ներսէսի մեծի) միայնը ցրուեցաւ նոյն կանոնին անհանկ յաւելուածներ հետզ-հետէ ի նպաստ մէկալ որդւոցը կ'ընէ՝ որ ալ անդրանիկը կը դադրի աւելի բան մ'ունենալէն ։

Քրիստոսի Տեառն մերոյ խօսքերուն ներձեցուած կանոնը, այս ինքն՝ մաս մը առնուլ, մաս մը թողուլ, թէ որ Հան-դիսարանին գործողութեան կերպին նայինք, ալիտ'որ արժէ նաեւ Սրբոց Հարց խօսքերուն համար՝ որոնց միաբա-նութիւնը, ինչպէս յայտնի է ; Ս. Գը-րոց ճշմարիտ իմաստը կ'որոշէ՝ չէ թէ մինակ կաթուղիկեայց, հապա նաեւ Էջմիածնականաց համար ։

Մեր նպատակէն դուրս է՝ հոս ան ծայրը ճոթը չգալու վկայութիւնները առնել՝ որոնցմով ամէն երկիր եւ լեզու 18 դար Պետրոսի վրայ Քրիստոսի Տեա-ռըն մերոյ խօսքերէն իմացածը կը յայտ-նէ ։ Բաւական է փոքր ծաղկաքաղ մը ա՛ն երկրէն՝ ուր այսօր Հանդիսարանին հեղինակը կը նստի ։ Վարէն դէպ ի վեր երթանք ։

Ա. — Ներսիսեանց ժամանակը Ն.

ՇՆՈՐՀԱԼԻ ։ Այլ անուն էր Պետրոսի, կ՚րսէ, յընտանեաց անուն իւրոյ, իսկ ամենատեսի այնն Յիսուսի տեսանալ զկարծրութիւն հաւատոցն նորա անտեղի-տալի ներհակաց կրից – եւ անուանն նորա փոփոխումն առնէ՝ յար եւ նման ըստ կարծրութեան հաւատոյ նորա ։ — Այսէ ցնա. Դու կոչեսցիս Կեփաս (վէմ). (Յովհ. Ա. Պետր. հմր. 1 ։) Տէրն մեր պատուով պատուեաց զերանելին Պետրոս փոփոխումն առնելով անուան նորա ըստ նմանութեան նախնոյն Աբրահամու հայր ազգաց բազմաց առնել եւ զսա ըստ նմանութեանն Աբրահամու կամ եւս գերագոյն քան զնա եւ աստուածայնագոյն — վասն զի հայր լինելոց էր հոգեւոր ազգատոհմին եւ գըլուխ եւ առաջնորդ, (Բ. Պետր. Ա. 1 ։) Տեսե՞ր զորիրապէս պատիւ ծառայլին ի բարի եւ յիմաստուն Տեառնէն՝ զոր ոչ ոք ի մարմնազգեստից ընկալաւ, ոչ ի մարգարէիցն եւ ոչ յաւետարանիս աշակերտացն, բայց միայն երանելիս այս, (Յովբ. Ա. Պետր.), գլուխ եւ առաջնորդ եւ առաքեալ եւ վերակացու

նոր ուխտիս եւ ժողովրդեանս, ։ (Վերջի. Ա. Պետր ։ )

Ն. ԼԱՄԲՐՈՆԱՑԻ Տարսոնի Արքեպիսկոպոսը կ'ըսէ . « Եղիցի յետ Քրիստոսէ զքեզ ուսանք ո՛վ Պետրոս, գլուխ յետ Կենդանւոյն Տեառն աշակերտելոցս, վէմ հաստատութեան Քրիստոսի զորեղ էարկ ի հիմն տաճարիս զգաւազանն եւ զոչխարացն ի ձեռս քո աւանդեաց արածել յետ առնլոյ զԳերապատւն յերկրէ ։» ( Մեկն. պատ. գր. ի ճառ եկեղ. ։ )

Դարձեալ՝ « Որոշի այժմ եկեղեցի Աստուծոյ — յերիս դասս . ի ժողովուրդս, ի պաշտօնեայս և ի քահանայս ։ Նոքին դարձեալ — զանազանին յերիս աստիճանս ։ »

« Քահանայից կարգ ( զանազանի ) յեպիսկոպոսապետն, յեպիսկոպոսս և ի քահանայս ։ . . . »

« Երկրորդ դաս սարկաւագացն որոշի յերիս աստիճանս, ի սարկաւագս, ի կիսասարկաւագս և ի դպիրս ։ »

« Երրորդ դաս ժողովրդեանն — զանազանին ի կրօնաւորս, ի սուրբ ժողովուրդս և ի հաւատացեալ երախայսն ։ »

«Ա. յայտնէ երեք դասս ի վերայ կարգելով զգլուխն առաքելոց՝ Քրիստոս զՊետրոս, յանձն արար նմին արածել ըստ զանազան սիրոյն զօրութեանց»։

«Սիմոն, ասէ, սիրես զիս. և յորժամ խոստովանեցաւ, ապա ասաց՝ թէ Արածեա զգառինս իմ, այս ինքն՝ զհաւատացեալ ժողովուրդն»։

«Երկրորդ (անգամ՛) պահանջեալ զհաստատութիւն սիրոյն՝ յաւել թէ Արածեա զոչխարս իմ, այս ինքն քահանայական պատուովն էղեալ դասանցն և ընդ նոցին աշակերտեցն դասուց»։

«Իսկ երրորդ առաւել զսէրն գրաւական առեալ՝ ապա ետ նմա իշխանութիւն քահանայապետութեան՝ երեքեան քահանայիցն (այս ինքն՝ եպիսկոպոսապետաց, եպիսկոպոսաց և քահանայից) և ընդ նոքօք աշակերտեցն (այս ինքն՝ սարկաւագաց, կիսասարկաւագաց և դպրաց) և ժողովրդոցն (այս ինքն՝ կրօնաւորաց, որ ըզ ժողովրդոց և հաւատացեալ երախայից)»։ . . .

«Պետրոս լինի արժանի ի ծայրագոյն եղանել պատուին քահանայապետութեան.

Առաքելոց եւ նոցին հետեւողք (յաջորդք)՝ որոց արածող եւ գլուխ էր Պետրոս ։

Ուրեմն Ներսիսեանց ժամանակ՝ մեր Հարքը տիեզերական աւանդութեան համեմատ՝ այնպէս չէին իմանար Մատթէի ԺԶ. և Յովհաննու ԻԱ. գլուխները, ինչպէս Հանդիսաբանը կ'իմանայ ։

Մեր Հարցը համար՝

1. Պետրոս առանձին առաւելութիւն մ'ունի՝ զորն որ մէկալ առաքեալք չունին, այնպէս՝ որ Քրիստոսի և Առաքելոց մէջտեղը միանաւոր դիրք և աստիճան մ'ունի ։

2. Այս առաւելութեան արդիւնքը, այս ինքն՝ սովորականէն աւելի հաւատքն ու սէրը, մէկալ կողմանէ ալ՝ աստուածային կոչումն ու նախասահմանութիւնը Պետրոսի յատուկ է, չէ թէ ամէն առաքելոց հաւասար ։

3. Այս առաւելութիւնը Պետրոսի մարդիկ չտուին, հապա ինքն Քրիստոս Տէրն մեր ։

4. Այս առաւելութիւնը որ պատուոյ առաւելութիւնն է, հապա՝ իշխանութիւն է, հոգեւոր իշխանութեամբ տիրելու ի-

րաւունք է, վերակացութիւն է, արածել է. որոնցմէ անբաժին է հնազանդութիւն. հպատակելու պարտք և ստորակարգութիւն.

5. Այս իշխանութեան սահմանութիւնն է և անոր անբաժին եղած հնազանդութեանն բացատրութիւն չկայ. վա՛սն զի Պետրոս գառնուկներն ալ կ'արածէ անոնց մայրերն ալ կ'արածէ. չէ թէ միայն հովիւ, հապա նաեւ հովուապետ է, բացայայտ է՝ վասն զի բոլոր քահանայից դասուն այս իրքն՝ եպիսկոպոսապետաց, եպիսկոպոսաց և քահանայից վրայ է Քրիստոսէ իշխանութիւն ունի։

Մէկ խօսքով՝ մեր Ներսիսեան ժամանակին Հայոց վարդապետութեան համեմատ՝ Տէրն մեր եկեղեցւոյն մէջ ամենուն հրամայող մեծ մը. 1. ուզած է ընել, 2. դրած է զՊետրոս, և 3. վերջապէս աս աստուածային դրութիւնն է՝ որ Մատթէի ԺԶ. և Յովհաննու ԻԱ. գլուխներուն մէջ կը պատմուի։

Ասանկ է մեր և Էջմիածնականաց հաստատապէս ընդունած Հայոց աւանդութեան մէկ ծայրը. — անցնինք

մեկայ ծայրին ։

Բ. — Սուրբ Գրիգոր ԼՈՒՍԱՒՈՐԻՉ (տե՛ս Ագաթ. 339 ։) տեսնել կը խօսի. « Փրրկիչն և բարերար և Որդի Աստուծոյ և Օծեալ — հարցանէր — Դուք զի՞ ասեք ասէք՝ թէ իցեմ ։ Որոց (աշակերտացն) առաջին Պետրոս ասէ թէ. Դու ես Քրիստոս Որդի Աստուծոյ կենդանւոյ. վասն որոյ և զերանութիւնն ընկալաւ, ասէ. Երանի է քեզ Պետրոս որդի Յովնանու, զի ոչ յերկրէ տոհմակցաց քոց, ի մարմնոյ և յարենէ ազգի քո, ի մարդկանէ ուսեր դու զայդ գիտութիւն. այլ Հայր ի յերկնից եդ ի սիրտ քո և յայտնեաց քեզ ։ Եւ արար զնա վէմ հաստատութեան ամենայն եկեղեցեաց » ։

Սուրբ ՍԱՀԱԿ՝ « Նոյն ինքն կենարարն (կ'ըսէ, ուսուցանէ առաքեալ զՊետրոս) դու ես վէմ և ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ, և դրունք դժոխոց զնա չյաղթահարեսցեն ։ Արդ՝ զի՞նչ իմանայցեն զասելն զՊետրոս՝ վէմ, միթէ իբրեւ զմի ոք ի քարանց. քաւ լիցի. այլ մարդ բանաւոր, գլուխ առաքելականն դասուն, և զի անդրդուելի

հաւատովք խոստովանեաց զՔրիստոս՝ Որդի Աստուծոյ, երանութիւն ընկալաւ և վէմ անուանեցաւ։ Ապա ուրեմն շինեալքն ի վերայ նորա չեն քարինք, այլ մարդիկ նորին հաւատոյ հաղորդակիցք։ (Կանոնագիրք, Թիւ 44.)

Արդոյն Սահակայ աշկերտներուն ամենէն աւելի Սուրբ Գրոց Թարգմանութեան գործակիցը՝ ԵԶՆԻԿ սա նշանաւոր խօսքերը կը գրէ. «Լուաւ (Պաւղոս) բանս անճառս՝ զոր ոչ է պարտ ումեք խօսել։ — Այլ անճառ բանքն ոչ եթէ նմա ճառելիք էին և այլոց ընկերացն անճառք։ — Է և զայս իմանալ՝ թէ ոչ զի ես միայն արժանի եղէ խորհրդոյն որ տրուպս եմ առաքելոց, այլ թէ և Պետրոս՝ որ գլուխն է առաքելոց, տեսանիցէ, չկարէ ճառել, և թէ լուիցէ, չկարէ պատմել, քանզի անպատում է և ի վեր քան զմիտս, եւ վասն այնորիկ ասէ Առաքեալ. Թէպէտ եւ տեսի, չկարեմ պատմել։ (Եղծ աղանդոց, էջ 263.) Ուստի թէպէտ առաքեալք իրարու ընկեր են, բայց Պետրոս անոնց միանգամայն գլուխ է, թէպէտ ամէնքը • մի եւ

կանոններուն և Հանդիսարանին ան մեկ-
նութենէն՝ զոր որ աւետարանական
խօսքերուն a' la Renan կուտան՝ երբոր կը
պնդեն թէ « Քրիստոս Տէրն մեր չու-
զեց որ ամենուեն հրամայող մեծ մ'ըլլայ։ »

3. Տաս ծանրակշիռ կէտի մը վրայ՝ իրարու հանդիպած ենք։ « Հաւատոյ
« դէմ կը մեղանչեն, կ'ըսեն ամենայն
« իրաւամբք Էջմիածնական քրիստո-
« նէականք, որոնք որ եկեղեցւոյ ամէն
« հաւատացածներուն չեն հաւատար կամ
« անոնց վրայ կամաւորապէս կը տարա-
« րակուսին » (էջ 75 Մեկ. Վարդ.)։
« Եկեղեցին Աստուծոյ առ մարդիկ յայտ-
« նած բաներն ի սուրբ Գրոց և յաւան-
« դութենէ կ'առնու։ Սուրբ Գիրքն ի-
« մանալու է՝ յամենայնի եկեղեցւոյ
« դատաստանին հպատակելով։ Աւան-
« դութիւնն ալ Աստուծոյ ան խօսքն է՝
« որնոր յառաքելոց եւ անոնց յաջորդնե-
« րէն մինչև մեզի եկած և եկեղեցիէն
« իբրև վաւերական ընդունելի եղած է
(Անդ էջ 67—8)։

հաւատովք խոստովանեաց զՔրիստոս՝ Որդի Աստուծոյ, երանութիւն ընկալաւ և վէմ անուանեցաւ։ Ապա ուրեմն շինեալքն ի վերայ նորա չեն քարինք, այլ մարդիկ նորին հաւատոյ հաղորդակիցք։ (Կանոնագիրք, Թիւ 44.)

Արդօյն Սահակայ աշկերտներուն ամենէն աւելի Սուրբ Գրոց Թարգմանութեան գործակիցը՝ ԵԶՆԻԿ սա նշանաւոր խօսքերը կը գրէ.« Լուաւ (Պաւղոս) բանս անճառս՝ զոր ոչ է պարտ ումեք խօսել։ — Այլ անճառ բանքն ոչ եթէ նմա ճառելիք էին և այլոց ընկերացն անճառք։ — Է և զայս իմանալ՝ թէ ոչ զի ես միայն արժանի եղէ խորհրդոյն որ տրուպս եմ առաքելոց, այլ թէ և Պետրոս՝ որ գլուխն է առաքելոց, տեսանիցէ, չկարէ ճառել, և թէ լուիցէ, չկարէ պատմել, քանզի անպատում է և ի վեր քան զմիտս, եւ վասն այնորիկ ասէ Առաքեալ. Թէպէտ եւ տեսի, չկարեմ պատմել. (Եղծ աղանդոց, էջ 263.) Ուստի թէպէտ առաքեալք իրարու ընկեր են, բայց Պետրոս անոնց միանգամայն գլուխ է, թէպէտ ամէնքը մի եւ

կամմներուն և Հանդիսարանին ան մեկ-նութեանէն՝ զորն որ աւետարանական խօսքերուն a' la Renan կուտան՝ երբոր կը պնդեն թէ « Քրիստոս Տէրն մեր չու-զեց որ ամենուեն հրամայող մեծ մ'ըլլայ »

3. Տատ ծանրակշիռ կէտի մը վրայ իրարու հանդիպած ենք ։ « Հաւատոյ « դէմ կը մեղանչեն, կ'ըսեն ամենայն « իրաւամբք Էջմիածնական քրիստո-« նէականք, որոնք որ եկեղեցւոյ անչն « հաւատացածներուն չեն հաւատար կամ « անոնց վրայ կամաւորապէս կը տարա-« րակուսին » ( էջ 75 Միջ. Վարդ.) ։ « Եկեղեցին Աստուծոյ առ մարդիկ յայտ-« նած բաներն ի սուրբ Գրոց և յաւան-« դութենէ կ'առնու ։ Սուրբ Գիրքն ի-« մանալու է՝ յամենայնի եկեղեցւոյ « դատաստանին հպատակելով ։ Աւան-« դութիւնն ալ Աստուծոյ ան խօսքն է՝ « որնոր յառաքելոց եւ անոնց յաջորդնե-« րէն մինչև մեզի եկած և եկեղեցիէն « իբրև վաւերական ընդունելի եղած է (Անդ էջ 67—8)։

Նոյն (1858) տարւոյն մի և նոյն Հո-գևոր ժողովէն հաւանութիւն ընդունած ուրիշ քրիստոնէականի մը համեմատ խօսելով « Հերետիկոսութիւն ան է՝ որ « քրիստոնեայ մը սուրբ Գիրքը ծուռ « հասկընալով՝ իր հասկըցածին վրայ կը « յամառի, եկեղեցիին տուած մեկնու- « թիւնը չընդունելով նոր հաւատք կը « հնարէ և կամ ուրիշի հնարածին կը հե- « տևի։ Ասանկները յաւիտենական եր- « ջանկութեան արժանի չեն ըլլար, որով- « հետև եկեղեցիէն դուրս ելած կ՚ըլլան « հաւատքնին զատ ըլլալով և եկեղեցի- « էն դուրս եղողը արքայութիւն չերթար (էջ 30—31)։

Մի և նոյնը Էջմիածնական եկեղեց-ւոյ հիմակուան Գլուխն ալ կը հաստատէ։ « Աւետարանը, կ՚ըսէ Էջմիածնական « կաթողիկոսը, որ տեղ որ ողջամիտ « վարդապետութեամբ մեկնուած է, « անոնք են ճշմարիտ և ուղղափառ քա- « րոյական անդամ եկեղեցւոյն Քրիս- « տոսի, . . . իսկ եթէ թիւր և սխալ « մոլորամիտ դրութեամբ բացատրելով

« կը քարոզեն, անոնք կաթուղիկէ ազ-
« գային եկեղեցւոյն անդամ չեն և չեն
« կրնար ալ ըլլալ, այլ մանաւանդ հերձ-
« ուածող և հերետիկոս են (Հանդ-խա-
րան, էջ 178—9)։

Ասանկ է ճշդիւ նաև Կաթուղիկէ Հռոմէական եկեղեցւոյ վարդապետութիւնը։

Հոս իրեն բովանդակ ուղղութիւնը կը ցուցընէ Էջմիածնական դպրութիւնը։

Մինչև հիմա տեսանք՝ որ Էջմիածնական եկեղեցւոյ և անոր քրիստոնէականներուն հիմնական վարդապետութիւնն է թէ Մատթէի Ժ. և Յովհաննու ԻԱ. գլուխները Կաթուղիկէ Հռոմէական եկեղեցին «ծուռ կը հասկընայ, եւ իր հասկըցածին վրայ (տարակոյս չկայ) կը յամառի, եւ ճշմարիտ եկեղեցւոյ աստուածմեկնութիւնը չընդունելով (հարկաւ) նոր հաւատք կը հնարէ»․ «որով
« առւրը Գիրքին իմաստալը առեն յամենայնի եկեղեցւոյ դատաստանին չի հետեւիր», եւ ասով կը խոտորի հարկաւնաեւ «Աստուծոյ ան խօսքէն (աւան-

դութենէն) որնոր յառաքելոց եւ անոնց յաջորդներէն մինչեւ մեզի եկած եւ եկեղեցիէն իբրեւ վաւերական ընդունելի եղած է»․ մէկ խօսքով Կաթողիկէ Հռոմէական եկեղեցին, Էջմիածնական եկեղեցւոյ վարդապետութեանը համեմատ, սուրբ Գիրքն եւ աւանդութիւնը մէկ կողմանէ կը խեղաթիւրէ, եւ մէկալ կողմանէ եկեղեցւոյ դատաստանին կամ ժողովոց յամառ կերպով դիմադարձ կը գտնուի՝ իր հետեւողներովը մէկտեղ։

Արդ՝ ի՞նչ է կամ ինչ պէտք է ըսուիլ Հռոմէական եկեղեցին՝ որնոր աւետարանական խօսքերը․ Մեծն ի ձէնջ եղիցի ձեր սպասաւոր․ Դու ես վէմ եւ ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ․ Արածեա զգառինս իմ, արածեա զոչխարս իմ», ինչպէս կ՚ըսէ Հայոց կաթողիկոսը, ողջամիտ վարդապետութեանց չի մեկներ, թիւր, սխալ ու մոլորամիտ դրութեա՛ն բացատրելով կը քարոզէ, սուրբ Գիրքը եկեղեցւոյ եւ եկեղեցիէն իբրեւ վաւերական ընդունելի եղած աւանդութեան կամ՝ սրբոց Հարց իմաս-

տին համեմատ չի հասկընար եւ իր հաս-կըցածին վրայ կը յամառի ալ ու. կը պահանջէ որ ամէնն ալ սանկ հասկը-նան. ուստի աս Հռոմէական եկեղեցին, կ՚ըսեմ, ի՞նչ պէտք է սեպուիլ Էջմիած-նական եկեղեցւոյ առջեւ՝ իրեն վարդա-պետութեանը համեմատ, բայց եթէ հերետիկոս ու մեղաց մէջ, իբրեւ հերե-տիկոս՝ ճշմարիտ եկեղեցիէն դուրս, եւ իբրեւ եկեղեցիէն դուրս՝ փրկութենէ զրկուած ։

Էջմիածնական եկեղեցին պէտք է աս սանկ ըսել՝ թէ որ ինք իր վարդա-պետութիւնը սուտ հանել, չինածը մի և նոյն ատեն աւրել չ՚ուզեր՝ զմեզ զկա-թուղիկեայս թէ հերետիկոսութեան եւ թէ ճշմարտութեան մէջ, եկեղեցիէն թէ դուրս թէ ներս, փրկութեան ճամ-բէն թէ դուրս թէ ներս սեպելով ։

Իրաւցընէ՝ թէ որ մենք Կաթողիկ-եայք, ինչպէս կը հաստատէ Էջմիած-նական եկեղեցին, սուրբ Գրոց եւ ա-ւանդութեան վաւերական իմաստին կը հակառակինք ու մոլորութեան եւ մե-

ղաց մէջ ենք, ի՞նչ արտօնութիւն ունինք որ հերետիկոս չ'ըսուինք, փրկութեան ճամբէն դուրս չսեպուինք", եւ Էջմիածնական եկեղեցին մեզի այսչափ ներող ըլլայ՝ այսչափ յամառ մոլորութենէ ետքը՝ երկնից դռները իր ետեւէն մեզի անբաց ձգելու։

Աս հակառակութիւնը՝ որն որ Էջմիածնական եկեղեցւոյն թէ քրիստոնէականներէն դուրս եւ թէ՛ քրիստոնէականներէն ներս կը լսենք ու կը կարդանք, մեկնութիւն մը չունի. բողոքներուն ու դըրոշներուն սրտին պատիւ ալ ընէ՝ միտքին չ'ըներ, որովհետեւ առաջ ուրիշ բան չ'ըներ Էջմիածնական եկեղեցին. բայց եթէ ինքնին վկայութիւն տայ՝ թէ ինչ որ աս խնդրոյն մէջ եկեղեցւոյ վրայօք կը սորվեցընենք, ինք նոյնին վրայ վստահ չէ։ Ասով ինք իր հեղինակութիւնը գետին կը զարնէ ու ալ մեզի գործ մը չի թողուր։

4. Պետրոսի եւ անոր յաջորդացը վըրայ, ինչպէս տեսանք, անանկ գլխաւորութիւն մը տիեզերական ժողովք կըն-

դունելն՝ որն որ չէ թէ մինակ առաջնորդելու, հապա նաև սորվեցընելու կը վերաբերի, այս ինքն թէ վարդապետական խնդրոց մէջ Գլխաւոր դատաստանը Պետրոսի և անոր յաջորդացը կ՚իյնայ. ուստի չի կրնար խնդիր մը դնել անորոշ սեպուելի՝ գոնէ երբոր Պետրոսի և յաջորդացը դատաստանը զուրիշ եպիսկոպոսաց դատաստանը կը հաստատէ և ոչ ալ կրնայ խնդիր մը որոշ և պարզաւորիչ սեպուելի՝ ցորչափ Պետրոսի և անոր յաջորդացը դատաստանը յայտնի չէ։

Աս կաթուղիկէ հաւատոց հիմնական կանոնը՝ բնական էր որ ժխտէին Էջմիածնական քրիստոնէականները՝ չտալով Պետրոսի ի վարդապետական մասին, ան բանը՝ զորն որ յանձն չառին տալու յառաջնորդական մասին։ Ինչպէս իրաւասութիւնն ամենուն հաւասար կը բաժնեն Էջմիածնական քրիստոնէականները, նոյնպէս ալ վարդապետելու հեղինակութիւնը։*

---

* Հրահանգ. Քրիստ. Վարդ. ի պէտս մանկ-

Հոս՝ տեղը չէ զննելու՝ թէ արդեօք քանի՛ կամ ո՛ր աստիճանի եպիսկոպոսունք կ'ուզեն Էջմիածնական քրիստոնէականք, որպէս զի ամէնքը միաբանած սեպուին և. Ցուցածներն ալ խնդիրն որոշուած սեպելու պարտաւորին։ Միայն սա կրնանք ամենայն վստահութեամբ հաստատել՝ որ եթէ վարդապետութեան մասին Էջմիածնական դրութիւնն ստոյգ է, (Ներուի մեզի) մեր Տէրն իր նոր օրէնքովն անանկ խեղճ լոյս մը մեզի երկինքէն բերած է՝ որ անոր մէջ մենք աւելի կը խարխափինք, քան թէ անոնք որոնք հին օրինաց ստուերներուն մէջ գտնուեցան։

Գտնենք՝ որ Աստուծոյ հին դաշինքին մէջ մարգարէները, Մովսիսէն սկըս-

---

կանց Հայաստանեայց սուրբ եկեղեցւոյ, Տըփխիս եւ Կալկաթա, էջ 110.

« Հ. Զիա՞րդ մարթ է լուծանել զկնճիռն
« հերձուածոց։

« Պ. Ընդհանրական (կամ տիեզերական)
« ժողովով Հովուաց եւ վարդապետաց եկե-
« ղեցւոյ, եւ ոչ միով ոմամբ ի նոցանէ։ »

եալ, իրարու յաջորդեցին, ինչպէս խոստացած էր Աստուած՝ որ ամեն ատեն իր մարգարէները պիտ'որ խաւրէ՝ որպէս զի մոլորութիւնն արգելու և ժողովրդեան իմացընէ թէ ի՛նչ կ'ուզէ որ ընեն ։

Ասանկով աստուածուստ հօգացուած էր՝ որ երբէք ստութիւնը տիրող չըլլայ, և ամէն վտանգաւոր զեղծում որնոր ժամանակաւ կրնար սպրդիլ Աստուծոյ թագաւորութեանը մէջ, շուտով ուղղուի ։

Էջմիածնական եկեղեցին ժխտելով Պետրոսի և անոր յաջորդաց ի Քրիստոսէ տրուած վարդապետելու իշխանութեան անսխալութիւնը՝ կը վերցունէ հաւատոյ կամ կրօնի խնդիրներուն վերջնապէս որոշուելուն կարելիութիւնը ։

Այո, կ'ընդունի տիեզերական ժողովոյ մը առ այս ձեռնհասութիւնը (compétence), բայց իրեն համար, ճշդիւ խօսելով, հինգերորդ դարուն առջի կեսէն մինչև հիմա այս ինքն՝ 1434 տարի է՝ որ տիեզերական ժողով եղած չէ, և ամե-

նախորդը երեւոյթ մ՚ալ չկայ որ ասկէ ետ-քը իրաց նորոգեալ վիճակին մէջ՝ իրենն ընդունելի ըլլալու ժողովոյ մը կատարուի։

Աստ ըստ ամենայնի հակառակ՝ Կա-թողիկէականաց համար՝ չէ թէ միմիայն բազմաթիւ ժողովներ եղած են, հապա միանգամայն բովանդակ Կաթողիկէ Հռ-ոմէական եկեղեցին ամէն օր առաքե-լական ժողովոյ հաստատ վիճակի մը մէջ կը գտնուի՝ բայց է մը գումարած չըլ-լալով ան հեղինակութիւնը՝ որուն հա-մազօր, մանաւանդ թէ մի և նոյն է ան հեղինակութեան հետ՝ որով առաքե-լական ժողովոյ ձեւով կը խօսի, այս ինքն ան առաքելական հեղինակութիւնը՝ ո-րով հաւատոյ և բարուց խնդիրներ կ՚ո-րոշուին՝ զոնէ երբոր Հռոմայ եպիսկոպոսը կը խօսի և մէկտեղ օրինաւոր եպիսկոպոս-ունք խօսածն ընդունելութեամբ հաստա-տեն, կամ հակառակաբար՝ մէկտեղ օրի-նաւոր եպիսկոպոսունք կը խօսին և Հռո-մայ եպիսկոպոսն իրենց վարդապետական իշխանութեան առաւելութեամբը կը հաստատէ ճշմարտութիւնը և կը մերժէ

մոլորութիւնք. վասն զի Հռոմայ եպիսկոպոսն և մէկալ օրհնաւոր եպիսկոպոսունք նաև ցրուած՝ առաքելական գաւառն ամբողջութիւնը (իրապէս կը ներկայացունեն, ան դասուն՝ որուն թէ պատուիրուած է ամէն բան սորվեցընել և թէ խոստացուած է Հոգւին սուրբ մինչև ի կատարած աշխարհի, որպէս զի սորվեցուցածը միշտ ճշմարտութիւն ըլլայ։ Թէ որ ժողվէն, անկից աւելի երաշխաւորութիւն մը, աւելի տարր մը մէջերնին չեն ունենար։

Էջմիածնական դրութիւնք կը մերկացընէ զեկեղեցի՝ աստուածային վարդապետութիւնք մարդկային մոլորութիւնէն անսխալ անբաղդրելի և անպակասելի կերպով որոշելու միջոցէն՝ որոնք հին օրէնաց մարգարէական պաշտօնին կը համապատասխանէ և անոր լրումն է։ Ո՞վ կրնայ ըմբռնել՝ որ Աստուած մեզի իր վերջին յայտնութիւնն բրած ըլլայ իբրև մի միայն ճշմարիտ կրօն՝ որուն պարտական ըլլանք մինչև ցկատարած աշխարհի հետևիլ, և միջոց հոգացած չըլ-

լայ՝ մոլորութիւնը հեռացունելու՝ երբոր էր վարդապետութիւնն անկէ յարձակում կրէ ։ Կրնայ մարդ մտածել՝ որ քրիստոնէութիւնն աստուածային նախախնամութեան դատաստաններուն մէջ ան վիճակին դատապարտուած ըլլայ՝ որուն մէջ զանիկայ կը գտնէ Էջմիածնական եկեղեցին, կրօնական վէճերու պատուտած՝ առանց աստուածուստ դրուած անվրէպ և անմիջական կանոն մ՚ ունենալու՝ այս վէճերուն մէջ ճշմարիտը սուտէն, Աստուծոյ հաճոյն՝ Աստուծոյ անհաճոյէն պարտաւորիչ հեղինակութեամբ մը որոշելու, անանկ որ, ինչպէս ըսինք, հին օրինաց մէջ Աստուած աւելի ազդու և որոշ միջոցներ բռնած ըլլայ մոլորութիւնը խափանելու, և աւետարանի օրինաց կազմութեանը մէջ բոլորովին զանց ըրած ըլլայ ան միջոցները. Թէպէտ նոյները հոս. կրկնապատիկ հարկաւոր ըլլան ։

Իրօք ա՛ս է եկեղեցւոյ պատկերը՝ թէ որ Էջմիածնական վարդապետութեան տեսութեան կէտէն նկարուի, ուր չկայ

գլխաւորութեան վառարանը՝ որուն մի-այն կարող է բոլոր ճառագայթներն ամփոփելով աստուածային հաւատոյ լոյսը վառելու ։ Էջմիածնական դրութեան համար՝ Նիկիոյ (325), Կ-Պոլսոյ (381) և Եփեսոսի (431) տիեզերական ժողովներէն ետքը՝ աստուածային ստուգութեամբ՝ որոշակի պարտաւորիչ կանոն մ՚եղած չէ ։ *

Բայց հոածող Էջմիածնականի մը համար՝ աւելի անմխիթար է եկեղեցւոյ վիճակը ։ Թէ որ ճիշդ խօսե՞լ ուզենք, պարզապէս հարցական է նաև ան երեք տիեզերական ժողովքներուն ընդունելութիւնը ։ Ինչպէս տեսանք, ամէն պայմաններն ունեցող տիեզերական ժո-

---

* Հրահանգ Քրիստ. Վարդ. ի պէտս մանկանց Հայաստանեայց սուրբ եկեղեցւոյ. Տփխիս եւ Կալկաթա, 1846 էջ 111.

« Հ. Քանի՞ տիեզերական ժողովք եղեն
« ցայսօր ժամանակի ։

« Պ. Հայք ընդունին զերիս միայն. զՆի-
« կիոյ, զԿոստանդինուպօլսի Ա. եւ զԵփե-
« սոսի ։ Յոյնք ընդունին զեօթն ։ »

խօսքին իմաստը՝ Դու ես վէմ եւ ի վերայ այդր վէմ շինեցից զեկեղեցի իմ ։ Ի՞նչպէս կրնամ հարկադրեալ ըլլալ առաջինն ընդունելու, և ազատ՝ վերջինը չընդունելու ։ Ի՞նչ աւելի ունի Նիկիոյ առաջին ժողովը՝ Փլորենտեան ժողովէն, կամ Եփեսոսի ժողովը՝ վեցերորդ տիեզերական կամ երրորդ Կոստանդնուպոլսոյ ու երկրորդ Լուգդունեան տիեզերական ժողովներէն ։ Թէ որ առաջիններուն մէջ արեւելեան և արեւմտեան եպիսկոպոսունք ժողված էին, վերջիններուն մէջ չէի՞ն ։ Թէ որ վերջինները Հռոմայ աթոռոյ օգնութենէն կրցան զօրեղ ըլլալ, ի՞նչ բան կ՚երաշխաւորէ՝ որ առաջինները չկրցան ։ Ասանկ ամէն բան խոհեմական ընդունելութեան կը մնայ, չէ թէ պարտաւորիչ հաւատոյ ։

Թէ որ գլխաւորութեան դրութիւնը աստուածային չէ կամ թէ նոյն իսկ՝ երբ-որ քանոնաւոր առարկոյս կայ՝ թէ աստուածային չէ ։ չկայ այնչափ անմխիթար վիճակ մը՝ ինչպէս իր յաւիտենական վախճանը մտածող քրիստոնէին ։ Աս

յեղյեղուկ կենաց մէջ՝ ուր կիրքերը՝ փըր-
փրած , մոլորութիւնները իբրև ծովու ա-
լիք իրար կը հալածեն և կարծեալ լու-
սաւորութիւնն օրէ օր խաւար. և տարա-
կոյս կը շատցունէ , ի՞նչ է մարդուս մի
միայն երաշխաւորութիւնը . միայն եկե-
ղեցի Աստուծոյ կենդանւոյ՝ որոնք աս
տարակոյսներու մէջ երկնաւոր օգնու-
թեամբ ճշմարտութեան և փրկութեան
ճամբան մատնանիշ կ'որոշէ ։ Բայց ո՞ւր
է աս ձիրքն ունեցող եկեղեցին . շատոնց
դադրած է , ասիկայ իրօք չկայ , մինակ
գաղափար մըն է՝ որ միտքերնիս մնացած
է՝ թէ որ իրաւ ցընէ Հռոմայ եպիսկոպո-
սին գլխաւորութեան հեղինակութիւնը
վերցունելով ուրիշ բան չթողունք աշ-
խարհիս երեսը , բայց եթէ շատ մը Քը-
րիստոնէութեան անունը դաւանող խում-
բեր , ամէնքն իրարու հարթ հաւասար՝
երբոր խնդիրը վարդապետելու իրաւանց
վրայ է , բայց ամէնքն իրարու անհաւա-
սար և հակառակ՝ երբոր իրենց վարդա-
պետածին չափն ու տեսակը դիտուի ։

Թէ որ աս վիճակի մէջ է այսօրուան

օրս քրիստոնէութիւնը, (և իրօք է, եթէ ստոյգ չէ՝ որ փրկարար վարդապետութիւն խօսող եկեղեցին հոն է՝ ուր որ Պետրոս կը գտնուի,) լմնցած է ամէն բան, ու երկնաւոր ճշմարտութիւններն՝ աւելի կամ նուազ հաւանականութիւն ունեցող մարդկային կարծիքներու փոխուած են, ամէն բան կեղակարծ է, ոչ աստուածային հաւատոյ հիմ ըլլալու ստուգութիւն կայ, և ոչ փրկութեան ճամբու վրայ ապահովութիւն. ամէն բան մարդուս ակար ընտրողութեան մնացած է ։

Ուստի թէ որ վերոյիշեալ գլխաւորութեան գրութիւնն աստուածային չէ, եկեղեցին՝ զորոնք Տէրն մեր իր արեամբը շինեց, ամենևին աստուածային կանխագիտութեան և իմաստութեան գործքն ըլլալու կազմութիւն չունի. վասն զի չկայ անոր սահմանադրութեանը մէջ անանկ կէտ մը՝ որով անոր գոյութիւնն և պաշտօնը մինչուկ ան ատեն անվրէպ երաշխաւորուի՝ մինչուկ երբ որ հարկաւոր է ։

Մանաւանդ թէ (եթէ ան կազ-

մութիւնը չունի եկեղեցին՝ զորնոր կաթուղիկէ վարդապետութիւնն անոր կու տայ) արդէն ան տան պէս փլած է՝ զորն որ « այր յիմար » աւազի վրայ շինեց (Մատթ. Է. 26), և ան աշտարակին պէս կէս մնացած է՝ առանց լուսատու գլուխ մ'ունենալու, զորնոր շինողն սկըսաւ՝ դեռ իր դրամական զօրութիւնն աղէկ չհաշուած (Ղուկ. ԺԴ. 28—30)։

Զկայ տարակոյս, Էջմիածնական եկեղեցին ան վէմը վերցնելով զորնոր Քրիստոս Տէրն մեր դրաւ, բովանդակ վարդապետութեան վերջին երաշխաւորութիւնը, այս ինքն ան բանը՝ որնոր ժողովոյ մը՝ տիեզերական ժողովոյ հեղինակութիւն կու տայ, վերցուցած է, և անանկով ինք զինք ապացուցած է իբրև կարծիքներու դպրոց մը, չէ թէ անվրէպ հաւատք սորվեցընող եկեղեցի։ Անտարակոյս՝ ան անսխալ՝ ուստի և զամենքը պարտաւորող հեղինակութիւնը՝ (որնոր վերջնական ապահովութեամբ խնդիրները լուծելով՝ հաւատոյ մաս կ'որոշէ), Էջմիածնական եկեղեցին կա-

թուլիկէ Հռոմէական եկեղեցւոյ գլա-
նալէն ետքը՝ չի կրնար բանաւորապէս
իրեն սեպհականել և կրօնական խնդիր-
ներուն գերագոյն դատաւոր ինք զինք
ցուցընել։

5. Էջմիածնական եկեղեցին և իրեն
քրիստոնէականներն առաջինէն մինչև
վերջինը՝ եկեղեցւոյ հանգանակներուն
և նոյն իսկ Հայաստանեայց եկեղեցւոյ
հնուցմէ գործածած հանգանակին խօս-
քերուն համաձայն՝ իբրև ճշմարիտ եկե-
ղեցին սուտ եկեղեցիներէ զատելու նը-
շան, կը սորվեցունեն՝ թէ եկեղեցին մի-
միայն ըլլալու է։

Այս միութեան վարդապետութիւնը՝
վերոյիշեալ անկախութեան վարդապե-
տութեամբ, և ան բացարձակ իշխանու-
թիւն և իրաւասութիւն ունեցող շարք մը
Քրիստոսի երևելի փոխանորդներով նո-
րէն կը ժխտուի։

Կաթուղիկէ եկեղեցւոյ հանգանակ-
ներու մէջ սորվեցուցած եկեղեցւոյ մի-
ութիւնը նաև իշխանութեան ու կառա-
վարութեան միութիւն է, գլխաւորաբար

տուած է՝ որ երևելի եկեղեցին մի միայն եկեղեցի է։

Կաթուղիկէ եկեղեցւոյ մէջ՝ թէպէտ զանազան եկեղեցիներ՝ իբրև զանազան թեմեր կան, վասն զի զանազան եպիսկոպոսաց իշխանութեան տակ են, բայց աս թեմերը՝ իրօք չէ թէ մտօք՝ մէկ բոլորի կամ ամբողջի մը մաս են. վասն զի ան ամէն թեմերը կամ եկեղեցիները դարձեալ միայն մէկ եպիսկոպոսի մը վերագոյն ու գերագոյն իշխանութեանը մէջ միացած մէկ եղած են։

Անանկ մէկ չէ Էջմիածնական եկեղեցւոյ սորվեցուցած մէկ եկեղեցին. ամէն մէկ պատրիարքական կամ կաթուղիկոսական թեմ առանձին մէկ է, բայց ամէնը մէկէն առ՝ մէկ չէ. վասն զի իրարմէ անկախ են, իրօք իրարու մասեր չեն, որովհետև մէկ ամբողջի կամ բոլորի մը չեն վերաբերիր, մի և նոյն իշխանութեամբ մը ամենը մէկէն միացած չեն։

Թէ որ մեր խելքին տէր մնալով կըրնանք սա երեք կայսերութիւնները՝ Գաղիա, Աւստրիա և Ռուսիա մէկ կայսե-

րութիւն սեպել, միայն անոր համար՝ որ անոնց վրայ երկինքը մինակ մէկ աներեւոյթ կառավարող ամենակալ թագաւոր, արարիչ Աստուած կայ, ու բնական օրէնաց վրայ հաստատուած նոյն ու նման օրէնքներ ու դատաստաններ ունին, ան ատեն Էջմիածնական եկեղեցւոյ քրիստոնէականներուն պէս կընանք Հռոմէական եկեղեցին, Յունական եկեղեցին եւ Էջմիածնական եկեղեցին մի միայն եկեղեցի սեպել, միայն անոր համար՝ որ երկինք մէկ աներեւոյթ կառավարող հովիւ փրկիչ Աստուած կայ: Անոնք երեքը մէկ տէրութիւն ան ատեն կ'ըլլային՝ թէ որ երեքը մէկէն դարձեալ մէկ գերագոյն իշխանութենէ մը կառավարուէին ու անանկով Գաղիա, Աւստրիա և Ռուսիա մէկ տէրութեան երեք մասերն ըլլային, չէ թէ ամէն մէկը գերագոյն ու իրարմէ անկախ կառավարութիւններ: Ասանկ ալ աս երեք եկեղեցիները:

Թէ որ աս երեքն անանկ մէկ ըլլային՝ ինչպէս ամէն մէկն ինք իր մէջը մէկ է,

մինակ ան առեն ճշմարտութեամբ մէկ կրնայի՞ն թէ՛ ըլլալ ու թէ՛ ըսուիլ ։ Ինչու Էջմիածնական եկեղեցին մէկ է . անշուշտ վասն զի մէկ կաթուղիկոս մ՚ունի՝ որուն իշխանութիւնը ամէն եպիսկոպոսաց թեմերուն վրայ կը տարածուի (¹)։ Վերցուր աս ամէն թեմերը կապող կաթուղիկոսական իշխանութիւնը , այնչափ Հայոց եկեղեցի կայ՝ որչափ Հայ եպիսկոպոս ունեցող գաւառ կամ քաղաք կայ ։

Ուստի Էջմիածնական եկեղեցւոյ քրիստոնէականներուն սորվեցուցած իրարմէ անկախ եկեղեցական գլուխներու վարդապետութեան նայելով , ուրիշ բան չի մնար , բայց եթէ սուտ եւ երեւակայական միութիւն , և ճշմարիտ ու իրական բաժնութիւն մը ։

Դարձեալ՝ վերոյիշեալ քրիստոնէականաց ու Էջմիածնական եկեղեցւոյ գլխոյն վարդապետութիւնը , ինչպէս ըսինք , եկեղեցւոյ մէջ չէ թէ մէկ ընդհանուր , հապա շատ եկեղեցւոյ երեւելի գլուխներ , չէ թէ մէկ ընդհանուր Քրիստոսի փոխանորդ , հապա շատ Քրիս-

տոսի փոխանորդներ կը սորվեցունէ։

Բայց Էջմիածնական եկեղեցին, ինչպէս նաև իրեն քրիստոնէականներն, անշուշտ ան ալ պէտ'որ սորվեցընեն՝ թէ եպիսկոպոսաց ատենուան կամ հիմնական եկեղեցին հարկաւ անանկ երևելի պէտ'որ ըլլայ. ինչպէս որ առաքելոց ատեն էր, ու առաքելոց ատենն ալ եկեղեցին անանկ երևելի պէտ'որ ըլլար, ինչպէս որ Քրիստոսի Տեառն մերոյ մարմնաւոր ներկայութեանն ատեն եղած էր։

Արդ Քրիստոսի Տեառն մերոյ մարմնաւոր ներկայութեանն ատեն առաքելոց մէջ՝ նաև Էջմիածնական եկեղեցւոյ վարդապետութեան համեմատ՝ մէկ ընդհանուր գլուխ մը կար, ամենուն հրամայող մեծ մը, գերագոյն «վարդապետ և տէր» մը՝ ինքն Տէրն Յիսուս Քրիստոս։

Ուստի թէ որ եկեղեցին այնպէս պէտք է ըլլալ՝ ինչպէս Քրիստոս Տէրն մեր կազմեց, հարկ էր որ առաքելական եկեղեցւոյն մէջ ալ՝ առաքելոց ընդ-հանուր գլուխ մը, մարդոյն Քրիստոսի պէս,

հարկաւոր եղած ատեն ամենուն հրամայելու իշխանութիւն ունեցող մեծ մը, « անդրանիկ մը՝ ի մէջ եղբարց բազմաց » գտնուէր:

Ինչպէս Քրիստոսի, ինչպէս առաքելոց ատեն, նոյնպէս անոնց յաջորդող եպիսկոպոսական եկեղեցւոյն մէջ՝ դարձեալ եպիսկոպոսաց երեւելի գլուխ մը, Քրիստոսի ու Պետրոսի պէս ամենուն հրամայող մեծ մը՝ իբրեւ ընդհանուր « հայր և վարդապետ » պիտի որ գտնուի, թէ որ կ'ուզուի՝ որ Քրիստոսի Տեառն մերոյ եկեղեցին անանկ շարունակուի՝ ինչպէս սկսած է:

Արդեն Էջմիածնական եկեղեցւոյ քրիստոնէականներուն սորվեցուցած առաքելոց ու եպիսկոպոսաց իշխանութեանը բացարձակ հաւասարութեանը եկեղեցին ան կազմութիւնն ու ան սահմանադրութիւնը չ'ունենար՝ ինչ որ Քրիստոսի Տեառն մերոյ մարմնաւոր կենաց ատենն ունեցաւ:

Դարձեալ՝ Էջմիածնական եկեղեցին իրենն քրիստոնէականներուն մէջ՝ յաջնա-

կան եկեղեցին զինուորեալ եկեղեցիէն կը բաժնէ, ինչպէս որ կաթուղիկէ ուղղափառ վարդապետութիւնն ալ կ՚ընէ. բայց ի՞նչ է՝ որ նորէն իրարու կը խառնէ, երբոր անդիէն զփառաց Թագաւորը՝ որ նոր իրենց արդարութեան պսակով վարձատրուած սուրբերուն գլուխն անցած է, ասդիէն դեռ պատերազմի մէջ ճգնող եկեղեցւոյն հաստատողը՝ ինչպէս հօն, նոյնպէս հոս՝ գլուխ ըլլալու կը կանչէ, ուր որ ինք մարմնոյ օրերը լմնցուցած՝ իր Հօրը քով դարձած է, ու մեզի հետ ալ չի կրնար ուրիշ կերպ ըլլալ՝ բայց եթէ փոխանորդով: Զինուորեալ եկեղեցին յաղթական եկեղեցիէն ան ատեն ըստ արժանւոյն կը զանազանուի՝ երբոր մոլորութեան ու մեղաց դէմ զինուորեալ եկեղեցին չէ թէ մինակ զինուորեալ անդամներ, հապա նաև զինուորեալ գլուխ կ՚ունենայ:

Այո՛ ներկայ է Քրիստոս Տէրն մեր զինուորեալ եկեղեցւոյ, բայց փոխանորդութեամբ: Ինչ որ զինուորեալ եկեղեցին Քրիստոսի Տեառն մերոյ հարսնացուն

ըստ մարմնոյ որդւոյն՝ Ադամայ ըստ հոգւոյ հայրն ու բոլոր անոր սերընդեանը երկրորդ Ադամն էր։ Ասով ամէն մարդիկ փրկուեցան՝ որ Քրիստոս Տէրն մեր չէ թէ իբրեւ առանձին մարդ, հապա իբրեւ բոլոր մարդկան մի միայն գլուխ, իբրեւ բոլոր մարդկան երկրորդ ըստ հոգւոյ նախահայր ամենուն համար Աստուծոյ Հօր հատուցում ըրաւ։ Անանկ՝ որ ինչպէս մէկ մարդով ամէն մարդկան կորուստ, սանկ ալ մէկ մարդով Քրիստոսի ամէն մարդկան փրկութիւն եղաւ։

Ուստի Քրիստոս Տէրն մեր եկեղեցւոյ մէջ կատարեալ փոխանորդութիւն ան ատեն կ'ունենայ՝ երբ որ իբրեւ սանկ մէկ հատէ ու իրեն նման չունեցող մարդ, այս ինքն իբրեւ երկրորդ Ադամ ու փրկեալ սեռին ընդհանուր ըստ հոգւոյ Հայր՝ գլխաւորեալ եկեղեցւոյ մէջ մէկ հատիկ ընդհանուր փոխանորդ կ'ունենայ, չէ թէ շատ մը փոխանորդներ։

Իրօք տիեզերական ժողովոց համեմատ՝ Պետրոս ու իրեն յաջորդը պարզապէս Աստուծոյ փոխանորդ չէ, հապա

Քրիստոսի Տեառն մերոյ փոխանորդ է՝ որմէր ինչպէս ճշմարտապէս Աստուած է, նոյնպէս ճշմարտապէս մարդ ըլլալով զարմանք չէ՝ որ իր եկեղեցւոյն մէջ՝ մէկ կողմանէ իբրև որդի մարդոյ՝ իրեն համագոյակից մարդ մը իրեն փոխանորդ այնպէս կարող ու պէտք ըլլայ յերևելիս ունենալ, ինչպէս մէկալ կողմանէ՝ իբրև Որդի Աստուծոյ իրեն համագոյակից Հոգին սուրբն՝ իրեն յաներևոյթս փոխանորդ ունի։ Ա՛ն որն որ խոստացած է թէ մինչև ցկատարած աշխարհի՝ իր արեամբը փրկած մարդկային սեռին ներկայ ըլլայ, չէ թէ միայն իբրև աստուածային Հօրը Միածին, հապա միանգամայն իբրև իր մարդկային Մօրն անդրանիկ՝ եկեղեցւոյ մէջ կ'երևցուի, վասն զի իրօք ոչ միայն Աստուած, հապա միանգամայն մարդ է։ Ուստի ինչպէս Քրիստոս Տէրն մեր կրկին էր՝ երևելի մարդ եւ աներևոյթ Աստուած, ու մարդիկ կրկին են, երևելի մարմին և աներևոյթ հոգի, ու Քրիստոսի Տեառն մերոյ՝ մարդկան համար հաստատած խորհուրդ-

ներքէն ամէն մէկը միշտ կրկին, այս ինքն երևելի նշաններ ու աներևոյթ շնորհքներ են, ասանկ ալ եկեղեցւոյ կառավարութիւնը կրկին կողմ ունի՝, մարդկային ու աստուածային, երևելի եւ աներևոյթ, վասն զի կրկին կառավար կայ, յերևելին՝ Պետրոս ու յաներևոյթն՝ մխիթարիչ Հոգին սուրբ, երկուքն ալ ի Քրիստոսէ առաքուած, մէկը յերկրէ ու մէկալը յերկնից.

Աս ամէն համեմատութիւններն ու չափակցութիւնները կը խանգարին՝ երբ որ երևելի եկեղեցւոյ աներևոյթ գլուխ տրուի, իբրև թէ եկեղեցին երկրի վրայ երկնից հրեշտակներէն կազմուած ըլլայ։

Ասկէ փոքր չէ ան անհամաձայնութիւնը՝ զորնոր Աստուծոյ հին և նոր տըն-տեսութեանց մէջ կը գտնէ Էջմիածնական բազմագլուխ դրութիւնը։

Որո՞ւն ծանօթ չէ՝ թէ հին օրինաց մէջ բովանդակ աստուածային պաշտաման վրայ Դայն Դէկ անձ մը իբրև Քահանայապետ կը կենար։ Ի՞նչ կրնար ըլլալ աս մի միայն քահանայապետը՞, բայց ե-

կան եկեղեցւոյ ընդհանուր հսկողութեան իրաւանցը տեղի չի տար, ո՞ր առաքինութեան անուամբ նոյնը կ՚ընէ ։ Խոնարհութեան ո՞ր աստիճանն է արդեօք՝ երբոր ամենայն Հայոց հոգեւոր գլուխ ինք զինք թէ կ՚անուանէ և թէ ամէն Հայ եպիսկոպոսներէն՝ զորոնք Էջմիածնական վարդապետութեան համեմատ՝ իբրև թէ Քրիստոսի Տեառն ՚մերոյ դրութեամբը, իրեն հետ բոլորովին հաւասար գիտէ, հնազանդութիւն կը պահանջէ, և չհնազանդողը կը պատժէ ։

Կաթուղիկէ եկեղեցւոյ գլխաւորութեան վարդապետութիւնը նաև աւել իբրև ճշմարիտ ինք զինք կ՚ապացուցանէ՝ որ հնազանդութեան ընդհանրականութեամբը և բազմաց մէջ միոյ մին գերագոյն գըլուխ մը ի Քրիստոսէ դրուած սորվեցընելով՝ մարդկային հպարտութեան ճարակը քիչցուցած է ։ Ասոր հակառակ՝ Էջմիածնական բազմագլուխ դրութիւնը, որչափ իրարմէ անկախ գերագոյն իշխանութիւններն օրինաւոր կը հրատարակէ, այնչափ հնազանդութիւնը կը մոռնա-

ւորէ և հլութեան հոգին կը մարէ ։ Ճիշդ հպարտութեան դէմ իր հաշիւն ըրած է մեր Տէրը՝ երբոր (ինչպէս Ս. Հայր մը կ'ըսէ) երկոտասանից մէջէն ղէֆ ամենուն գլուխ ընտրելով բաժանմանց առիթը վերցուցած է ։ Բազմագլուխ իշխանութեան դրութիւնն ատոր հակառակ՝ վերցընելով աս Աստուածմէ դրուած կեդրոնը՝ փառասիրութեան մեծ ասպարէզ մը բացած է, դրութիւն մը՝ որնոր բաւական ոյժ ունի այնչափ լրարմէ անկախ եկեղեցիներ շատցունելու որչափ որ եպիսկոպոսներ կրնան ըլլալ, դրութիւն մը՝ որնոր բաւական նաև ի գործադրութեան պտղաբեր եղած է այլ և այլ անկախ գլուխներ երևան հանելու, մանաւանդ Յունական հերձուածոյն մէջ ։

Չի կրնար ըլլալ՝ որ դատապարտանայ ան կանոնը՝ զորնոր մեր Տէրը մ'եզի տուաւ , երբոր ըսաւ թէ ծառը պտուղէն պէտք է ճանչնալ և թէ փուշերէ՝ խաղող, և տատասկէ թուզ չի քաղուիր ։ Թէ որ ուրիշ բան մը չ'ըլլար՝ զմեզ գլխաւորութեան վարդապետութեանը համոզելու, մինակ

իւրեն գործերն ալ այս բաւական էին ։

Ամէնքնիս թէ գիտենք և թէ կը հաւատանք՝ որ մարդկային սերմին և անոր ազատ պատմութեան վրայ հսկող ու անօրէն նախախնամութիւն մը կայ ։ Թէ որ հռոմէական դաւհերիցութիւնը մարդկային չէնք մըն է , ի՞նչ է ասոր ու նոյն նախախնամութեան մէջ զանուած մեծ հակասութիւնը , ու անեղծուածը , ու այնչափ հազարաւոր տարիներով կեցած հաստատակերպ ամբարտաւանութեան մը հիմնարկութիւնը ՝ ցեղը իր բովանդակ զօրութեան մէջ պիտո՛ր ունէ՝ մեծամեծ քրիստոնէական հանճարներէ հաւաքուած , ազգերէ ծառայուած , թագաւորներու հետ դաշնադրութեամբը զօրացած , չկայ ժողովուրդ՝ չկայ երկիր՝ ուր բազմամբոխ հետևողներ չունենայ ։ զարմանք է՝ որ իր բոյնը ճշգրիւ երկրագնդին ան կողմերուն մէջ աւելի ամբողջութիւն ունի՝ ուր աւելի իմացականութիւն , աւելի հանճար կայ ։

Բայց ասկէ աւելի՝ աս կարծուած ամբարտաւանութեան եղջիւրը բուն Ա․․

ուծոյ տան, սրբութեան տեղւոյն մէջ կեցած է։ Քան զկաթուղիկէ եկեղեցւոյ նուիրապետութիւնն՝ ի՞նչ մեծ ու բարձր բան կայ։ Այս նուիրապետութիւնը կազմող եպիսկոպոսներէն ամէն մէկը՝ ինք զինք [illegible] դրութեամբ իր առաքելական թեմին վրայ տեսուչ դրուած գիտէ, իր իշխանութեան համար այնպէս յերեւելիս Հռոմայ եպիսկոպոսին շնորհման, ինչպէս յաներեւոյթ Հոգւոյն որոյ կոչման ըլլինք առաքելական ճանչնալով։ Նոյն եպիսկոպոսունքն են՝ որ նախ Առաքելոյ աթոռնին առջեւ աւետարաններու վրայ Հռոմայ եպիսկոպոսին գերագոյն հովուութեան դաւանանքը կ՚ընեն, որ ետքէն միլիոնաւորներու կրկնել տան։ Անանկ՝ որ Հռոմայ եպիսկոպոսն երեւելապէս ի վերայ ամենայն երիք եկեղեցւոյ կնքած է. Խորհրդոց մատակարարութիւն, վարդապետութեան քարոզութիւն, օրինաց դրութիւն ու գործադրութիւն ի վերջին և ի վերին ատենի իրենն է։ Ասոնք իրեն համար դատարկ պահանջումներ չեն։ Անանկ

մեծայաղթ (ինչպէս կ'ըսուի՝ յափշտակ-
ուած) էշխանութեան՝ որուն ոչ պատմու-
թիւն և ոչ վիճակագրութիւն հաւասար
քան մը կը ցուցընէ, իրօք անանկ մե-
ծայաղթ հնազանդութեան կամ ստորա-
կարգութիւն մը կը համապատասխանէ՝
որուն նոյնպէս օրինակ մը ոչ բռնակա-
լութեանց և ոչ օրէնսգիտութեանց սա-
րգիրներն ունին։

Այն մոլորութիւն իրեն ոտքին տա-
կը ճմլուած է, եկեղեցւոյ սկիզբէն մին-
չուկ հիմա ինչ մոլորութիւն որ եկեղե-
ցիէն մերժուած ու յաղթահարուած է,
միշտ իրեն ձեռօքը գլխաւորաբար մեր-
ժուած ու ջախջախուած է։ Աչքէ անցու-
նենք Արևելից եկեղեցական պատմու-
թիւնը. հիմա ի՞նչ վիճակի մէջ պիտ'որ
գտնուէր Արևելեան եկեղեցին՝ թէ որ
Առաքելական Աթոռը չհսկէր՝ հետ ըղ-
հետէ Արևելք բուսնող մոլորութիւն-
ներէն նոյն Արևելեան եկեղեցին ա-
տենին ազատելու։ Բայց ինչո՞ւ արդ-
եօք աշխար՞քիս ամենէն ժանտ, ու-
րավհետեւ՝ ինչպէս կ'ուզուի, ամենէն

աս եկեղեցին այնպէս բարձրագոյն կարգի բարոյականութիւն կամ առաքինութիւններ կը ցուցընէ, որոնք իրմէ դուրս անոր համար չեն գտնուիր՝ որովհետև սրբարար ու փրկարար զօրութիւնը (չափահասներու համար) հոս ու մինակ հոս գերազանցութեամբ կը գործէ։ Ո՞ւր անցեալ ու ներկայ օրինակներ կան տեսնելու՝ որ աշխարհային ոգին, մէկ կողմանէ՝ իբրև աչաց ու մարմնոյ ցանկութիւն՝, մէկալ կողմանէ իբրև ամբարտաւանութիւն, չէ թէ մինակ պատուիրանաց զգուշաւոր պահպանութեամբ մը կապուած, հապա աւետարանական խրատներու յանձնառութեամբ ընկճած ըլլայ և անանկով աշխարհ՝ իր հոգւովը, եկեղեցի Աստուծոյ Հոգւովը՝ իրարու ի խաչ ելած ըլլան։ Զդեգերինք շատ համեմատութիւններու։ Ո՛ւր մարմնոյ և արեան պատերազմին յաղթութիւնն այնչափ փառաւոր է, Աստուծոյ գառին զըրօշն այնպէս շքեղ կը ծփայ։ Կաթուղիկէ եկեղեցւոյն յատուկ է՝ որ (Յոյն) հերձուածողներէ ու (Բողոքական) հերետիկոսներէ մեղադրութիւն կրէ՝ թէ

և ծառանալու որոշուած էր՝ որ իր ոտքե-րը երկնից թռչուններուն դադար տան,* ու Բաբելոնին ու անոր բռնաւորին վրայ ալ՝ շատ չանցած «Թագաւորութիւնք քննէ անցաւ» մը լսուելու էր։ Ուստի պէտք է դառնալ կրկնել՝ թէ կամ Հռո-մէական եկեղեցւոյ գլխաւորութեան հետ՝ նախախնամութիւնն ու Հոգւոյն սրբոյ եկեղեցւոյ վրայ տեսչութիւնը վերցունելու է, և կամ այն նախախնա-մութեան ու աս տեսչութեան հետ Պետ-րոսի և անոր յաջորդացը գլխաւորու-թիւնն ընդունելու է իբրև Աստուծմէ յայտնուած ճշմարտութիւն։

Աս կերպ եւ ասչափ հակառակութիւն-ներու կը պատահի այն անկախութեան վարդապետութիւնը՝ որուն վրայ Էջմի-ածնական եկեղեցւոյ քրիստոնէական-ները բոլոր նոյն եկեղեցւոյն շէնքը հիմ-նած են, այն վարդապետութիւնը՝ որ ինչպէս տեսանք, կաթուղիկէ ուղղափառ վարդապետութեան տրամաչափապէս հակառակ է, եկեղեցական իշխանու-թեան գաղափարին դէմ է, սուրբ Գիր-

քը կը բռնաբարէ, աւանդութեան, նաեւ Հայաստանեայց եկեղեցւոյ աւանդութեան հակառակ կ'ելլէ, նոյն խսկ Էջմիածնական եկեղեցւոյ ու անոր քրիստոնէականներուն ուրիշ վարդապետութիւնները կ'աւրէ, որչափ եպիսկոպոս՝ այնչափ իրարմէ անկախ Քրիստոսի եկեղեցիներ կը բազմացընէ, պատրիարքները կամ կաթուղիկոսներն իրենց զուգահաւասար եպիսկոպոսներու վրայ բռնաւորներ կը ձեւացունէ, եկեղեցւոյ շարունակութիւնը՝ անոր սկզբանն աննման կ'ընէ, եկեղեցւոյ միութիւնը եկեղեցիներու բազմութեան կը բ ժնէ, զինուորեալ եկեղեցին առանց զինուորեալ գլխոյ կը թողու, երեւելի եկեղեցւոյ աներեւոյթ գլուխ կու տայ, հին եւ նոր օրինաց միաբանութիւնը կ'աւրէ, հաւատոյ եւ բարուց խնդիրներուն աստուածային հաւատոյ ստուգութեամբ որոշուիլն՝ ալ անկարելի կ'ենթադրէ, ճշմարտութիւնը ճանչնալու նկատմամբ՝ հին օրինաց վիճակը նոր օրինաց վիճակէն աւելի երջանիկ կը ցուցընէ, ասանկով հաւատոյ անտարբե-

րութիւն՝ այս ինքն՝ ասանկ ալ անանկ ալ հաւատալու ազատութիւն կու տայ . եկեղեցւոյ անսխալ հեղինակութիւնը տիեզերական ժողովներով մէկտեղ կը փճացունէ , վերջապէս թէ՛ ընդհանուր աստուածային նախախնամութիւնն եւ թէ՛ Հոգւոյն սրբոյ եկեղեցւոյ մէջ մնանաւոր ներկայութիւնը սուտ կը հանէ :

Ուրիշ ծանր ծանր հետեւութիւններ ունի աս բացարձակ անկախութիւնը՝ որոնք չէ թէ մինակ ի տեսական դրութեան , հապա նաև ի գործադրութեանէ :

# Ա.

## Կաթողիկէ Հռոմէական եկեղեցիէն դուրս մեղաց թողութիւն կա՞յ թէ չկայ։

Հաւատարապէս սուտ է ան վարդապետութիւնն՝ որնոր գթութեան համաձայն չէ, եւ ան գթութիւնն՝ որնոր ճշմարտութեան հակառակ է։ Չի կրնար մտածուիլ առ նուիթս մէջ՝ ուրիշ վարդապետութիւն եւ ուրիշ գործողութիւն մը՝ որուն մէջ թէ՛ գթութեան եւ թէ՛ ճշմարտութեան իրաւունքն այնպէս անարատ պահուած ըլլան, ինչպէս Կաթողիկէ Հռոմէական եկեղեցւոյ սորվեցուցածն ու գործածը։

Այո, Կաթողիկէ Հռոմէական եկեղեցիէն դուրս մեղաց թողութիւն չկայ. ասիկա իրեն անփոփոխելի վարդապետութիւնն է, բայց Հռոմէական եկեղեցին իրմէ դուրս չի սեպեր այնպիսիներն՝ որոնք միայն ծանօթութեան կամ ընդունման պակասութեամբ անոր մէջ չեն։ Հազարաւորներով, բիւրաւորներով ու միլիոնաւորներով կը համրուին անոնք՝ որոնք բարեմտութեամբ, ուստի եւ առանց իրենց յանցանքին իրենց Մօրմէն հեռու ինկած

են՝ անանկ հովիւներուն ետեւէն մոլորելով՝ որոնք ոչխարաց գաւիթը դռնէն մտած չեն։ Ասանկներն երբեք դադրած չեն եկեղեցւոյ որդիք եւ անոր արօտին խաշն ըլլալէն։ Ուստի ոչ կրնանք ըսել որ իրենց ճանչցած ճըշմարտութեան դէմ կամակոր անհնազանդութիւն մը դնելով իրենց զղջումը կապուած ըլլայ, վասն զի ասանկ անհնազանդութիւն մը չունին, եւ ոչ ալ կրնանք մտածել՝ որ խորհրդական արձակում առնող պակսի, վասն զի բանալեաց իշխանութիւնը՝ որմէ ըստ ինքեան զուրկ են հերձուածոյ մէջ քահանայք, եկեղեցւոյ մայրական գթութենէն կը շնորհուի՝ որ միայն անոնց համար ունենան, եւ ասանկով չկայ բան մը՝ որ զիրենք մեղացթողութեան պարգեւէն զրկէ։

Բայց իրաց վիճակը բոլորովին կը փոխուի՝ երբ որ տգիտութիւնը գոնէ բոլորական չէ, ճշմարտութեան եւ ապահովութեան վրայօք խոհական կասկած մը միտքերը կը զարնէ՝ մի եւ նոյն ատեն զգալով կամ մտադիր ըլլալով՝ որ ծանր պարտաւորութիւն կայ ինք զինք առաջի Աստուծոյ՝ որոշելու ստուգագունին եւ ապահովագունին կողմը։ Հոս բարեմտութիւնը դադրած է՝ երբոր աս խոհական կասկածը կ'արհամարհուի կամ նոյնը խղդելու կամ խափելու ջանք ձեռք կ'առնուի։ Անկէ ետքն ոչ ոք միայն նիւթովը կա-

թուղիկէ Հռոմէական եկեղեցիէն բաժնուած է, հապա Իբր+ անկէ դուրս է, եւ ան ամէն հետեւութեանց ենթակայ՝ որոնք որ անկէ դուրս կեցողներուն բաժինն է. վասն զի «եկեղեցական մարմնոյն միութիւնն այնչափ ծանրակշիռ է՝ որ միայն ան միութեան մէջ եղողներուն եկեղեցական խորհուրդները փըրկարար են եւ միայն ան միութեան մէջ պահք, ողորմութիւն եւ քրիստոնէական գինուորութեան ուրիշ գործքերն ու կրթութիւնները յաւիտենական վարձք կը ծնանին։ Մէկը, ընէ ողորմութիւններ՝ որչափ կուզէ, նաեւ Քրիստոսի անուան համար արիւն թափելու ըլլայ, թէ որ կաթուղիկէ եկեղեցւոյ ծոցը եւ անոր միութեանը մէջ չի յարատեւեր, չի կրնար փրկուիլ։ * »

Ո՞վ կրնայ մեր Էջմիածնական եղբայրներէն անանկներուն թիւը սահմանել՝ որոնք իրենց բարեպաշտութեանը մէջ կրնան այսօր արդարանալ, բայց կրնան ալ վաղը Աստուծոյ առջեւ պարտաւոր ըլլալ՝ փոխուելով իրենց մտաւոր վիճակը եւ չփոխուելով իրենց ի հաւատոյս վարմունքը։ Թէ որ չենք սխալիր, ան ամէն տեղերը ուր որ Էջմիածնականք՝ Կաթուղիկէականաց հետ յաճախ նիւթական եւ մտաւոր յարաբերութիւն ունին,

* Ժող. Փլոր. Վ. Ճ. վասն Յակոբիկեանց։

քիչ սրտեր տարակոյսներով եւ կասկածներով չեն տանջուիր։

Ի՞նչ կ՚ըսենք՝ տարակոյս. չենք կարծեր՝ որ շատ քիչ ըլլայ մեր ընթերցողաց մէջէն անանկներուն թիւը՝ որոնք ցայս վայր խօսուածներուն անհաւան չեն, մանաւանդ թէ կատարելապէս համոզուած են՝ թէ ան Կաթուղիկէ Հռոմէական եկեղեցին՝ որուն խօսքերը միշտ արդարացած են եւ գործքերն իր կոչմանը կը վկայեն, չի կրնար բանաւորապէս մտածուիլ՝ որ մինակ հօս, այս ինքն Գլխաւորութեան եւ անոր յարակից խնդիրներուն նկատմամբ, ստէ եւ մեղանչէ ամէն իր հետեւողներովը, եւ կ՚ըմբռնեն կամ կրնան ըմբռնել վերջապէս՝ որ աս վարդապետութեան վրայ անանկ հաւաստիք ու նշանք կը զուգընթանան՝ որ անոր ճշմարտութիւնը տարակուսի տակ ձգուած պահէն՝ բոլոր քրիստոնէական կրօնքին շէնքը կ՚երերայ կ՚իյնայ։

Առաջիններուն խոհական կասկածը եւ վերջիններուն համոզումը Աստուծմէ իրենց պարգեւած լոյս մըն է՝ որն որ միայն ճշմարիտ եկեղեցւոյ ճամբան իրենց առջեւը կը լուսաւորէ։

Բայց ինչո՞ւ արդեօք նոյնը, ընդհանրապէս խօսելով, ապարդիւն կ՚ըլլայ։

Չենք կրնար Աստուծոյ շնորհաց գաղտնիքը հետազօտել, բայց գիտենք ինչ բաներ

են՝ որոնցմով անոր ձգած սերմերն անպտուղ ըլլալու վտանգի մէջ կ'ըլլան հասարակօրէն. հինցած քաղցր [illegible] կամ [illegible] մը, որուն մէջ լայնած հանգչած են, [illegible] ջերմ յարաբերութիւններն՝ որոնք մեռանց եւ հեռուանց ելք ու՞մուտք կը պաշարեն, վերջապէս բիւր կենցաղական [illegible]՝ որոնց մէջ իւրաքանչիւր բռնուած կ'արգելուին.

Ի վերայ այսր ամենայնի՝ կը ճանչնանք մեր բարեկամաց մէջ անանկ երկիւղած սրտեր որոնք այս ամէն կապերը, երկնաւոր զօրութեան նպաստով, գուցէ իբրեւ Սամփսոն կը խզէին, թէ որ ուրիշ պատրանք մը իրենց խամվեալ մտքերուն իբրեւ [illegible] [illegible] չիներկայանար.

Կը կարծենք թէ չենք սխալիր՝ երբոր այս մեր բարեկամներուն դէմքին վրայ սա մտածութիւնը ցոլացած տեսնենք եւ խօսքերնէն սա իմաստը հաւաքենք.

1. «Եթէ մեր կղերը ճշմարտութեան լուսոյ «մը կորսունցուցած է, անոր մոլորութիւնը «զիս չի կրնար արգելուլ՝ բոլորով սրտիւ ըն«դունելու ան ամէն բան՝ զորն որ Կաթու«ղիկէ Հռոմէական եկեղեցին կ'ընդունի, եւ «մերժելու ան ամէն բան՝ զորն որ անիկա կը «մերժէ».

2. «Եթէ մեր կղերը կը մերժանչէ ի Քրիս-

« տուաւ Տէրունէ մերմէ սահմանադրուած հը-
« նազանդութենէն ինք զինք անկախ ընելով,
« առով՝ նաեւ հռոմէական եկեղեցւոյ վկայու-
« թեանը համեմատ, չի կորսնցըներ իր քա-
« հանայական կարգին կնիքը, ուստի իր տըւ-
« ած խորհուրդները բաւական են մատակա-
« րարելու ինծի ան շնորհքը՝ որն որ մեղքը
« կը ջնջէ եւ յաւիտենական կենաց պտղա-
« բերութիւն կուտայ »։

« Մնացածն ոչ իմ ձեռքս է եւ ոչ ինձմէ
« կը պահանջէ Աստուած, վասն զի առ այս
« կոչած ալ չէ։ Միայն աղօթք մը պարտական
« եմ Աստուածային Նախախնամութեան՝ որ
« կարճեցընէ աս աղստամբութեան ժամանա-
« կը՝ շուտով ծագելով ան երկնաւոր այցե-
« լութեան օրը որն որ երկու կղերին հաշտու-
« թեանը սահմանուած է։ Ասանկով ոչ հա-
« ւատոյ պատուիրանն եւ ոչ մեղաց թողու-
« թեան հարկը զիս կ'ստիպէ մէկ հասարա-
« կութենէ մէկալ հասարակութիւն փոխուե-
« լու »։

Ահաւասիկ Էջմիածնական եկեղեցւոյն ընդհանուր նուաբեկութեանը մէջ ան ջուրա-ականը՝ զորն որ շատերը իբրեւ վերջին փըր-կութեան տախտակ գրկած են։

Այո, Էջմիածնական կղերն իր անկախու-թեամբը քահանայական կարգի կնիքը կորսն-

ցուցած չէ, բայց կաթողիկէ համէական եկեղեցւոյ (ինչպէս նաեւ յունական արեւելեան եկեղեցւոյ) վարդապետութեան եւ գործողութեան համեմատ՝ մեղաց թողութեան համար՝ չէ թէ մինակ եպիսկոպոսութեան կամ քահանայութեան կարգ, հապա նաեւ իշխանութիւն կը պահանջուի։

Վասն զի մեղաց թողութիւն ըլլալու համար երկու բան հարկաւոր է. մէյմը ապաշխարողին կողմանէ, մէյ մ'ալ պաշտօնէին կամ քահանային կողմանէ։ Ապաշխարողին կողմանէ՝ ամէն մեղացը զղջում, պաշտօնէին կողմանէ ալ՝ չէ թէ միայն կարգ, հապա նաեւ իշխանութիւն կամ իրաւասութիւն պէտք է։

Կաթողիկէ եկեղեցիէն դուրս ապաշխարողն ամէն մեղացը վրայ զղջալ չի կրնար՝ երբ որ գիտութեամբ ու կամօք ան եկեղեցիէն դուրս կեցած է, եւ ոչ ալ նոյն Կաթողիկէ եկեղեցւոյ հնազանդութեան մէջ չգտնուող պաշտօնեայն (քահանայ կամ եպիսկոպոս) իշխանութիւն կամ իրաւասութիւն ունի՝ որ անանկ կամօք ու գիտութեամբ եկեղեցիէն դուրս կեցող ապաշխարողն արձակէ։ Մանաւանդ թէ ճշմարիտ ճանչցած եկեղեցիէն կամօք ու գիտութեամբ դուրս կեցողը եւ ոչ մէկ մեղացը վրայ կրնայ ճշմարիտ զղջում ունենալ, եւ իրեն ալ անտրամա-

դրութեանը մէջ՝ քահանայ մը իրաւասութիւն ունենայ ալ նէ, չի կրնար արձակմանը անոր օգնել ։

Ասանկով՝ Կաթուղիկէ Հռոմէական եկեղեցիէն դուրս թէ՛ հաղորդութեան եւ թէ՛ Եւ խոստովանութեան պակասութեամբ բոլոր ապաշխարութեան խորհուրդը ոչինչ կ'ըլլայ ։

Այսչափ ծանրակշիռ վարդապետութիւն մը՝ որն որ այնչափ բիւրաւորներու երջանիկ կամ ապերջանիկ յաւիտենականութեանը վերաբերութիւն ունի, կարծիք մը չէ, հաւանականութիւն մը չէ, Կաթուղիկէ եկեղեցւոյ՝ տիեզերական ժողովներով հաստատուած եւ ի ծագաց մինչեւ ի ծագս երկրի քարոզուած ճշմարտութիւն է ։

Լսենք աս ժողովներէն մէկը ։ « Թէ որ ամէն վերստին ծնեալները, կ'ըսէ Տրիդենտեան ժողովը, անանկ Աստուծոյ երախտագէտ ըլլային՝ որ մկրտութեան ատեն Աստուծոյ բարերարութենէն ու շնորհքէն ընդունած արդարութիւննին միշտ պահէին, անատեն հարկ չէր ըլլար՝ որ մեղաց թողութեան համար մկրտութենէն ուրիշ խորհուրդ մը դրուի ։ »

« Բայց որովհետեւ Աստուած՝ որն որ մեծ է ողորմութեամբ, կը ճանչնար մեր զանգուածը, նաեւ անոնց համար՝ կենաց դեղ

մը պատրաստեց, որոնք որ անկէ ետքը ի-
րենք զիրենք մեղաց ծառայութեան ու սա-
տանայի իշխանութեանը մատնեցին, այս
ինքն Ապաշխարութեան խորհուրդը, որով
մկրտութենէ ետքն ինկողներուն Քրիստոսի
մահուանը բարերարութիւնը հաղորդուի։ »

Թէ որ Հռոմէական եկեղեցիէն դուրս ե-
ղողներն, այս ինքն անոր իշխանութիւնը
չճանչցողներն ալ՝ որոնց մէջ են նաեւ Էջմի-
ածնական եկեղեցւոյ հաւատացեալներն, աս
« մեր զանգուածէն » են, ու ինչպէս ամէն
մարդ՝ նոյնպէս իրենք ալ մկրտութենէն ետ-
քը զիրենք մեղաց ծառայութեան մատնած
կրնան ըլլալ, ուրիշ ի՞նչ ճամբով « Քրիստոսի
Տեառն մերոյ մահուանը բարերարութիւնը »
կարող է հաղորդուիլ, բայց եթէ Ապաշխա-
րութեան խորհրդոյն ձեռօք։

« Ապաշխարութեան խորհուրդը Տէրն մեր
գլխաւորաբար ան ատեն հաստատեց՝ երբ որ
ի մեռելոց յարուցեալ՝ փչեց իր աշակերտնե-
րուն ըսելով. Առէք Հոգի սուրբ, որոնց մեղ-
քերը որ թողուք, անոնց կը թողուի, եւ ո-
րոնցը որ բռնէք, կը բռնուի։ Բոլոր Հարք
միաբան ասանկ իմացան՝ որ ասանկ նշանա-
ւոր գործով եւ այսպիսի յայտնի խօսքերով՝
Առաքելոց եւ անոնց օրինաւոր յաջորդացը՝
մեղքերը թողլոյ ու բռնելոյ իշխանութիւն

հաղորդուած է՝ մկրտութենէ ետքն ինկած հաւատացեալները (Աստուծոյ հետ) հաշտեցնելու։ »

Ուստի մեղաց թողութիւն տալու ու մկրտութենէ ետքը հաւատացեալներն Աստուծոյ հետ հաշտեցնելու մինակ Առաքելոց օրինաւոր յաջորդները կարողութիւն ունին այս բանքն՝ մինակ ան եպիսկոպոսները՝ որոնք Պետրոսի յաջորդին հետ միութեան ու հաղորդութեան մէջ են.

Ինչու.

Վասն զի Ապաշխարութեան խորհուրդը՝ դատաւոր ու յանցաւոր, ամբաստան ու դատ, վճիռ ու պատիժ կ՚ենթադրէ։

« Ապաշխարութիւնը, կ՚ըսէ նոյն տրիտենտեան ժողովը, ոչ Քրիստոսի գալստենէն յառաջ խորհուրդ էր, և ոչ ալ գալստենէն ետքը՝ մկրտութենէն յառաջ մէկու մը խորհուրդ է։ »

Որովհետեւ « եկեղեցին մէկու մը վրայ դատաւորութիւն չի կրնար բանեցնել՝ թէ որ դեռ մկրտութեան դռնէն եկեղեցւոյ մէջ մտած չէ։ Ի՞նչ գործ ունիմ, կ՚ըսէ Առաքեալը, զանոնք դատելու՝ որոնք որ դուրսն են։ »

« Բայց սանկ չէ անոնց համար՝ որոնք որ ընտանիք հաւատոյ են, զորոնք որ Քրիս-

տոս Տէրը մկրտութեան լուացմանը մէջ մը իր մարմնոյն անդամ ըրաւ. վասն զի անձնանկները, թէ որ անկէ ետքը ծանր (այս ինքն մահացու) յանցանքով իյնեն զիրենք արտաքսեցին, ուզեց՝ որ իբրեւ յանցաւոր ասոր (ապաշխարութեան խորհրդոյն) բեմին կամ ատեանին առջեւ ելլեն, որպէս զի քահանայից վճռովը կարող ըլլան ազատիլ։ »

« Թէպէտ քահանային արձակումը՝ չէ թէ իր՝ հապա ուրիշին բարերարութեանը մատակարարութիւն է, բայց պարզ պաշտօն մ՚ալ չէ՝ մինակ մեղաց թողութիւնը ծանուցանելու, հապա դատաստանական գործողութեան մը պէս է, որով՝ քահանայէն իբրեւ դատաւորէ մը վճիռ կը տրուի։ » — « Վասն զի Տէրն մեր Յիսուս Քրիստոս երբ որ երկրէ երկինք պիտ՚որ ելլէր, քահանաներն իրեն տեղը՝ իբրեւ վերակացուներ ու դատաւորներ թողուց՝ որպէս զի ամէն մահու չափ մեղքերն անոնց առջեւը հանուին, որոնց մէջ որ Քրիստոսի հաւատացեալները կ՚իյնան ու անանկով բանալեաց իշխանութեան համեմատ մեղքերը թող տալու կամ բռնելու վճիռը տան։ Յայտնի է՝ որ քահանայք այս դատաւորութիւնն առանց դատը ճանչնալու չեն կրնար բանեցընել, եւ ոչ ալ պատիժ դնելու ատեն՝ հաւասար արդարութիւն կրնան պա-

հել, թէ որ հաւատացեալք իրենց մեղքերը մէկիկ մէկիկ չեն պատմեր։ »

« Այգ՝ որովհետեւ նոյն իսկ դատաւորութեան բնութիւնն ալ կը պահանջէ՝ որ դատաստան կամ վճիռ մը միայն հպատակաց վրայ կարող ըլլայ տրուիլ, մինչ ալ համոզումը կար Աստուծոյ եկեղեցւոյն մէջ ու նոյնը իբրեւ բոլորովին ճշմարիտ կը հաստատէ (Տրիդենտեան տիեզերական) Սիւնհոդոսը՝ որ ոչինչ է, ան արձակումը՝ զորն որ եպիսկոպոսը կամ քահանան՝ անանկի մը վրայ կ՚արտաբերէ՝ որուն վրայ ոչ կարգաւոր եւ ոչ յանձնուած իրաւասութիւն (կամ իշխանութիւն) ունի։ » Նիստ ԺԴ. գլ. 6։

Ուստի՝ մինչուկ որ մէկ կողմանէ իշխող ու մէկալ կողմանէ հպատակ չ՚ըլլայ, ոչ դատաւոր կայ եւ ոչ դատեալ, ոչ արձակող եւ ոչ արձակեալ, ոչ խոստովանութեան պաշտօնեայ եւ ոչ ապաշխարող։

Օրինաւոր եպիսկոպոսները կարգաւոր իրաւասութիւն ունին։ Հռոմայ եպիսկոպոսը՝ որնոր բոլոր եկեղեցւոյ վրայ իշխանութիւն ունի, բոլոր ու ամէն մէկ հաւատացելոց վըրայ կարգաւոր իրաւասութիւն ունի. վասն զի բոլոր ու ամէն մէկ հաւատացեալք անոր հպատակն են։ Իսկ միացած եպիսկոպոսունք՝ որոնք անոր հետ միութեան մէջ են, ամէն մէկն

ուն թեմին վրայ նորգաւոր իրաւասութեան ու-
ն, վասն զի 'իրեն թեմին ամէն . մէկ հա-
ստատեալը իրեն ալ հօտն է։ Ասոր հօ-
տակ' քահանայք ան ատեն ու այնչափ-
ներուն վրայ յանձնուած իրաւասութիւն ունին' որ
տեն ու որչափներուն վրայ իրենց իրա-
սութենէն տուած են ան օրինաւոր եպիս-
կոպոսները' որոնց որ ան հպատակները կը
երաբերին։

Անոր համար եպիսկոպոս մը' որնոր Հռո-
մայ եպիսկոպոսին իշխանութիւնը չի ճանչ-
նար, առաքելոց օրինաւոր յաջորդ չըլլալով
խանութենէ զուրկ է ու անոր համար հօտ-
ն չունի, բռնած ժողովուրդն իրեն չէ, իրեն
տ եղող քահանաներուն ալ' իր չունեցած
իշխանութիւնը կամ իրաւասութիւնը չի կրնար
ալ։ Այսպէսով ոչ անանկ եպիսկոպոսն եւ
անանկ քահանայք, ո՛չ օրինաւորապէս եւ
վաւերաբար կրնան ատեան ունենալ,
ատ լսել, վճիռ տալ' արձակելով կամ կա-
ելով։

Ուստի տիեզերական ժողովոց վարդա-
պետութեան համեմատ' ոչինչ է արձակումն,
ինչ է կապումը երբ որ անկէ կ'ըլլայ' որնոր
այն կարգ ունի, բայց իրաւասութիւն
ունի։

Հռոմէական եկեղեցիէն դուրս ապաշ-

խորութեան խորհրդոյն ամէն հարկաւոր մասերը փճացած են։

Ի՞նչպէս։

« Ապաշխարութեան խորհրդոյն ձեւը կամ կերպը՝ որուն վրայ գլխաւորաբար հեցած է աս խորհրդոյն զօրութիւնը, պաշտօնէին ան խօսքերն են՝ թէ Ես արձակեմ ըզքեզ եւ այլն։ Իսկ այս խորհրդոյն իբրեւ նիւթ է նոյն իսկ ապաշխարողին Զղջումը, Խոստովանութիւնն ու Հատուցումը (Ապաշխարանքը), որոնք խորհրդոյն ամբողջութեանն ու մեղաց կատարեալ թողութեանը համար աստուածային սահմանադրութեամբ պահանջուած ըլլալուն համար՝ Ապաշխարութեան խորհրդոյն մասերը կ՚ըսուին։ »

« Զղջումն ուրիշ բան չէ, բայց եթէ (ամէն) գործած մեղացը վրայ հոգւոյ ցաւ մը ու զըզջում մը՝ ալ գոնէ մահու չափ մեղք մը չգործելու առաջադրութեամբ մէկտեղ։ »

« Մեղաց ամբողջ խոստովանութիւնն ան է՝ որ ապաշխարողն ամէն մահուչափ մեղքերը՝ զորոնք որ աղէկ քննութենէ մը ետքը խղճմտանքին մէջ ունի, խոստովանութեան մէջ մէկիկ մէկիկ զրուցէ։ »

Հատուցման նկատմամբ ալ, որովհետեւ « սուտ է՝ որ աս խորհրդոյն մէջ յանցանքին թողութիւն ըլլալու ատեն՝ միշտ բոլոր պա-

տիժն ալ մէկտեղ կը ներուի », անոր համար « Աստուծոյ քահանայք՝ որչափ որ իրենց հոգեւոր իմաստութիւնն ու խոնհեմութիւնը կը ցուցընէ, յանցանքներուն որպիսութեան եւ ապաշխարողներուն կարողութեան համեմատ փրկարար ու պատշաճ հատուցումներ (ապաշխարանքներ) պէտք են դնել, ոչ քերնուն աչքէն ունենալով՝ որ դրած ապաշխարանքնին՝ չէ թէ միայն նոր կեանքի մը պահպանութեան ու տկարութեան դեղ ըլլայ, հապա նաեւ անցած մեղքերուն վրէժ ու պատիժ. վասն զի քահանայից բանալիքները չէ թէ միայն արձակելու, հապա նաեւ կապելու համար տրուած են »:

Հռոմէական եկեղեցիէն դուրս ապաշխարութեան խորհրդոյն թէ՛ կերպը, թէ՛ նիւթը կը պակսի, այս ինքն՝ ոչ արձակում, ոչ զըղջում, ոչ ամէն մեղաց խոստովանութիւն եւ ոչ ապաշխարանք կայ:

Կերպ չկայ՝ վասն զի ի՞նչ իշխանութեամբ կրնայ Կաթուղիկէ եկեղեցիէն դուրս կեցած եպիսկոպոս մը կամ քահանայ մ'ըսել. « Ես արձակեմ զքեզ յամենայն մեղաց քոց », երբոր իր հպատակը չէ՝ զորնոր կ'ուզէ արձակել, եկեղեցւոյ ընդհանուր կառավարը գլխոք ան ժողովրդեան վրայ դատաւոր չի ճանչնար, ինչպէս շատ անգամ ըսինք:

Նիւթ ալ չկայ, որովհետեւ աստնկ աշխարհը ճշմարիտ զղջում չունի, վասն զի թէ որ գիտութեամբ ու կամօք Կաթուղիկէ Հռոմէական եկեղեցիէն դուրս, այս ինքն՝ հերձուածոյ մէջ կեցած է, իր ամէն մեղքերուն վրայ չի զղջար, վասն զի կը մնայ եկեղեցւոյ իշխանութենէն անկախ ըլլալուն անհնազանդութեան մեծ մեղքը՝ որուն վրայ պնդած կեցած է։

Ճշմարիտ յառաջդիմութիւն ալ չունի, որովհետեւ իր ամէն մեղքերէն ալ ետ կենալու առաջադրած ըլլայ, միտքը դրած է վերոյիշեալ անհնազանդութեան մեղքը յառաջ տանելու ու Հռոմայ եպիսկոպոսին ի Քրիստոսէ Տեառնէ մերմէ տրուած իշխանութեան հրապատակութենէն դուրս իր կեանքը շարունակելու։

Եւ ոչ ամէն մեղացը խոստովանութիւնը կրնայ ընել՝ որովհետեւ չ'ուզեր ան խղճմտանքին մէջ ունեցած ստուգիւ կամ հիմնական կասկածանօք գիտցած մեղքը այս ինքն՝ Հռոմայ եկեղեցւոյն անհնազանդ ապրած ըլլալուն մեղքը խոստովանիլ, եւ թէ որ խոստովանի ալ նէ՝ մէկ կողմանէ ինք կամք չունի իբրեւ մեղք խոստովանելու ու մէկալ կողմանէ ալ պաշտօնեայ սեպուած քահանան կամք չունի նոյնն իբրեւ մեղք լսելու եւ դատելու։

Առանց՝ Կաթուղիկէ Հռոմէական եկեղեցիէն դուրս՝ հերձուածոյ մէջ ընդհանուր մեղք մը կայ՝ որն որ անկարող կ'ընէ ապաշխարողը՝ ամէն մեղքին վրայ զղջալու, ամէն մեղքէ ետ քաշուելու, ամէն մեղքը խոստովանելու։

Վերջապէս՝ նոյն Հռոմէական եկեղեցիէն դուրս՝ հերձուածոյ մէջ խորհրդական ապաշխարանք չկայ։ Վասն զի ուր որ արձակելու իշխանութիւն չկայ, հոն կապելու ալ չկայ. ուստի դրուած ապաշխարանքը (աղօթք կամ ողորմութիւն կամ պահք) խոստովանութեան խորհրդոյ ապաշխարանքի զօրութիւն չունի, ա՛ն հատուցումը չի կրնար յառաջ բերել՝ զորնոր իշխանութիւն կամ իրաւասութիւն ունեցող պաշտօնէէն որոշուած ապաշխարանք մը յառաջ կը բերէ։

Ինչպէս պաշտօնէին՝ նոյնպէս ալ ապաշխարողին կողմանէ Հռոմէական եկեղեցիէն դուրս խորհրդական ապաշխարանք կարելի չէ. որովհետեւ չի կրնար ըլլալ որ ապաշխարող մը մեղքէն չարձակուած՝ Աստուծոյ առջեւը մեղքին պատժէն արձակուի, մեղաց յաւիտենական պատիժը չվերցած, անոր ժամանակաւոր պատիժը վերնայ, դժոխքէն չազատած՝ քաւարանէն ազատի։

Դարձեալ՝ իրաւասութեան ու հնազանդ-

դութեան՝ պակասութեամբ ապաշխարութեան խորհուրդը չէ թէ միայն, ինչպէս ցուցուցինք, անօգուտ, հապա միանգամայն վնասակար կ'ըլլայ ։

Կաթուղիկէ եկեղեցիէն դուրս խոստովանութեան կամ ապաշխարութեան խորհուրդը քրիստոնեայն չի մաքրեր, հապա աւելի կ'աղտեղէ, չէ թէ մինակ չ'արձակեր, հապա աւելի կը կապէ, չէ թէ մինակ մեղքէ չ'ազատեր, հապա աւելի մեղաւոր կ'ընէ ։

Ինչո՞ւ ։

Ամէն քրիստոնեայ գիտէ թէ երբ որ անարժանի մը խորհուրդ կը տրուի եւ անարժանը խորհուրդ կ'առնու, մահուչափ սրբապղծութեան մեղք կը գործուի։ Արդ թէ՛ քահանան ու թէ՛ ապաշխարողն՝ որոնք գիտութեամբ ու անոր համար ալ՝ ծանր անհնազանդութեան մեղքով Կաթուղիկէ Հռոմէական եկեղեցւոյ հաղորդութենէն դուրս, այս ինքն՝ հերձուածոյ մէջ են ու ապաշխարութեան սրբազան խորհուրդը մէկ կողմանէ տալ ու մէկալ կողմանէ առնուլ կը փորձեն, չէ թէ մինակ ան տուած չ'ըլլար ու աս առած չ'ըլլար, հապա ամէն մէկը գոնէ երկերկու ծանր մեղք իրենց մեղաց բեռանը վրայ աւելցուցած կը դառնան, ամէն մէկը նախ իր ըրած, ետքն ուրիշին ընել տուած սրբապղծութիւնը ։

Ասանկ ապաշխարութեան խորհուրդն՝ նոր մկրտութենէն ետքն ինկողներուն երկրորդ փրկութեան տախտակն է, Կաթուղիկէ եկեղեցիէն դուրս չէ թէ միայն քաւութեան սրբութեան աղբիւր չէ, հապա առաւելագոյն դատապարտութեան։

## Ներողութիւն։

Կաթուղիկէ վարդապետութեան համեմատ՝ ապաշխարութեան խորհրդոյն գործը կը լմա- է Ներողութիւնը, ու ան ատեն ամբող- ջապէս ճշմարիտ է Քրիստոսի Տեառն մերոյ Պետրոսի ըսածը թէ Ինչ որ երկրի վրայ կապես՝ երկինքը կապուած, ու ինչ որ երկրի վրայ կ'արձակես, երկինքն արձակած ըլլայ, որ եկեղեցւոյ մէջ չէ թէ միայն բոլոր մեղքերը թողլայ, հապա նաեւ բոլոր պատիժները ներելու՝ իրօք իշխանութիւն գտնուի։

Իրաւ է՝ որ խոստովանութեան խորհրդոյն մէջ մեղքի հետ մէկտեղ բոլոր անոր պատիժը միշտ Աստուծմէ չի ներուիր, հապա մնալեաց զօրութեամբ յաւիտենական պատիժը վերնալէն ետքը շատ անգամ ժամանակաւոր պատիժը դեռ վճարելի կը մնայ ու նոր համար ապաշխարողաց վրայ քահաներէն ապաշխարանք կը դրուի (Ծող.

Տրիդ. նիստ. ԺԴ. վասն Խորհր. ապաշխ. Կան. 12 եւ 15.

Բայց աս ապաշխարանքով ալ ամէն անգամ բոլոր մեղաց պատիժը չի հատուցուիր, հապա դեռ կը մնայ մեղաց պատիժ՝ որնոր կամ աս աշխարհքս եւ կամ անդին (քաւարանը կամ մաքրարանը) պիտ՚որ հատուցուի։

«Իրաւցընէ, կ՚ըսէ, Տրիդենտեան տիեզերական սիւնհոդոսը, Աստուծոյ արդարութիւնն ասանկ պահանջել կ՚երեւայ՝ որ Աստուած անոնց հետ ուրիշ կերպով հաշտուի՝ որոնք որ մկրտութենէն առաջ անգիտութեամբ մեղանչեցին, եւ ուրիշ կերպով ալ անոնց հետ՝ որոնք որ մէկ անգամ մը մեղաց ու սատանայի ծառայութենէն ազատած ու Հոգւոյն սրբոյ պարգեւն ընդունելէն ետքը՝ գիտութեամբ Աստուծոյ տաճարն ապականելու եւ զՀոգին սուրբ տրտմեցընելու չըվախցան։»

Բայց ի՜նչչափ խեղճ կ՚ըլլայինք՝ թէ որ մեր մեղքերուն բոլոր պատիժները միայն մեր ապաշխարութեանը պտուղներովը աս Աստուծոյ արդարութեանը հատուցանելու մնայինք։

Ուստի անիկայ՝ որնոր չէ թէ միայն արդարութեան, հապա նաեւ գթութեան Հայր եւ ողորմութեան Աստուած է, ուզեց որ

րբոր մենք ապաշխարութեամբ մեր մեղա-
հատուցում ընելու կ'աշխատինք, իր սի-
լի Որդւոյն Քրիստոսի Տեառն մերոյ ար-
ւնքներէն, որնոր արդէն մեր մեղացը
ւմար Աստուծոյ Հօր հատուցած է, օգնու-
ւն գտնենք» (Ժող. Տրիդ.), ասանկ ալ
ւրբերուն արդիւնքներէն՝ որոնք Քրիստո-
Տեառն մերոյ՝ իբրեւ ուռ որթոյ վրայ
ատատուած, պտղաբեր եղան՝ եւ իրենց
ուղն Աստուծոյ յաւիտենական գանձուն
ջ անանկ առատութեամբ կեցած է՝ որ ի-
նց համար ատտուածային արդարութեան
տուցանելէն աւելը, իրենց ընկերացը հա-
ր՝ զորոնք իրենց պէս կը սիրեն, հարուստ
երք մը կ'աւելնայ։ Ասանկ՝ ամենատուրբ
ան՝ որն որ ամենեւին իրեն համար հա-
ւցանելու բան մը չունէր, վասն զի մեղք
չունեցաւ, բովանդակ մեզի համար գան-
ձ, Քրիստոսի Տեառն մերոյ յարգանդէ
ուած Կարապետը, անապատներու այն-
վի ճգնաւորները, ղանազան դարերու
ատիրոսներն ու կուսանքը մինակ իրենց
մար չգանձեցին։

Անոր համար՝ կաթուղիկէ եկեղեցին կը
ովեցընէ՝ թէ բանալեաց, այս ինքն կա-
լու եւ արձակելու, իշխանութեամբ ու
ղորդութեան սրբոց զօրութեամբ՝ ի Քը-

րիստոսէ եկեղեցւոյ չէ թէ մինակ մեղաց յանցաւորութիւնը թող տալու, հապա նաեւ մեղաց պատժոցը ներողութիւն տալու կարողութիւն տրուած է։ Ուստի խորհրդական արձակմամբ մեղաց յաւիտենական պատիժը վերցուելէն ետքը՝ ներողութեամբ անոր ժամանակաւոր պատիժը կրնայ արձակուիլ։

Հռոմէական եկեղեցին աս վարդապետութեան համեմատ գործադրութիւնն ալ ունի, որովհետեւ մեղաւորին ապաշխարութեան շեմէն սկսած մինչեւ վերջի շունչը՝ իրեն սահմանած ներողութիւններովը կ՚օգնէ, եւ ի մասնաւորի ժամանակէն յաւիտենականութիւն անցնելու րոպէն ընդհանուր քահանայապետական ներողութեամբ անմիջապէս արքայութեան մուտքին կը պատրաստէ։

Ասանկ լիութեամբ մխիթարութեան կը յուղարկէ իր հաւատացեալը՝ Հռոմէական կաթուղիկէ եկեղեցին։

Ուստի՝ Կաթուղիկէ Հռոմէական եկեղեցիէն դուրս ոչ մեղաց թողութիւն կայ եւ ոչ մեղաց ժամանակաւոր պատիժներուն ներողութիւն։

## Բ․

Ինչո՞ւ մայր Կաթողիկէ Հռոմէական՝ եկեղե-ցին դուրս կենալով՝ ան հաւատքն ունենալ շնորհք մը Եկեղեցին առնէ։

Էջմիածնական եկեղեցին իր Քրիստոնէ-յաններուն մէջ կը դաւանի թէ ճշմարիտ հաւատք ունենալու համար՝ եկեղեցւոյ ա՛յն սորվեցուցածները կամ հաւատացածները պէտք է հաւատալ եւ ոչ մէկո՛ն վրայ տարա-կուսելով։

« Հ. Ընդդէմ հաւատոյ մեղանչողները ո-րո՞նք են », կ՚ըսէ Միջ. Վարդապետարանը 75։

« Պ. Անոնք՝ որոնք որ եկեղեցւոյ այն հաւատացածներուն չեն հաւատար, կամ ա-նոնց վրայ կամաւորապէս կը տարակուսին։»

« Հ. Ինչո՞ւ համար աղանդները յաւիտե-նական երջանկութեան արժանի չեն ըլլար » ըսէ Կ-Պոլսոյ վերջին Քրիստոնէականը էջ 31։

« Պ. Անոր համար՝ որ եկեղեցիէն դուրս ելած կ՚ըլլան ՝հաւատքնին ծուռ ըլլալով, եւ եկեղեցիէն դուրս եղողն արքայութիւն չ՚եր-թար։»

Նոյն Էջմիածնական եկեղեցւոյն քրիստո-նականներուն համեմատ՝ Հռոմէական եկե-ղեցին անոնց ճշմարիտ եկեղեցի է՝ ինչպէս

Էջմիածնականը, մանաւանդ թէ աս երկուքը նոյն է ։ Աս խօսքը ճշմարիտ ըլլալու համար Էջմիածնական եկեղեցին Կաթուղիկէ Հռոմէական եկեղեցիէն ըստ հաւատք մը ունեցած պիտ'որ չըլլայ ։

Իրօք սա՛նկ է ։

Եթէ Էջմիածնական եկեղեցւոյն պաշտօնէիցը կամ անոնց հետեւողներուն հարցունենք, անանկ անսովոր ըմբռնմամբ մը՝ որնոր մեզի վերջապէս անիմանալի մնացած է, թէ՛ իպաշտօնէ եւ թէ՛ առանձնակի կ'ըսեն՝ թէ ։։ իրենց եկեղեցին բոլորովին մի եւ նոյն հաւատքն ունի եւ ճշդիւ ան ամէն բան կը հաւատայ եւ կը սորվեցընէ՝ ինչ որ Կաթուղիկէ Հռոմէական եկեղեցին կը հաւատայ ։

Ասոր հետեւութիւնն է՝ որ նոյն եկեղեցին կը զարմանայ թէ ինչու թող չի տար Կաթուղիկէ Հռոմէական եկեղեցին՝ որ երկու եկեղեցական հասարակութեանց մէջ կրօնական հաղորդութիւնն ազատ ըլլայ ։ Ասիկա, ընդհանրապէս խօսելով, Էջմիածնական եկեղեցւոյ հաւատարիմ անդամներուն կարծես թէ սեւեռեալ գաղափարն եղած է ։

Կա՞յ աս նոյնութիւնը, կարելի՞ է աս նոյնութիւնը ։

Չէ թէ մինակ հիմա իրօք Կաթուղիկէ Հռոմէական եկեղեցւոյ բոլոր սորվեցուցածն ու բոլոր հաւատացածը չի սորվեցըներ ու չի հաւատար Էջմիածնական եկեղեցին եւ անոր

սրտագատ զաւակը, հապա եւ ոչ այլ կրնայ
րբեք։

Մինչեւ հիմա տեսանք մի առ մի՝ որ չէ
է մէկ, հապա խումբ խումբ վարդապե-
տութեանց մէջ Էջմիածնական եկեղեցին
աթուղիկէ եկեղեցիէն շատ մը թէ՛ տարբեր
ւ թէ հակառակ բաներ կը սորվեցընէ եւ կը
ուսանայ։

Բայց ենթադրենք՝ թէ անանկ առեններ
ան, որ Էջմիածնական եկեղեցին աս տար-
եր ու հակառակ վարդապետութիւններէն
ռածարելով իր հաւատքը Կաթուղիկէ Հռո-
էական եկեղեցւոյ վարդապետութեանը հա-
սձայնեցընէ, ցորչափ որ աս եկեղեցին իր
ացարձակ անկախութիւնը թող տալով կա-
ուղիկէ միութեան մէջ չի մտներ, միշտ
արդապետութեանց եւ հաւատոյ մասանց
ոնէ խումբ մը պիտ'որ մնայ, որով Էջմիած-
ական եկեղեցին եւ իրեն ամէն հարազատ
աւակը Կաթու. իկէ Հռոմէական եկեղեցւոյ
արդապետութեան անհամաձայն պիտ'որ
մնուի։

Ըրինակի աղագաւ՝ Հռոմէական եկեղեցին
իեզերական ժողովոց համեմատ միշտ պիտ՛
հաւատայ իբրեւ հաւատոյ մասն՝ թէ Պետ-
ոս Մնացած առաքեալներէն վեր իշխանու-
եան գլխաւորութիւն ի Քրիստոսէ Տեառնէ
րմէ առած է, եւ Էջմիածնական եկեղե-

ցին իր հարազատներովը կարող պիտ'որ չըլլայ աս Հաւատոյ մասն ընդունելու՝ չուզելով ան բացարձակ անկախութենէն հրաժարիլ։

Հռոմէական եկեղեցին տիեզերական ժողովոց համեմատ մինչեւ ի կատարած աշխարհի իբրեւ Հաւատոյ մասն պիտ'որ սորվեցընէ թէ Հռոմայ եպիսկոպոսը իբրեւ Պետրոսի յաջորդ եւ Քրիստոսի փոխանորդ բոլոր հաւատացելոց, այս ինքն բոլոր կղերականաց ու բոլոր ժողովրդականաց վրայ, չէ թէ միայն պատուոյ, հապա նաեւ իշխանութեան գլխաւորութիւն ունի։ Էջմիածնական եկեղեցոյն միշտ անկարելի պիտ'որ ըլլայ աս Հաւատոյ վարդապետութիւնն ընդունիլ՝ ցորչափ չ'ուզեր աս իշխանութեան հնազանդութիւն մատուցանել։

Էջմիածնական եկեղեցին ցորչափ ինքնագլուխ կը մնայ, պիտ'որ պնդէ՝ (ինչպէս իրօք իր Քրիստոնէականներուն մէջ կ'ընէ) թէ եկեղեցին մէկ երեւելի գլուխ մը չունի, մէկ ընդհանրական կառավարութիւն մը չունի, հապա շատ երեւելի գլուխներ, շատ մասնաւոր կառավարութիւններ միայն ունի։ Աս որ հակառակ՝ Կաթուղիկէ Հռոմէական եկեղեցին ամէն ատեն ու ամէն տեղ իբրեւ Հաւատոյ մասն պիտ'որ հաստատուն բռնէ թէ մէկ ընդհանրական երեւելի կառավար ու կառավարութիւն կայ բոլոր եկեղեցեաց մէջ։

Վերջապէս Էջմիածնական եկեղեցին իր
ինքնագլխութեան ։ Էջ յարատեւած ա-
ին պիտ՚որ ըսէ թէ ինք փրկարար եկեղե-
է, եւ կրնայ իրեն հետեւողները արքել
յաւիտենական կենաց պատրաստել ։ Անոր
հակառակ՝ Կաթուղիկէ Հռոմէական եկեղե-
ն իբրեւ հաւատոյ մասն յաւիտեան պիտ՝
սորվեցընէ՝ րոպէ մը վրան չտարակու-
լով՝ թէ Կաթուղիկէ Հռոմէական եկեղե-
ցէն դուրս փրկութիւն չկայ, վասն զի մե-
ղց թողութիւն ալ չկայ, որովհետեւ իշխա-
ւթիւն կամ իրաւասութիւն անոնց համար
ոյ՝ որոնք որ գիտութեամբ ու կամօք աս
միայն կաթուղիկէ եկեղեցւոյ հնազան-
ութենէն դուրս են ։

Ուստի անկարելի է որ Էջմիածնական ե-
ղեցւոյ մէջ կաթուղիկէ եկեղեցւոյ ամէն
ըվեցուցածը սորվեցուի եւ ամէն հաւատա-
ծը հաւատացուի ։ Անոր համար Էջմիածնա-
ն եկեղեցւոյ հարազատ եւ հաւատարիմ
ւակ մը երբեք պիտ՚որ չկրնայ ըսել՝
կը հաւատամ ինչ որ Կաթուղիկէ Հռոմէ-
ն եկեղեցին կը հաւատայ ու կը մերժեմ
չ որ ան կը մերժէ ։

Բայց աս երկու եկեղեցեաց վարդապետ-
ւթիւնը կամ հաւատքը չէ թէ միայն
կով (par quantité) իրարու հաւասար չէ, հապա
եւ (ասանկ ըսենք) տեսակով (spécifiquement) նոյն

չէ։ Հարազատ էջմիածնական մը չէ թէ միայն ան ամէնը չի հաւատար ինչ որ Կաթուղիկէ Հռոմէական եկեղեցւոյ մէջ կը հաւատացուի, հապա հաւատացածներ ալ անանկ կամ անոր համար չի հաւատար՝ ինչպէս կամ ինչու համար Կաթուղիկէ Հռոմէական եկեղեցւոյ մէջ կը հաւատացուի։ Աս երկու եկեղեցեաց հաւատոյ կանոնը կամ պատճառն էապէս կը տարբերի։

Կաթուղիկէ Հռոմէական եկեղեցւոյ հաւատոյ կանոնը վերջապէս կը հանգչի՝ ծագաց ի ծագս երկրի տարածուած եկեղեցւոյ ուսուցանող մասին (այսինքն Հռոմայ եպիսկոպոսին եւ անոր հաղորդութեան մէջ գտնուող եպիսկոպոսաց) վարդապետութեանը վրայ։

Ս. Գիրք եւ Ս. Հարք հաւատոյ աղբիւրներն են, բայց Ս. Գիրք եւ անոր խօսքերուն իմաստն ան է զոր .. հեղինակութիւնը կ՚որոշէ կամ կ՚ընդունի։ Ս. Հարք անոր համար Ս. Հարք են՝ վասն զի .. միաբան հեղինակութեան համաձայն խօսած են, վասն զի .. ուսուցանող եկեղեցւոյ հետ որդիք եղած են, եւ անոր համար ճշմարիտ աւանդութեան տեղ կ՚առնուի իրենց միաբանութիւնը, վասն զի .. ուսուցանող եկեղեցւոյն միաձայն վարդապետութեանը կը վկայէ։ Համառօտ ըսելով՝ .. ուսուցանող եկեղեցւոյ անսխալու-

եան վրայ կեցած է Կաթուղիկէ Հռոմէաան եկեղեցւոյ հաւատքին կանոնը, անանկ որ ոլոր եւ ամէն մէկ վարդապետութիւն իրեւ հաւատոյ մաս անոր համար կը հաւտացւի, վասն զի բոլոր Կաթուղիկէ Հռոմէական կեղեցւոյ ուսուցանող մասն ասանկ կը սորեցընէ եւ ասանկ կը հաւատայ ։

Անոր համար կաթուղիկեայ հաւատացեալ ը Աստուածային հաւատոյ մատուցանելու նկեղծ «հպատակութիւնը չի կրնար մինակ ն բաներուն սեղմել՝ որոնք որ տիեզերական ողովոց կամ Հռոմայ հայրապետաց եւ առաելական Աթոռոյն բացայայտ վճիռներովը աճմանուած են, հապա պէտք է՝ որ նաեւ ն ամէն բաներուն տարածուի՝ որոնք որ ագաց ի ծագս տարածուած բովանդակ եեղեցւոյ վարդապետութեան կարգաւոր աշ՚ոննայներէն (այսինքն օրինաւոր եպիսոպոսներէն) իբրեւ աստուածուստ յայտնեալ աւանդութիւն եւ անոր համար ալ ուղղափառ աստուածաբանք միշտ եւ ամէն տեղ միաբաած են նոյները հաւատոյ մաս սեպելու »։ Պիոս Թ.ին 1863, Դեկտեմբ. 2ին Միւնիքի րքեպիսկոպոսին դրած համառօտագրէն։)

Շատ տարբեր է Էջմիածնական եկեղեցւոյ անոնը։ Հաւատալ Էջմիածնականի մը հաւատոյ կանոն չէ՝ կաթուղիկէ եկեղեցւոյ ուսուցանող մասին (այս ինքն Պետրոսի յաջոր-

դին եւ անոր հետ միութեան մէջ եղող եպիսկոպոսաց) վարդապետութիւնը ։ Ասոնց վարդապետութիւնն ան ատեն, այն չափ եւ անոր համար հարազատ Էջմիածնականի մը համար կ'արժէ, երբ որ եւ որչափ եւ ինչու որ իրեն ազգային բարձրագոյն կղերը կ'ընդունի ։

Օրինակի աղագաւ՝ Հռոմայ եպիսկոպոսին եւ ուրիշ եպիսկոպոսաց միաբանութեամբը 20էն աւելի տիեզերական ժողովներ եղած են, ոմանք արեւելք եւ ոմանք արեւմուտք, շատերուն մէջ, թէ հ ս թէ հոն, Յոյնք ալ գըտնուելով. ասոնցմէ միննակ առջի երեքը կ'ընդունի Էջմիածնական եկեղեցին ։ Ուստի չ'արժեր իրեն համար եկեղեցւոյ ան ուսուցանող մասին վարդապետութիւնը՝ բայց եթէ երբոր ազգային կղերը կը հաստատէ կամ կ'ընդունի, ան ատեն եւ անոր հեղինակութեանը համար իբրեւ Հոգւոյն սրբոյ պատգամ կըսկսի արժելու. ինչ որ դեռ ան կղերէն ընդունուած չէ, եւ շատեն՝ ասանկ դեռ չընդունուած վարդապետութիւններ, ամէնն ալ հարազատ Էջմիածնականի մը համար՝ ազատ նիւթեր են, հաւատոյ մասեր չեն, եւ միշտ պէտք են կասկածելի ըլլալ ։

Ասանկով՝ ան անսխալութիւնն որն որ կաթուղիկէ Հռոմէական եկեղեցւոյ մէջ առաքելական դասուն փոխանորդութեանը կ'ընծայուի, ամբողջապէս փոքրիկ ազգին

գերլին կը տրուի Էջմիածնական հաւատոյ
անուանին մէջ։ Ուստի ինչ որ Էջմիածնական
եկեղեցին (եւ անոր հետ մէկտեղ ամէն Էջ-
միածնական) Կաթուղիկէ Հռոմէական եպիս-
կոպոսաց կը գլանայ, այս ինքն՝ իրենց միաբա-
նութեամբը վերջապէս կանոն հաստատող ո-
րոշելու կարողութիւնը, նոյնը գործով իրեն կը
սեպհականէ Էջմիածնական եկեղեցին, եւ
ասով իրեն դատումը եւ ընտրողութիւնը բոլ-
անդակ Կաթուղիկէ Հռոմէական եպիսկոպո-
սաց մեծայաղթ գումարութեանը դատումէն
եւ ընտրողութենէն վեր կը դնէ։

Էջմիածնական եկեղեցին՝ ինչպէս իր ազ-
գային կղերին հեղինակութիւնը Էջմիածնա-
կանաց համար հաւատոյ չափ եւ կանոն դը-
րած է, նոյնպէս ալ ազգային Հարքը ի-
րեն համար միայն արժող աւանդութիւն
սեպած է։ Հոգը չէ՝ թէ ինչ Յոյն կամ Լատին
Հարց միաբանութենէն իբրեւ ճշմարիտ ա-
ւանդութիւն կաթուղիկէ եկեղեցւոյ մէջ ա-
նոնց առանձնական կարծիքներէն զատուած
կ'ելլէ. իրեն համար բաւական է՝ որ աս կամ
ան. ազգային հայր մը, կամ առ առաւելն ա-
նոնցմէ մէկ քանին աւանդ կամ անանդ սոր-
վեցուցած սեպուին։ Ասով Էջմիածնական ե-
կեղեցին իրեն հինգ առ հարիւր Հարցը՝ անանդ
առաւելութիւն մը գործքով կուտայ, զորն որ
Կաթուղ՝ կէ Հռոմէական եկեղեցին ոչ Լա-

տին եւ ոչ Ցոյն Հարցմէ մէկուն կամ մէկ քանիին կու տայ կամ կրնայ տալ զատաբար՝ Մնացեալներուն վկայութեանը հակառակ։ Վասն զի կաթուղիկէ կանոնին համեմատ Սրբոց Հարց խօսքն ան ատեն միայն կանոն հաւատոյ է, երբ որ կը միաբանին բան մը վարդապետելու։ Մնացած ատեն հաւատոյ կանոն չեն ա ր։ Կրնայ Ոսկեբերան մը, Օգոստինոս մը, նաեւ Լուսաւորիչ մը իրեն առանձնական կարծիքներն ունենալ, եւ երբեմըն անտեղի կարծիքալ։ Ասոնցմէ եւ ոչ մէկուն անսխալութեան պարգեւ խոստացուած է, հապա միայն կաթուղիկէ եկեղեցւոյ ուսուցանող մասին խոստացուած է Հոգին սուրբ, եւ անոր միաբան վարդապետութիւնն է՝ որն որ Ս. Հարց միաբան վարդապետութեանը մէջ կը ցոլանայ։

Մէկ խօսքով՝ Կաթուղիկէ եկեղեցւոյ մէջ տիեզերական է աւանդութիւնը, Էջմիածնական եկեղեցւոյ մէջ ազգային է։

Թէ հաւատալեաց կանոնին նկատմամբ ինչչափ սեղմեալ գաղափար ունին մեր Էջմիածնական եղբարքը, շատ զգալի կ'ըլլայ ան խօսքերէն՝ զորոնք գրեթէ 50 տարի առաջ Հզօր Պատրիարք մը (Պօղոս) մեր հաւատակից Հարցը կ'ընէր, երբ որ զասոնք ժողովքի կանչելով՝ կ'ուզէր համոզել որ Էջմիածնական դաւանութիւնն իբրեւ ուղիղ ընդունին։

« Մենք, կ'ըսէ, չունի՛նք բան մը եւ հակառակութիւն ընդ այլ եկեղեցիս՝ զորոց թէ ձէ Խոյք, մեք զմեր Հայկազեան սրբոց Հարց զուղղափառութիւնն կամիմք յայտնել . . . որովհետեւ ամենեքեանքդ ընդունիմք զբանըս Լուսաւորչին եւ սրբոյն Ներսիսի Շնորհալւոյն, եւ այլն, ուրեմն չմնաց այլ ինչ բաժանումն ի միջի » (էջ 22). « Եւ մեք (Պատրիարքս) սկսաք կարգաւ առնուլ ըզվկայութիւն իւրաքանչիւրոց՝ յանուանէ կոչելով մի առ մի՝ թէ հաւատամս եւ ընդունիս զուղղափառ հաւատս սուրբ Լուսաւորչին եւ սուրբ Ներսէսի Շնորհալւոյն, եւ հընազանդեալ հետեւիս այնոյն բանից սոցին ». Ատենախօսութիւն ինիատն Թ. 1817, հոկտ. 23

Նոյն տարւոյն Նոյեմբերի 22 ին կոնդակով մը Հայոց եկեղեցւոյն քրիստոնէական հաւատքը ճշդելու կերպն որոշելով կ'ըսէ նոյն Պատրիարքը. « Գիրք բացայայտիչք, կ'ըսէ, ուղղափառ հաւատոյ Հայոց սուրբ եկեղեցւոյս՝ բաց ի յԱստուածաշունչ գրոց, են յատկապէս այնք՝ որ սրբազան հայրապետաց մերոց սահմանադրութեամբ հանապազօր պաշտին յամենայն սուրբ եկեղեցիս Հայոց ։ Եւ են այսոքիկ, Ժամագիրքն, Շարականն, խորհրդատետրըն, Ճաշոց եւ Մաշտոցն, ընդ որս եւ գիրք սուրբ Լուսաւորչին եւ Ընդհանրա-

« կանն սրբոյն Ներսէսի Շնորհալւոյ, յայտ-
« նիկ գրեանս լուսաւոր. մեզ հաւաքեալ
« զանձին բանք ուղղափառ սուրբ վարդա-
« պետաց եւ եկեղեցւոյ մերոյ՝ Կնիք հաւատոյ ընդհանրա-
« կան, եւ բաց ի սոցանէ չունիմք հրաման
« զայլ գիրս բերել, քանզի սոքա են հիմունք
« ուղղափառութեան Հայաստանեայց սուրբ
« եկեղեցւոյ. »

Հաւատալեաց աղբիւրն այսչափ պղտիկ-ցընելէն ետքը՝ անանկ անգործածելի բաներ մ'ալ իր հնազանդելոց ձեռքը կ'աւանդէ վերոյիշեալ Պատ․խարքը, որ նոյն աղբիւրը բոլորովին կը խնու.

« Այս գրոց բանք, կ'ըսէ, ընդունելի են
« ըստ մտաց հեղինակին՝ դիւրիմաց մտօք՝
« նոյն բառիւք, ոչ առաւել եւ ոչ պակաս։
« Դիւրիմաց մտօք այն է՝ զոր բանն ըստ ինքեան
« առաջին իմացմամբն ցուցանէ . . . ուստի
« զմթին եւ զգերազանց բանս նոցին (այլոց
« հարց) պարտաւորիմք ստուգել վկայու-
« թեամբ սուրբ հարցն մերոց, եւ մի այժմ
« նորոգ մեկնութիւն տալով բռնաբարել։
« Նոյն բառիւք, այսինքն՝ մի եւ մի լծցի գիտ-
« նական ոճիւ աւելի բառ ինչ իբր ի յայտ-
« նութիւն մուծանել. այլ նոցին բարբառով
« ընդդայն խօսիմք » (էջ 27—28)։ Պատմ.
անցից ի Կ-Պոլիս վասն յայտնի կացուցա-
նելոյ զճշմ. հաւատ. Հայաստ. եկեղ. հրա-

մանաւ Կ-Պոլսոյ Պատրիարքի Տեառն Պօ-ղոսի. 1818. Փետր. 15։

Այսչափ՝ բացայայտութենէ, այսչափ՝ լոյսէ կը վախնայ աս Պատրիարքը։

Աճառեանի կրօնադրութեան արժանի կէտ մը։

1. Էջմիածնական եկեղեցին անանկ հաւատոյ կանոն մ՚ունի՝ որ իրեն հոգը չէ թէ ինչ կ՚ը-սեն ուրիշ ուղղափառ եկեղեցիները։ Թող անոնց հազարաւոր հօվիւները սորվեցընեն ինչ կ՚ուզեն։ Թէ որ ասոնց վարդապետու-թիւնն իրեն հարյն եւ հովուացը ըսածին չի համաձայնիր, վերջիններուն հետեւելու, եւ առջիններըը թող տալու է։ Թէ որ անոնք եւ ասոնք միաբան են, հարկաւ՝ չէ թէ առաջին-ներուն՝ հապա վերջիններուն վկայութիւնը ըլնք ի հաւանութիւն կը չորժէ։ Յայտնի է՝ որ ասոր ըստ ամենայնի ներհակն է կաթու-ղիկէ հաւատոյ կանոնը։

2. Ուստի՝ եթէ Էջմիածնական մը՝ « եկե-ղեցւոյ ամէն հաւտացածը » հաւատալու վրայ կը խօսի, իրեն ամէնը՝ կաթուղիկեայ հաւա-տացելոյն ամէնը չէ. եւ ոչ ալ էկեղեցի ըսածը՝ կաթուղիկէ, ընդհանրական, ծագաց ի ծագս երկրի տարածուած եւ ամէն ազգաց մէջ քա-րոզող եկեղեցւոյ ուսուցանողն մասն է, հապա մինակ Էջմիածնական հօվիւներն են։

3. Էջմիածնական եկեղեցին իր հաւատոյ կանոնը գրեթէ մատենադարանի մը մէջ

կ'ամփոփէ, սոր մէջ « ամէն ճշմարտութիւն հարկաւոր ի փրկութիւն » բովանդակուած կը սեպէ, անկէ դուրս եւ անոր վրայ Հոգ-ւոյն սրբոյ օգնութեամբն երաշխաւորուած կենդանի դատաւորութիւն մը չի ճանչնար,

Այսր հակառակ՝ կաթուղիկեայ հաւա-տացեալը կը յարգէ սա գանձարանը՝ բայց իբրեւ տիեզերական եկեղեցւոյ գանձարանին մէկ մասը, եւ չի կրնար ըսել՝ թէ սա ազգա-յին մթերքէն դուրս քրիստոնէական հա-ւատոյ եւ վարուց համար հարկաւոր ճշմար-տութիւն եւ բացատրութիւն մնացած չըլլայ, անանկ՝ որ նոյնն ամբողջացունելու եւ լու-սաւորելու համար՝ ուրիշ սրբոց Հարց աւան-դութիւնք պէտք չըլլայ կամ ան հեղինակու-թիւնք՝ որոնք երբէք աւելորդ պիտ'որ չըլ-լայ՝ ցորչափ կարօտ են եւ կարօտ պիտ'որ մնան մարդիկ « յայտնեալն ճշմարտութիւն » առաջնորդուելու։

Ստուգիւ աս էջմիածնական գաղափարէն շատ հեռու գտնուած են մեր ճշմարիտ Հար-քը, որոնք իրենց վարդապետութիւնը՝ կա-թուղիկէ եկեղեցւոյ աւանդութեանը հետ հո-սանքէն՝ մինակ իբրեւ ջուր առու մը հանե-ցին, եւ եկեղեցւոյ կենդանի հեղինակութեան աղբիւրէն իրենց ամաններն լեցունելու ա-տեն՝ չէին կրնար եւ ոչ միտքերնէն անցու-նել՝ որ անոր բոլոր ջուրն սպառեցին։ Աս

նդանի հեզինակութեան դպրոցին մէջ՝ ի՞նչ
ասեր այսօր չեն առնուր, թէ որ այնչափ
արերէ եռքը՝ Աթանաս մը, Հիլարիոս մը,
եւ Լուսաւորիչ մը իրենց փառաւոր գե-
րզմաններէն արթըննան։

Պէտք ենք անկեղծութեամբ խոստովանիլ
, եթէ Էջմիածնական եկեղեցին հաւատոյ
- բարուց նիւթերուն մէջ երբեք սխալած
ըլլալու եւ երբեք չսխալելու արտօնութիւն
ը (իրմէ գոնէ 100 անգամ մեծագոյն եւ ի-
աստնագոյն կղերի մը նոյնը գլանալէն ետ-
ը) գոնէ իր վրայ չ'ապացուցանեն, իրեն հա-
ւատոյ կանոնը անանկ թեթեւ եւ անանկ
ոհեմ դատողութենէ զուրկ է՝ որ անոր վրայ
հիմնուած էջմիածնական հաւատքը չի կրնար
խօսուն (կամ բանաւոր) պաշտօն » (Հռոմ.
Բ. 1.) ըսուիլ եւ կոյր հետեւողութենէ ուրիշ
նուն մը դժուարաւ կրնայ առնուլ։

Ա՛յսչափ կը տարբերի Կաթուղիկեայ հա-
ւատքն Էջմիածնական հաւատքէն, թէ՛ ընդ-
րձակութեամբ՝ նիւթոյն կողմանէ, եւ թէ՛
աստկութեամբ՝ պատճառին կողմանէ։

Բայց կրնան ըլլալ եւ կան ալ Էջմիածնա-
ան եկեղեցւոյ հաղորդութեանը մէջ անանկ-
ներ՝ որոնք մէկ կողմանէ ծանր գալով ի-
րենց աս հաղորդութիւնը թող տալ՝ ու
էկալ կողմանէ իրենց փրկութեան հոգ-
ովը պաշարուած՝ Էջմիածնական կամ արդէ

Հայաստանեայց եկեղեցւոյն Հռոմէական ե կեղեցիէն ունեցած մեծամեծ ու բազմաթի Հաւատոյ տարբերութեանց առջեւ փրկուէ կերպով մը կը զարհուրին։

Ի՞նչ կը հայթայթեն սանք։ Ասանկներն իրենց խիղճը հանդարտեցընելու համար՝ միա քերնին իրենց եկեղեցւոյն վրայ պտըտող վէճերէն վեր վերցընելով՝ կը ջանան մտքով երբեմն նաեւ խօսքով՝ Կաթողիկէ Հռոմէական եկեղեցւոյ նաեւ ան ամէն վարդապետութիւններն ընդունելու, զորոնք արդի Հայաստանեայց եկեղեցին՝ որուն մէջ ծնած ու սնած գտնուած են, չի կրնար ընդունիլ կամ դաւանիլ, ինչպէս տեսանք։ Աս կերպով կը սեպեն թէ ա՛լ ամէն բան ընդունեցան եւ չի մնար բան՝ զորնոր Կաթողիկէ Հռոմէական եկեղեցին սորվեցընէ եւ իրենք չհաւատան։

Ասանկ՝ կը խորհին, ասանկ կը խօսին միայն մտքի ու խօսքի Կաթողիկէականները։

Անհիմն մխիթարութիւն։ Դարձեալ չեն կրնար ամէն բան հաւատալ՝ ինչ որ Կաթողիկէ Հռոմէական եկեղեցին կը հաւատայ։ Աս եկեղեցին հաստատութեամբ կը հաւատայ եւ ամենայն պնդութեամբ կը սորվեցընէ՝ թէ փրկութեան համար անվրէպ հարկաւոր է՝ որ քրիստոնեան (ճշմարտութիւնը ճանչնալէն ետքը) չէ թէ մինակ մտօք՝ հապա ի-

ք Կաթուղիկէ Հռոմէական եկեղեցւոյ կա-
սկարութեան տակ եւ անոր Հնազանդու-
եան մէջ ապրի , եւ թէ այնպիսին՝ մնալ սա
ազանդութեան մէջ ապաշխարութեան
ւսեր խորհուրդ ու մեղաց թողութիւն կըր-
յ ընդունիլ ։

Կրնայ՞ սոր հաւատալ որդի Հայաստա-
այց եկեղեցւոյ որդի մնալ ուզելով՝ կաթու-
կէ Հնազանդութենէ հրաժարողը . թէ որ
ւատար՝ չէր կրնար նոյն եկեղեցին տա-
ւրին իրեն մայր բռնել ։

Այնպէս անկարելի է ասանձ միայն մտօք ո-
ով կաթուղիկէ եկեղեցւոյ մէջ մնալ ,
չպէս անկարելի է միայն մտքով կամ
ողձանքով եկեղեցւոյ անդամ ըլլալ՝ ա-
նց իրօք մկրտուիլ ուզելու , մտքով կամ
ւստ) զղջմամբ մեղաց թողութիւն գտնել՝
անց խոստովանութեան խորհրդոյն մօ-
նալ ուզելու ։ Անանկներն Աստուծոյ սու-
- աւելի դժուարաւ կրնան արդարանալ ,
ւմհետեւ աւելի ալ լոյս ընդունած են ճըշ-
րտութիւնը ճանչնալու , բայց դուցէ մարդ-
ն փառքը իրենց համար Աստուծոյ փառքէն
ելի արժելով՝ կը ծփան անորոշ ։

# ՎԵՐՋԱԲԱՆ

Ա. Ի՞նչ էր մեր գլխաւոր դիտումը, սիրելի ընթերցող, բայց եթէ տեսնել թէ

1. Արդեօք Էջմիածնական արդի Հայաստանեայց եկեղեցին իր հաւատքին ու վարդապետութեանը մէջ կաթուղիկէ հռոմէական եկեղեցւոյ հաւատքէն ու՞ վարդապետութենէն տարաձայնութիւն ունի :

2. Արդեօք նոյն եկեղեցին ինք իր հաւատքին ու վարդապետութեան մէջ ինք իրեն համաձայն է :

Երկու եկեղեցեաց վարդապետութիւնն ու հաւատքը, երկուքին ալ վաւեր և ամենէն մեծ հեղինակութիւններովը հաստատուած գրուածոցը մէջէն դէմ առ դէմ բերելով սա անժխտելի արդիւնքն ունեցանք՝ որ

1. Արդի Հայաստանեայց եկեղեցին հաւատոյ ու վարդապետութեան մէջ կաթուղիկէ հռոմէական եկեղեցւոյ հետ մեծամեծ տարաձայնութեանց մէջ է, սար և անոր մէջ շատ չանցնելու վիհեր կան, անանկ՝ որ երկուքն ալ ճշմարիտ, երկուքն ալ միանգամայն փրր-

կութեան հասցընող եկեղեցի չեն կրնար ըլլալ:

2. Արդի Հայաստանեայց Էջմիածնական եկեղեցին իր վարդապետութեանը շատ մասերուն մէջ ինք իրեն ալ հակառակ է, ինք զինք սուտ կը հանէ, նոյն իսկ վերջի գրեթէ 50 տարուան միջոցին մէջ՝ ոչ ամէն ատեն մի և նոյնը կը վարդապետէ, ոչ ամէն տեղ մի և նոյնը կը հաւատայ, և ոչ ալ մի և նոյն տեղ ու ատեն մի և նոյնը կը սորվեցնէ, վերջապէս՝ իր վարդապետութեան ու հաւատքին ամէն մասերն իրար չեն բռներ, որով ինք իրեն համար ապացուցած կ՚ըլլայ թէ ճշմարիտ ու փրկարար եկեղեցւոյ անվրէպ սեպհական եղած անսխալութեան պարգևէն զուրկ է, և Մխիթարիչ Հոգին Սուրբ իրեն չ՚առաջնորդեր, ինք չէ ան մի միայն ճշմարիտ ու փրկարար եկեղեցին:

Աս կրկին արդիւնքը մեր ամէն մէկ քայլին՝ առջևնիս ելաւ: Տեսանք թէ որչափ Մարեղութեան վարդապետութեան մէջ յողդողդ եր է Էջմիածնական եկեղեցին և դեռ հին մորը բոլորովին վերցած չէ: Ամենասուրբ րրորդութեան վարդապետութեան մէջ Հոգոյն Սրբոյ վրայ, այսինքն՝ երեք անձանց ուրու յարաբերութեանցը վրայ, ունեցած

վարդապետութիւնը կլիմաներու համեմատ ուղիղ ու մոլար է: Հոգւոյ՝ մահուընէ ետքն ունենալու վիճակին վրայ՝ նոյնպէս: Վերջին օծման խորհուրդը նիւթովն ու կերպովը միանգամայն փճացուցած է: Քրիստոնեայ տիեզերաց վարդապետութեան ու օրինաց դէմ՝ պատարագի բաժակն առանց ջրոյ կը գործածէ: Իր բարձրագոյն եկեղեցական հեղինակութիւններովն անանկ քրիստոնէականներ ժողովրդեան համար կը քննէ ու կը հաստատէ, որոնք սուրբ գրոց կանոնին, մեղաց, խոստովանութեան ու կարգի խորհուրդներուն և եկեղեցւոյ պատուիրաններուն վրայ թերութիւններով ու մոլորութիւններով լի են: Եկեղեցւոյ վրայ տիեզերական ժողովոց հակառակ վարդապետութիւններ ունի՝ իրարմէ անկախ կառավարութեամբ եկեղեցիներ դնելով, դրութիւն մը որն որ, ինչպէս տեսանք, չէ թէ միայն կաթուղիկէ ուղղափառ վարդապետութեան տրամաչափապէս հակառակ է, հապա նաև Էջմիածնական եկեղեցւոյ և անոր քրիստոնէականներուն ուրիշ վարդապետութիւնները կ՚աւրէ, մանաւանդ թէ ինքն ալ իրեն համաձայն չէ՝ դրածը վերցունելով ու վերցուցածը դնելով, Սուրբ Գիրքն և ա-

ւանդութիւնը, նաեւ իր ազգային աւանդու-
թիւնը կը բռնաբարէ: Զարհուրելի են հե-
տեւութիւնները. աս դրութեամբ որչափ եպիս-
կոպոս՝ անչափ ալ իրարմէ անկախ Քրիստո-
սի եկեղեցիներ կրնան բազմանալ, ասով եկե-
ղեցւոյ շարունակութիւնն անոր սկզբանն ան-
նման կ՚ըլլայ, նոյնը զինուորեալ և երևելի ե-
կեղեցին առանց զինուորեալ և երևելի գլխոյ
կը թողու, աստուածային հաւատոյ ստուգու-
թեան ջիղը կը կտրէ, նոր օրինաց վիճակը՝ հին
օրինաց վիճակէն շատ աւելի անկատար կը
ցուցընէ, հաւատոյ անտարբերութեան առջև
ամէն դուռ կը բանայ, այսինքն՝ ամէն բան
ատանկ ալ անանկ ալ հաւատալու ազատութիւն
կուտայ՝ երբ որ եկեղեցւոյ անսխալ հեղինա-
կութիւնը տիեզերական ժողովներով մէկտեղ
կը փճացընէ, վերջապէս Քրիստոսի եկեղեցին
աստուածային կանխատեսութեան և իմաս-
տութեան համաձայն չկազմուած տապան մը
կ՚երևցընէ, որնոր մարդկային կրից հողմե-
րէն արդէն քայքայուած ըլլայ: Նոյն դրու-
թիւնը եկեղեցական կառավարութեան մէջէն
ընդհանուր տեսչութեան իրաւունքը մէկ կող-
մանէ, մէկալ կողմանէ՝ ընդհանուր հնազան-
դութեան պարտքը վերցընելով՝ վերցուցած է

բարեկարգութիւնը պահելու, անկարգութիւնը ջնջելու մեծ զսպանակը, և հին օրէնսդրութիւնը նոր յարաբերութեանց առջև զօրութիւնը կորսընցուցած ատեն՝ նոր օրէնսդրութիւն մը արժեցընելու հեղինակութիւնը ջնջած է: Կըղերը ինքնագլուխ ըրած ատեն՝ ժողովրդեան ստրուկ և միանգամայն բեռ ըրած է: Էջմիածնական կղերին և ժողովրդեան արդի անդարմանելի կրօնական վիճակն աս ազատութեան ծառին պտուղն է:

Վերջապէս բացարձակ եկեղեցական անկախութեամբ՝ որն որ նոյն դրութեան գործադրութիւնն է, Էջմիածնական պաշտօնեայն մեղաց թողութիւն և պատժոց ներողութիւն տալու իրաւասութենէն զուրկ է, և հարազատ Էջմիածնական մը չունի ան ամբողջ ու բանաւոր հաւատքը՝ որն որ կաթուղիկէ եկեղեցւոյ մէջ կը դաւանուի, և ոչ ալ առանձնական մը կրնայ երբեք նոյնն իրեն համար ունենալ՝ ցորչափ արդի Հայաստանեայց եկեղեցին կաթուղիկէ միութենէն դուրս կը մնայ և ինքն ալ անոր հետ:

Բ. Կրնան մեր սիրելի բայց դժբախտութեամբ աս կաթուղիկէ միութենէն զատուած եղբայրներէն գոնէ ոմանք աս մեր խօսքե-

րուն ըսել թէ ինչ է բանը։ Բայց անտարակոյս մեր խնդիրը խստութեան ու կակղութեան վրայ չէ։ Ինք Յիսուս Քրիստոս մեր քաղցր, ներող ու մարդասէր Տէրն իր պաշտօնեաներուն օրէնք և օրինակ տուած է իրեն որոշ և անվրէպ սպառնալիքները՝ զորոնք անանկներուն կ՚սպառնայ որոնք իր վարդապետութեան նաև մէկ կէտը կը փոխեն (Մատթ. Ե. 18. 19։) Ճշմարտութիւնը, վասն զի ճշմարտութիւն է, տարակոյս չկայ, աններող է մոլորութեան դէմ։

Ի վերայ այսր ամենայնի՝ մենք սիրտերուն զաղտնիքը լրտեսելու իրաւունք մեզի չենք կրնար առնուլ։ Տէր գիտէ՝ որ ասանկ տխուր զուարճութիւններով և Աստուծոյ արդարութեանը զարհուրելի և անհաս վճիռներովը զմեզ չենք սնուցաներ։ Հապա՝ ասոր ներհակ՝ մեր եղբարցը համար ցաւով և մեզի համար երկիւղով լեցուած՝ կը խոնարհինք Աստուծոյ զաղտնի դատաստաններուն դիմաց։ Աստուծոյ ողորմութեան ու մարդասիրութեան ճամբաները չէ թէ նեղցընել, հապա ընդարձակել կը սիրենք՝ երբոր ուրախութեամբ կը մտածենք թէ Աստուած սրտերուն յանհելու բիւրապատիկ հնարք ունի։ Եւ

երբոր Եղիայի պէս՝ մեր բաժնուած բայց սիրելի եղբարց վրայ աղօթք կ՚ընենք, գիտենք որ կրնայ Աստուած մեզի անանկ ըսել՝ ինչպէս որ անի մարգարէին ըսաւ ցուցընելով մեզի թէ նաև անի բաժնուած ցեղերուն մէջ իրեն անանկ հաւատարիմ բարեկամներ ու երկիւղած երկրպագուներ պահած է՝ որոնք մոլորութեան առջև գլխնալով ծունր կրկնած չեն, որովհետև իրենց տգիտութիւնն այնչափ է՝ որ անոր յաղթել չեն կրնար: Ասոնք ապախինէն՝ չէ թէ ազատ Թառայէն ծնած են, բայց հաւատոյ Հօրը, Պետրոսի, որդիք են, որոնք թէպէտ ան մխիթարութեան լիութիւնը չունին, զորն որ «որդիք ազատին» կը վայելեն, բայց որովհետև առանց իրենց յանցանքին անապատի մէջ մոլորած են, թէ կենաց և թէ մահուան առեն իրենց սքբարար խորհուրդներ հոգացուած են:

Սակայն «ով կրնայ յանդգնիլ աս չյաղթուելու և Աստուծոյ առջև առանց յանցանքի մնալու չափ տգիտութեան սահմաններն որոշել, որոնք ազգերու, երկիրներու, բնաւորութեանց և ուրիշ շատ բաներու նայելով կը զանազանին». Պիոս Թ. Խօսակց. 9 Դեկտ. 1854:

Բայց թէ որ աս սահմաններն անանկ

ողհանուրն անորոշ են, սա բոլորովին որոշ.
ւ բոլորովին ստոյգ է՝ որ դուն աս տգիտու-
ան սահմաններէն դուրս ես, սիրելի ընթեր-
ղ: Դուն՝ որ գիտութեանդ լուսով իբրև մի-
միտ հարց նրբամիտ որդի կ՚ապրիս, չես
նար առանց յանցանքի՝ նախապաշարմամբ
յառաջուընէ չգրաւուած քննութիւններդ
նակ «փրկութեան գիտութեանը» (Ղկ. Ա.
) զլանալ: Եւ ոչ ալ կրնաս առանց ծանր
տանգի քու գործողութիւնդ ան համոզմանդ
սրտապան Թողուլ՝ զորն որ աս քու անաչառ
նութիւններէդ կը հանես: Թէ որ աս մեր
նչին գրութիւնը կրնայ աս վերջիններուն
ւքր ինչ նպաստել, ուրիշ բան չենք ըլլար՝
այց եԹէ Ապողոս մը (Ա. ԿորընԹ. Գ. 6),
սան զի վերջին հետևութիւնը միշտ երկնա-
ր շնորհաց այցելութեան կ՚սպասէ:

Գ. Իրօք՝ ոչ մեր դատը և ոչ մեր ընթեր-
ղները մեր գրութեան բառ ինքեան կարօտ
: Սամարուհւոյն պէս երջանիկ չենք որ մեր
ըրը իր մարմնաւոր ներկայութեամբը մեր
նը կտրէ՝ բացարձակ որոշելով թէ որ կողմն
փրկութիւնը: Բայց բացարձակ և աննարա-
ւսելի որոշում մ՚ունենալու համար՝ կարօտ
չենք որ ընդ ծով և ընդ ցամաք յածինք.

նոյնՏէրը չիդադրիր ամէն մէկերնուս ներկայ ըլլալու իբրև լոյս որ կը լուսաւորէ ամէն աշխարհք գալու մարդը (Յովհ. Ա. 9), անանկ որ նոյնն այսօր պէտք ենք լսել՝ ինչ որ հին օրինաց մէջ, Մովսէս և Նորոյն մէջ Առաքեալ լսաւ. «Զըլլայ որ ըսես. ով պիտ՚որ երկինք ելլէ, այսինքն զՔրիստոս իջեցընելու, կամ ով պիտ՚որ անդունդք իջնայ, այսինքն զՔրիստոս ի մեռելոց հանելու: Շատ մօտ է քեզի (քարոզուած) խօսքը, բերնիդ և սրտիդ մէջն է:» Հռոմ. Ժ. 7.

Ուստի մեր կենսական խնդրոյն դատաւորը մեր ներսն է, մեր ներքին մարդը, մեր բնական «հոգին՝ որն որ բնականաբար քրիստոնեայ»* է, կ՚ըսէր Տերտուղիանոս անոնց՝ որոնք մէկէ աւելի Աստուած կ՚ընդունէին. մենք, «նաև կաթուղիկեայ է» կ՚ըսենք անոնց՝ որոնք մէկէ աւելի ճշմարիտ եկեղեցի կ՚ընդունին: Արդ թէ որ մեր խօսքերուն գոհ չեն մեր բարեկամները, հոգ չէ. ունինք դատաւոր մը՝ զորն որ անկարելի է կաշառել, որուն վճռէն անդին մէկու մը չի բողոքուիր, որուն խօսածն իւրաքանչիւր մարդ կը հասկընայ, մանաւանդ թէ (ըստ մտաց ինչ) ինք իւրա-

* Anima naturaliter christiana.

քանչիւր մարդ՝ ան դատաւորն է, այսինքն՝ ամէն մէկուն խիղճը, մեր գերագոյն գործնական դատաստանը :

Աշխարհքիս երեսը զանազան բաւական իրարու հակառակ քրիստոնէութեան ''անուամբ կրօններ կան : Ասոնցմէ որը, որ եկեղեցին պէտք է ընտրել : Ամէն մտադիր մարդու, ըլլայ Էջմիածնական, ըլլայ Կաթուղիկէական, հաւասարապէս պարտք է՝ որ աս խնդիրը մտաց կարողութեանն ու խղճին թելադրութեանը համեմատ լուծած ըլլայ :

Արդ աս ընտրութեան առեն ուրիշ ինչ կը հրամայէ խիղճը՝ բայց եթէ ան միայն ընտրել՝ որն որ ամենէն ապահովն է, վասն զի կրօնի կամ փրկութեան խնդիր է, գործք մը զորն որ մինակ մէկ անգամ պիտ'որ գործենք, գէշ կամ աղէկ, յաւիտեան մնալու : Ուստի՝ որ ճամբան որ մարդս Աստուծոյ ու մահուան առջև իր անկեղծ խղճմտանքին մէջ ամէն իրեն ծանօթ եղած փրկութիւն խոստացող ճամբաներէն ապահովագոյն կը գտնէ, պարտական է ան ճամբէն միայն քալելու : Թէ որ Ռէկը աս գերագոյն հրամանին գոյութեանը և անկէ յառաջ եկած մարդուն պարտականութեանը վրայ տարակոյս կը հանէ, պէտք

է որ նախ իր բանականութեանը վրայ տա-րակուսի :

Իրօք ան դատաւորը՝ որուն առջև ա-մէնքնիս ուշ կամ շուտ օր մը պիտ՝որ ելլենք, մեր հաւատացածին ու չհաւատացածին պա-տասխան տալու, այնչափ պիտ՝որ չպահան-ջէ՝ թէ ինչու ճշմարիտ վարդապետութեան կամ կրօնի չհետևեցար, որչափ համար պիտ՝ որ ուզէ, թէ ինչու ամենէն ապահով վարդա-պետութեան, կրօնի, եկեղեցւոյ չհետևեցար՝ երբոր ասոր ապահովութիւնը տեսար կամ կրնայիր տեսնել թէ որ միայն ուզէիր, ուստի քու փրկութիւնդ վտանգի մէջ թող տալով մե-ղար ծանրապէս :

Ուրիշ բան պէտք չէ, բայց եթէ առող միտք մը՝ իմանալու որ մարդ աս նիւթիս մէ Աստուծոյ դատաստաններուն առջև ունեցա պարտքը կատարած կ՚ըլլայ թէ որ կրնայ ան կեղծութեամբ ինք իրեն ըսել թէ ան քրիստո նէական կրօնը կամ եկեղեցին ընտրած է՝ որ որ շնորհաց ու փրկութեան մասին ամէնէ աւելի ապահովութիւն կը ցուցընէ : Որովհե-տև կրնայ զգալ որ Աստուծոյ նախախնամու-թեանն ալ պարտքն է՝ որ ըստ օրինի փնտր-տողներուն ամենէն ապահով քրիստոնէական

կրօն կամ եկեղեցի ճշդիւ ան երևայ՝ որն որ իրօք մի միայն ճշմարիտն է։ Ուստի հարկ է որ մարդ վստահ ըլլայ՝ թէ ամենէն մեծ ապահովութիւն հոն կայ՝ ուր որ մի միայն ճըշմարտութիւնն է, և մի միայն ճշմարտութիւնը հոն է՝ ուր որ ամենէն մեծ ապահովութիւն կայ։

Քրիստոնէութեան անուամբ պարծող կրօններուն մէջէն մի միայն ճշմարիտը շատ մը սուտերէն շատ անգամ հարկ կ'ըլլայ բաւակ խնդիրներով և քննութիւններով գտնելու՝ որոնց քիչ մարդ կարող է։ Ասոր հակառակ՝ այն կրօններուն կամ եկեղեցիներուն մէջէն է որն է ապահովագոյնը՝ այսինքն մի միայն ապահովը, Աստուծոյ երկիւղովն և իր հոգւոյն փրկութեանը հոգով պաշարուած սիրտ կրնայ շատ դիւրաւ որոշել։ Հոս ռամիկը իմաստակային հաւասար է, աւելի բարոյական քան թէ տեսական է խնդիրնիս, աւելի րծք ունի գործնական խոհեմութիւնը քան տեսական սրամտութիւնը։

Արդ էջմիածնական մը՝ որն որ ինչպէս Էն մահկանացու՝ նոյնպէս ալ ինք, խղճի ածնական հրամանին տակն է, ... կշիռնք առած առեն, բայց մը չի կրնար

գործնական որոշման վրայ տարակուսի մէջ. միայն՝ երբոր խնդիրն իր կրօնին կամ կաթուղիկէ հռոմէական կրօնին [illegible] վրայ է. որովհետեւ սա երկու բանն աղէկ գիտէ Էջմիածնականը: Մէյմը թէ Կաթուղիկէ հռոմէական եկեղեցին աշխարհքիս մէկ ծայրէն մէկալ ծայր կ'աղաղակէ թէ « Ս. կաթուղիկէ հռոմէական հնազանդութենէ դուրս՝ չափահասից համար ոչ խորհուրդներն օգուտ մ'ունին, ոչ յաւիտենական կենաց արդիւնք կը վաստկուի և ոչ փրկութեան կը հասնուի: » Ասիկայ իր է, ոչ որ իրեն ուզելովը կրնայ ընել՝ որ կաթուղիկէ հռոմէական եկեղեցին իր ժողովներովը, հանգանակներովն և հազարաւոր, բիւրաւոր կղերականներովը նոյնը չը քարոզէ և չհաւատայ: Մէյ մ'ալ ասոր հակառակ Էջմիածնական եկեղեցին՝ որն որ հազիւ կաթուղիկէ հռոմէական եկեղեցւոյն 100 ին երկուքն է, կ'ըսէ. « Չէ թէ մինակ կաթուղիկէ հռոմէական եկեղեցւոյ հնազանդութեան մէջ, հապա նաև անկէ դուրս, իմ ծոցս, խորհուրդներ կան՝ որոնք չափահասներն ալ սրբելու զօրութիւն ունին, յաւիտենական կենաց պտղաբեր շնորհք և փրկութիւն: »

Արդ՝ որ կողմն է ապահովութիւնը, կը

կողման վիճակը վտանգաւոր է, կշիռքին երկու նժարներն ինչպէս կը կենան: Կաթուղիկէ կրօնին ապահով ըլլալուն վկայութիւն կու տայ Էջմիածնական եկեղեցին, Էջմիածնական կրօնին ապահով չըլլալուն վկայութիւն կու տայ կաթուղիկէ հռոմէական եկեղեցին, բոլոր վկայութիւնները կաթուղիկէ կրօնին կողմն են, Էջմիածնական կրօնին՝ միայն ինք Էջմիածնական եկեղեցին կը վկայէ, մինակ ինք իր անձին համար բարի կ՚ըսէ:

Կաթուղիկէ հռոմէական եկեղեցին միայն չէ՝ որ իրեն համար բարի կը վկայէ, վասն զի ան ամէն կրօն կամ եկեղեցի՝ որն որ չի կրնար համարձակիլ ինք զինք միայն փրկարար կրօն կամ եկեղեցի անուանել, նովին իսկ վկայութիւն կու տայ՝ թէ իրմէ ապահովագոյն է ան եկեղեցին կամ կրօնը՝ որն որ ինք զինք մի միայն փրկարար եկեղեցի կամ կրօն կը վարդապետէ, և հանդիսական կերպով կը քարոզէ թէ աս տապանէն դուրս՝ անվրէպ կորուստ է, ով որ զինք յերկրի մայր չունի, յերկինք զԱստուած՝ Հայր չունենար: Ամենևին կասկած մը չկայ որ կաթուղիկէ հռոմէական եկեղեցին կորստեան ճամբայ ըլլայ, [illegible] Էջմիածնական եկեղեցւոյ համար՝ աչ-

խորհրդիս ամենէն անհամեմատ մեծագոյն քրիստոնէական եկեղեցւոյ կողմանէ աշխարհաքարոզ վկայութիւն մ' ըլլալով որ շնորհաց և փրկութեան ճամբայ չէ, նոյն Էջմիածնական դաւանութեան հետևողներուն վրայ ահագին լեռան մը պէս կը ծանրանայ բռնաւոր կասկած մը: Աս կասկածը պնտիլ չ'եղծանիր՝ որ դեռ կաթուղիկէ վարդապետութեան կատարելապէս համոզուած չեն և կամ Էջմիածնական եկեղեցւոյ վարդապետութիւնն աւելի հաւանական կը բռնեն: Խնդիրը հաւանականութեանց վրայ չէ. մի միայն ապահովութեան վրայ է. անկասկած՝ ուստի ապահով կրօնն ու եկեղեցին կեցած ատեն՝ կասկածուած, ուստի անապահով կրօնը՝ գործնականապէս կրօն ըլլալէն կը դադրի, որովհետև մեր բանական բնութեան գործնական դատումը բացարձակ կը հրամայէ որ թէ խորհուրդները՝ որոնք մեր արդարացուցման վստահացուցիչ առհաւատչեայներն են, և թէ մեր յաւիտենական կեանքը բախտի ու քուէի տակ չձգենք:

Ուստի ցորչափ Էջմիածնական եկեղեցին կաթուղիկէ հռոմէական եկեղեցւոյ փրկութիւն չի զլանար, բայց կաթուղիկէ հռոմէականները՝

էջմիածնականին կը զլանայ, ցորչափ կ՚ըսեմ խնդիրն այս վիճակի մէջ է, էջմիածնական եկեղեցւոյն հետևողն երբեք չի դադրիր մեղանչելէ: Վասն զի երբ որ անտարակոյս է փրկութիւնը կաթուղիկէ հռոմէական եկեղեցւոյ մէջ, և տարակուսելի է էջմիածնականին մէջ, անտարակուսելի մեղաց պարտական է Աստուծոյ առջև ով որ էջմիածնական եկեղեցւոյ մէջ կը կենայ: Բնական լուսով հաստատուած բարոյականին անբողոքելի կանոնն է՝ թէ ով որ խորհրդոց, կրօնի և փրկութեան մասին՝ նուազ ապահով կողմը կ՚ընտրէ՝ ապահովագոյնը թող տալով, ինք զինք կորստեան կամ մեղանչելու վտանգի մէջ ձգած է, և ով որ ինք զինք կորստեան կամ մեղանչելու վտանգի մէջ ձգած է, արդէն նովին իսկ մեղանչած է:

Կը կրկնենք խօսքերնիս. որովհետև ամէնուն համար՝ ստոյգ և ապահով է՝ որ կաթուղիկէ հռոմէական եկեղեցւոյ հնազանդութեանը մէջ կայ ճշմարիտ կրօն, սրբարար խորհուրդ, ուստի և մեղաց թողութիւն և վերջապէս փրկութիւն, բայց շատերուն համար ստոյգ և ապահով չէ՝ որ անկէ դուրս ճշմարիտ կրօն, սրբարար խորհուրդ, ուստի և

մեղաց Թողութիւն և վերջապէս փրկութիւն կայ, ով չի տեսներ՝ որ աս դիպուածիս մէջ ամէնուն համար ապոյշ և անպարդոնելի մեղք է՝ կաթուղիկէ հռոմէական եկեղեցւոյ հնազանդութենէն դուրս, ուստի նաև Էջմիածնական ըսուած եկեղեցւոյն մէջ, ճշմարիտ կրօն, սրբարար խորհուրդ, ուստի և յաւիտենական կեանք փնտռել, վասն զի խղճմըտանքին գերագոյն գործնական դատաստանին և հրամանին հակառակ է (Հռոմ. ԺԴ. 23):

ՆՈՒԱԶ ԱՊԱՀՈՎ ԿՐՕՆԸ ԿՐՕՆ ՉԷ. ահա մեր խղճին վճիռը և խօսուածներուն բովանդակութիւնը:

Ոչ որ, ինչպէս ըսած ենք, կրնայ սա դատաստանին և հրամանին գոյութիւնը տարակուսի տակ ձգել, առանց իր բանական բնութիւնը խնդրոյ տակ ձգելու, բայց դժբախտութեամբ կարող ենք աստուածային շնորհօք դրդուած և երերած խղճմտանքին հետ կռուոյ ելլել և Արարչէն մեր ներսը դրուած աս կողմնացոյց ասեղին ցուցուցած ուղղութիւնը խոտորեցընելու աշխատիլ՝ երբ որ անոր խայթերը կ՚զգանք կամ երբոր աս երկնաւոր-պատգամաբերին ամէն երկրաւոր շահերու կամ կորստեան ու կրից աղմուկը պատռելով գե-

ջեր ու ցորեկ իր սուր ձայնը մեզի պէս մահկանացուներուն կը լսեցնէ: Մեր դժբախտութիւնն իր լրումը կ'առնու՝ երբ որ կը յաջողի մեզի վերջապէս լսեցնել աս ճշմարտախօս, անկաշառ և անողոքելի պատգամը՝ որուն դէմ պարապ տեղ [illegible] պատասխան կը փնտռէ, բայց կրնայ [illegible] հրամայել՝ որ ալ չխօսի:

Մնաք բարով, ամենասիրելի ընթերցողք: Մեր խօսքերը թշնամւոյ խօսքեր չէին, բարեկամի, եղբօր մը խօսքեր էին, որնոր ձեզի հետ կը սիրէ ու կը յարգէ ինչ որ ձեր և իր Անցեալին մէջ ճշմարիտ և յարգելի կայ, կ'ողբայ Ներկայն, և լաւագոյն Ապագայ մը ամենուս թէ կը փափագի և թէ մօտեցընելու գործակից ըլլալ կ'ուզէ, բայց միանգամայն համոզուած է՝ որ դեռ բուռ բաւականին չէ ճանչցուած թէ մեր թշուառութիւնները՝ կաթողիկէ եկեղեցւոյ միութենէն զուրկ ըլլալու հետ ինչ սերտ կապակցութիւն ունին, և թէ աս ազնուական ազգը, ցորչափ չի ճանչնար և չի սիրեր անն [illegible]՝ զորնոր արևելեան ժողովրդոց մէջ անոր սեպհականած կ'երևայ Նախախնամութիւնը, անն իր կոչումը կ'քսեմ՝ տրմ[illegible] 500 տարի կայ, բոլորովին երեսը

դարձուցած է, չի կրնար և ոչ աս անցաւոր կենաց համար նշանաւոր արդիւնք մը յառաջ բերել որ և իցէ հսկայական ճիգ, որ և իցէ ճարտարահնար դարման:

Բայց մեր նպատակը՝ աս բաժանման մինակ յաւիտենական կենաց համար ունեցած հետևութիւնները ցուցընելն էր: Ասիկայ արդէն կատարուած սեպելով՝ ինչ ուրիշ բարեմաղթութիւն իրարու կրնանք ընել, բայց եթէ որ ինչպէս հոս Հայրենիք մը ծագմամբ զմեզ կը միացընէ, երկնաւոր Հայրենիք մ՚ալ անդին վերջապէս զմեզ ժողվէ իբրև «քաղաքակիցք սրբոց և ընտանիք Աստուծոյ» (Եփես. Բ, 19):

# ԳԼԽԱԿԱՐԳՈՒԹԻՒՆ

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

Քանի մը Էջմիածնական Քրիստոնէականներ ուղղափառներին անցնելու՝ ու յաւելուածներու ընել հարկ սեպեցինք։

13. Էջին ՔՉ տունէն կարդալու է.

... քիչ մը մեղմացած Նեստորականութիւն սեպած էր։ Աս դարուս սկիզբը դեռ աս թիւր ըմբռնումն ամբողջ կեցած էր. 1811 ին Քրիստոնէականին մէջ ժողովրդեան առջեւ կը դրուի՝ որ կ՚ Աստուածամարդկային բնութեան հաւատայ։

« Հ. Զիա՞րդ առօղն եւ առեցեալն լինին
« մի անձն եւ մի բնութիւն.

« Պ. Քանզի բանն Աստուած այնպէս միա-
« ւորեաց ընդ անձին եւ բնութեան իւրում
« զմարդկութիւնն, որպէս մարմին մեր միա-
« ւորեալ է ընդ հոգւոյ մերում եւ մի բնու-
« թիւն եղեալ է ընդ նմա առանց շփոթման։
« Սոյնպէս եւ մարդկութիւնն միաւորեցաւ
« ընդ անձին եւ ընդ բնութեան Բանին Աս-
« տուծոյ եւ կ՚ աստուածամարդկային բնութիւն ե-
« ղեւ ընդ նմա առանց շփոթման եւ առանց
« փոփոխման» (էջ 6)։

Մի Աստուածամարդկային բնութիւն. ճիշդ աս է բովանդակ Միաբնակաց մոլորութեան համառօտութիւնը, որուն դէմ Արեւելից եւ Արեւմտից տիեզերական ժողովները դարերով կռուեցան։

Գրեթէ նոյն ատեններն Կաթուղիկէ հաւատոյ հետեւողներէն հրատարակուած հայերէն գիրքերէն փոքր ի շատէ լուսաւորուած Փէշտիմալճեանը, ինչպէս իր Լուսաշաւիղ անուամբ գիրքէն կ'երեւայ, կաթուղիկէ վարդապետութիւնն ըստ գոյացութեան աւջի-անգամ ըմբռնից, բայց հրատարակուելու համար ժամանակը շատ տհաս էր, Քրիստոնէականներու մէջ անցնիլը բոլորովին անկարելի, վասն զի կաթուղիկէ վարդապետութիւնն Էջմիածնական կղերին համար' դեռ Նեստորականութիւն կը հոտէր։ Անոր համար' 1814 ին Քրիստոնէականը (որնոր նոյն Պատուելոյն գրչէն ելած է) բնութեանց երկուութեան կամ միութեան վրայ լռելով' . . . ։

19. Էջէն մէջ տանիք նորոգալու է.

. . . Եղեւ Աստուածամարդ։ »

Ան կողման վարդապետական գրուածոց մէջ առջի անգամ աս Քրիստոնէականներուն մէջ չէ' որ աս յստակ ըմբռնումը կը տեսնենք։ Ասոնցմէ 20 տարի առաջ հրատարակուած « Քրիստոնէական Կրօնագիտութեան » մէջ կը նշմարենք ան լոյսը' զորնոր Սալլանթեանցը, Գրոմեթէոսի պէս, Կաթուղիկէ Հռոմէական եկեղեցւոյ վառարանէն առած տարաւ ան կողմերը։

« Հ. Քանի՞ անձինք, եւ քանի՞ բնութիւնք « են, կ'ըսէ, ի Յիսուս Քրիստոս։

« Պ. Մի միայն է անձն ի Քրիստոս և ... « Աստուածային եւ ոչ մարդկային. իսկ բնու- « թիւնք ի նմա են Աստուածային եւ մարդկայ-

*« քին, բայց անշփոթ եւ անբաժան միաւոր-*
*« եալք ի միում անձին, վասն զի ոչ Աստուա-*
*« ծային եւ ոչ մարդկային բնութիւնն կորոյս*
*« զիւր յատկութիւնս եւ զտարբերութիւնս,*
*« եւ ոչ խառնեալ շփոթեցաւ մին ի միւսն, այլ*
*« երկոքեանն եւս կան եւ մնան ամբողջ. եւ այս-*
*« պիսի սքանչելի միաւորութեամբ՝ Քրիստոս*
*« Տէրն մեր է կատարեալ Աստուած եւ կա-*
*« տարեալ մարդ* (էջ 49)։

*« Հ. Քանի՞ կամք եւ քանի՞ ներգործու-*
*« թիւնք են ի Քրիստոս Յիսուս։*

*« Պ. Որովհետեւ ըստ ասացելոյս Քրիս-*
*« տոս է կատարեալ Աստուած եւ կատարեալ*
*« մարդ, ապա հարկաւ ունի նա թէ՛ զԱստ-*
*« ուածային կամս եւ զներգործութիւնս,*
*թէ՛ զմարդկային կամս եւ զներգործութիւնս։»*
(էջ 58)։

131 էջին մէջ տասնչորրորդ տողը։

. . . *մարմնոյ միանգամայն օգտակար դեղը։*

*Կրնար մէկը միտքէն անցընել թէ աս դրութիւնն անցողական կարծիք մընէր, չէթէ բուրջ վարդապետութիւն մը։ Անանկ չէ. Էջ-միածնական կղերը կամ անոր մէկ մեծ մասը 3 քառորդ դարէ աւելի նոյն դրութեան վրայ կեցած է, դեռ 1844ին տղոց ուսման համար պատրիարքական հրամանաւ տպագրուած Քրիստոնէականը նոյնը կը սորվեցնէ։*

*« Հ. Վերջին օծումն զի՞նչ է, կ'ըսէ։*

*« Պ. Է զինուորութիւն հոգեկան որ տու-*
*« եալ լինի ի մկրտութեանն ժամանակի ընդ-*
*« Դրոշմին եւ ընդ Հաղորդութեանն, առ ի*

« չզրկիլ եւ յայտնանէ խորհրդոյ յանկարծա-
« հաս մահուամբ » (էջ 11)։

Տարբեր բան կ'իմանար անշուշտ՝ երբոր այդէ առաջ, բայց « Քրիստոնէական ուսանելիէն ետքը» 1769 ին «Քրիստոնէական ուսման ծաղկոցին», էջ 72 կ'ըսէր.

« Հ. Զի՞նչ է խորհուրդն վերջին օծման։
« Պ. Է օծանել զհիւանդսն օրհնեցեալ իւ-
« ղով յանուն Տեառն ի բժշկութիւն մարմնա-
« կան ախտից եւ ի քաւութիւն ներելի մեղաց։ »

Չէին կրնար սա նիւթին մէջ Կաթուղիկէ վարդապետութեան մասերն ասկէց աւելի աղաւաղութեամբ գործածուիլ։

Չէ թէ մինակ հաւատացելոց սա վարդապետութիւնը կ'աւանդուի, հապա անոր համեմատ ալ 1807 ին « Հովուապետին հրամանաւ Տեառն Յովհաննու Պատրիարքի » տպուած մեծ Մաշտոցին մէջ, քահանայից հրահանգ եւ ազդարարութիւն կ'ըլլայ (էջ 15) թէ « Աստ կատարի մկրտութեանն խորհուրդ եւ սկսանին երկրորդ, երրորդ եւ չորրորդ խորհուրդքն, այսինքն՝ Դրոշմին, Վերջին օծման եւ Հաղորդութեանըն նոր մկրտելոց »։ Ասոր համեմատ՝ Դրոշմի կարգին վերաբերեալ էջերուն գլուխն ալ (երես 16—17) նշանակուած է՝ « կարգ Դրոշմի եւ Վերջին օծման »։

161 էջին մէջ ասանկ կարդալու է.

. . . քարոզութեան դուռը կը բանայ։

Ու Քրիստոնէականներուն հեղինակը, Մըսըր Մսըրեան, հոս ալ ինք զինք իրօ՛ն « ծայրագոյն վարդապետին» հաւատարիմ կը ցու-

ցընէ։ Ինչ որ Աղղանթեանցն առ Նիւթիս մէջ ճարտարամտեր էր, նոյնն աւելի որոշ խօսքերով Նոր Հայաստանեայց եկեղեցւոյ ծայրագոյն հեղինակութիւնմըը հաստատուած Քրիստոնէականները կ'աւանդեն․

« Հ․ Զի՞նչ է, կ'ըսէ Քրիստոնէական կրօ-
« նագիտութիւնը, օծումն հիւանդաց։

« Պ․ Է խորհրդաւոր ծէս, յորում քահա-
« նայն իւղով օծանելով եւ ոչ գինւով աղօթէ
« ի վերայ հիւանդին, զի ընկալցի յԱստուծոյ
« զառողջութիւն մարմնոյ եւ զթողութիւն մե-
« ղաց (Մարկ․ Զ․ 13․ Յակ․ Ե․ 14․ 15։) Նիւթ
« արարողութեանս է իւղն եւ զուարթութեան գինւոյ․
« կերպական՝ են մաղթանք եւ բանք աղօթից․
« սպասաւոր՝ է քահանայն ․ ․ ․ ։

« Իսկ գործածութիւն իւղոյն՝ զոր անդէն
« նշանակէ առաքեալն, կանխաւ խափանեալ
է առ մեզ վասն բանաւոր պատճառաց» (էջ 140—141։)

146 էջին մէջ տասն չորրորդն է․

․ ․ ․ խորհրդոյն էական ցուցընելու եւ սորվեցընելու։

Նոյն իսկ Ռեփորմատորներու դարէն անանկ մարդիկ՝ որոնք հիմակուան Էջմիածնականաց հարազատ հոգին ունեցած են, առանց կարգադրութիւն մը չեն ճանչնար, հապա միայն անհոգութիւն եւ յամառութիւն կը տեսնեն․ «Աղամիծին», ճեռապուն աշակերտը, Թովմա Մեծոփեցի, Վերջին օծման մատակարարութեան համար (Վենետկոյ տպագրեալ Մաշտոցին մէջ գտնուածին հետ գրեթէ նոյն) Կանոն

մ՝աւանդելով սա յիշատակարանը կ՚աւելցընէ . « Ցերեսս ան եալ աղաչեմ զքրիստոսակիր եղբարսդ եւ զբաղձալի ուսումնատէր մանկունսդ եկեղեցւոյ՝ որք հանդիպիք նորընծայ աստուածային պարգեւացս գրոյս . . . : Եւ ես մեղապարտս ի մանկունս եկեղեցւոյ անուանեալ վարդապետս Թումա առաջնորդ սուրբ ուխտի Մեծոփայ վերստին սրբագրեցի զսա, եւ ետու գրել հոգեւոր որդւոյ իմոյ Յովհաննէսի սարկաւագի արճիշեցւոյ . . . : Բայց դուք ընկալարուք զսա իբրեւ զտախտակն Մովսեսի եւ զաւետարանն Քրիստոսի, եւ մի ոք պախարակեսցէ զսա, զի ի վաղուց ժամանակաց նախատինս կրէաք յազգաց քրիստոնէից եւ այսօր Քրիստոս ետ զսա ի ձեռս մեր, եւ որ ոչ ընդունի զսա, ինքնին պատասխանեսցէ Քրիստոսի Աստուծոյ մերոյ »(Ձեռագիր Թիւ 40)։

## 336 Էջմին Վերջին տուածն հաւատալու է :

Էջմիածնական եկեղեցին ունի ուրիշ նախապաշարմունք մ՚ալ՝ որնոր միայն իրենը չէ, բայց նախընթացէն նուազ կաթուղիկէ եկեղեցւոյ ըմբռնմանն ալ աւանդութեանը ներհակ չէ, այսինքն սրբոց արձանակեր պատկերները յարգութեան չառնուլ. Մեր օրերը սա խնդրոյն վրայ վճռական է Էջմիածնական եկեղեցին ան կողմերը դարձեալ՝ ուր որ Կաթուղիկեայ ժողովրդեան հետ քաղաքային հաղորդակցութիւն կայ. Չենք ըսեր պատրիարքական գրութիւնն Երջանիկ վերջինը չի խոտանար՝ գոնէ մօտ ատեններս համար։

« Արժանայարգ սիրելիք »

« Մանզչերական գրութիւն ձեր յարգութեանց եհաս.
« և գրած էիք թէ խաչկալին վրայ արձաններ շինել կը
« տրուի ու մենք ալ հաճութիւն ունեցած ըլլանք, և այլն:
« Թաղական յարգելեաց գրեցի՝ որ Հայոց եկեղեցին չըն-
« դունիր արձաններ. հալէ խաչելութեան պատկերն անգամ
« լուսահոգի մահտեսի Կարապետ աղային Էքիզեանց ար-
« ձանակերպ ըլլալուն համար չընդունեցի: Կը գտնուի
« գրուածներուն մէջ պազը ղապարթմալը հրեշտակ և այլն.
« բայց ենթակային վրայ փակած, քիչ մը ղապարմիշ եղած,
« և չէ թէ լման արձանի պէս սուկ մարդակերպ շինուած-
« ներ և ասոր ընդունելի չըլլալը գրեցի Թաղական յար-
« գելեաց, և երբօրէնէ մախպուլ չըլլալը. և անանկ բա-
« ները վերցնելու և չընելու համար գրեցի իրենց, և ձեզ
« ալ իմացուցի գրով, ողջ լերուք ի Տէր»:

« 13 Հոկտ. 1864. »    Պատրիարք Կ-Պոլսոյ

Պ . . . »

« Տեղի կնքոյ »

(Տես Արշալոյս լրագրոյ 1864 Նոյեմբեր 28 թիւ 741.)

3. Վեցերորդ գլխոյն վերաբերեալ էջե-րուն վրայ Մանր խնդիրք դրուած է, չէ թէ անոր համար որ նոյն գլխոյն մէջի խնդիրները թեթեւ բաներ եղած ըլլան, հապա մինակ անոր համար՝ որ Էջմիածնական եկեղեցին դեռ անոնց վրայ հանդիսական կերպով պըն-դած չէ,

[1] Դարձեալ՝ թէ որ քանի մը տեղ (էջ 415, 418 78) Հռոմայ հայրապետին եւ ուրիշ ուղղա-կան եպիսկոպոսաց համաձայնութիւնը առէպ

կրկնեցինք գոնէ նոյնն իբրեւ կանոն կաթողիկէ ուղղափառ հաւատոյ յառաջ բերելով դիւանորաբար անոր համար ըրինք՝ որպէսզի աւելորդ ընդդիմաբանութեանց արմատ կտրենք. չէ թէ վասն զի Հռոմայ եպիսկոպոսին ՚ի գահէ տուած վճիռները (այս ինքն՝ երբոր լիութեամբ առաքելական իշխանութեան բոլոր հաւատացելոց համար բան մը իբրեւ հաւատոյ ճշմարտութիւն կը սորվեցընէ) անդրագոյն հաստատութեան մը կարօտ կը սեպենք։ Աստուած պահէ։ Աս ջախջախ կարծիքը՝ որնոր կրնայ այսօրուան օրս գրեթէ արդէն մարած սեպուիլ. երբէք պետական սահմանէն դուրս ելլելով գործնական եղած չէ. նոյն իսկ աս կարծեաց տէր եղողները գործնական սահմանին մէջ ամենէն առաջ անցան Առաքելական Աթոռոյն վճիռներուն հնազանդելու։ Այլապէս ալ կարելի չէր։ Վասն զի գործնականի գալով՝ հոս ալ դարձեալ՝ յայտնի է կաթողիկէ եկեղեցւոյ բովանդակ ուսուցանող մասին միտքը. որովհետեւ չէ թէ մինակ Հռոմայ Աթոռոյն ատեանին, հապա ամէն ուղղափառ եպիսկոպոսաց դատաստանին առջեւ՝ «Առաքելական աթոռոյն վարդապետական վճռոյն չհնազանդող Ուղղափառ», ամէն ատեն եւ ամէն տեղ ուրիշ բան բռնուած չէ՝ բայց եղջերուաքաղ կամ կենդանի հակասութիւն մը։ (Տես նաեւ վերը էջ 479)։

---

Գործքիս վերջի թերթերը մամլոյ դըր-
ւած էին երբոր հետ զհետէ ձեռքերնիս հա-
ն սա երկու Քրիստոնէականներն ալ՝ որոնց
ը յառաջաբանին Ի. էջն է, այս ինքն՝

1. Մուխթասար Քրիստոնէական վարդա-
պետութիւն ։ — Միլէլի Կրօնական Ժողովի-
րատէսի իլէ . . . 1864. Իզմիր ։

Ս. Հալէպի Էջմիածնականաց համար տըպ-
ուած Քրիստոնէականը վրան սա վաւերացու-
մը կը կրէ ․

« Հրամայեմք տպագրել »
« Ի դիւանց Կրօն. ժողովոյ
Ատենապետ
Ն. Եպ . . .

2. Ճանապարհ երկնից կամ Պատկերա-
զարդ Քրիստոնէական, 1865, Կ-պօլիս, զորն
որ (եթէ սխալ չենք լսած) Հոգեւոր Ժողովը
...ել տուած է ։

Համառօտիւ խօսելով՝ ասոնք ալ քիչ շատ
իրենց նախընթաց ընկերներուն հակասու-
թեանց մասնակից են, ի մասնաւորի՝ Վերջին
...ծման, Բաժակին, Պատուիրանաց խնդիրնե-
րուն նկատմամբ ։

կրկնեցինք գոնէ նոյնն իբրեւ կանոն կաթո-
ղիկէ ուղղափառ հաւատոյ յառաջ բերելով
գիտաւորաբար անոր համար ըրինք՝ որպէս-
զի աւելորդ ընդդիմաբանութեանց արմատ
կտրենք. չէ թէ վասն զի Հռոմայ եպիսկո-
պոսին ՚ի գահէ տուած վճիռները (այս ինքն
երբոր լիութեամբ առաքելական իշխանու-
թեան բոլոր հաւատացելոց համար բան մը իբ-
րեւ հաւատոյ ճշմարտութիւն կը սորվեցընէ)
անդրագոյն հաստատութեան մը կարօտ կը
սեպենք։ Աստուած պահէ։ Աս ջախջախ
կարծիքը՝ որնոր կրնայ այսօրուան օրս գրե-
թէ արդէն մարած սեպուիլ. երբէք տեսական
սահմանէն դուրս ելլելով գործնական եղած չէ.
նոյն իսկ աս կարծեաց տէր եղողները գործ-
նական սահմանին մէջ ամենէն առաջ անցան
Առաքելական Աթոռոյն վճիռներուն հնա-
զանդելու։ Այլազգ ալ կարելի չէր։ Վասն զի
գործնականի գալով՝ հոս ալ դարձեալ՝ յայտ-
նի է կաթուղիկէ եկեղեցւոյ բովանդակ ու-
սուցանող մասին միտքը. որովհետեւ չէ թէ
մինակ Հռոմայ Աթոռոյն ատեանին, հապա
ամէն ուղղափառ եպիսկոպոսաց դատաստա-
նին առջեւ՝ «Առաքելական աթոռոյն վար-
դապետական վճռոյն չհնազանդող Ուղղա-
փառ», ամէն ատեն եւ ամէն տեղ ուրիշ բան
բռնուած չէ՝ բայց եղջերուաքող կամ կեն-
դանի հակառակութիւն մը։ (Տես նաեւ վերը
էջ 479)։

---

Գործքիս վերջի թերթերը մամլոյ դըր-
ւած էին երբոր հետ զհետէ ձեռքերնիս հա-
ն սա երկու Քրիստոնէականներն ալ՝ որոնց
ւղը յառաջաբանին Ի. էջն է, այս ինքն՝

1. Մուխթասար Քրիստոնէական վարդա-
ետութիւն : — Միլէլի Կրօնական Ժողովի-
տէսի իլէ . . . 1864. Իզմիր.

Ա՛ս Հալէպի Էջմիածնականաց համար տըպ-
ւած Քրիստոնէականը վրան սա վաւերացու-
ը կը կրէ .

« Հրամայեմք տպագրել »

« Ի դիմաց Կրօն. Ժողովոյ
Ատենապետ
Ն. Եպ . . .

2. Ճանապարհ երկնից կամ Պատկերա-
զարդ Քրիստոնէական, 1865, Կ-պօլիս, զոր
ը (եթէ սխալ չենք լսած) Հոգևոր Ժողովը
այել տուած է։

Համառօտիւ խօսելով՝ ասոնք ալ քիչ շատ
րենց նախընթաց ընկերներուն հակասու-
թեանց մասնակից են, ի մասնաւորի՝ Վերջին
Օծման, Բաժակին, Պատուիրանաց խնդիրնե-
րուն նկատմամբ.